տրութեանն բարեպաշտին Հեթմոյ և որդոյ սորա [Լևոնին]: Առ որս աղաչեմ զամենեսին վասն սիրոյն Քրիստոսի յիշել զմեզ և մեղաց թողութիւն խնդրէ ի Քրիստոսէ, զի և դուք յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի։

Եւ արդ, դրեցի զսա վասն հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ եւ գոյանալոյ երկրի, եւ ապա վասն աշխարհական դատաստանաց եւ դատաւորաց եւ թագաւորաց, եւ զսիրտ բանիցն առեալ եդի համառաւտաբար։ Զորս աղաչեմ անմեղադիր լինել իմոյ նուաստութեանս, վասն զի չէր իմ բան. եւ ձեռաւք իմովք աշխատեցայ եւ փոխեցի զսա ի չար եւ ի դառն ժամանակի։

Յառաջ պատեհ համարեցաք զվիճակեալ դատաւորացն գրել, բուն յառաջ զթագաւորացն, վասն զի յԱստուծոյ կարգեցաւ թագաւորութիւնն, եւ յԱստուծոյ տեղին է համարած ի երկրի։ Եւ զնոցին դատաստանն եւ զիրաւունքն գրեցաք. եւ ապա զկարգաւորացն եւ զաշխարհականացն եւ զայր[ե]ւ զկնոջ։

## 272

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 1956, Ն. Պողարյան, Ցուցակ Զ, էջ 526—529

Գրիչ՝ Թորոս Ռոսլին
Վայր՝ Հռոմկլա

ա

342ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ միոյ աստուածութեանն Հաւր եւ Որդոյ եւ Սուրբ Յոգոյն, ամէն։

Շնորհիւ Տեառն սկսեալ եւ ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածախաւս, աստուածունակ, երկրպագելի եւ պաշտելի սուրբ Աւետարանս, յամի ութնհարիւրերորդի, չորեքտասներորդի (1265) թուականութեան Հայոց, յաստուածապահ դղեակս Հռոմկլայ, ընդ հովանեաւ սուրբ տաճարացս Սուրբ Փրկչին, եւ Սուրբ Աստուածածնին, եւ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, եւ բազմահաւաք սրբոցս որ պաշտին աստ. ի ժամանակս աստուածասէր եւ բարեպաշտ սուրբ արքային Հեթմոյ, մեծ երեխտեւորի ամենայն Հայոց եւ ազգաց բազմաց. վասնզի խաղաղասէր էր ի Քրիստոս եւ ըստ հրամանի Փրկչին հանապազ զանձն իւր դնէր ի վերայ հաւտի իւրոյ, եւ ի հայրապետութեանն տեառն Կոստանդեայ կաթողիկոսի Հայոց, որ եւ զսուրբ վարուցն իւրոյ մաքրութեան անհամեմատ ունի զպատմութիւն։ Վասնզի արդարեւ ղսոսա իմանամք ողորմութիւն Աստուծոյ գտեալ ի բարկութեան և չարալլուկ ժամանակիս, զի դեռ եւս սուրբ քաղաքն Երուսաղէմ ի ձեռս անաւրինաց, եւ ազգն նետողաց, որք կոչին դադար, տիրեն աշխարաց եւ գաւառաց բազմաց։

Արդ, գրեցաւ սա հրամանաւ եւ ծախիւք մեծազգի եւ բարեպաշտուհի տիկնոջն տիկին Կեռանի, որ է ի շառաւեղէ սուրբ հայրապետացն Հայոց, արդարեւ ողջախոհ եւ երկեղած յԱստուծոյ, եւ դուստր պարոն Կոստանդեայ տեառն Լամբրունին, ածեալ ի տիկնութիւն շքեղաշուք պա-

րոնին, պարոն Ճոֆրէ, տեառն Քարին Սառուանդոյի, որ եւ յետ փոխելոյ նորա յաստեացս, սա նստէր յայրութեան՝ պարապեալ աղաւթից եւ պահոց, բաղում առաքինութիւնս եւ վարս պարկեշտութեան յինքն հաւաքէր, լեալ կրաւնաւոր եւ մայր պարկեշտուհի։ Եւ ըստ փոփոխման քաղաքավարութեան իւրոյ, եւ զանունն փոխելով Աննա զնա կոչէին, վասնզի աղաւթասէր էր ի Քրիստոս եւ զամենայն գոյս իւր ջանայր վանաւրէից եւ մենաստանաց եւ եկեղեցեաց Աստուծոյ նուիրել եւ ամենայն բարեաց յիշատակի։

Ուստի եւ զնիւթ սուրբ Աւետարանիս ի ձեռն աստուածահաճոյ եւ քաշակրաւն քահանային Թորոսի, եղբաւրորդոյ սուրբ կաթողիկոսին Հայոց, հրամայէր գրել իմոյ անարժանութեանս Թորոսի մականուն Ռաւսլին կոչեցելոյ, որ եւ ըստ ներողութեանն Աստուծոյ եւ ըստ քաղցրութեան նոցա յանգ ելեալ աւարտեցաւ սա ըստ կարի իմոյ, զանազան նիւթաք, ընտրելագոյն ոսկով եւ երանգ երանգ գունով։

Վասն որոյ աղաչեմ զձեզ, ո՜վ աստուածասէրք, որք ժառանգէք զսա, յիշել աղաւթիւք ի Տէր զարժանաւորսն ամենայն բարեաց յիշատակի, զյառաջասացեալ անուանս, եւս եւ զստացող սուրբ Աւետարանիս՝ զբարեպաշտուհի կրաւնաւորն Աննա, եւ զաստուածապարգեւ շքեղաշուք որդիքն իւր, զպարոն Կոստանդին՝ երկեղիւն Աստուծոյ զարդարեալ եւ արժանապատուեալ, թագադիր և փեսայ Հեթմոյ սուրբ արքային ամենայն Հայոց, եւ զպարկեշտագեղ եւ սրբահոգի տիկինն իւր տիկին Ռիթայն՝ դուստր սուրբ արքային, եւ զերկուսին հարազատ եղբարսն իւր՝ զպարոն Սմբատն եւ զպարոն Աւշինն, բարեպաշտ իշխանք, եւ մեծաւ սիրով սիրեցեալք ի սուրբ արքայէն։ Այլ եւ զամենայն նախնիս սոցա՝ զհայրս եւ զմայրս, զեղբարս եւ զքորս, եւ զամենայն ազգայինսն սոցա, զկենդանիս եւ զհանգուցեալսն, որոց ննջեցելոցն հանգիստ եւ ողորմութիւն եւ յարութիւն կենաց պարգեւեսցէ Քրիստոս Աստուած եւ զկենդանիսն անխռով խաղաղութեամբ եւ մեծաւ յաղթութեամբ պահեսցէ յաւէտ եւ յերկար ի կամս ողորմութեան իւրոյ, եւ յետ աստեացս ընդ սուրբս եւ ընդ ընտրեալսն իւր դասեսցէ, ամէն։

Ցերեսս անգեալ անարժան գրիչս, որ չեմ արժանի գրել զանուն իմ ի կարգաց անուանց, աղաչեմ ղի եւ զիս արժանի համարիցիք ողորմութեան, եւ յիշեսջիք զիս եւ զծնաւղսն իմ, եւ զեղբարս եւ զքորս եւ ղորդիս եւ զուսուցիչսն իմ, եւս եւ չքնաղագեղ գրիչն Կիւրակոս, եւ զամենայն երախտաւորսն իմ, ի սուրբ աղաւթս ձեր։ Եւ խոշորութեանն, եւ թէ սխալանք ինչ դիպիցի, աղաչեմ շնորհել թողութիւն։ Եւ Քրիստոս Աստուած ձեզ շնորհեսցէ, եւ զձեզ յիշեսցէ յիւր արքայութիւն եւ ի փառս, ամէն ամէն։

Բ

Որ նուիրեաց զնիւթ տառի
Քեզ Տէր համայնց պարգեւողի,
Կեր Աննայի քո ծառաի,
Կենաց բանիդ փափագաւղի;

Զոր արարեր Տէր արժանի,
Բառնալ զկարգ ճգնաւորի,
Յորժամ փառաւք գաս հայրենի,
Ընդ սուրբս ընգալ յառագաստի։

Էնդ ի յէէն անեղ Որդի,
Որ խոնարհեալ իջեր յերկրի,
Եւ մեղ զմատեանս աւետալի,
Ետուր աւրհնեալգ յամենայնի;
Դու Կոստանդեայ մեծ իշխանի,
Արժանացեալ Թագադրաւղի,
Հայրազատաւքն իւր պանծալի,
Ընգալ ի լոյսդ անճառելի։

## 273

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9509

Գրիչ՝ Կիրակոս
Վայր՝ Մաշկևորի ուխտ

ա

326ա Փառք... Գրեցաւ սուրբ Աւետարանս ի մեծահռչակ ուխտս Մաշկևո-
րի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի և Սրբոյ Կարապետին, ի թուա-
կանիս ՉԺԴ (1265), ի հայրապետութեանն տեառն Կոստանդեայ և ի
թագաւորութեանն Հեթմոյ ածեալ ի վերայ նահանգին Կիլիկեցւոց: Եւ
գրեցաւ ձեռամբ Կիրակոսի անիմաստ գրչի, ի խնդրոյ Թեոդոսի փա-
328բ կակալի, վասն ղի ստացաւ զսա ի յիշատակ‖հոգւոյ իւրոյ և ծնաւղացն
և եղբարցն և ամենայն ննջեցելոցն։

Արդ, որք աւգտիկ ի սմանէ ընթեռնլով կամ գաղափար առնելով թո-
ղութիւն հայցեցէք Թեոդոսի փակակալի և վերոյ դրելոցն, ո՜վ մանկունք
Վերին Սիովնի և քահանայք ածմամբ Սուրբ Հոգոյն, ո՜վ լուսերամք և
լուսազարգեալք շնորհաւք Սուրբ Հոգւոյն ո՜վ սեղանոյ Տեառն պաշտաւ-
նեաք և քարոզք Երրորդութեանն և մշակք հոգեւորք։

Եւ աղաչեմ զամենեսեան ես մեղուցեալս Կիրակոս՝ խոշորութեանն
և սխալանաց չմեղադրել, զի աչքս վատել է։ Բայց աւրինակս վստահ
լիք, մանաւանդ ի համբայքն, զի ընտիր է որ գիտէ, եւ հայցել թողու-
329ա թիւն հաւր իմոյ,‖և մաւր իմոյ, և եղբաւր իմոյ, որ սրով վախճանեցաւ,
և ամենայն ննջեցելոցն իմոց խնդրել թողութիւն։ Եւ աստուած ամենե-
ցուն առհասարակ ողորմեսցի ընդ նմին, և առաջնորդ տեզոյս Բարսղի
բարեպաշտի և աստուածասիրի, և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք
յաւիտեանս, ամէն։

բ

329ա Յիշեսջիք և Մարտիրոս եղբայր Թեոդոսին, և զՍտեփանոս տըն-
տեսն։

Գ

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

329ա Ո՜վ, [մեղա]ւք դատապարտեալ կազմաւղ սորա զԱռաքել Հնազանդենց, և զծնաւղսն իմ, և զհարազատսն իմ զԿարապետ քահանայ և զՊաւղոս սարկաւագ, և զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս աղաչեմ յիշել ի Տէր։ Ի թվին ՉԺԴ (1265)։

## 274

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՅՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 4834 (1296 թ.)

Հեղինակ՝ Վարդան Արևելցի
Վայր՝ Հաղբատ

ա

1ա Նման է արքայութիւնն երկնից գանձի ծածկելոյ յագարակի, ասէ Տէրն, գանձուն և արքայութեանն, զոր գտանէ խնդրողն, և տալով զոր ունի՝ գնէ զագարակն։ Զոր ասելի է ընդ այլ ինչ և զամենայն առակաւոր իմաստս, որ յաստուածաշունչ գիրս, որ է տէրունի, յորմէ ցանկացողն գնէ զիւրն տալով զբոլոր գոյսն, որ է հաւատն, զի այն է մերն ամենայն, յորոց և դու ճանաչիս տէրունական իր և անուն։

Հարազատ եղբայր մեր Կիրակոս բաբունեց պետ և քաղցու այն ի կիրք մեր, և մեծ մասն յուսոյն ի սուրբ եկեղեցի, որ և քում [ը]զձիցն կցորդել հրամաեցեր ի բան և ի գիր շատս, զհաւատն Տեառն տալով շնորհաւք նորա կարել մեզ զմնացեալն յԵրգոյ Երգոցն ի Գրիգորէ Նիւսացոյ, որ մեծն է աղբիւր եկեղեցոյ լնուլ առաջնորդութեամբ Ոռոգինեայ համառաւտել՝ և զԳրիգորին իսկ զբանէ, որ ի վեր գտանի, քան զկարն մեր յոյժ, Աստուծոյն միայն կարելի, և քումդ ազաւթից և յուսոյ, որ ի փշոյ և յապառաժ անապատէ ի ծերունոյ և յանապատ մտաց խնդրես պտուղ ի ձեռն ոչ սակաւ վաստակոց, զոր առաք յանձն ի մեծն յոյս, վստահութեամբ չարչարիլ մարմնով և արդարանալ հոգով, ի քեզ տալ զգիր պարտուցն մեր, կրել միշտ առաշի Աստուծոյ և ջնջել անսպիապէս, և դու նմանեալ տանուտեառն, ճոխասցիս աշակերտութեամբ արքայու-
1բ թեանն‖հանելով ի գանձէն հին ճաշակ, որ քաղցրագոյնն է, ո գիտէ և նոր ինչ ընդ մեզ գոլ հաւատալ և զՀոգին Սուրբ Հայր և որով ըստ խոստմանն աւրհնելոյն յօտիեանն*։

Բ

51ա ...Իսկ դու եղբայր մեր մշակդ մորենէց և աղտաղտ անբուսաբեր վայրաց անոյշ մեզ ճաշակ, յարաժամ և յոյս յԱստուած վարդապետ Կիրակոս, որ հարկեցուցիչ հրամանաւ և գուժիւն մահու քեզ ասել զմերն մերձակա, մուծէր զմեզ ի տուն գինոյ, ի իւղոյ խնձորո, և նռնէնէց դրախտի, շղթայից արժանաւոր ոտիւք, հայել, լսել և խոսել, հոտոտել, շօշափել զկեանս և զանմահութիւն, զգայարանաւք բիւր քանքարոյ պար-

* Նախաբանի սկիզբն է։

*տականաւք, իւրաքանչիւր մասամբ, որ անախորժելեցն էին արժա-
նաւորք, քան ղիմանալ և զասել մեծ էր ինձ և սոսկալի սակայն ոստեաք
ե առաք յոյս մեծագոյն, եթէ և արդ ես եկն Տէրն և կոչէք*, և ոչ զար-
ժանաւոր ոք, այլ զմեղաւորս զիս, ոչ յապաշաւ միայնացել կենացն, այլ
յանբաւ և յանճառ ուրախութիւն հարսանեց, զի ղարմասցուցէ զերկինս
և զերկիր, զոր սովոր է միշտ առնել, որք և գտանին ի գիրս յայս,
Թաճար և Բաբելոն և էթոպիա ի բաց եղել բնաւին զառաշին կերպա-
րանն և աստուածազդեց եղել, զոր և դու միշտ աղաւթեսցէս, զայս լի-
նել ի կարող և ի կամեցող Տեառնէն։
Եւ մեք քեզ շնորհ ունելովն շատ գոհութեամբ ձեռնարկեցաք ի յիղձս
բաղձանաց հայցման քո, զձեռն յուսոյն ի Քրիստոս տալով մտաք յան-
հուն խորս և ելաք էթե բերաք ինչ քեզ ի վեր ցանկալի իրս, որ գտանի
յայսպիսի ծովու, չունիմ ասել, Տէրն տուողն, որ ում երկրպագեսցէս
յառնուլն ինչ, և զսղալանսն ինձ համարել՝ ուղղեսցէս օժանդակդ ինձ
51բ յամենայնի։ Սակայն զհնազանդութիւնս‖հաստուսցէս ցայգ և զցերեկ
անմոռաց յաղաւթս, և զդա նւէր տացես Սիոնի մաւրն վերնոյ, ի գա-
ւիթս նորա ընկենլով իբրև զոստ մի ձիթենեաց, ո գիտէ, թէ մանկունք
նորա ի մտանելն առցեն և ցուցեն նմա ի խնդութիւնս ինքեանց և ի քա-
ւութիւն մեզ բացերես զնա և բերկրել տեսանելով յորդիս իւր՝ միակցե-
լով զմեզ ի շնորհս փեսային իւրոյ Յիսուսի և Հաւրն գթածի և Հոգոյն
Սրբո ողորմածի, որում ամենայն խնդութիւն և ցնծութիւն և սէր ի
սուրբս իւրս յարարածս և ի քեզ, և ի մեզ յամենայն յաւիտեանս։*

Գ

Գրիչ՝

*Ի թուիս ՋԺԴ (1265)-ն եղև մեկնութիւն Երգո Երգոյս ի Վարդանայ ի
գիտնականի տիեզերալոյս. և յիմաստուն վարդապետէ, յաստուածա-
մերձ սուրբ ուխտս Հաղբատս, ընդ հովանեաւ Սուրբ Նշանիս փրկու-
թեան մերոյ արեգակնս և հաւր և հաւաքողի որբութեանս մերոյ, ի
պատրիարգութեան Հայոց Կոստանդեա, և Հեթմո պսակաւորին մերոյ, և
յարհիեպիսկոպոս տէր Յովանիսի, զորս ի կամս իւր խնամեսցէ և ի սէրն
իւր մած[աց]ուսցէ Յիսուս Քրիստոս Աստուածն մեր, բանն փեսայա-
ցեալ և հարսնազգեցել, և նմա փառք յօիտեանս, ամէն։*

---

* *Մատենադարանի № 1419 ձեռագրում այսպես է. «եթե արդարև եկն տէրն և կոչէք» (սըր-
բագրված՝ «Կոչեայ»)։*

## 275

### ՀԵԹՈՒՄ Ա ԹԱԳԱՒՈՐԻ ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5458, պատառիկ 1454*

**Գրիչ՝ Թորոս Ռոսլին**
**Վայր՝ Հռոմկլա**

310բ *Փառք եւ երկրպագութիւն, պատիւ եւ գոհութիւն համագո Սուրբ Երրորդութեանն եւ միոյ աստուածութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն։*

*Շնորհիւ Տեառն սկսեալ եւ ողորմութեամբ Նորին յանգ ելեալ աւարտեցաւ մատեանս այս աստուածախաւս, աստուածունակ, երկրպագելի եւ պաշտելի սուրբ Աւետարանս, յամի յեւթն հարիւր եւ հնգետասաներորդի (1266) թուաբերութեանս Հայկազեան տումարի, յաստուածապահ դղեակս եւ յաշխարհամուտ աթոռս Հռոմկլա, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչին, եւ Սուրբ Աստուածածնին եւ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, ի հայրապետութեան աստուածապատիւ տեառն Կոստանդեայ կաթողիկոսի, որ եւ սրբազան վարուցն իւրոց անհամեմատ ունէր զմաքրութիւն։ Հրա-*
1ա *մանաւ եւ ծախիւք աստուածասէր եւ բարեպաշտ թագաւորին||* Հայոց Հեթմոյ որ եւ ըստ մեծ յուսոյն իւրոյ զոր ունէր առ Աստուած, յաւել եւ զայն գրասէր եւս լինել, եւ սիրող կարգաց եւ կրաւնից եկեղեցւոյ եւ Նորին խորհրդոց, տաւնից տէրունականաց եւ սրբոց վկայից։ Որ եւ /// [յ]առաստաձ[իր] /// որպէս /// [սով]որութիւն յամենայնի։*

*Ուստի եւ իմ անարժանութիւն, թեպէտ եւ ըստ Նորին արժանեաց եւ մեծի երախտեացն զոր ունէր առ իս, ոչ էր բաւական հատուցանել, սա-*
1բ *կայն ըստ հասութեան /// [պճնազար]դեալ ծաղկ[երանգ բազմա]կերպ պատ[կ]երագրութեամբ, որպէսզի ընդ լսելոյ զլուր բանին կենաց, տես-*

---

* Հաջորդ թերթն ընկած է։ Այս հիշատակարանը վերաբերում է մագաղաթյա ձեռագրից մնացած 39 թերթերին, որոնք գրված են երկաթագրով, ոսկյա գլխագրերով և նրբակերտ լուսանցազարդերով ու զարդագրերով։ Գարեգին Հովսեփյանի և Սիրարփի Տէր-Ներսեսյանի կարծիքով, այս Թորոս Ռոսլինի ձեռքի գործն է։

Ձեռագիրը հոշոտված և փեռակտած դերությունից փրկում է Հովհաննես քահանան և նորից գոել տալով, լրացնում է պակաս մասերը, «զի թագաւորական յիշատակս... ոչ խափանեսցի»։ Մեզ հաջողվեց ապացուցել, որ Մատենադարանի № 1454 պատառիկը, որ երբեմ եղել է ձեռագրի պահպանակ և մուտք է գործել Մատենադարան անցյալ դարի վերջերին, նույն ձեռագրի հիշատակարանի շարունակությունն է։ (Այդ մասին տես մեր հոդվածը. «Հեթում Ա թագավորի Ռոսլինյան Ավետարանի նորահայտ մասունքները» («Բանբեր Մատենադարանի» № 13, 1980, էջ 275—294)։

ցեա իբրեւ աչաւք իմն զտիպ նախահարցն եւ զփրկագործ տնաւրէնու-
թիւն բանին Աստուծոյ մարմնացելոյ վասն /// առաւել ի բազում եկեղե-
ցիսն իւր, զորս ինքն կանգնեաց։
Վասն զի յաւուրս սորա եղեւ խաղաղութիւն մեծ աշխարհիս Կիլի-
կեցւոյ եւ հանգիստ քրիստոնէից, մինչ զի ի բազում աշխարհաց ի սորոյ
2ա եւ ի գերութենէ /// եւ ես որպէս յիմարեալ ընդ կերողս եւ ընդ արբեցողս
ընթացա անառակութեամբ, եւ զի՞նչ ունիցիմ պատասխանի ի գալստեան
Տեառն իմոյ, վասն որոյ զխոստովանութիւն իմ գրով արձանացուցանեմ
և աղաչեմ զժառանգաւորս /// սրտի նորա ասելով. Էրանի ում թողու-
թիւն եղեւ մեղաց եւ որ ղկնի պատշաճի։
Եւ յիշեցէք աղաւթիւք ի Տէր զարժանաւորսն ամենայն բարեաց յի-
2բ շատակի զաստուածասէր թագաւորն Հեթում, եւ զբարէպաշտ թագուհին
նորա Զապել՝ դուստր Լեւոնի արքայի ///, եւ որդի սուրբ արքային զծի-
րանածին պարոնն Լեւոն, որոյ մնանք Աստուծով փրկութեան նորա, եւ
ղմեծազգի կենակիցն իւր, զսրբասերն Կեռան, եւ զդեռաբոյս մանուկ
սոցա Հեթում, եւ զքորք իւր։ Այլեւ զբարեպաշտուհիք եւ զաւրիորդք ///
[զԿոստան]դին աստուածապարգեւ, աստուածապատիւ զաւակաւք իւ-
րաւք, ուստերաւք եւ դստերաւք, եւ ամենայն ծննդաւք իւրեանց, որոց
հնչեցելոցն հանգիստ եւ ողորմութիւն պարգեւեսցէ Քրիստոս Աստուած,
եւ զկենդանիսն անխռով խաղա[ղութիւն] ///։

## 276

## ՄԱՇՏՈՑ

Երուսաղեմ 2027, Պողարյան, Ցուցակ է, էջ 63—65

Ծաղկող՝ Թորոս [Ռոսլին]
Վայր՝ Հռոմկլա

ա

273ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ միոյ աստուածութեանն Հաւր
եւ Որդւոյ եւ ամենասուրբ Հոգւոյն։
Շնորհիւ Տեառն սկսեալ և ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւար-
տեցաւ [տառս] աստուածային, յամի եւթնհարիւր եւ հինգետասաներորդի
(1266) թուաբերութեանս Հայոց, ի հռչակաւոր եւ ի թագաւորեալ քա-
273բ ղաքին||Սիս կոչեցեալ յաշխարհին Կիլիկեցւոց, ընդ հովանեաւ աստուա-
ծաբնակ տաճարին որ յանուն Սրբոյ Աստուածածնին, ի հայրապետու-
թեանն տեառն Կոստանդեա, որ եւ զսրբազան վարուցն իւրոյ մաքրու-
թեան անհամեմատ ունէր զպատմութիւն։
Եւ ի ժամանակս աստուածասէր և բարեպաշտ արքային Հեթմոյ՝
մեծ եւ երեւելւոյ ամենայն սէրից Հայոց եւ ազգաց բազմաց։ Վասն զի
արդարեւ զսոսա իմանամք ողորմութիւն Աստուծոյ գտեալ ի բարկու-
թեան եւ չարալլուկ ժամանակիս, զորոյ զկեանս յերկարեսցէ Քրիստոս
Աստուած, և ետ ասպեցս ընդ սուրբս եւ ընդ ընտրեալսն իւր դասեսցէ,
ամէն։ Հրամանաւ և ծախիւք աստուածապատիւ եպիսկոպոսին տէր Վար-

274ա դանա-շառաւեղի տէր Դաւթայ‖սրբազան եպիսկոպոսի և առաջնորդի
սրբոյ եկեղեցոյն Նսեպնայ և այլոց գաւառաց։ Ուստի և արեանառու նո-
րին ասացեալս տէր Վարդան, բաղում (ը)զձիւ և փափականաւք ստացաւ
զսա ի վայելումն անձին իւրոյ և ի յիշատակ հոգւոյ։ Վասն զի ի մանգա-
կան տիոց ի վեր մաքրակրաւն վարիւք եւ խստաշան առաքինութեամբ
կեցեալ էր, հմուտ եւ վարժ լեալ Հին եւ Նոր կտակարանաց, ուստի և
արժանացեալ լինի վարդապետական հրամանի։ Եւ վասն առաւել սգաս-
տութեան և քաջարիութեան իւրոյ մեծարեալ եւ սիրեցեալ լինի ի սրբոյ
հայրապետէն տեառն Կոստանդեայ կաթուղիկոսէ, որով եւ ի մեծապա-
274բ տիվ եպիսկոպոսութեան աստիճանի կոչեալ եղեւ ի Նմանէ‖եւ ղայսու
ժամանակի սպասաւորէր հայրապետական սուրբ աթոռոյն, որ յաստուա-
ծապահ դղեակն Հռոմկլա, որ եւ ետ վայելչացուցանել զսա ոսկւով և
զանազան նիւթով բազմամեղ գրչին Թորոսի, դրեալ ձեռամբ Աւետիք
քահանայի*։

Վասն որոյ աղաչեմք զձեզ, ո՛վ աստուածասէր հարք եւ եղբարք,
որդիք լուսոյ մաւր Սիոնի, յիշել աղաւթիւք ի Տէր զսուրբ հայրապետն
զտէր Կոստանդին կաթողիկոս, եւ զաշակերտն իւր զտէր Վարդան՝ ստա-
ցող գրոցս, եւ զծնաւղսն իւրեանց ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ։ Եւ զտէր
Դաւիթ նախնի սորին, եւ զհարազատ եղբայրն իւր Կոստանդին, եւ զա-
275ա մենայն ազգայինս իւր‖զքորս եւ զեղբարս, որոց ննջեցելոցն հանգիստ
եւ ողորմութիւն պարգեւեսցէ Քրիստոս Աստուած, եւ զմնացեալսն ան-
խռով խաղաղութեամբ պահեսցէ, ամէն։

Դարձեալ յիշել աղաչեմ և զգրողս սորա և զայլ աշխատաւորսն և
զծնաւղսն իւրեանց, և Քրիստոս Աստուած, որ առատն է ի տուրս ողոր-
մութեան իւրոյ, եւ զձեզ յիշեսցէ ի գալստեան իւրում եւ յարքայութեան,
որ է աւրհնեալ ընդ Հաւր եւ Սուրբ Հոգւոյն այժմ ,եւ միշտ, եւ [յաւի-
տեանս, ամէն]։

Եւ դարձեալ աղաչեմք յիշել զեղբայրն իւր զԹորոս, զտարաժամ
գնացեալն ի Քրիստոս։

Բ

135ա Զաստուածապատիւ եպիսկոպոսն զտէր Վարդան զստացող սորա
յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։

Գ

61բ Իմաստութիւն Հաւր երկնաւին,
Որ զշնորհս աստուածաւին,
Ետուր բնութեանս մարդկաւին,
Ըստ խորհրդեան աստիճանին,
Դու Վարդանա հաւատապետին՝
Այսմ տառի ըստացաւղին,

* Ավետիքը ձեռագրի գրիչն է, Հիշատակարանը գրել է Թորոս Ռոսլինը։

Շնորհեա դասիւ յառագաստին
Ընդ Պետրոսեան սուրբ երամին։

86բ Որ նուիրեաց զնիւթ տառի
Քեզ Տէր հանուրց պարգեւողի,
Դու զտէր Վարդան հովիւ բարի,
Եպիսկոպոս եւ րաբունի,
Ի կեանս ընգալ ի գերարփի
Յորժամ փառաւք գաս հայրենի։

Ե

Նկարողի սորա թողութիւն խնդրեցէք։

## 277

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 1958, Պողարյան, Ցուցակ Ջ, էջ 534—535

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Տարոն

ա

866ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։
Գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՉԺԵ (1266)։

Գրեցաւ կենսաբեր, աստուածախաւս, քրիստոսապատում, քառագլուխ սուրբ Աւետարանս յառաջնորդութեանս մերային հայասեռից տեառն Կոստանդեա կաթողիկոսի, եւ ի թագաւորութեանս քրիստոսապսակ թագաւորիս Հայոց Հեթմոյ, ի քաղաքիս Տարոն, ընդ հովանեաւ Սրբոյ Սարգսի եւ Սրբոյ Փրկչին։

Եւ գրեցաւ ձեռամբ յոքնամեղ գրչիս Յովհաննէսի, ի խնդրոյ պատուական քահանայի Թորոսի, ի յիշատակ իւր եւ ծնաւղաց եւ ամենայն զարմից իւրոց կտակ բարի։

Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի, որ ոք հանդիպի յայս ի հոգեւոր փարթամութիւնս, եւ շահեսցի ինչ ի սմանէ, գաղափարելով կամ վերծանութեամբ, յիշատակի արժանի արարէք զմեղապարտ գրիչս Յովհաննէս եւ զծնաւղսն իմ, եւ զամենայն համացեղսն իմ զԹորոս քահանայ ստացաւղ սուրբ Աւետարանիս, զի տացէ նմա Տէր ողորմութիւն գտանել յաւուրն յետնում։ Եւ զծնաւղք սորա ըստ մարմնոյ, որ զԹուղթն կոկեց, եւ աշխատեցաւ։ Աղաչեմ, վասն սիրոյ Քրիստոսի, յիշել ի Տէր զբաղմամեղիս, եւ խոշորութեան գրոյս չլինել մեղադիր, զի այս է կարն մեր։

Բ

269ա Զստացաւղ Սուրբ Աւետարանիս զԹորոս քահանա յիշեսջիք ի Տէր, եւ զիս զբազմամեղ սուտ գրիչս Յովհաննէս յիշեսջիք ի Տէր, եւ որ զամէնն ասէ։

Գ

422ա Ստացաւղ սրբոյ Աւետարանիս զԹորոս, որ եւ պատուեալ քահանայական շնորհիւ, հանդերձ ծնողովքն իւրովք եւ մանկամբք, եւ զիս զՅովճաննէս բազմամեղս յիշեսջիք ի Քրիստոս։

Դ

868ա Գրեցաւ մատեանս աստուածոմնակ,
Քառադրական, աւետատու Աւետարան, յուսադրական մեր փրկանաց
Իսկական դիր ըղձանաց, մակաւասար, զանազանեալ վսամաբան
երեւակաց,
Զորից գլխոց հանգետագրաց, միասարագ շարայարեալ տրամաբանաց,
Արգամեծար, աշխարհալուր, գերահռչակ, բաղադրական տառ տենչանաց։
Ի քառառաջս համադրական, հանգունատիպ գիծ աստուածաբան
շաղկապանաց,
Ծահոզասաց պիտառաբան, մակաքարող արտողութեան արձանագրեաց;
Երանութեան լուր յագաճմունս յարգունելով վերծանական դրուատանաց։
Իսկական գիր ըղձանաց, մակաւասար զանազանեալ
վսամաբան երեւակաց։
Գերադրական կաթողիկէ ակներեւակ, առգասաւոր աստուածաւանդ
բան բաղձանաց,
Զորեկլծին մաճակալաց, գրանաւոր երկիր հերկեն սերմանելով
զբանն կենաց։

278

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 1965

Գրիչ՝ Վասիլ Ուռճայեցի
Վայր՝ Կիլիկիա

ա

Փառք քեզ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւն, Հայր և Որդի և Սուրբ Հոգիդ յամենայն արարածոց։

330ա Շնորհիւ ամենախնամ ողորմութեանն Աստուծոյ յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային սուրբ և երանեալ վարդապետին Գրիգորի Նարեկացւոյ, ի խնդրոյ աստուածապատիւ սուրբ կաթողիկոսին և բարի բնութեան երջանիկ դիտապետին տանս Թորգոմայ տեառն Կոստանդեա, քանզի տեսեալ զգեղ վայելչութեան բանիս, որ ամբարեալ կա ի յաստուածախաւս մատեանս, զի է սա դուռն և մուտ ի գաւիթս Աստուծոյ, որ ի ձեռն զղջման և պաղատանաց արտասուաթոր աղերսարկու աղաւթից սրբո հաւր Գրիգորի առնէ զմեղսամակարթ մարդիք նորոգ և հոգիացեալ նման հրեշտակաց։ Զի է սա խաւսք ընդ Աստուծոյ և կըշ-

*տամբանքն մեղուցեալ անձին, և աղերս առ ամենայն սուրբս։ Եւ հայ-*
*ցեալ սուրբ հովվապետս մեր ի յաստուածատուր բանս պիտանացու, սի-*
330բ *րեաց զսա քան զոսկի և քան զականս‖պատ[ուա]անս, եւ հրամաեալ*
*իմում նուաստութեանս* Վասլի Ոտճայեցոյ *բազմամեղ գրչի և ծառայի*
*նորին, զի գրեցից զսա ի վայելում մեծաշուք անձին իւրոյ և յիշատակ*
*բարի հոգոյ իւրոյ, եւ ստացաւ զսա գանձ անկողոպտելի, որ մաքրէ և*
*լուանայ զաղտս և զտիղմ հոգոց, ի ձեռն աղաւթից աղաւթականաց։*

*Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զսա և աղաւթէք սո-*
*վաւ, յիշեսջիք սրտի մտաւք զսուրբ հայրապետս մեր զտէր* Կոստանդին
*զստացաւղ սորա և ըծնաւղսն նորին և զեղբարսն զնացեալսն առ Քրիս-*
*տոս, և մեծաշուք եղբաւր որդին իւր զ*Թորոս *սրբահոգի քահանայ և զոր-*
*դեակն իւր զվայելուչ պատանին* Ստեփանոս, *աղաչեմ յիշել զնոսա*
*առաջի Աստուծոյ, զի տացէ նոցա Տէր երկար կեանս և անսասանելիս*
*յամենայն վնասակար որոգայթից, որպէսզի և դուք յիշես[ջիք] ///**։*

**Բ**

1ա *Սրբազան կաթողիկոսի Հայոց տեառն* Կոստանդեայ *աղաւթամա-*
*տոյց ի Տեառն, և յիշատակ յետ վախճանի***։

**Գ**

159բ *Ո՜վ մանկունքն Նոր Սիովնի, յիշեցէք զարքայորդին զԼեոն՝ ըմատ-*
*նեալն ի ձեռս անաւրինաց, զի շնորհեսցէ զնա մեզ վերստին, զի որք և*
*անտեսուլ ոչ մնասցուք, և զամուսինն իւր՝ զբարեպաշտ տիկինն զԿե-*
*ռան, և զդեռաբոյս որդեակ իւր զԿոստանդին, զոր տէր Յիսուս կարո-*
*ղացուսցէ և յաղթողս արասցէ ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի,*
*և պարադայց ամաւք շնորհեսցէ ի պարծանս Ճկեղեցւոյ, զի խաղաղու-*
*թեամբ վարեսցուք զկեանս մեր։ Եւ որք յիշէք ի բարին և դուք յիշեալ*
*լիցիք, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն****։

## 279

## ԱՌ ՆԱԽԱՐԿՈՒԹԻՒՆՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

*Երևան 823*

*Գրիչ՝* Յովաննէս
*Վայր՝* Եզնկայ

171բ *Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեան և յաւիտեանս յաւի-*
*տենից, ամէն։ Աւրհնեալ է Հայրն անսկիզբն, Որդին միածին, և Սուրբ*

---

* *Հաջորդ թերթը չի պահպանվել։*
** *Այսպիսի հիշատակագրություններ կան նաև 123ա, 137ա, 159բ, 159 և այլ էջերում։*
*** *Ձեռագրի ստացողը՝ Կոստանդին կաթողիկոսը, մահացել է 1267 թ. ապրիլի 9-ին (Տե՛ս Ալիշան, Սիսուան, էջ 155)։ Նշանակում է ձեռագիրը գրելու վերջին հնարավոր ժամկետը 1267-ն է։ Սակայն այս հիշատակագրությունը, որ գրված է գրությունից հետո, Լևոն արքայորդու գե-*

Հոգին ճշմարիտ, զոյգ և հաւասար Երրորդութիւն, որ կարողացոյց զիս զմեղաւոր և զանարժան գրիչս հասանել ի կատարումն Աստուածաբանիս։

Բայց գրեցաւ ձեռամբ իմով, նուաստ և անարժան և մեղապարտ անձին իմո սուտանուն Յովանիսի վատ սարկաւագի։ Բայց գրեցաւ սա ի քաղաքիս որ կոչ[ի] յԵկեղեց գաւառս, մականուն Եզնկայ, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս, ի թուականութեանս Հայոց ԷՃ ու ի ԺԵ (1266), ի հայրապետութեանն տեառն Կոստանդեայ, և յարհիեպիսկոպոսութեանն տեառն Սարգսի Մարնասիայի մեծի, եւ ի քրիստոսապսակ իշխանին մերոյ պարոն Յոհանիսի՝ Տեառն ծառայի, իւր ժամանակ կենացն երկարասցի, ամէն։

Արդ աղաչեմ ես բազմամեղ և անարժան գրողս ղսրբաղնեալ քահա-
172ա նայդ զհայր* յիշեայ ղհոգևոր հայրն իմ՝ դուսու‖ցիչն և վարդապետն
զտէր Յովաննէս, ի մաքուր և յանբիծ յաղաւթս քո, որ սպանեալ եղև յանաւրինաց սրով զենեալ. ո՜հ դառն տրտմութեան և անմխիթար ոգոյ։ Ընդ նմին յիշեայ զառաջին ղուսուցիչն իմ՝ զհայր Յակոբ, և զպատուական հայրն իմ զՇիրին, և զհանգուցեալ մայր իմ զՍափիրայ, և զեղբարքս իմ զԱւետշահ և զՇահնշահ, ղհոգևոր եղբայրն իմ և զուսումնակիցն զՍարգիս, և զհանգուցեալ մայրն իւր, և մեղաց թողութիւն խնդրեայ ի Տեառնէ։ Այլ աղաչեմ զքեզ՝ հայր, անմեղադիր լինել քեզ՝ ինձ, եթէ սխալանք ինչ կայ ի դմայ, կամ խոշորութեան դրոյս թողութիւն սորա ինձ, զի դեռ առաշին գիրն այս է, զի գրեալ է, թողէք, և թողցի ձեզ։

Արդ, կրկին աղաչեմ, թողութիւն հայցեա վասն իմ մեղաւորիս, ղի սովորութիւն է բարերարին Աստուծոյ ի ձեռն այլոց աղաւթից, այլոց մեղաց թողութիւն շնորհել, եւ որ զմեզ յիշէ, Քրիստոս զինքն յիշէ յիւր ողորմութիւնն, և ի նմանէ առնու զփոխարէնսն ի տուողէն բարեաց. որ
172բ տա ամենայնի առատապէս և ոչ նախա‖տէ զոք։ Քրիստոսի Աստուծոյ,
բարերարի և մարդասիրի, խնամողի և անոխակալի վաել է փառք, իշխանութիւն և պատիւ, և այժմ և միշտ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Տէր Աստուած վայելել տացէ զսա հոգևոր հաւրն վարդապետին և ուսուցչցին իմոյ հայր** ընդ երկայն աւուրս, ամէն։

## 280

## ԲԱՐՍԵՂԻ ԱՐՔԱԵՂԲՕՐ ՄԵԿՆՈՒԹԻՆ ՄԱՐԿՈՍԻ

Երուսաղեմ 514 (1726), Պողարյան, Ցուցակ Բ, էջ 513

24 Մեկնութիւն սրբոյ Աւետարանիս Մարկոսի, զոր արարեալ է երանելոյն Բարսղի արքեպիսկոպոսի՝ եղբօր Հեթմոյ թագաւորին Հայոց, ի կաթողիկոսութեան մեծին Կոստանդնի առաքինւոյ։ Զոր ի թուականիս Հա-

---

րության տարեթվին, այն է 1266 թ., վերջին հնարավոր ժամկետը մի տարի առաջ է տանում։ Հետևաբար ձեռագիրը գրվել է մինչև 1266 թվականը, ուստի գնում ենք այդ թվաշարքում։

* Անունը քերված է։

** Անունը քերված է։

յոց ՉԺԵ (1266) արար զՄեկնութիւն երկու հատորով բաժանելով հանդերձ յորդորակօք*։

## 281

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 42ա—42բ (1235 թ.)

Գնող՝ Վարդան

Յայսմ ամի, որ թիւ ՉԺԵ (1266) էր, երեկ Մուրցին ի Հայոց երկիրն ու տարաւ զայս գիրքս Անդոց: Ես՝ Վարդան յԵրուսաղէմ կու երթայի, հանդիպեցաւ այս գիրքս ինձ։ Գնեցի ինձ յիշատակ։

## 282

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 4243

Գրիչ՝ Ստեփանոս Վանկայցի
Վայր՝ Բարձր բերդ

ա

15ա Քրիստոս յոյս ազգի մարդկան, սրբոյն Յոհաննու աւետար<չ>անչի և աստուածաբանի բարեխաւսութեամբ, ողորմեա ի քո միւսանգամ գալստեանն տեառն Յոհաննու րա[բունոյ]՝ արքաեղբաւր Հայոց, [և ծ]նողաց նորա, և ամենայն զարմից, և մեզաց թողութիւն շնորհեա նոցա, և որոց սրտի մտաւք յիշեն զմեզ, ամէն։

բ

Փառք ամենասուրբ Երրորդութեանն և մի աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

129ա Ի թուին Հայոց ՉԺԲ (1263) գրեցաւ աստուածային մատեանս ձեռամբ Ստեփանոսի գրչի, որոյ Տէր Աստուած ողորմեսցի, ամէն։

գ

175ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Տէր Յիսուս ողորմեա տտացողի** սորին տէր Յոհաննէս րաբունոյ, և ծնողաց նորին, և աշխատողիս Ստեփանոսի գրչի ի քո սոսկալի աւուրն, ամէն։

---

* Ձեռագրի սկզբում խապայանը ունի այսպիսի դիտողություն. «Եթե գրչի սխալը կամ կամայականությունը չէ, Բարսեղ Արքայեղբոր տալ Մեկնությունս պատմական բանասիրության համար նորություն մի է գոնե», ըստ մեզ»։

** Գրված է «սցացողի»։

Ի թուին Հայոց գրեցաւ՝ ՉԺԵ (1266) ի թագաւորութեանն Հեթմոյ, ի հայրապետութեան Կոստանդեա:

Յայսմ ամիս, ի գեկտեմբեռ, ՉԺԴ (1265), հանգեաւ ի Քրիստոս պարոն Աւշինն՝ եղբայր թագաւորի Հայոց, որում Տէր Յիսուս ողորմեսցի, ամէն։

Դ

221բ Զգտա լավ աւրինակ Մարգարէիցս մահու, այլ գրեանքդ ամէնեն յընդիր աւրինակաց է գտած, բայց Երկոտասանիցդ*։

Ե

223ա Զեղկելի գրիչս զՍտեփանոս յիշեցէք ի Տէր Քրիստոս։

Զ

200ա Զմեղապարտ գրիչ Ստեփաննոս Վանկայցի յիշեցէք ի բարի, ո՜վ սուրբ տեարք իմ և հարք։

Է

Ստացող՝ Յոհաննէս Արքաեղբայր

222բ Ես Յոհաննէս նուաստ եպիսկոպոս, մեղապարտ ծառայ Աստուծոյ և ամենայն ծառայիցդ նորա, ջերմ սիրով և բազում աշխատութեամբ ստացա զհոգեշունչ և քրիստոսաւանդ, հայրատուր սուրբ տառքս ի վայելս թշուառական և եղկելի անձինս ի կեանս իմ, և յետ ստեացս՝ ում Տէր կամեսցի, և յիշատակ բարի ինձ և ծնողացն իմոց և ծնընդոց նոցին և ամենայն զարմից մերոց։ Վասն որո անգեալ առ սուրբ ոտս ձեր, մոխրաթաւալ դիմաւք և բազում արտասուաւք աղաչեմ զձեզ Քրիստոսիւ Աստուծով մերով, հարք սուրբք և եղբարք մեր ի Քրիստոս, որք պատահիք սմա տեսլեամբ կամ գաղափարիւ, և որք ժառանգէք զսա, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր թողութեան և ողորմութեան և հանգստի արժանանալ մեղապարտիս, և յոյլով չարեաւք լցեալ ոգւոյս Յոհաննէսի եպիսկոպոսի, և ծնաւղաց իմոց և վարդապետաց և ընկերաց և համօրէն թագազնեա զարմից մերոց, զի կարաւտ եմք ձերո յիշման, որպէս դուք Տէառն ողորմութեանն։ Եւ որ առատն է ի տուրս բարեաց, Քրիստոս մեզ և ձեզ և ամենեցուն առհասարակ ողորմեսցի։

Բայց գրեցաւ սա ձեռամբ Ստեփանոս գրչի մերձ ի բերդն Բարձր կոչեցեալ, ի դառն և յանբարի և յոյժ վշտալի ժամանակի, զի վասն բազում մեղաց մերոց արբոյց Աստուած մեզ զբար[կու]թեան բաժակն, զի բռնօրն Եգիպտոսի Պլտուխտարն, վերջինս Նաբուգոդոնոսոր, ի թւին Հայոց ՉԺԵ (1266), բազում զաւրօք քրիստոսատեաց տաճկաւքն

---

* Գրված է «Մահ Նաւումա մարգարէի» փոքրիկ հատվածից հետո, որը կես սյունակ է զբաղեցրել, և վերաբերում է նաև նախորդ էջերում (220ա-ից) գրված մյուս մարգարեների մահվանը։ Վերջին երկու բառերը ավելացրել է Հովհաննես Արքաեղբայրը և շարունակել. այսպես, «բայց երկոտասանիցդ։ Որք ընթեռնույք յիշեցէք ի տէր զՅոհաննէս եպիսկոպոսս...

ռաշխարհս Կիլիկիո սրով և հրով սպառեաց։ Զորդիս եղբօրն իմո, զբարեպաշտ թագաւորի Հեթմու՝ զանդրանիկն Լևոն, որ էր պարոն Հայոց, գերի ունի ամ մի է, և զկրսերն Թորոս, զլցեալն ամենայն բարեձևութեամբ, էսպան յոլով հոմազնեա նիզակակցօք ի Մառի, որոց Տէր ողորմեսցի։ Եւ զարքայանիստն Սիս, մեծօն Սոփէօ և զամենայն սահմանս նորա մինչև Ատանա, հրձիգ արար, անթիւ եսպան, բազումս գերեաց։

Ի սոյն ամի առ Քրիստոս փոխեցօ կաթողիկոսն Հայոց տէր Կոստանդին, որո ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։ Եւ բարի արքայն մեր Հեթում՝ երկրորդն Յոբ, մեծաւ ջանիւ և անասելի ժուժակլութեամբ հոգա և փութա վասն ամենեցունց փրկութեան, զոր Տէր Աստուած պահեսցէ փրկութեան զօակ Հայոց, զի մի՛ Սոդոմա և Գոմորա նմանիցիմք։

Աղաչեմ յիշել զհայր արքային և մեր՝ զպարոն Կոստանդին, և զամենայն եղբարսն իմ՝ զՍմբատ սպարապետ, և զՀեթում թագաւոր, և զՕշին պայլ, և զԲասիլ արհեպիսկոպոս, և զԼևոն մարաջախտ, և զՎասակ իշխան, այլև զքոյրսն մեր զՀռիփսիմի կրօնօր, զԹեֆանօ դշխո Կիպրոսու և զԿալամարի գունդես Ճաֆուն, և զԱկացն, և զՄարեմն և զՖիլիպն, նաև մայրիկն իմ Պլադրիծ յիշեսցի, և Քրիստոս Աստուած հանգուսցէ զամենեսեան ի խորանս արդարոցն, այլ և զեղկելիս Յոհաննէս եպիսկոպոս մի մոռանայք։

Ը

123ա Ես Յոհաննէս եպիսկոպոս և րաբունի, որդի Կոստանդեա և եղբայր բարեպաշտին Հեթմո արքաին Հայոց, ստացա զսա ի վայէլումն ինձ, և յիշատակ բարի ինձ և իմոցն։ Աղաչեմ զտեսողսդ և զժառանգողքդ սուրբ կտակիս, յիշել զեղկելի ոգիս և զծնողսն իմ՝ ծնընդաւք նոցին սառաջի գթածին Քրիստոսի Աստուծոյ իմո, զի թողութիւն և ողորմութիւն և հանգիստ շնորհեսցէ ամենեցունց աստ և յապագայն, և յիշողքդ յիշեալ լիջիք ի բարիսն անսպառ։

Ի թիւս Հայոց ՉԺԵ (1266) գրեցաւ սա ի յոյժ դառն ժամանակի, զի փարաւոն բռնաւորն Եգիպտոսի ի սուր և ի հուր մաշեաց զԿիլիկեա, զարքայածինսն ձերբակալ արար, զպարոն Լևոն ծառա ունի և զգեղազէշն Թորոս սպան, որո Տէր Աստուած ողորմեսցի, և այժմ եմք ի կեանս լալիս և կսկծելիս։

Թ

15ա Ո՛վ սուրբ առաքեալդ սիրոյն սիրելի, զտեառնագին հոմանուն ծառայս Քրիստոսի և քո, որ չերմ գթով կամ առաջի քո, և արտասուաւք խնդրեմ ի քէն հայցեա ի Քրիստոսէ Աստուծոյդ մերո մեղուցեալ ոգո իմո թողութիւն, և պարտեացն իմոց ջնջում, և քեզ եղէց յանձին ի սոսկալի ահեղ ատենին և յաւրն իմ վախճանին քև եղէց փրկեալ իմովքն ի չարէ*։

---

* Երկրորդ սյունակի երկարությամբ շրջանակի մեջ նկարված է Հովհաննես ավետարանիչը՝ ձախ ձեռքը վեր մեկնած դեպի տիրոջ աջը, իսկ աջով օրհնում է իր առաջ ծնրադիր և բազկատարած չոքած Հովհաննես արքաեղբորը։ Նկարի տակ գրված է. «Սուրբն Յոհաննէս աստուածաբան աւետարանիչն է» «Տէր Յոհաննէս եպիսկոպոս արքաեղբայրն է՝ ստացող գրոցս»։

ժ

50ա Կապից և լուծման իշխող, ո՜վ առաքեալ, լոյծ ի կապից մեղաց զստացողս զՅոհաննէս եպիսկոպոս*։

ժա

221բ Որք ընթեռնոյք յիշեցէք ի տէր զՅոհաննէս եպիսկոպոս։

## 283

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 284 (1262 թ.)

Նվիրող՝ Թորոս·
Վայր՝ Արքակաղին

409բ Դարձեալ ես՝ բազմամեղս Թորոս, ի թուին ՉԺԵ (1266) ետու զսուրբ Աւետարանս ի սուրբ ուխտն Արքակաղին կոչեցեալ, ի ձեռն տէր Սիոնի եպիսկոպոսի, և խնդրեցի ի նմանէ, զի ի յիշատակի Նախավկային զպատարագն իմ ծնողացն և Հոգևոր տիրոջն և ինձ մատուցեն զինչ յայ[ն]մ աւուր պատարագ մատուցանի։ Եւ որք զխնդրուածս կատարեն, Քրիստոս Աստուած զիւրեանցն կատարեսցի։

Զսահմանս զայս միաբան եղբայրութիւնն յանձն էառ, և որք զկնիմեր գան, կատարեսցեն զայս։

Ի Թորոս բազմամեղ**։

## 284

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 1119

Հեղինակ՝ Վարդան Արևելցի·

ա

Ճա Մի է Աստուած և մի՝ միջնորդ Աստուծոյ և մարդկան՝ մարդն Յիսուս Քրիստոս, ասէ Քրիստոսիւ կենդանին Պաւղոս։ Քանզի մի է Տէրն, ուր ամբարեալ կան ամենայն գանձք իմաստութեան և գիտութեան, որ անշարժ գոլով շարժէ զարարածս ի կեանս և ի փրկութիւն։ Եւ մի է Հաւատ և մկրտութիւն, որ առնէ զբաժանեալ որդիսն Ադամա ի մի Տեառնէ և յիրերաց մի, որ թէպէտ և թուին ոմանք խնդրողք և կէսք տուողք, այլ մի Տէրն էր, որ շարժէ զոմանս ի խնդիր և զկէսս ի տուր տալով նոցա զշարժմունն խնդիր, և սոցա զկամս և զգոյս Հայցմանն իւրոյն գանձուց պատճառս գոլոյ նոցա միշտ մի, ի շաղկապ սիրո զոր արար դէմս իւրոց աշակերտութեանն։

* Գրված է Պետրոս առաքյալի նկարի ներքևում։

** Հիշատակարանը (ինչպես նաև ձեռագիրը) գրված է երկաթագրով, վերջին տողը՝ բոլորագիր է, Թորոսի ստորագրությունն է անշուշտ (ծանոթ. Ս. Տեր-Ներսեսյանի)։

*Որպէս և մեզ ետուն հրաման կանուխ և անագան ի ձև խնդրոյ զկա-*
*նուխն անունակիր միոյ Տեառն զգլուխն արհիական տէրն Յովհաննէս.*
*Նստելոյ յաթոռ սուրբ ուխտին Հաղբատա՝ երևանի աշխարհի հարկե-*
*ցուցիչ և վճիռ հրաման և զանագանն, որք ընդ մեզ էին, եղբարք հե-*
*ռաւորք և մերձաւորք, սիրով զմեզ գրաւեցին ի յայս մեծ իւրեանց աւգը-*
*տի ե մեր և իւրեանց նմանեացն, և զի ոչ ընդ անշրդի անապատի և ընդ*
·Եր *անկոխ ճանապարհ գնալ եդին մեզ‖գործ, ի յանգործ մատեանս վաս-*
*տակել, այլ զՍազմոսն Դաւթի զհոգին և զկեանս բանականաց, խիտ և*
*անհատ ճաշակմամբ զտիւն և զգիշեր, զոր յոլով ճանապարհորդք հա-*
*տին ուղիս, և թռչունք հոգւոյն թեւաւք ի վեր և ի խոնարհ ցուցին հետս*
*հարքն հոգեկիրք. Աթանաս, Եպիփանես, Եփրեմ. Դանիէլ և Ներսէս յետ,*
*վասն որո վստահեալ յԱստուած, որ յաղբեւսաց եառ զիս և յաստուա-*
*ծարեալ հարքն, առաք յանձն մերձ դնել առ միմեանց զբանս նոցա ի մի*
*մատեան։*

*Է՛ զի կարճեալ զլայնատարած բանս նոցա ըստ կարճոգի մերս*
*անախորժակաց ի կարճել ժամանակիս, և է՛ զի հոգեխառնեալ ի հայ-*
*րենի շնորհաց աստ անդ դիցուք, զորս տացէ մեզ Տէր յաղաւթս նոցա,*
*կամ պարզելով զծերունական հանճարո նոցա զանյայտութիւնս, զորոց*
*առեալ զծաղիկս Հոգւոյն Սրբո կազմեալ ի հովիտս դաշտաց սրտից նոցա*
*և շրթանց, ի գոյնագոյնս երանգոց կապեսցուք փունջ մի համահամ և*
*բազմահոտուտ, զորս առձեռն գտանեմք յասացեալ հարանցս, և տացուք*
*ի ձեռս ձեր, մանկունք Սիոնի, զի և դուք միշտ ընկենուք ի գիրկս սուրբ*
*եկեղեցւո, ի գգվանս ցնծութեան անմահ փեսային իւրո Յիսուսի, և*
*որդւոցն առագաստի, ի սբասանս երկնաւոր պարաւորութեանն, և մեզ*
*նպաստ բարւո և նեւթ գթութեան և ողորմութեանն Աստուծոյ, ձերովդ*
7ա *խնդրւածովք, հարք մեր, և եղբարք, և որդ‖իք, տուեալ մեզ ի մեծա-*
*պարգև և շնորհացն Աստուծոյ աւրհնելոյն յաւիտենից յաւիտեան, յերիս*
*անձինս և միութիւն բնութեանն և յաստուածութեանն անոլորտ և անեզ-*
*րապէս մըշտընջենաւոր ճոխութեամբ։*

Բ

300բ *Որո յուսով յեցեալ ի հաւատն անկշիռ, անչափ, անհամար, անեզր,*
*անսահման, ողորմածին Աստուծոյ Վարդանս մեղսանէրկ մարմին, եկի*
*ընդ երկնագնաց ուղիս, բուռն հարեալ զողորմած ձեռացն Յիսուսի և*
*զեկեղեցւոյ նորա, հասի յաւարտս, հարիւրն տաւել զբեւրքանքար պար-*
*տուցն իմոց ի Սաղմոսս և յաղաւթս, նախքան զմեզ գնացեալ[*] առաջ-*
*նորդացն մեկնողաց հոգիազգեցից և յիսնիւն[**] աղատիլ ակն ունիմ յա-*
*ղատարարն և յաստուածարարն Հոգին Սուրբ ապաւինել մյուս ուրախու-*
*թիւն մեծարելով զազատ մանկունս եկեղեցւոյ և զբնաւ արարածս բոլո-*
*րիւք և մասամբք բազմապատկեալ, աղաչելով զՏէրն զիմանալիս և զգա-*

[*] Գրված է «զնացողացեալ», ուղղում ենք ըստ Երուսաղեմի № 863 ձեռագրի (Ցուցակ Գ., Ջյ 361)։

[**] Գրված է «յծանիւն», ուղղում ենք ըստ վերոգրյալ Ցուցակի։

լիս, որքան կամի և կարէ ընդունել յամենեցունց, յաղագս իմոյ փրկութեանս խնդրութեամբք և յաւերժապէս ցնծութեամբ, աւրհնութիւն, գոհութիւն, փառք, պատիւ, երկրպագութիւն։

Ի սկիզբն հիմնարկութեան արարածոցս մինչև յաւրս յայս և մինչև ցկատարումն արարածոցս ի նորանալն երկնքի և երկրի և անզրաւ յաւիտեանին, և ես և յիւրում անսկզբնութեանն և յանվախճանութեանն բարեբան փառատրութեամբ աւրհնեսցի անկարաւան բնութիւն, լի պահելով զեկեղեցի և զաշխարհս գթութեամբ և ողորմութեամբ, և փառաւք իւրովք զԱմէնն և զՕղիցին ասասցեն համարձակագոյնքն և մերձաւորքըն նորայ սուրբք ամենայն երկնաւորք և երկրաւորք, որք էին, և են, և լինելոց են, անմեկնելի զմեր նուաստութիւնս կամելով ինքեանց, և յԱստուծոյ հայցելով յամենողորմ Տեառնէն և ի բարեբունն բարոյ յաւիտեանս յաւիտենից։

## 285

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Ն. Ջուղա 358, Ս. Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 551

Գրիչ՝ Տիրացու
Վայր՝ Խոր Վիրապ

351բ Փառք ամենատեառն, որ հասոյց ի վերջ, ի կէտ վերջին։ Այլ, ով եղբայր, մի մեղադրէր, ճշմարտիւ ասեմ, զի եղանակս ձմեռն էր, դեղս սառցոյց, եւ տունս ցուրտ, եւ ես պանդուխտ, զի անպարապ բաղում մասն ճրաղով գրեցաւ* /// Զոր տեսեալ մեծն վարդապետ հասարակաց եկեղեցւոց լրման Վարդան և ազդկսնութեամբ Հոգոյն, ի մեկնչաց սըրբոց եդ զբնաբանսն և համառօտեաց զՄեկնութիւնն բանիցն ի նոցունց հոգեկիր մեկնողացն՝ դիւրահաս ընթերցողաց և ուսումնասիրաց։ Վասն որոյ յիշատակ նորա աւրհնութեամբ եղիցի, ամէն։

Վասն որոյ և ես Տիրացու անարժան աշակերտ գոլով նորուն, անդաստեղեաւն դրեցի զսա անարհեստ գրչութեամբ, ի վայելս մեզ և յիշատակ, որ յապայսդ հանդիպիք և ժառանգէք ամենալիր բուրաստանս; Վասն որո մախթել աղաչեմ և հայցել պաղատիմ, որք հանդիպիք սմա ընթերցմամբ, արժանի արարէք զմեզ յիշման, զծնաւղսն մեր և զեղբարք, եւ որք յիշէքդ ի նոյն մնաք յիշման ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ ընդ Հաւր և Հոգոյն Սրբոյ յաւիտենից, ամէն։

Կատարեցաւ սա ի Վիրապն, մինչ կաաք մեք ի յուսման, ի թվին ՉԺԵ (1266)։ Յիշեցէք ի Տէր /// հաճոյացեալք և ընտրեալք արժանի աւրհնութեանց և բարի յիշատակի։ Եւս և զծնողսն մեր և զսնուցաւղսն և զերախտաւորն ի մարմնաւորս, եւ և ի հոգեւորսն հասարակացն ամենեցուն ողորմեսցի /// գալստեան և զոր գրեալս/// և նմա փառք յաւիտենից յաւիտեանս, ամէն։

* Թվում է թերթ է ընկած։

## 286

## ՎԱՐԴԱՆԱ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԴԱՒԹԻ

*Երևան 1190 (ԺԶ դ.)*

*Գրիչ՝* Տիրացու
*Վայր՝* Խոր վիրապ

330ա Յաստուածածագ լուսոյ ճառագայթից շնորհեց Սուրբ Հոգւոյն զար-
գարեցան եղականքս ամենայն իմանալիք և զգալիք, և ի նմանէ նախա-
խնամեալք կան ի կայի իւրեանց, և լցեալ լինի ի նմանէ բարի պարգևաւք
ըստ այնմ թէ՝ Զերկինս և զերկիր ես լնում, և նա տայ կերակուր ամենե-
ցուն, և շունչ ամենայն մարմնոյ, և ոգի ամենայն մարդոյ, զոր և ասէ
մարգարէիւն՝ Ես արարի զերկիր և զմարդ ի վերա նորա, երկուց շաղկա-
պեալ մի կենդանի, յոգւոյ բանականէ և ի մարմնոյ գործնականէ, միովն
ընդ հրեշտակս ազգակցեալ, և միւսովն ընդ մարմնաւոր կենդանիսս Վասն
որոյ ի սոցանէ ոմանք մարմնոյ վիճակեցան ի կամս անձանց իւրոց
գնալով, որք մարմինս ևեթ անուանեցան, ըստ այնըմ թէ՝ Մի մնասցէ
ոգի իմ ի մարդ, յայդ է վասն լինելո մարմին, և ոմանք յԱստուծոյ ընտ-
րեալք և իւրեանց յաւժարութենէ կամաց հոգևորք կոչեցան, թեպէտ ի
մարմնի պարաւանդեալ էին։ Են որք յորովայնէ ընտրեցան, և են որք ի
տղայութենէ կոչեցան, և են բազումք որ յաւագոյթ։

Յորոց յառաջնոցն և յազնւական ընտրելոցն է Դաւիթ մեծն, մա-
նաւանդ ի վեր քան զբազումս, զի ոչ մի շնորք հեղաւ ի նա, այլ բազում.
թագաւորական և մարգարէական, և հայր ըստ մարմնոյ որդւոյն Աստու-
ծոյ կոչելով։ Եւ զի ոչ են բանք նորա ըստ այլոց մարգարէիցն, այլ առա-
ւել հոգեշահք բոլոր սեռի մարդկութեանս, որ ձևանայ յոգիս մեր իբր
առ ի մէնջ, և առ Աստուած ելանէ զխնդիրսն կատարելով։ Եւ թեպէտ յայլ
և յայլ տեսակս բաժանի բանք սորա, այլ են ամենեքին ի կերպ աղաւ-
300բ թից, և այլ բազումն ի խորհուրդ մարդանալոյ բանին Աստուծոյն յիսկըզ-
բանէ մինչև ցկատարումն տնաւրէնութեան նորա, ևս և վասն երկրորդ
նորա գալստեանն։

Վասն որոյ ի տղայութենէ մինչև ի լրումն կենաց զսա առեալ ի
բերան մանկունք եկեղեցւոյ և ամենայն հաւատացելոց ազգք նուազեն ի
հալածումն դիւաց և պահապան անձանց, քաւութիւն մեղաց և ճանապարհ
հանդերձեալ կենացն, որ տանի զմարդիք առ Աստուած։ Եւ չիք ինչ
տնաւրինական խորհուրդ Քրիստոսի և տաւնախմբութիւն, որ առանց
սորա կատարի ի ձեռս մեր։

Վասն որոյ ի հաճախմանէ ընթերցմանց և գրլողաց ամենայն ումեք՝ յայլ և յայլ աւրինակաց, ի տգիտաց և ի մանգանց, բազում ինչ բան սղալական նուագեմք և ոչ որպէս ի Դաւթա։ Զոր տեսեալ մեծն վարդապետ հասարակաց եկեղեցւոց լրման Վարդան, և օգնութեամբ Հոգւոյն ի մեկնչից սրբոց, եդ զընաբանսն և համառօտեաց զմեկնութիւն բանիցն ի նոցունց հոգեկիր մեկնողացն՝ դիւրահաս ընթերցողաց և ուսումնասիրաց, վասն որո յիշատակ նորա աւրհնութեամբ եղիցի, ամէն։

Վասն որո և ես Տիրացու անարժան աշակերտ գոլով Նորուն, անգ առ տեղեաւն գրեցի զսա անարհեստ գրչութեամբ, ի վայելս մեզ և յիշատակ, որ յապայսդ հանդիպիք և ժառանգէք զայս ամենալիր բուրաստանս։ Վասն որոյ մաղթել աղաչեմ և հայցել պաղատիմ, որք հանդիպիք սմա ընթերցման, արժանի արարէք զմեզ յիշման, զծնողսն մեր և զեղբարքն, և որ յիշէքդ, ի նոյն մնայք յիշման ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ ընդ Հօր և Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

---

* Հաջորդ թերթը ընկած է։ Սույն ձեռագրի համար գաղափար օրինակ է եղել Նոր Ջուղայի ձեռագիրը, որի հիշատակարանը տեղավորել ենք սրանից առաջ։ Երկուսը տեղ-տեղ իրար լրացնում են։

## 287

## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ, ՀԱՒԱՔԱԾՈ

*Երևան 3082*

*Գրիչ*՝ Գէորգ Լամբռնացի
*Վայր*՝ Խոր Վիրապ, Սաղմոսավանք, Թեղենիք

ա

475բ *Փառք եռանձնական աստուածութեանն և եզաբուն բնութեան, միասնական տէրութեանն և ինքնիշխան թագաւորութեանն, Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ի բնաւիցս վեր առաքեսցի գոյից, այժմ և յանեզրն հանդերձեալ յաւիտենից, ամէն։ Ուստի յերեքերևեան լուսոյն գերահրաշ արփիանշոյղ փաղփիցն արտաթորմանէ՝ անթերի լրութեամբ յաւէտ առլցեալ երիցս երանեալ սրբազանիցն գուպարք աստուածայնոց որեարցըն՝ սրբոցն ասեմ հայրապետացն խըմբից, որք եւ առաջնոց լուսաւորչացն տիեզերաց՝ նախնի ընտրելոցն առաքելականն դասու՝ որք ճշմարիտն լուսոյ անընդմիջաբար հպմամբ ի ճահ արփաւորեալք լոյս աշխարհի յանսուտ բերանոյն բաղանուանեցան։ Երկրորդականն սոքա ժամանեալք գահու կամ որպէս ի դէպ է ասել՝ նմանասարաս պատւոյ բարգաւաճեալ ճոխութեամբ, զի ոչ միայն լուսաւորք՝ այղ և լուսատուք և բոցաճաճանչ ճառագայթարձակք, ընդ նոսին և հոյզք վարդապետաց եկեղեցւոյ սրբոյ և խումբք հռետորաց, ճարտարաց, բանասիրաց, հոգեհանճար գիտնականաց, աստուածուսոյց փիղիսոփայից, մանկանց եկեղեցոյ սրբոյ և որդւոց վերին Սիովնի, որք ի յանցնիւր դարս և ի ժամանակս զփրկականն իրագործութիւն ներտնաւրինեցեալ բանին Աստուծոյ զաստուածային առատաձիր պարգևացն մեզ՝ տըչութեանն զխորհուրդըս՝ հոգեշունչ մատենից առասացութեանց պիտառութեամբ առաքելաւանդ աստուածախաւսութեանցն վիպագրութեամբ ի նոյն ինքն ի հոգւոյն Աստուծոյ ւաժանդակեալք ձեռնտուութեամբ աստուածայինցն արձանագրութեանց, անծածուկ յայտնութեամբ բացերևոցեալ՝ սուրբ եկեղեցւոյ շտեմարանեցին մթերք անծախելի և գանձ անկողոպուտ, զկարգագրութիւնս տաւնից տէրունականաց խորհրդոյն՝ հանդերձ բացայայտութեամբ և որպիսութեան պատճառին ի բազմաց ծածկելոյ յայտաբարութեամբ, ի պայծառութիւն սրբոյ մաւր մերոյ կաթողիկէի և ի բերկրումն հոգևորական տամասիրաց քրիստոսասէր ժողովոց։ Տի նա յաւէտ ի հաստատութիւն ուղղափառ հաւատոյ և ի վանդումն ացտողացն*

*զճշմարտութիւն խանգարչաց նորոյս Իսրաէղի միան<ն>գամայն և ի
դաստիարակութիւն բարեպաշտ քաղաքաւարութեան ի Քրիստոս հաւա-
տացելոց։*

*Որում յոքնատենչ ըղձիւք բաղձացեալ քաջ հռետորն և բանիբուն
476ա ճարտարն՝ միջամուխ մակացուն‖աստուածայնոց տառից՝ սրբազան
քահանայն* Գրիգոր *սպասաւոր բանի, որոյ ներկրդեալ կամացն բարէսէր
յաւժարութեամբ և ձեռնտու աւժանդակութեամբ հոգէշուք ալեաւք ծաղ-
կեալ սուրբ ծերունին աստուածապատուեալ արհիեպիսկոպոսն տէր* Գրի-
գոր, *որ ունէր զվերատեսչութիւն այցելականն դիտման՝ քահանայա-
կան դա[սու] կատարող պետութեան* Այրարատեան *նահանգին, ներա-
կայան ունելով զամուրն* Բջնի, *որ ի նուաղեալ ժամանակի[ս] առաքի-
նասէր վարուք պայծառացեալ իբրև զարեգակն փայլէ յաշխարհի, զոր
Տէր Յիսուս շնորհեսցէ զսա եկեղեցւոյ իւր՝ ընդ երկայն ժամանակս խա-
ղաղական կենաւք։ Ընդ նմին և զհամապատիւ ինքեան ղձեռասուն
[ոբ]գեակս իւր հոգևոր՝ զտէր* Վարգան, *հարազատ եղբարբ իւրով նա-
խայիշեցեալն* Գրիգորիւ, *և զտէր* Դաւիթ՝ *քուերորդի տեառն* Գրիգորի,
*որոց կամաւք և յաւժարութեամբ յանկ ելեալ կատարեցաւ Պատճառ
նամակս տաւնից, ի լրումն բաղձանացն* Գրիգորի *վարդապետի, ի վա-
յելումն անձինն կրթասիրի, և յետ աստեացս վճարման՝ յիշատակ ան-
ջնջելի ինքեան, և նախաժաման եղեալ ի Քրիստոս ծնողաց և եղբարց,
ևս առաւել տեառն* Վանականի՝ *վերյիշեցեալ աթոռոյս վերադիտողի, և
ամենեցուն սոցա ի Քրիստոս սնուցողի, որոյ [յի]շատակն աւրհնու-
թեամբ և աղաւթքն ի վերայ սոցա և ամենայն աշխարհի։*

*Եւ եղև աւարտ գրչութեան սորա ի ձեռն տարաշխարհիկ պատանւոյ
ումեմն թարմատար գրչի* Գէորգայ, *ի* Կիղիկիեան *նահանգէն, յանմատ-
չելի ամրոցէն՝* Ղամբրաւն *կոչեցելոյ, որ է ի ստորոտ մեծի լերինն* Տաւ-
րոսի, *որ ոչ եթէ իբրու ճարտար գոլով յարհեստ գրչութեան՝ յանձնա-
պաստան համարձակութեամբ ձեռնամուխ եղև ի գործ, որ ի վեր էր քան
զկար նորա, այլ ի յոլով խնամս վայելչեալ նախայիշեցեալ արանցս փա-
ռաւորաց, և անիճահ վարկուցեալ զանց առնել զպատկառեցուցիչ հրա-
մանաւ սոցին, զսարիսխ յուսոյն յԱստուած ընկենլով՝ ձեռն ի գործ ար-
կեալ՝ սատարութեամբ նծդեհակցի [պ]անդխտութեանն իւրոյ և դաս-
տիարակի անկատարութեան* Յովհաննու *քահանայի։ Ի շրշագայութեան
ամենակաց թուեբերութեան Հայկականս ազին տաւմարի, յարաբարդեալ
276բ ամաց չորեքտասան յիսնեկաց՝ հանդերձ առաջին կատարեալ թու‖ով
վեցեկեաւ ընդ տասնեկի շարամանելոյ (1267), ի բռնակալութեան կող-
մանցն արևելից բաժնին* Ասիոյ, *ի վերայ յոլովից աիրեալ ազգաց՝ խու-
ժադուժ և բարբարոս ազգին նետողաց, ընդ որոց գրավեալ ծառայու-
թեամբ ծանրագոյն լծոյ հարկապահանջութեան ևս առաւել* Տունս Հայոց,
*որպէս երբեմն Իսրայեղ ի ժամանակս անիշխանութեանն, յորում ժամա-
նակի վարէր զառաջնորդութիւն թագաւորութեանն* Կիղիկիոյ Հեթում,
*բարեպաշտ, որ էր և նա մտեալ ընդ վերասացեալս հարկաւ։*

*Այղ ն[ա] բռնադատէ զիս աստանաւր թախիծ սրտիս յողորմելիս
յամել պատմութիւն, զի յանցելում ամի, ներգրութեան այսր մատենի,*

յաղագս ծովացեալ մեղաց մերոց սուլտանն **Մըսրայ**, բազմաձեռն զաւ-
րու պատրաստութեամբ մահմետական սպայիւ, իբր ի ցասմանէ Աս-
տուծոյ ածեալ՝ [ե]մուտ[տ] յերկիրն **Կիլիկիոյ**, որում ոչ կարացեալ
զդէմ ունել զաւրքն Հայոց, անդէն վաղվաղակի թիկունս դարձուցեալ,
պարտեալ, յաղթեալ, լքեալ, վայրավատնեալ, ցրուեալ լինէին։ Ուրա-
նաւր երկու որդիք թագաւորին ձեռբակալ եղեալ՝ թշնամեացն ի բուռն
անկանէին, կրսերոյն սրախողխող եղեալ, զերէցն գերի վարէին։ Եւ
ընդ ցրուել զաւրացն, զի և թագաւորն եւս ոչ եղև պատահեալ յերկրին։
Այնուհետև, առանց կասկածի եղեալ, բազում նախճիրս և ոճիրս արա-
րեալ, հրդեհեալ զյոլովս ի քաղաքաց և զաւանս նոցին, և տապալեալ
զեկեղեցիս և զգիրս սուրբս հրոյ մատնեալ, ընդ որս և յարքայանիստ
քաղաքն **Սիս** գեղեցկաշէն ապարանաւք և մեծափառ եկեղեցեաւն՝ Սըր-
բովն Սոփեաւ հրձիգ արարեալ, զբազումս ի սուրս սուսերի մաշեալ, և
զևս բազումս գերի վարեալ՝ հանդերձ յոլով աւարաւ։ Եւ մաւտ ի լնուլ
ամին, փոխեալ եղև յաշխարհէ կաթողիկոսն Հայոց տէր **Կոստանդին**,
որոյ ողորմեսցի Քրիստոս։ Այսոցիկ այսպէս եղելոյ՝ խնամքն Աստուծոյ
ժամանեսցէ ազգի և աշխարհացն Հայոց, անդորր առնելով ի յոքնադիմի
վշտա[ցս]։
Հանդիպելոցդ սրբոյ մատենիս մաղթեմ աղերսիւ՝ զստացաւղ սո-
րուն **Գրիգոր** վարդապետ աղաւթիւք յիշել ի Քրիստոս, եւս առաւել զտէր
**Գրիգոր**, և ղծնաւղսն իւրեանց. և դուք յիշեալ լիցիք յողորմութիւնն
Աստուծոյ ավրհնելոյն յաւիտեանս։ Սխալանաց գոյիս ներեցէք, իբրու
477ա ‖տկար բնութեան, վասն զի, որպէս յառաջն ասացի, թեպէտ և ոչ ներ-
հումն գոյով մեր յարհեստ գրչութեան՝ որպէս պահանջէ մեծագոյն աւ-
սրբ իրողութեանս վարկ, սակայն և ոչ կամակատար եղև մեզ՝ դիպիլ
տեղւոյ և ժամանակի, այլ փոփոխելով տեղի ի տեղ[ւոյ]է, գրե]թէ և
[մեք] եւս ի բար[ուց ի բ]արս, և խորհրդոց ի խորհուրդս լինեաք յե-
ղափոխեալ, վասն որոյ և ոչ կարողանայք ճահոռակի հանդիպիլ ի գործ
արուեստիս, որպէս և ի ստորակայէս յայտնի եւ ցուցանի։
Բայց սուաւկն սկիզբն ռոութեան սորա եռև ի տիեզերահռչակ սուրբ
ուխտն **Վիրապին**, որ էր ընդ իշխանութեամբ նախաւիշեցեալ տեառնն
**Գրիգորի**. ուր Սուրբ Լուսաւորիչն [մեր չո]րեքտասանամեայ երկարու-
թիւն ժամանակին ի խորագոյն խաւար[չ]ուտն արգելեալ բանտի՝ ի
մէջ չարաշունչ մահաբուրիչ դժընդակաթոյնն սողնոց, ուրանաւր իբրու
յարգանդի մաւր զմերն լինել յղացեալ փրկութիւն, ուստի ելեալ ծագէր
զլոյսն աստուածագիտութեան արեգակնաքատակ ծաւալմամբ յաշխար-
հըս Հայոց, ծնանելով վերստին ի Քրիստոս ըստ մա[րգա]րէութեանն
զազգ մի ողջույն, ուրանաւր և մեզ եղև ժամա[նակ] ինչ դեգերել ի դուռն
աստուածազարդ այնր տաճարի, սակս կրթութեան [մերո], ի մեծ վար-
դապետէն աստուածազգեաց առնէն **Վարդանայ**, որ [ընդ] այն ժամա-
նակս ի վերայ ամենայն մասանցն բարեաց՝ որով բոլորն [կա]տարի
առաքինութիւն, և ղուսուց[չ]ապետութեանն եւս զգործ ի կիր արկեալ,
ընդ առնելն լծակցելով, որ ի դուռն Սրբոյն Գրիգորի նստելով՝ զամե-
նայն եկելսն յաստուածայինն ուղղէր ճանապարհ։

Եւ անտի փոխեալ [եկե]ալ առ մեծ իշխանն Քուրդ, և մեր զկնի նորա հետևեալ՝ ժամանակ՝ [ին]չ արարաք յանուանեալն Սաղմոսավանք, ուր և զառաջինն աւարտեցաք հատոր սրբոյ մատենիս։ Եւ քանզի դէպ լինէր և անտի ևս փոխիլ նմա ի գործ բարւոք ուսուցչութեանն՝ ի տեղի, ուր Տէր յաշողեսցէ, յուզարկեալք եղեալ մեր ի ստացողէ տառիս՝ ի բուն տունս իւրեա[նց], ի մեծ[աhռ]չակ, հրեշտակակրաւն, աստուածաբնակ սուրբ ուխտս Թեղինեաց, ուր և յանկ իսկ հանաք զառաջարկեալս։ Բարւոք ընկալեալ զմեզ բարեբարոյ և սրբասէր քահանայի Սարգսի, սիրով և յաւժարամիտ կ[ամ]աւք սպասաւորելով, զոր աղաչեմ յիշման բարւոյ արժան[ի] առնել ի մաքրափայլ աղաւթս ձեր։

477բ [Աստան]աւր յերսս անկեալ կրկին /// ըն[տ]րելոցդ սրբ[ո]ց, որք միւս /// տեսութեամբ ինչ կամ /// վերծան /// [ս]րտի մտաւք թողութիւն յանցանաց հայցէք ի Քրիստոս։ Մկր[տիչ] /// տայի ի /// ստացողին այս /// [յիշա]տակին արժանաւոր հարազատին սորուն Թաղ[է]ոսի /// ճահ վարկանիմ շտեմարան ասել զնա բնաւից աստուածա[հա]ճոյ առաքինութեամբ /// մասնաւորապէս զառ ի նայն բովանդակեալ տեսական աստուած[աբանութիւն, տկա]բանայ լեզու առ ի պատմել՝ նախ առաշին զկ /// րութենէն զորմէ շար /// եղբայրսիր[ութիւն] ///, աղքատասիրութիւն, որք են լրումն բնաւից աւրինաց /// տէրունական սահմանի, զոր երկրորդէ մեծն Պաւ[ղոս] /// համեստ խոհեմութենէն զարդալուծումն անարիութեանն ընդ նմին և զշռայլական բազմագլուխ վիշապի /// կամս։ Ջհակառակն այսոցիկ յինքն շարահիւսեալ /// իկ մասունս ևս և զարդարակշիռ չափաւորութիւնն, զոր և /// կատարեալ կոչեն իմաստասիրութիւն այսոցիկ սեռ‖[առա]քինութեանց իւրեանցայովքն մաsամբ գերաւրապէս /// ելոց որովք և հաճոյ գտեալ Աստուծոյ վաղ ժաման /// նի լիցի աղաւթիւք ամենայն սրբոց և ձեր մասն ողորմ /// [հասա]նել յաւրն վերջին։

Յիշեսջիք աղաչեմ զսընընդ[կիցս] Գրիգորի վարդապետի /// քահանայն ին /// զյոլով ընդ սմին զաշխատեալն զաստուած[ար]եալն ի քահանայ[ս զՅակո]բոս, ևս և զուսումնակից ըստ հոգւոյն, զկատարեալ եղ[բայր]ն հեզահոգի, զհոմանուն սորին զԳրիգոր քահանայ, որք /// ժամանակաց քրտնաշան վաստակաւք և տքնութեամբ [կրթեին ա]ռ ոտս սուրբ և արդիւնական վարդապետին մեծի Վարգ[անայ]‖դեգերեալք և տրւչութեամբ և շնորհացն Աստուծոյ հասեալ[ք]‖կատարման գիտութեան աստուածային գրոց, զորս Տէր Յիսուս անփո[րձ և] անխռով պահեսցէ և ի հանդերձեալն սրբոց իւրոց դասակից արասցէ, ամէն։

Բ

474բ Ի չափ երկոտասանիցն պարզեալ ոտից Հոմերականն արհեստի սուղ ինչ բան

Գրութեան տառիս ներցուցողի զփաստս տամից
եղև նպաստ ումն ի գրչաց, ի բնաւս անարգ

* Էջը խիստ մաշված է և կարկատված։

Ելեալ յերկրէ հեռաստանէ, ի գիտ բանի
  և պատահեալ քաջն ուսուցչի, որում բաղձայՐ
Ուր իսկ և իսկ, ապա հարկի յոմն եղբարէ
  այնինչ յաւարտ գրեթէ հասեալ վարժից բանԻ
Բարունական անունն ի ճահ գոլ արժանի,
  սակըս սիրով խոկմանն յաւրէնըս Տեառըն ցանԳ
Գորովական խանդիւ տառիս այսմիկ բաղձայր,
  լինել նպաստ և ձեռընտու իւրըն փուԹՈ
Պատանեկին ապա մաղԹել ոչ հրաժարէ,
  Թեպէտ և չէր նա բաւական առ այն խնդիՐ,
Այղ հայելով առ յոյժ նորայն փափակ սիրոյ
  և հրամանին՝ փորձի լցաւղ գոլ ըստ կարԻ։
Տագնապ հասեալ ապա և այլ իմըն հարկի
  յայսր փուԹոյ վրիպէր պաշտել գնա պարապոՎ,
Այղ և խըրճիԹն ոչ պատահեալ ըստ պատշաճի;
  ևս և գործիքն, որ արհեստիս այս ձեռըն տԱ,
Նեղասըրտեալ յոլով անգամ կըրԹիւր յապուշ
  տի նա յաւէտ ի զինչն առնել տարակուսէՐ,
Ի վեհագոյն վեհին խնամոց կարողացեալ
  առ այս նըւագ գըլխաւորել զառեալս յաւանԴ
Ներբողական ձայնիւ դըրուատ փառատրուԹեան
  իբր տրիտուր վայելչապէս ձաւնէ նըմԱ
էԹէ իցէ հաճոյ կամ ոչ տեսանողաց՝
  նա ի իւրոյն փուԹոյ չեղև գըտեալ վըրէՊ,
Գերաղանցեալ էր խնդրողին տենչ բաղձանաց՝
  յորմէ տըւաւղըն յաղԹեցաւ իբր ի վեհէ
Բոպէական իմըն մասամբ զկամս ընձեռեալ,
  իբր ըզլումայսն երկու զոր արկ այրին աղքաՏ
Ըղեալ ստացաւղ տառիս առ գըրողն մեծախոՀ՝
  և զսխալանսըն ներելով զերկս ընկալեցԻ
Արժանաւոր լինել և ինքն ի Քրիստոսէ՝
  գտանիլ ներեալ և ողորմեալ յաւրն վերջին,
Ցընծալ պարիլ ընդ բազմելոցն յառագաստին՝
  երրորդուԹեանն երգել զփառս միշտ ընդ նոսին
    Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն*։

Գ

9ա Ո՛վ սուրբ տեարք իմ որ /// ստացող սորին Գրի[գորի] /// յամենայն ամի միա /// իւրո Թաղէոսի /// եցաւ մանգաղա[ւ /// Թի անվերանալ /// զազատածին /// զտէր Յոճանէս յիշեց[էք ի Տէր]։

---

* Երկտող տների սկզբնատողերով շարահարվում է «Գեորգ պտտանին ՝է գրեաց» (հավանաբար պետք է լիներ «գրեալ»), իսկ վերջին տողերով՝ «Գրիգորի վարգապէտին»։

Դ

23բ Զտէր Գրիգոր արհեպիսկոպոս և [պատ]ուելի ծերունի, և զԳրիգոր սպասաւոր բանի նորին ձեռասուն, որոյ և տառս՝ յիշեսջիք ի Տէր աղաչէմ։

Ե

100ա Զթարմատար գրիչս և զբիւր ըղձալի տենչաւք ստացիչն այսր շարագրածութեան զԳրիգոր քաջահանճար հռետոր յիշման բարւոյ ի հանգիպելոցդ մաղթեմ արժանի լինել։

Զ

109ա Զստացաւղն սորա Գրիգոր յիշել ի բարի մաղթեմ*։

Է

169բ Զսրբազան վարդապետն Գրիգոր՝ զստացաւղ սուրբ մատենիս և զԳէորգ անարհեստ գրիչ յիշել ի բարի մաղթեմ։

Ը

461ա Զգերերջանիկ և զսրբազան արհիեպիսկոպոսն զտէր Գրիգոր և զնորին ձեռնասուն քահանա Գրիգոր՝ սպասաւոր բանի յիշել աղաչեմ ի Տէր։

Թ

470ա ԶԳրիգոր մակացու ստացիչ սորին յիշեսջիք։

Ժ

97ա Ո՛հ, կուճ քարտեսս, չէ կոկ։

ԺԱ

111ա Մակար իմ աչքս ելեալ էր, քան այսմ հանդիպել, բայց իմ աներկեղութենէ չէր, գիտէ Քրիստոս**։

ԺԲ

141ա Այս տետրս Դ թուղթ է։

ԺԳ

286բ Աստի յառաջ գրիչս կաղնի է. աւաղ չքաւորութեանս։

ԺԴ

295ա Տակաւին կաղնի է գրիչս։

---

* Այս կարգի հիշատակագրություններ կան նաև 198բ, 340բ, 398ա էջերում։

** Գրված է շղագրով, ակնարկում է անզգուշաբար թափած թանաքը, որը փչացրել է բնագրից և վերնագրից մի փոքր հատված։ Գրիչը սև թանաքով ծածկված տեղում գրել է կարմիրով, ապա նրա վրայից անցել սևով, որպեսզի ընթեռնելի լինի։

ԺԵ

430բ *Կարի դժվար է ի կապած գիրք գրիչ բանեցնել, վասն այն, որ ձեռքն կու սղա առանց շիքրոնի։*

ԺԶ

Գրիչ՝ Մանվէլ

378բ *Եւ ի վերայ այսր ամենայնի զՄանվել գրիչ յիշեցէք**։

## 288

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

*Ն. Ջուղա 31, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 47—48*

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Ականց անապատ

Ա

145բ *Փառք... Արդ աղաչեմ զձեզ, ով արժանաւոր և աստուածամերձ դասք քահանայութեան, յիշել առաջի Քրիստոսի ըիմ անարաժանութիւնս սրտի մտաւք և զայնոսիկ որ քաշալերիչ և յորդորիչ եղեն մեզ ի սոյն գիր՝ զհոգևոր եղբայր մեր զԴաւիթ և զՊօղոս, որ գխորան գլխոցս նկարեաց կարմրադեղով, նաև զծնաւղս մեր և զսնուցաւղսն մեր՝ զհոգևորս և զմարմնաւորս։ Եւ որքան կամաւորաքար բարեխաւսէք վասն մեր, նոյնիսկ և ձեզ պարգևեսցէ Աստուած զարքայութիւնն իւր ընդ սուրբս ամենայն, ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս, ամէն։*

*Գրեցաւ սուրբ Աւետարանս յԱկանց անապատիս, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչին և Սրբոյ Աստուածածնիս և այլ բազմհաւաք սրբոցս, ի հայրապետութեան տեառն Կոստանդեա և ի թագաւորութեանն Հեթմոյ, ի թուին Հայոց ՉԺԶ (1267), յայս նշանաւոր և ի վշտալից ամիս, յորում եկին անաւրէն զաւրքն Իսմայէլացոց և մտին յաշխարհս Կիլիկեցւոց, իսկ ելեալ զաւրաց մերոց ընդդէմ նոցա, ոչ կարացեալ ընդդէմ կալ վասն սակաւութեանն՝ ի պարտութիւն մատնեցան, և զերկուս որդիս թագաւորին ըզմինն սրախոխ արարին, և զմիւսն գերի վարեցին յԵգիպտոս: Եւ մտեալ նոցա այնուհետև բազում գաւառս և քաղաքս և գեաւղս և վանորայս և եկեղեցիս հրձիգ արարին, և անթիւ քրիստոնեայս սրոյ և հրոյ մատնեցին, և երիս բիւրս և վեց հազար (36000) գերիս տարան յաշխարհ իւրեանց, իսկ զանասնոց և շնչից, ո՞ կարասցէ պատմել։ Զորս յանմխիթար սուգ կանք եկեղեցիք քրիստոնէից, և ողբամք զողբս Երեմեա մարգարէի. որ ի վերայ Սիովնի։ Եւ այս ամենայն եղև վասն բազում մեղաց մերոց։ Զոր Տէր այց արասցէ աղաւթիւք ամենայն սրբոց, և նմա փառք յաւիտեան, ամէն։*

*Ողորմեսցի Քրիստոս Աստուած այնոցիկ, որ զաւրինակս գրեալ են, և այնոցիկ որ շնորհեսցեն, նաև ամենայն հաւատացելոց։*

---

* *Մանվելի գրիչն է մի քանի էջի։*

Բ

239ա Փառք Սուրբ Երրորդութեան յաւիտեանս յաւիտենից, որ ետ զօրութիւն ստահակ և անարժան ծառայիս Բարսղի սուտանուն քահանայի գրել զգիրս Պաւղոսի առաքելոյ, զոր Հոգին Սուրբ եդ ի բերան նորա ի խրատ և ի շարժումն մանկանց եկեղեցւոյ։

Արդ աղաչեմ զձեզ, ո՛վ դասք լուսեցամից, արժանի արարէք զմեղաւք լցեալս արժանի յիշատակի ի մաքրափայլ յաղաւթս ձեր և սղալանաց և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այդ չափ էր։ Գրեցաւ ի թուիս ի ՉԺԶ (1267), յանապատիս Ականց կոչեցեալ, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս և Սուրբ Աստուածածնիս և այլ բազմահաւաք սուրբ նշանացս և նշխարաց, ի գաւառիս Ցախուտ, յայս նշանաւոր ամիս, յորում աւարեցաւ աշխարհս Կիլիկեցւոց յանաւրէն զաւրացն Իսմայելացւոց, և ի բազում սուք և տրտմութեան են ազգ քրիստոնեիցս, զոր Տէր այց արասցէ ողորմութեամբ իւրով, ամէն։

Ողորմեսցի Քրիստոս Աստուած հոգևոր եղբաւր մերոյ Դաւթի, որ աւժանդակ և քաջալերիչ եղև մեզ։ Ողորմութեամբն իւրով Քրիստոս և աղաւթիւք ընթերցաւղացդ և լսողացդ ողորմեսցի ամենայն հաւատացելոց ի Քրիստոս և մերոց ննջեցելոց, հարց և եղբարց՝ հոգևորաց և մարմնաւորաց, և սնուցանողաց և ուսուցչաց և որ երախտաւորք են մեզ ողորմութեամբ՝ թէ հոգեկանաւք թէ մարմնականաւք, ամենեցուն առհասարակ ողորմեսցի։ Եւ որ զԱստուած ողորմին ասէ, և նմա ողորմեսցի Քրիստոս Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Եւ որ զաւրինակն գրեալ են և որք ետուն և նոցա ողորմեսցի Տէր Յիսուս յահեղ գալըստեան։

67ա Փառք Սուրբ Երրորդութեանն, որ ետ զաւրութիւն հասանել յերկրորդ գլուխ սուրբ Աւետարանիս։ Աղաչեմ զձեզ և խնդրեմ ի ձէնջ ողորմութիւն, ո՛վ ընթերցողք, որք ընթեռնոյք և լուսաւորիք ի սմանէ, յիշեցէք սրտի մտօք զմեղուցեալ և զտառապեալս յամենայն գործոց բարեաց զսուտանուն կրաւնաւորս Բարսեղ ի մաքրափայլ աղաւթս ձեր, մանաւանդ յայսմ վայր, զի և դուք յիշեալ լիջիք ողորմութեանն Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեան, ամէն։

Տէր Յիսուս Քրիստոս Աստուած իմ, ողորմեա հոգևոր եղբաւր իմոյ Տրդատ քահանայի յահեղ ատեան քում դատաստանի։

Գ

155ա Ցուրտ է, ձեռս կաղուել է, գէշ կու գրուի, թողութիւն արա աղաչեմ։

Դ

161ա Անհեթեթ կու գրուի, ցուրտ է, ձեռս կաղուել է, թողութիւն արա աղաչեմ։

## 289

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2877 (Ժ. դ.)*

*Ստացող՝* Ըսպահեան

18բ *Ի արարչագործն Աստուած, որ ըստեղծ ղմարդն զառաջին, եւ ետ*
*նմայ շնորհս զաստուածական և վեհագոյն զարգարեաց քան զամենայն*
*կենդանիս, և ետ նմայ պատուէր ի կատարումն աւուրց, զոր ստեղծողն*
*գիտէ։ Նախանձեցաւ բանսարկոյն ընդ այն վեհագոյն պատիւ, խաբեաց*
*զմարդն. անմահն բարկացեալ ընկեց զմարդն ի մահկանացու երկիրս, զի*
*ծանիցեն զինքեանս եւ զարարածս Աստուծոյ, եւ հրամայեաց մեզ ժա-*
*ռանդել զանցաւոր աշխարհս, եւ մեք եղաք զանուն նորայ։ Ի վերայ փայ-*
*տի եկն միայածինն, եւ ետ իւր աշակերտացն առնել քննութիւն որդոց*
*մարդկան, եւ ասաց, թէ՝ սուտ է աշխարհս, ով գնայ ընդ սայ։ Այսմ*
*ձայնի լսելով* Ըսպայեան *եւ ամուսին իւր* Կատայ, *բազում մեծարանս*
*գտել ի* Ջալալայ Դալէն *եւ ի յիր մեծայմեծացն, զի մեծայհարկիս էաւ*
*ամենեսեան, հասին ի ծերութեան աւուրց, յիշեցին զաւրն ահեղ, զի ոչ*
*ունէին որդի ծածկոյթ գերեզմանի, ըստացան իւրեանց հոգևոր զաւակ*
*Աւետարանս, եւ ետուն* յԱյտաւրձորի *Սուրբ վկայքն եւ ի տէր* Երոյց *եւ*
*որդի իւր* Վանական, *և նոքայ խոստացան ի տարումն Դ(4) պատարագել*
*զՔրիստոս ի տաւնի Աստուածածնի յանուն մեր՝ որչափ մեք կենդանի*
19ա *ենք, և մեր ծնաւ(ղա)ցն՝ յետ<մահու>‖մահուան մերոյ՝ մեզ։*

*Արդ, ես՝ մեղուցեալ ծառայ Աստուծոյ* Ըսպայեան, *եւ ամուսին իմ* Կայտայի, *ստացաք զսուրբ Աւետարանս ի մեր հալալ ընչից, անջինջ յիշատակ ինձ* Ըսպայենայ *եւ* Կատայի, *եւ ծնաւղացս մերոց, եւ կիսաւրէ վախճանելոյ եղբաւր իմոյ* Ըսպայեանիկայ, *եւ որդոյ իւրոյ* Պոաւշայ, *եւ զաւակաց մերոց* Մարինոյ, Տիրայմայրայ *եւ* Ազգին, *եւ ն[ն]ջեցելոց մերոց՝ կենդանեաց եւ մեռելոց։ Եւ որ տվաք յեկեղեցին զսուրբ Աւետարանս՝ կամ ի մեծաց կամ ի մերոց կամ յաւտարաց, մի ոք իշխեսցէ հանել զինչ պատճառով եւ իցէ, թէ յանդգնի, հանել ջանայ, նզովե[ս]ցի ի Սուրբ Երրորդութենէն, ու մեր մեղացս պարտական է առաջի Քրիստոսի։*

*Ով ընթեռնոյք զսուրբ Աւետարանս, ասասջիք,. թէ՝ Տէ՛ր Յիսուս, թո՛ղ զյանցանացս* Ըսպայեանայ *եւ* Կատային, *եւ ջնջեայ զձեռագիր յանցանաց նոցայ եւ ն[ն]ջելոց իւրեանց, որ ետին ստացան սուրբ Աւետարանս, թ[վին] ՉԺԶ (1267)։*

*Քրիստոս Աստուած ողորմի ետին ստ[ա]ցողի Աւետարանիս* Ըսպահենայ *եւ ամուսնոյ իւրոյ* Կայտային:

290

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Ջմմառ 499, Ակինյան, Ոսկյան, Ցուցակ, (Բ), էջ 97—98

Գրիչ՝ Յովանէս

ա

75բ Փառք... Գրեցաւ ի թվին Հայոց էճ ու ԺԶ (1267), ձեռամբ մեղապարտ սարկաւագի Յովանիսի, ի յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց։

Բ

47բ Աղաչեմ զձեզ, ո՜վ պատուական հարք, զԲասիլ եւ զտառապեալ գծողս եւ զծնաւղս իմ յիշեսջիր աղաչեմ։ ԶՅովանէս յիշեա*։

Գ

Ստացող՝ Ներսէս

58բ Զստացողիս կեանք, զստացողսն իւր յոգի, զստացողս Ներսէս յոյժ վերջացեալ յաշակերտութիւն եւ [յ]որդիութիւն...

291

ԺՈՂՈՎԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԱՌԱՍՊԵԼԱՑ

Երուսաղեմ 788, Պողարյան, Ցուցակ Գ, էջ 238

Գրիչ՝ Սարկաւագ

83 Գրեցաւ ի թուին Հայոց էճ ու ԺԶ (1267) ձեռամբ մեղապարտ Սարկաւագի:

292

ՅՈՀԱՆՆՈՒ ԱԻԵՏԱՐԱՆ, ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

Երևան 3611

Ստացող՝ Կոստանդին

292բ ...Ի թուաբերութեանս Հայոց ՉԺԶ (1267) ես Կոստանդին ծառայ աստուծոյ, նու[աստ] և վերջին յորդիս եկ[եղ]եցւոյ, ցանկացայ ստանալ անձին իմոյ նեցուկ և աւգնական ի կեանս յայսոսիկ, և ի հանդ[ե]րձեալն բարեխաւս և [ա]պ[աւ]էն զաստուածաշունչ ///։

* Սածկագիր է։

## 293

### ԱՒԵՏԱՐԱՆ ՀԵԹՈՒՄ ԱՐՔԱՅՈՐԴՈՒ

Երևան 10675

Գրիչ և ծաղկող՝ Թորոս Ռոսլին
Վայր՝ Հռոմկլա

ա

Փառք համագոյ և միասնական Սուրբ Երրորդութեանն և միոյ||աս-
տուածութեանն Հաւր և Որդւոյ և ամենասուրբ Հոգւոյն, այժմ և միշտ ն
յաւիտեան։

Շնորհիւ Տեառն սկսեալ և ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւար-
տեցաւ մատեանս աստուածային երկրպագելի և համբուրելի սուրբ Աւե-
տարանս, յամի Չժ ե. է երրորդի (1268) թուաբերութեանս Հայկազեան տու-
մարի, յաստուածապահ դղեակս Հռոմկլա, ընդ հովանեաւ սուրբ տաճա-
330ա րապետիս Սուրբ Փրկչին մերոյ և Սուրբ Աստուածածնին||և Սուրբ Լուսա-
ւորչին մերոյ, հրամանաւ և ծախիւք երջանիկ հայրապետին Հայոց
տեառն Կոստանդեայ, որ զաստուածահաճոյ վարուց իւրոց և բարի
անուանն համեմատ ունէր զպատմութիւն։ Որ և ի կենդս իւր, ի ձեռն
քաջակրաւն քահանայի Թորոսի՝ եղբաւրորդւոյ իւրոյ, ետ գրել զսա իմոյ
անարժանութեանս՝ Թորոսի մականուն Ռոսլին կոչեցելոյ։ Եւ նուիրեաց
զսա կտակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն, և գեղեցիկ մանկանն Հեթմոյ
որդւոյ Լևոնի, որդւոյ Հեթում թագաւորի։ Եւ ինքն կատարեալ զկեանս
իւր՝ հանգեւ ի Քրիստոս, կալեալ զաթոռ հայրապետութեան ամս Խ և Ե
(45)։ Որ և ի շնորհացն Աստուծոյ և հրամանաւ թագաւորին Հեթմոյ,
յաջորդէ զաթոռն սուրբ տէր Յակոբ՝ այր բարի և վարդապետ Հին և Նոր
կտակարանաց, անապատական վարուք ճգնե[ա]լ։

Ի ժամանակի յայսմիկ մեծն Անտիոք դերի վարեաց զբազումս անաւ-
330բ րէն արք||այէն Եգիպտացւոց, և բազում եղեն սպանեալք և գերիք նորա
և կսկիծ աստուածաբնակ սուրբ և հռչակաւոր տաճարացն որ ի նմա, զոր
ոչ է պատմել զհրաշատեսակ վայելչութիւն դեղոյ նոցա, որք հրով սպա-
ռեցան։ Յայսմ երկիւղէ և չարալլուկ համբաւոյ զարհուրեցան բազում գա-
ւառք, և առաւել աշխարհս Կիլիկեցւոց:

Եւ մինչ յայսմ մեծի տագնապի և ի դողման էաք, բացաւ առաւաւտ
խաղաղութեան մարդասիրին Աստուծոյ, և մեծն Լևոն՝ թագաժառանգն
Հայոց՝ զերծեալ եղև խնամաւքն Աստուծոյ յերկաթի հալոցացն, ի ծառա-
յութենէ և ի ձեռաց նոյն արքային Եգիպտացւոց: Եւ բազում պատւով և

ընծայիւք եկն յաշխարհ և ի հայրենի աթոռ իւր, և եղև խաղաղութիւն երկրիս և խնդութիւն քրիստոնէից։

Ի սոյն աւուրս եղև զրաւ գրչութեան սորա զանազան նիւթաւք և երանգ երանգ դումաւք, առ ի սխրալի լինել որդոց սրբոյ եկեղեցոյ։ Վասն որոյ աղաչեմ զձեզ, ո՜վ որդիք լուսոյ մաւր Սիոնի, որք վայելէք սովաւ, յիշեսջիք աղաւթիւք ի Տէր զարժանաւորսն ամենայն բարեաց յիշատակի զսուրբ հայրապետն զտէր Կոստանդին ստացող սորա, և զժառանգող սորին զծիրանածին մանուկն Հեթում, և զհայր իւր Լեւոն թագաժառանգ, և զմայր իւր բարեպաշտուհի թագուհի Հայոց Կեռան կոչեցեալ, բարեպաշտաւնեայն Հեթում՝ երեխտագործ Հայոց և ինձ անարժանիս՝ որդաւք և դստերաւք իւրովք և ամենայն զարմիւք, որոց ննջեցելոցն հանգիստ և ողորմութիւն պարգևեսցէ Քրիստոս Աստուած, և զմնացեալսն անխռով խաղաղութեամբ պահեսցէ և երկնաւոր թագաւորութեան հաղորդս արասցէ, ամէն։

Յիշել աղաչեմ և զարիագոյն քահանայն Թորոս, որ զծախս գրոցս
331բ երկրորդեաց ոսկի։ ‖ Զբազմամեղ գրիչս աղաչեմ յիշել՝ զանարժանութիւն իմ, և զծնաւղս, և զորդիս իմ, և զուսուցիչս, և զամենայն երախտագործս իմ, և զկազմաւղ սորա, և Քրիստոս Աստուած զձեզ յիշեսցէ ի գալըստեան իւրում և յարքայութեան, որ է աւրհնեալ ընդ Հաւր և Սուրբ Հոգւոյն այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բ

4ա Մեղապարտ գրչի սորա ողորմեա Քրիստոս Աստուած։

Գ

13բ Տէր իմ Քրիստոս՝ լոյս գերարփի,
Որ շրջեցար մարմնով յերկրի,
Եւ զայս մատեանս աւետալի
Մեզ հնչեցեր ձայն ցնծալի,
Դու զտէր Կոստանդին՝ հովիւ բարի,
Կաթողիկոս Հայոց սեռի,
Զոր փոխեցեր ի յայսմ ամի՝
Յաթոռ նստո ընդ Պետրոսի, ամէն։
ՉԺԶ (1267)։
14ա Եւ ժառանգող այս մատենի
Զպարոն Հեթում համբակ բարի,
Որ է որդի նա Լեւոնի,
Որդոյ Հեթմո մեծ արքայի,
Պահեա կենաւք յերկարեւլի,
Իւր ծնողաւքն եւ այլ զարմի,
Եւ ի քո փառսդ հայրենի,
Հաղորդս ընգալ քեզ կրկնակի, ամէն*։

* Գրված է խորանների մեջ, ոսկի խորքի վրա, կապույտ երկաթագրով։

Դ

101բ Զաստուածապատիւ տէր Կոստանդին կաթողիկոս յիշեսջիք ի Քրիստոս։

Ե

157բ Ընդ մետասանիցն համադասեա Քրիստոս զսրբազան կաթողիկոսն տէր Կոստանդին՝ ստացող սորա, և զեղբարորդի նորին՝ Թորոս քահանայ։ Եւ մեղապարտ գրչի սորա շնորհեա մեղաց թողութիւն*։

Զ

153բ Ընտրելոց մետասանիցն հաղորդս ընկալ, Քրիստոս Աստուած, զտէր Կոստանդին կաթողիկոս Հայոց՝ ստացւող քոյին բանի, և Թորոսի քահանայի՝ եղբաւրորդւոյ նորա շնորհեայ դասիլ ընդ սուրբս քո, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Է

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

331բ Զկազմաւղ սորա զԱռաքել Հնազանդենց և զծնաւղսն իմ, և զհարազատսն իմ զԿարապետ քահանա և զՊաւղոս սարկաւագ և զուսուցիչն իմ զՍարգիս քահանա՝ զհանգուցեալսն ի Քրիստոս աղաչեմ յիշել ի Տէր։
Ի թվին ՉԺԷ (1268)**։

Վազգէն Ա».

294

ՃԱՇՈՑ

Ստացող՝ Սմբատ Գունդստապլ

Փառք Աստուծոյն ամենայնի
Գոյից էիցս արարաւղի,

---

*Դ, Ե, Զ հիշատակագրությունները ոսկեզօծ բոլորգրով են գրված, բացառությամբ այս վերջին նախադասության։

** Մատյանս Երուսաղեմի Սրբոց Հակոբյանից մատենարանի № 3627 ձեռագիրն է, որը պահվում էր այնտեղ Գանձատանը 119 համարի տակ։ 1975 թվականին այն նվիրվեց Մաշտոցի անվան մատենադարանին։ Ահա այդ մասին հիշատակությունները.

Մենք՝ Վազգէն Ա. կաթողիկոս Ամենայն Հայոց, այսօր 25 Յուլիս 1975 թուին, սոյն ձեռագիր Աւետարանը յանձնեցինք Երևանի Ս. Մեսրոպի անուան Պետական Մատենադարանին։

«Նորին Սուրբ օծութիւն Տ. Տ. Վազգէն Ա. կաթողիկոսի փափաքով, սրբազան պատրիարքը Երուսաղէմի և Սրբոց Յակոբեանց միաբանութիւնը Երևանի պետական Մաշտոց Մատենադարանին կը նուիրեն Ռօսլինի սոյն ձեռագիրը ի վայելումն ազգիս Հայոց։

Եղիշէ արքեպիսկոպոս Տէրտէրեան.
Պատրիարք Հայոց Երուսաղէմի

30 Յունիս 1975
Երուսաղէմ»,

Վազգէն Ա»

Որ ինք է մէն 'ւ այլ չլինի.
Տէր և պարոն անփոյխելի։
Ի թվականիս Հայոց գըրի
Յիւթն հարոյր տասնիւթնի (1268),
Ես՝ Սմբատայ Հայկազնի,
Ծառայս և հողս Քրիստոսի
Եւ սպայապետ Հայոց գընդի,
Տէր ամրոցիս Պապեռոնի,
Անդրանիկ՝ հաւրն իմ Կոստանդնի,
Եղբայր Հեթմոյ Թագաւորի,
Որ ցանկացա և սիրեցի
Ըղմայրն իմ՝ ըղսուրբ եկեղեցի,
Եւ զինչ ի նմա իսկ ընթեռնի,
Ամբողջ ի լրման ի մէկ տարի
Զամէնն ի սմա հաւաքեցի։
Հայնց որ, ով ոք որ զսա ունի,
Նա բնաւ ի յայլ գիրք չսնգի,
Բայց և զայլս այլ գրել պիտի։
Թէ ե՞րբ սկսաք կամ կատրեցի
Զաստուածային տառս ի կարգի.
Սկիզբն էր ի չար ժամանակի,
Երբ Մսրցին եկն ի Մառի
'Ի էսպան ըզԹորոս Թագաւորորդի
Եւ այլք բազումք ի նոյն ըզկնի,
'Ի այրեց ըզՍիս և զՄսիս
Եւ զինչ որ չէն կայր ի միջի,
Եւ զԼեւոն ասագորդի
Հեթմոյ Հայոց մեծ արքայի,
Տարաւ ծառա 'ւ եդ ի բանդի,
Ի քաղաքին Եգիպտոսի:
Բայց զո՞ր ածեմ աստ ի գրի
Զառ և աւար և զարոյննի,
Կամ զհամարքն ծառայի,
Զորս ընդ մեղաց էհաս երկրի,
Որ թէ զամէնն գրել էի՝
Նա շատ առնոյր թուղթ և շտի։
Բայց յաջողմամբ Քրիստոսի
Ի վերոյ դրեալն թվականի,
Որ զընթերցվածքս կատրեցի
Ձեռամբ գրչին Կիրակոսի,
Զերծաւ Լեւոն Թագաւորորդի,
'Ի եբեկ ի յիւր տոմ և տեղի.
Եւ ղայս ձեռամբ իմով գրեցի,
Զի յիշատակ ինձ եղիցի,

*Տրուպ և անզեղջ մեղաւորի*
Սմբատա Գունդստաբլի,
*Հաւր իմոյ* Կոստանդնի,
*Եւ մաւր իմոյ տամ* Ավիծի,
*Եղբարց և քերց, նաև ազգի,*
*Ջնոյն և որդոց իմում զկնի՝*
Հեթմոյ, Աւշնի *և* Կոստընդնի,
*Եւ մաւր սոցին* Թեֆանաւի,
*Որ՝ որ գթան 'ւ ասեն բարի,*
*Կամ ըղձալից Տէր ողորմի,*
*Նա [ա]ռատաձիր Տէրն ամէնի,*
*Բազմապատիկ տա իր բարի՝*
*Աստ ի ներկայս՝ այժմ և զկնի։*

## 295

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Երևան 287*

*Գրիչ՝* Կոստանդին
*Վայր՝* [Հռոմկլայ]

ա

289ա *Փառք [ք]եզ կոնա քող արեգասգոն կիսագնդի և Դեմետրի ծովուե ամենայն արարածոց, որ արժանի արարէր յանգ հանել զայս աստուածախաւս մարգարէական տառս, ձեռամբ* Կոստանդեա *նւաստ քահանաի՝ ախմար գրչի, ի խնդրոյ եղբաւր մերոյ* Պետրոսի, *որ եռափափագ սիրով ցանկացաւ այս հոգիապատում մատենիս, և ետ գրել զսա ի վարժումն անձին իւրոյ, և յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց և բնաւ զարմից։*

*Արդ, աղաչեմք զամենեսեան, որք աւկտիք ի սմանէ կամ ընդաւրինակէք, յիշեսջիք զիս զ*Պետրոս, *և զծնաւղսն իմ, եւ և զերանեալ արժանապատուեալ քահանայապետն և զըստ հոգւոյ հայրն մեր և զվարժիչ իմ յայսմ աստուածախաւս բանիցս զ///*, որ բազում աշխատութիւնս և զբաղանս զորս ըստ հոգւոյ և մարմնոյ ոչինչ գրէր, այլ ի վերա յամենայնի և զայս առնէր աշխատութիւն՝ զցայգ և զցերեկ անդադար քննէր մեզ զգիրս Աստուծոյ լուրջ սրտիւ և բերկրեալ հոգւով, ոչ ձանձրանայր կամ մեծամտէր առ մեր ախմարութիւնս, որ անբաժ էաք ամենայն բաջից և բառից գրոց, այլ փոքրոգի եղեալ՝ քաղցրութեամբ ուսուցանէր զամենայն, թեպէտ և մեք ոչ կարէաք ծածկել ի մեզ զամենայն լուսաւոր բանս նորա, այլ փոքրիշատէն. և բազում սատարութիւնս ընձեռեաց մեզ ընչիւք և աւրինակաւ։*

*Ընդ նմին և յիշատակի արժանին յիշեսջիք զսուրբ հայրապետն մեր զկաթողիկոսն, որ և նա մասնաւոր աւգնեաց մեզ։ Որովք աղաչեմք զա-*

* *Անունը ջնջված է։*

ռատաձիրն Աստուած՝ զՀոգին Սուրբ, զի շնորհազարդեսցէ զարժանիքն յիշատակի զվերոյգրեալ սուրբ հարքս մեր յաստիս և ի հանդերձեալումն՝ հոգւով և մարմնով։ Ընդ նոցին և զանարժան աշակերտս զՊետրոս, և զծնաւղսն իմ ե զսնուցիչն իմ զՄարեմ և զԿոստանդին քահանայ, և զծնաւղսն իմ, և զորդիսն իմ, որ բազում աշխատեցաւ ի սա, և եթէ անարհեստ համարիք զգիրս, մի՛ մեղադրէք, զի ի վանկից, շետից և տառից չէր տեղեակ և ուրինակքն անմարաց գրած էր։ Վասն այնորիկ այս մինչև յայս չափ։

Արդ, գրեցաւ սա ի թվիս Հայոց Չ[Ժ]Է (1268)*, ի թագաւորութեանն
Հեթմոյ բարէպաշտի, ի դիդապետութեանն տեառն Յակոբայ, որ յայսմ
289բ ամի կարգեցաւ առաջնորդ սուրբ եկեղեցւոյ‖Հայկազեան քրիստոնէիցս և
յաջորդ աթոռոյ Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի, յամսեանն փետըր-
վար, որ աւր ԺԲ (12) էր։ Եւ վասն թշուառութեան ժամանակիս զինչ պի-
տոյ է մեզ գրել, որ Երեմիայի մարգարէին ողբոցն կարաւտանամք, զի
աշխատեսցուք գերիսն յանաւրէն ղաւրացն փարաւոնի նմանեալք գե-
րութեանն Երուսաղէմի։ Եւս առաւել աւաղեմք զթագաժառանգն թագա-
ւորութեանս մերոյ, զխողխողեալն սրով անաւրինացն՝ զքաջ զաւրականն
Քրիստոսի զպարոն Թորոս, և զգերեալն յԵգիպտացւոցն զպարոն Լևոն,
վասն որոց հայցեմք յԱստուծոյ՝ միոյն հանգիստ յարքայութեանն երկ-
նից և պսակ մարտիրոսական արեամբ նահատակին, և ազատութիւն
ազատեցելոյն արեամբն Քրիստոսի պայազատին Լևոնի պարոնին մերոյ։
Զի ազատութեամբ նորին վերստին ուրախասցուք մեք, որպէս Իսրաեղ
ի դարձին ի Բաբելովնէ ի ձեռն Զաւրաբաբելին, որում շնորհիս պարգե-
վողին Քրիստոսի աւրհնութիւն և փառք ընդ հաւր իւրոյ և հոգւոյն սրբոյ
յաւիտեանս, ամէն։

Բ

104բ Զմեղաւք դատապարտեալս յիշեա ի Տէր։

Գ

288ա . Զմեղաւք դատապարտեալս զԿոստանդ[ին] քահանայ աղաչեմ յիշել ի Տէր Յիսուս։

---

1 Ջնջված են «Ժ» տասնավորը, Յակոբ կաթողիկոսի և Լևոն արքայորդու անունները։ Վերջին երկուսը հետագայում իրավացիորեն վերականգնել են իսկ «Ժ» տասնավորը՝ ոչ, ուստի ձեռագիրը ցուցակներում համարվել է 1258 թ. գրված։ Ուղղում ենք թյուրիմացությունը և ավելացնում տասնավորը։

## 296

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԴԱՆԻԷԼԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

*Երևան 4834 (1296 թ.)*

*Հեղինակ՝* Վարդան Արեւելցի
*Վայր՝* Խոր-Վիրապ և Աղչոց վանք

ա

168ա *Մերձաւորք մեր և եղբարք և որդեակք յաւժարեցին զհեռաւորութիւնս մեր մերձ տանել մերձաւորաց Հոգւոյն Աստուծոյ, և զտկարութիւնս մեր ղաւրացուցանել Տերամբ զաւրացելովքն, և զհիւանդութիւնս մեր բժշկել վարժեցելովքն ի բժշկապետէն Յիսուսի Աստուծոյ մերոյ, յորոց մի է քաւիչ եղբայրն մեր* Գրիգոր *վարդապետն* Սանահնեցի *և այլք ընդ նմա, որք կամեցան վաստակել մեզ մեծ յուսով ի բաղձալին ամենսուրբ Հոգոյ և ի ցանկալին հոգեղէն զուարթնոցն՝ ի յարդար և ի մեծն Դանիէլ, առաջնորդ ունելով և ճրագ ճանապարհի զաստուածընկալ լուսաւորիչքն այսմ մատէնի, զսքանչելի Ասորին* զԵփրեմ, *և* զՀիպողիտա *Հռոմա* *հայրապետ, և զարդ ու զաւակն Հայաստանեայցս եկեղեցոյ՝ զպսակեալն* Ստեփանոս Սիւնեա(ց), *առընթեր միմեանց դնել զաստ և անդ դտեալ բանս նոցա, զառնելով վաստակ զուսումնասէրսն, որ զան զհետ մեր։ Եւ է ղի ի յարձակմանէ նշուլից լուսոյ նոցա տեսցուք ինչ, և դիցուք ի փառս Աստուծոյ, և ի զուարճացումն զարմիցդ Սիոնն և ի յոյս քաւութեան դժուարալուաց իմոցն մեղաց։*

Բ

211բ *Եւ ինձ իսկ անարժանիս եղև բաղձալի փոքր ինչ վաստակել‖ի բանս նորա, ղսրբոցն խաւսս, վասն գրոց նորայ դնել առ իրեարս, յորոց շատ մնացեալ լինի ի յոլով հոգւոց իմոց և ի ցնորից, և զոր չէին առեալ ի մեկնութիւն՝ յայնց բանից դնէաք լուծմունս, և շատս թողուաք վասն ձանձրանալոյ, զբնաբանն չգրելով։*

*Եւ յաղագս ամենեցունց երկրնպեմ և խնդրեմ ներումն և թողութիւն և ողորմութիւն յԱստուծոյ, և իւրմէն, և ի սուրբ հրեշտակաց, և եղբարցդ, և յորդոցդ. որք պատահէք, չբարկանալ մերում համարձակութեանս, պատճառ ունելով մեր զյոյսն և զսէրն, որ առ Աստուած ի սուրբսն իւր Աստուծոյ, որ միայն յԱստուած նայելով, և ի մեզ բարի կամաւք հաստամք սրբիլ և հաճոյ երևիլ Աստուծոյ և սուրբ եկեղեցոյ ամաւթովս և անհաճոյս, որքան յինէն է։ Այլ և եղբայրն* Գրիգոր *վարդապետն* Սանահնեցին *շատ հարկեաց և աճեցոյց զյոյսն իմ ի Քրիստոս և ի Դանիէլ, որ զայն աստուածաբանեաց և կանխաւ գուշակեաց կրելով զնա անարատ ոգոյն։*

*Եւ սկսաք ՉԺԶ (1267) թուին, ի* Սուրբ Վիրապին, *և կատարեցաւ ՉԺԷ (1268), առաջի սուրբ և փառաւորեալ նահատակիս Սուրբ Ստեփանոսի, ի սուրբ ուխտս* Աղչոց վանիցս, *յառաջնորդութեան* Երեմիա *գովելի ապընչակնիս, և գոհանալի եղբարց։*

*Աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի ղպատահեալսդ, ներել սխալանացն մեր յամենայն իրս և ի գիրս յայս, և խնդրել յԱստուծոյ մեզ ողորմութիւն և թողութիւն մեղաց, և ամենայն երախտաւոր պարոնացն*
212ա **Սադունին,||Սմբատա, Քրդին, Պռաշայ,** *և ամենայն բնակչաց երկրիս, և եղբաւր իմոյ* **Ներսէս** *վարդապետին, որ և գնա աշխատեցաք ի գիրս, և աւրհնեալ է Քրիստոս Աստուած ի սուրբս իւր և յարարածս ի բոլոր և ի մասնաւորսն, ընդ Հաւր և ամենասուրբ Հոգւոյն յաւիտեանս, ամէն։*

## 297

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ճանիկյան, Հնութիւնք Ակնայ, էջ 89—90*

*Գրիչ՝* **Գրիգոր**
*Վայր՝* **Երուսաղեմ**

**ա**

*Ես նուաստ* **Գրիգորս**՝ *անարժանս և անպիտանս յամենայնի, տեսի զաստուածախօս Աւետարանս Քրիստոսի, զի էր բժիշկ ամէն ցաւի։ Գրեցաւ ի թուին ՉԺԷ (1268), ի թագաւորութեան Հայոց* **Հեթմոյ** *ծերի, և ի կաթողիկոսութեանն տեառն* **Յակոբայ**, *որ է դրած ի յայսմ ամի, ի նեղ և ի յանձուկ ժամանակի, զի յայսմ ամի ազատեցաւ ի ծառայութենէ* **Լևոն** *որդի թագաւորի...**

**բ**

*Կազմող՝* **Առաքել Հնազանդենց**

*Թուականն է ՉԺԷ (1268)։*

## 298

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 234 (1258 թ.)*

*Կազմող՝* **Առաքել Հնազանդենց**

300բ *Ո՜վ զմեղաւք դատապարտեալ կազմաւղ սորա* **զԱռաքել Հնազանդենց**, *և զծնաւղսն իմ, և զհարազատսն իմ* **զԿարապետ** *քահանայ և* **զՊաւղոս** *սարկաւագ, և զուսուցիչն իմ* **զՍարգիս** *քահանա, զհանգուցեալսըն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր։*
*Ի թւին ՉԺԷ (1268)։*

---

* Ճանիկյանը գրում է. «Կը հիշեն ի Ս. Երուսաղէմ գրուիլն ի յիշատակ իւր, ծնողացն և նախնեացն»։

## 299

### ՀԱՒԱՔԱԾՈՒ

*Տիրայր վրդ. Ցուցակ Օքսֆորդի, էջ 349 (1585 Թ.) Տիրայր վարդապետ Ցուցակ (անտիպ)։*

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Հռոմ

169ա Այս գրոցս աւրինակն գրած է ի Հռոմ քաղաքն, առ գրան սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, ձեռամբ Թորոս անուն գրակրի. Աստուած թողցէ ղյանցանս իւր, ամէն։

Եւ գրեալ էր ի թիւ Հայոց ՉԺԷ (1268)։

## 300

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երեւան 142*

*Գրիչ՝* Մարգարէ
*Վայր՝* Հռոմ

ա

*Փառք ամենասուրբ երրորդութեանն, Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից և յանսպառ յաւիտեանս, ամէն, ամէն, ամէն։*

325ա *Ի յամի եաւթն հարիւրերորդի, ութ և տասներորդի (1269) թըւականութեանս Հա[յ]ոց տոմարիս, յորում ժամանակի հովըւէր զուղղափառութիւն հաւատոյս քրիստոնեութեան վերադիտողական իշխանութեամբ ճշմարիտ աթոռակալ Լուսաւորչին մերո տէր* Յակոբոս, *աստանօր յանդ ելեալ կատարեցաւ աստուածախօս մատեանս ի մեծամասնեան բարժնի մասին* Եւրոպիոյն, *ի նահանգիս յ*Իտալական, *ի գերահռչակ և յականաւոր մայրաքաղաքիս* Հռոմ, *ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս վսամապատիւ և վեհ անուանի /// կալի* վերնումն Երուսաղէմի Պետրոսի՝ վիմիս հաւատոյ և տիեզերալոյս և համատարած հօրս բարեխնամի, անօթոյս ընտրութեան սուրբ առաքելոյս Պօղոսի, ի* Հանգստարանիս Հայոց, *որ է շինեալ ի բազում աշխատութեանց յոլովից աղքատաց և փարթամաց, և ամենայն ոք, որ եկեալ է ի յերկիրպագութիւն Սուրբ Առաքելոցս ինքնայօժար կամաւ ձեռնտու եղեալ է արդեամբք ի շինութիւն Տանս, որ շատ և որ պակաս, ըստ իւրում կարի, որոց ամենեցունց Տէրն ամենակալ և ամենառատն ի բարի պարգեւս, հարիւրապատիկ, հազարապատիկ և բիւրապատիկ հատուցումն արասցէ ի յարքայութեանն իւրում։ Նոցայ որ*
325բ *առաշագոյն աշխատեալ են ի Տունս, զի ոմանք‖ի յանցանէ, որ յառաջագոյն աշխատեալ են, հանգեալ են ի Քրիստոս, և ոմանք գնացեալ յաշխարհն իւրեանց, որոց ամենեցուն Քրիստոս Աստուած առհասարակ ողորմեսցի։ Եւ որք ի յայժմու ներկաիս բնակեալ են ի Տունս, փառազըւարճ քահանայք, անբիծք և անարատք, բարեշուք ծերունիքն* Գրիգորն *և* Առաքելն, *և սոքա ևս որ մանկական տիօք արիանան ընդդէմ բազմահնար ախտիցն Բելիարայ՝* Ստեփաննոսն, *և* Կարապետն, Խաչատուրն, *և* Յովհաննէսն, Թորոսն, *և* Եղիազարն, *և* Վարդան Արևելցին:

---

* *Սկզբից քերված է բառի կեսը։*

Այլև արիական ճգնաւորքս՝ բարձողք խաչին Քրիստոսի և հետևողք լուսաշաւիղ ճանապարհացն Տեառն Աղեկանուն և Կոստընդին, Սարգիս Սուրբմարեցի և Ստեփաննոս Խլաթեցի, Կիւրակոս և Ներսէս, Տիրատուր և Խաչերն, Յովաննէս Արեմտցի և Փոքր Խաչերն, Արեիկն և Վասիլն, Կոստընդին Պրնիկ, Վարդան փոնավառն, և այլ Գրիգորի Ուծնացոյ, և Գրիգոր Կիպիկեցի, Պօղոսի, և Պետրոսի Երկայնոյ, Ստեփաննոսի, և Աւետեացն, Յովհան, և Յովհանէս, Սիրուն կօշկարն, և Գրիգոր Արեմրտցի, Գրիգորի և Կարապետի: Սոքա են բնակիչք Տանս ի յայժմուս, որք թողեալ զաշխարհ իւրեանց և զազգ, զտունս և զհայրենիս, եկեալ պանդխտանեան ի դուռն սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, և ակն ունին յուսոյն յաւիտենից և անապատում հանգստեանն։

Իսկ հանդերձ այսոքիւք և կանայք պատւականք, և պարկեշտ պառաւունք կան բնակեալ ի Տունս, աղքատ և աղքատացեալք վասն Քրիստոսի, գետնախշտիք և պահակացք, այլև կան ոմանք ի սոցանէ կուսութեամբ նահատակեալք, և այլ որք պարկեշտաբար ամուսնացեալք ի կենցաղս, յետո հետևեցան վերնական յուսոյն և ակն ունին հանգստեանն արդարոց։

Արդ Տէրն ամենակալ, Հայրն բարեաց Աստուածն ողորմութեան և Տէրն գթութեան, որ առատն է ի տուրս և շնորհն ի ձիրս առատապէս հեղցէ զողորմութիւն իւր ի վերայ ամենեցուն, որ ի յայս Տունս են աշխատէալ առաջնոցն և միջնոցն և վերջնոցս, որ շատ է աշխատեալ և որ փոքր, որ շատ է ընծայաբեր լեալ արդեամբք և որ պակաս, ամենեցուն առհասարակ ողորմեսցի ողորմածն Աստուած, կենդանեաց և մեռելոց, եկաց և բնակաց, քահանայից և սարկաւագաց, միանձանց և կրօնաւորաց, աշխարհականաց և պառաւանաց, ցօղ ողորմութեանն Աստուծոյ իջցէ ի յոսկերս մեռելոցն, որ ի յայսմ քաւարանի ննջեցեալք են, Հոգին
326ա Աստուած հանգիցէ ի հոգիս նոցա, կամք ամենակալին||Աստուծոյ կամեսցի, որդին միածին զաջս նոցա ըմբռնեալ ասասցէ. Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ի սկզբանէ զարքայութիւնն, ոչ միայն այնոցիկ, որ ի յայսմ քաւարանի են ննջեցեալք, այլ և ամենայն հայադաւան ննջեցելոցն տացէ Տէր Աստուած զնոյն հանգիստն։

Այլ և ձեր աղաւթիւք, և բարեխօսութեամբ Սուրբ Աստուածածնին և սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի և ամենայն սրբոց՝ երկնաւորաց և երկրաւորաց, և Սրբոյ Յովաննու Կարապետին ՝խաղաղութիւն տացէ մերում աշխարհին, և աղատեսցէ ի ծառայութենէ այլասեռիցն, կազդուրեսցուսցէ, կարողացուսցէ և հաստահիմն արասցէ, և զբնակիչք Տանս Հռոմայ օրհնեսցէ բարեգութն Աստուած, զքահանայսն ընդ առաքեալսն դասեսցէ, միանձունսն ընդ ճգնաւորսն հանգուսցէ, և զպառաւունսն ընդ սուրբ և ընդ եղաբեր կանանցն պսակեսցէ։ Եւս առաւել բարի պարգևս պարգ[և]եսցէ Քրիստոս Աստուած Վարդանայ, և իւր ծնողացն՝ հօր և մօրն, զի՞ բազում աշխատեցաւ ի յեփել կերակուր և տալով մեզ շատ քացախ, որում տացէ Տէր Յիսուս քաղցրն՝ զքաղցրաճաշակ կերակուրն և զուրախարար հանգիստն, և եղիցի օրհնեալ յաւիտեան։

Իսկ ես՝ բազմավրդովս **Մարգարէս**, որ աշխատեալ ծրպըտեցի զգիրս
զայս ի խնդրոյ եղբօրն մերոյ **Կարապետին**, անարատ և անբիծ քահա-
նային, ի վախըս անձանց մերոց և ի յիշատակ հոգոց մերոց։ Արդ ես՝
տառապեալս **Մարգարէս**, անպէտս և անպիտանս, տարտամս և աղ-
կաղկս, ապիկարս և թարմատարս, ամոթալիս և եղեռնագործս, չարս ի
չարեաց ե ատելի ատեցեալս, որ բարիս ոչ գործեցի և ի չարեաց ոչ
հեռացա, զո՞րս յիշեցից և կամ զո՞րս գրեցից ի չար և անյիշելի գործոց
իմոց, զի անհնար և անհամար են չարիքն իմ, և երբեք ընդ գրով և ընդ
թըւով ոչ ես անկանին։ Եւ ահա կամ տարակուսեալ, զի թէ գրեցից զբազ-
մութիւն չարեաց իմոց բազում նիւթք մագաղաթեայք պէտք են, որ բառ-
նան զյոլովութիւն եղեռնագործիս։ Եւ ահաւասիկ յիշեցուցանեմ ձեզ
սրբոցդ և սրբազանիցդ, հարցդ և եղբարցդ, թեպէտ և չեմ արժանի
որդիութեան և եղբայրութեան ձերոյ, բայց սակայն ունիմ զծնունդ սուրբ
աւազանին ընդ ձեզ և զդաւանութիւն և զհաւատս ուղեղս ի Սուրբ Երրոր-
դութիւնն, ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին, և յուսամ ի Տէր, զի թերևս
գտայց և ես ողորմութիւն ի բարեգութ Տեառնէն, զի նա ողորմած է։ Զի
թէ յիշեմ զմտացս չարութիւն՝ գործոցն յառաջ են, քան զխորհրդոյս, և
326բ թէ յիշ||եմ զտեսութեանցս զսխալանս, լսելեացս արգել անկանին մե-
ղանք, և թէ յիշեցից զճաշակելեացս, շաւշափելեացս՝ գարշութիւնք կոււ-
տին յոլովք, զի ահաւասիկ երկու անըմբռնելի գազանքն, ձայն տըւեալ
միմեանց, սրտմտականն և ցանկականն ի մէջ առեալ, զեղկելի հոգիս
փիշադէշ պատառեցին, խոցեցին, վիրաւորեցին, գանալից արարին զմի-
մեամբք ելեել առնելով, զի թերևս ամենևին սպառեսցեն զփրկութեան
յոյս հոգոյս։ Վասն զի սրտմտականն ի կողմն եղեալ, մռմռացեալ իբրև
զառիւծ և իբրև զարջ նետահար անողորմ և չարաչար՝ պատառէ զհոգիս։
Միայն զսա գտեալ ի բարի գործոց, չարաչար խոցոտեաց, պատառեաց,
գանալիր արար, և ոչ այնու շատացեալ, այլ հանեալ արտաքս ի գաւթէ
հօտից՝ ի դաշտ անուղաութեան ձըգեալ իւր չարութեամբն երբեմն խա-
ծատէ, երբեմն զարհուրեցուցանէ, երբեմն ըմբռնեալ ժանեաւքն իւրովք
ի քարշ տանի ընդ երկիր և ընդ աղբ թաւալեցուցանէ, զեղկելիս։ Եւ զայս
ոչ է թէ իւրով ուժովն առնէ, այլ իմով կամակցութեամբ, զի զոր Տէրն և
ստեղծողն Աստուած սահմանեալ է զսրտնութիւնն ի յէութիւն հոգոյս,
որովք ի բաց հալածեցից զչարութեան արկածս բանսարկըւին, զնա ես
ինքնին ինձ նպաստ կորստեան իմում արարի, ոչ միայն թէ չբարկացայ
եղբօրն, այլ և կամօք իմովք սպանի զնայ և չարագէշ լեզըաւս խոցոտեցի
զեղբայրն, զոմն ի խորհուրդս բամբասեցի, զոմն յայտնապէս հայհոյե-
ցի, զոմն նախատանօք ձաղեցի, զոմն չարեաւք տուժեցի՝ յիմար կոչելով,
զորս պարտ էր փառաւորել՝ ես անարգեցի, զորս պարտ էր հանգուցա-
նել՝ ես դժարացուցի, զորս պարտ էր ուրախացուցանել՝ ես տրտմեցու-
ցի, զորս պարտ էր դարմանել՝ ես հալածեցի, զորս պարտ էր ժողովել՝
ես արտաքս հանի, զսրտնութիւնն ի կիր արկի ընդդէմ բարեացն, զոր
արժանի էր ընդդէմ չարեացն առնել, ես արարի ընդ եղբարսն, զոմանս
խորհրդով սպանի, զոմանս կամօք, որոց ոչ էի ձեռնահաս՝ զայնոսիկ
յօժարութեամբ դրժեցի։

Իսկ ցանկականն գազան եղեալ ի ճագատ հանդիսիս, առեալ իւր
զորաւիգն և զօրս հեծելոց զնախանձն և զատելութիւն, որովք զօրաժողով
արարեալք մեծաւ հանդիսիւ դիմեցին հանդիսիւմ իւրեանց և 'սայրասուր
զինուքն ի վերա մերկ հոգույս, և գոռոզաբար ճոխանաին ի վերա յաղ-.
թութեանն իւրեանց, և խնդաին, խայտաին և ուրախ լինէին ընդ կորուս-
տըն իմ, զի ոմն առեալ զհաշտէնն իւր՝ մերձ ընդ մերձ մխէ ի կողս, և
327ա ոմն առեալ զվաղակաւորն երկսայրի՝ ցըցէ ճոխ‖արար ի յանպատսպար
սրտիս, և ոմն առեալ զաղեղն, արտաքո կացեալ և ի հեռաստանէ նետա-
հարէ զրոլոր մարմինս և զհոգիս, և այլք առեալ զբազմահնար և դժւա-
րաբեռն պելետկինին, զոր ի մերում գաւառին լախտ անըւանէն, և յայլ·
տեղիս սաղեխ, և այլք մահակ՝ ի մաւտ եկեալ անողորմն ծեծեն և վիրա-
վորեն զգլուխս բովանդակ։

Եւ այսոքիկ ոչ եթէ բանսարկըւին արարք, այլ իմոց յաւժարութեանցս
և կամացս, վասն զի զայն ցանկութեան մասն, զոր սահմանեալ է արա-
րիչն ի կենդանութեան ոգոյս, ես առեալ ի խոտորնակն դարձուցի, և սի-.
րեցի ամենևին զաղտեղութիւն, զի ահաւասիկ ցանկացա ի յայլադենս և
ի յայլասեռս, զի ոչ եթէ ի բնականան տարփացայ, այլև ի յանբանա-
կանս, զի շնացի ընդ շրոյ, և ընդ քարի, ընդ փայտի և ընդ երկրի, ընդ
հրոյ և ընդ ջրոյ; Եւ ոչ եթէ ի տարերս միայն պղծեցա և պղծեցի, այլ և ի
ծնունդս սոցին, զի զաչս զայս զոր սահմանեաց արարիչն ի տես արբու-
թեան, ես դարձուցի ի տես արատոյ, վասնզի տեսանելով զվաեղչութիւն
կենցաղոյս ամենեցուն, ցանկացա, տեսի զվաելուրշ գեղ ոսկոյ և զար-
ծաթո և զգունագոյն հանդերձից և յօժարեցայ, տեսի զաստուածաշնորհ
գեղեցկութիւն կանանց, և սիրեցի զհաելն զտիպ գեղաղեշ մանկանց և
տարփացա, պղծեցայ, աղտեղացա, զազրացա ի հոգիս, այլայլ<ել>ե-
ցա, մտօք զազրածա, շաւշափելեաւքս աղտեղացա, ճաշակելեաւքս պոռ-
ընկեցա, լսելեաւքս գարշեցա, շաւշափելեաւքս ամենևին ի մուտս մեղաց՝
ընթացա, ատարացա, հեռացա ի յօրինացն Աստուծոյ։

Արդ զայսքանս և զայսպիսի նետահարեալս և հաշտենախոցս, տի-
գահարս և վաղակավիրաւորս, մահակածեծս և անդամ-անդամ յօշածս,
վիրաւոր և խղխայթեալ ոգիս, լալով և արտասըւաթոր աչօք անկանիմ
առաջի ամէնախնամ և բարէգութ Տեառնն հօրն ամէնակալի, և Որդոյն
միածնի և ամենասուրբ Հոգոյն, մաղթեմ, աղաչեմ և խնդրեմ, զի կամե-
ցեալ ողորմեսցի և գթացեալ կեցուսցէ։ Մի հանեսցէ ի մեղսաթաւալ
անձնս դատնութեամբ, այլ քաղցրութեամբ գթասցի, և գթութեամբ քա-
ւեսցէ, ջնջեսցէ զձեռագիր յանցանացս, մաքրեսցէ զաղտեղութիւն հոգոյս,
սպիտակափայլ գունեցուսցէ ղսևացեալ թխացեալս, սրսկեսցէ զամենա-
մաքուր արիւնն իւր սուրբ, տացէ կերակուր զկենեղուտ և զկեցուցիչ մար-
մինն իւր, զորս կերեալ և արբեալ արտաքս փախեցից, զամենայն չա-
րութիւն զխորհըրդոց և զկամաց, զգործելեաց և զանդործելեաց, զկա-
327բ մաց և զակամաից, զմտաց և զբանից‖և վերաթռիչ բարձրացայց ամ-
պեղէն կառօք, ելից ի բարձունս ընդառաջ փեսային և հարսինն, և ճո-
խացայց ի պանծալի հարսանիսն, և գոհանալով փառավորեցից զՀայր և
զՈրդի և զՍուրբ զհոգին այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն,
ամէն։

Յիշեալ լիցին կամօք բարերարին Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ բարեսէր քրիստոնեայքն, որ տան մեղ կերակուր հացի, տացէ նոցա Տէր Աստուած զկենաց հացն և զանմահութեան ճաշակն, բարեխաւսութեամբ ամենայն սրբոց և եղիցի նոցա մասն և վիճակ ընդ ամենայն Սուրբս, ամէն։

Արդ, յայմհետէ և յաւիտեանս ժամանակաց օրհնեալ Հայրն ամէնակալ, Որդին միածին և Հոգին ճշմարիտ, յաւիտեան ե յաւիտեանս յաւիտեանս։

Բ

26ա Վարդան եղբայր մեզ* երետ, Տէր Յիսուս տացէ նմա զանմահական բաժակն և զմայլեցուսցէ զնա ի իւր կենարար սեղանն։

Գ

71ա Սաստիկ ծուռ էր օրինակն և ըսխալ։

Դ

Կազմող՝ Կոստընդին

60բ Զմեղապա[ր]տ կազմող գրոցս զԿոստընդին սարկաւագ յիշեսջիք ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 301

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ, 152, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 656—657

Գրիչ՝ Կոստանդին Հռէփսիմեցի
Վայր՝ Մայրն քաղաքից (Սիս)

ա

373ա Փառք, որ էն և է և եղիցի յաւէտ, Հաւր և Որդւոյ և Սուրբ Հո՜գոյ։ Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվին Հայոց ՉԺԸ (1269), ի փետրուարի ի վեցն, ձեռամբ Կոստանդին Հռէփսիմեցո:

Բ

376ա Գրեցաւ ի թուին Հայկազնէից՝
Եւթանց հարիւր լեալ ամեից
Եւս ութուտասն ընդ նոյն ի կից (1269),
Ի փետրվար ամսոյ վեցից,
Ի գաւառիս Կիլիկիոյ,
Մայր քաղաքաց հանուրց [Հայո՞յ]**,

* Հաջորդ բառը բաց է թողել։

** Հավանաբար դրված է եղել «Մայր քաղաքաց հանուրց Հայոյ», որ չեն ընդունել և հետագայում ջնջել են։ Այս քառատողը գրված է ստորին լուսանցքում, նույն գրչի ձեռքով, բայց ավելի մանր գրությամբ։

Ընդ Յովաննաւ յոյժ Սրբուհոյ
Հռեփսիմէից սքանչելոյ։
Դարձեալ մաղթեմ զձեզ կրկնակի
Յիշել յաւէտ ի Տէր բարի,
Զիս Կոստանդին Հռէփսիմեցի
Եւ Շահանդուխտն իմ տիրուհի։
Ընդ նոյն զմաքուր և գովելի
Թէոդոս հայրն իմ ցանկալի,
Եւ զերիցկինն իւր հրաշալի,
Զմայրն իմ Խելաւէ ընտրեալ յերկրի։
Եւ զԽաչատուր հայր մայրենի,
Եւ զՅոհաննէս հայր հայրենի,
Նոցին և քերցն իմ Զապիլի
Եւ Հռէփսիմէ այլ և Սպիլի։
Եւ եղբաւր մեր տէր Թորոսի,
'Ի իւր տիրուհոյն Թեֆանաի,
Եւ որդոյն մեր Թեադոսի

. . . . . . . . . . . .*

Այլ և հանուր իմոյ սեռի,
Զորս անուամբ որ շարադրեցի,
Որք են մեռեալք և կենդանի,
Կան դեռ յայժմուս 'ւ որք գան զկընի։
Եւ բովանդակ ամենայնի
Դաւանողացն Քրիստոսի,
Որք են ննջեալք, 'ւ որք յաշխարհի,
Են և լինին մինչ յաւր վերջի։
Զի ամենից ողորմեսցի,
Տէր և Աստուած Իսրայէլի,
Եւ յիշողացդ իսկ այսպիսի,
Զեզ բիւրապէս վայելս տացի.
Երգել ըզփառս անլռելի,
Երրորդութեանն անճառելի։

* Մի տող եղծված է։

** Հետագայում 380ա-ում նորոգրված է «Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվին Հայոց ՉԺԸ (1269) ի փետրվար վեց», որին հաջորդում են քսաներկու անուններ. ամեն մեկը սկսվում է «Աստուած ողորմիով»։

## 302

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երուսաղէմ Պողարյան, Ցուցակ Ա, էջ 260 (1439 թ.)

Խմբագրող՝ Կիրակոս Արևելցի
Վայր՝ Սիս

1183բ Յասուն Աստուծոյ և սիրով սրբոց նորա՝ նուաստ ոգի Կիրակոս վարդապետ Արեւելցի*, ի միասին հաւաքեցի զտաւն սրբոցս Աստուծոյ ըստ իւրաքանչիւր յիշատակի աւուրց, գրեցի և պատմութիւնս նոցունց, որոց ոչ էր եդեալ ի գիրս Յայսմաւուրցն, և խառնեցի ընդ նախակարգսն։ Եւ աղաչեմ զտաւնաւղսդ [և զգրաւղսդ] գրել և զայս յիշատակ բանի, զի և դուք գրեսջիք ի գիրն կենաց, և որ բառնա զմերս՝ ջնջեսցի և ինքն ի զըրպրութենէն կենաց։

Եւ եղեւ իրարկութիւնս այս ՉԺԸ (1269) թուականիս, յաշխարհիս Կիլիկեցւոց, ի Սիս մայրաքաղաքի, ի թագաւորութեանն Հեթմոյ, և յառաջին ամի իշխանութեան որդւոյ նորա Լեւոնի, ի ԿԶ (66) ամի կենաց պանդըխտութեան մերոյ, յորում աւարտն եղեւ ի փառս Աստուծոյ, յաւիտեանս, ամէն։

Եւ ճառք, որ յաւելաք մեք, ընդ հինն խառնեցաք՝ ՃՀ (170), անուամբն Աստուծոյ Հաւր, և շնորհաւքն Քրիստոսի Որդւոյն, և զաւրութեամբ Սուրբ Հոգւոյն, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն**։

## 303

### ԵՐԶՆԿԱՑԻ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երուսաղեմ 1925, Պողարյան, Ցուցակ Զ, էջ 413—415

Գրիչ՝ Մխիթար
Վայր՝ Երզնկա

ա

194բ Զմեղուցեալ ծառայս Աստուծոյ աղաչեմ յիշել ի Տէր, ով սուրբ եղբարք, նայեւ զծնաւղսն իմ եւ զամենայն ազգախսն իմ, եւ որ զմեզ յի-

---

* Նիկոսիայի Ցայսմաւուրքում (Ն. Ակինյան, Ցուցակ, թիւ 2, էջ 7) այստեղ ավելացված է «ի վանաց Դնտկեցի»: Ամբողջ հիշատակարանը նույնն է վերոբերյալի հետ, բացակայում է միայն վերջին պարբերությունը («Եւ ճառք, որ յաւելաք...»)։

** Ղ. Ալիշանը սույն հիշատակարանը բերելուց հետո «Հայապատումում» (էջ 47, ծթ. 3) գրում է «Ուրիշ Յիշատակարանէ մը կիմանանք, որ իբր 17 տարի առաջ ավելցուցեր է Կերակոս հին Յայսմաւուրաց վրա 112 նոր բան, ի վանքն Կողա, Մեծ Հայոց Տայք գաւառի մէջ և իրեն օգնել են Վահրամ և Ստեփանոս անուամբ քահանայքն»։ Ակնարկված է 1253 թվականի հիշատակարանը, բայց այլ տեղանվամբ։ Չի համընկնում նաև տարիների քանակը, ուր նկատելի է ժե և ժէ թվականների շփոթը։ Կիրակոսը երկու անգամ է անդրադարձել Յայսմաւուրքին, առաջին անգամ 1253 թ. և ավելացրել է 112, իսկ երկրորդ անգամ, 1269 թ. ավելացրել է 58 (170—112) ճառ-միավոր։

*շեսցէ՝ Աստուած զինքն յիշեսցէ յիւր արքայութիւնն, եւ Քրիստոսի փառք յաւիտեանս, ամմէն։*

*Աւաղ աշխատանացս, զի աւրինակերս խիստ անհեթեթ են։*

**Բ**

*248բ Զմեղաւք դատապարտեալ ծառայս Աստուծոյ զՄխիթար աղաչեմ յիշել ի Տէր և ղծնաւղսն իմ, ո՛վ սուրբ եղբարք, աղաչեմ։ Եւ Աստուած զձեզ յիշեսցէ յիւր ողորմութիւնն։*

**Գ**

*307բ Զսուրբն սարսռալի անոպաիցն հատանող, յերեւել հրալի փայլակնաբորբոք աներեկ ուսուրն անցո ամենակեցոյց Փրկիչ, ի Մխիթարայ եղկելի դծաւղէ սորա, եւ ի ծնաւղաց իւրոց եւ յամենայն հաւատացելոց, խնդրուածովք սուրբ մարգարէին Դաւթի, ամմէն։*

**Դ**

*358բ Զմեղաւք դատապարտեալ ծառայս Աստուծոյ զեղկելի գծաւղ սորին աղաչեմ յիշել ի Տէր, նայեւ ղծնաւղսն իմ եւ զամենայն հաւատացեալս Սրբոյ Երրորդութեանն, եւ Աստուած զձեզ յիշեսցէ յիւր անսպառ բարիս, եւ նմա փառք յաւիտեանս, ամմէն։*

**Ե**

*395բ Բազում վնաս եւ սղալանք լինի գրոյս ի նեղութենէ վշտաց լուի եւ քնոյ, որ տանջէ։*

**Զ**

Գրիչ՝ Յակովբոս

*426ա ԶՅակովբոս գծաւղ սորին՝ զտււտանուն կրանաւոր, և զհոգեւոր եղբայրն իմ զՄխիթար՝ սրբասէր կրանաւոր, աղաչեմ յիշել ի Տէր, ո՛վ սուրբ եղբարք։*

**Է**

*464ա Ընդ նմին եւ զիս զմեղուցեալ ծառայս Յիսուսի Քրիստոսի զՅակովբոս գրիչ աղաչեմ յիշել ի Տէր։*

**Ը**

*535 Տուր զաւրութիւն ձեռին իմոյ հասանել ի վերջին գիծ գրոյս, զի ի փառս քո կատարի, եւ կարողութիւն քո է, Տէր իմ Յիսուս, փառք քեզ։*

**Թ**

*1129բ Զմեղաւք դատապարտեալ ծառայս Աստուծոյ, զանարհեստ եւ զանպիտան գրիչս Յակովբոս, աղաչեմ յիշել ի Տէր, եւ չլինել մեղադիր, ո՛վ աստուածասէր ընթերցողք։*

ԺԱ

1133ր ԶՅակով[բ]ոս անպիտան եւ զսուտանուն կրաւնաւոր և զանարհեստ գծաւղ սորին աղաչեմ յիշել ի Տէր, եւ զհոգեւոր եղբայրն իմ զՄխիթար:

ԺԱ

1162բ Զծառայս ամենայն ծառայից Աստուծոյ, զՅակովբոս սուտանուն կրաւնաւոր և անարհեստ գծաւղ, եւ զհոգեւոր եղբայրն զՄխիթար, աղաչեմ յիշել ի Տէր, եւ որք յիշէքդ սրտի մտաւք, եւ դուք յիշեսջիք առաջի գենլոյն Քրիստոսի։ Յիշեսջիք եւ զՄխիթրուկ դպիրն որ զթուղթս կոկեաց բազում աշխատութեամբ, եւ յաւժարութեամբ սրտիւ

ԺԲ

Գրիչ՝ Մովսէս

580 Աւրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւնն, Հայր եւ Որդի և Հոգին Սուրբ, այժմ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն, որ արժանի արար զանարժան ծառայս իւր հասանել ի վերջին գիծ գրոյս, քանզի յոյժ դիւրին է ամենակալին Աստուծոյ շնորհել առատապէս զպարգեւս իւր հաւատով խնդրողաց ի նմանէ, ի թուականիս Հայոց ՉԺԸ (1269)։

Արդ, գրեցաւ պրակս աստուածային սուրբ մարգարէին Եսայեա հրամանաւ եւ արդեամբք տեառն Սարգսի սրբասէր եւ արհիական եպիսկոպոսի, եւ նորին հարազատ որդւոյ՝ աստուածասէր եւ քրիստոսապահ իշխանին պարոն Յոհաննէսի, ի վարժումն անձին իւրոյ եւ ի պէտս սրբրոյ եկեղեցւոյ, եւ ի խրատ աստուածատուր եւ դեռաբոյս զաւակաց իւրոց՝ Ներսէսի եւ Գրիգորէսի:

Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ, աղաչեմ յիշել ի Տէր զստացաւղ գրոյս զպարոն Յոհաննէս եւ զամենայն մերձակայս իւր, ընդ նմին եւ զՄովսէս գրողս։

ԺԳ

583 Ի թուիս Հայոց ՉԺԹ, (1270) յամսեանս փետրուարի Ա [1] պարոն Ալէքսն փոխեցաւ առ Քրիստոս, զոր Տէր Աստուած յարութիւն կենաց շնորհեսցէ նմա, ամէն։

ԺԴ

645ա Ո՜վ սուրբ եղբայր, զմեղուցեալ գրիչս աղաչեմ յիշել ի Տէր, եւ խոշորութեան գրիս եւ սխալանացն ոչ լինել մեղադիր։

ԺԵ

662բ Զստացող սրբոյ մատենիս զՊարոն Յոհաննէս յիշեա։

ԺԶ

665բ Տէր Աստուած, ագնեա բարեպաշտ իշխանին պարոն Յոհաննէսին, եւ աստուածատուր զաւակաց իւրոց, եւ համաւրէն զարմից իւրոց կենդանութիւն շնորհեա։

ԺԷ

669ա *Զամենըրչանիկ եւ զսրբասէր եպիսկոպոսն մեր զտէր* Սարգիս, *հանդերձ քրիստոսահաճոյ որդւովն իւրով պարոն* Յոհաննիսիւն, *յիշեսջիք ի Տէր, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցւոյ։*

ԺԸ

684ա *Գրեցաւ Մարգարէութիւն երկոտասան մարգարէիցն ի թուիս Հայոց ՉԺԸ (1269), յամսեանս քաղոց, եւ ի Յունաց՝ ի մայիս ԻԴ (24)։*

ԺԹ

:774բ *Քրիստոս Աստուած, սուրբ տիրոջն եւ մեծ պարոնին, և իւրեանց աստուածատուր զաւակացն վայելեալ տացէ երկար ժամանակաւք, ամէն, ամէն։*

*Խոշորութեան գրոյս չմեղադրել, զի թուխթս յաննշա է։*

Ի

783 *Անիծէ Աստուած զճանճն եւ ընդ նմին զլոյն, զի յոյժ կծեն զկս, այլ եւ տաւթ աւուրս տագնապեն զիս։*

ԻԱ

810ա *Փառք արարչին ամենայն արարածոց, անմահ թագաւորին երկնաւորի, Քրիստոսի Աստուծոյ մերոյ, ամէն։*

*Զստացաւղ այսմ աստուածաշունչ տառիցս, համահաւաք կտակարանացս հնոց եւ նորոց, զառաքելաշնորհ եւ զարհիեպիսկոպոսս մեր, և զվերատեսուչ մեծի վիճակիս* Եկեղեաց *գաւառիս եւ մեծահռչակ քաղաքիս* Եզնկայիս՝ *զտէր* Սարգիս, *եւ զաստուածասէր եւ զամենիմաստուն իշխանն՝ զպարոն* Յոհաննէս, *հանդերձ աստուածատուր զաւակաւք իւրովք, յիշեսջիք ի Տէր, ո՛վ պաշտաւնեայք սուրբ եկեղեցոյ։ Քանզի մեծաւ փափաքանաւք եւ ջերմեռանդն սիրով շարժեալ եղեւ ի Հոգւոյն Սրբոյ հոգիընկալ միտս սորա ժողովել ի մի վայր զամենայն տառս հոգիանուագ մարգարէիցն, եւ զՔրիստոսի Աստուծոյ մերոյ տնաւրէնութեանն զկենսաբեր քարոզութիւնն եւ զհանգամանսն, եւ զսրբոց առաքելոցն գործսն, եւ զնոցին քարոզութիւնն, եւ զտեսիլն Յոհաննու աւետարանչի՝ որ ի* Պատմոս *կղզւոջն։ Զոր Տէր Աստուած բարեխաւսութեամբ սրբոց մարգարէիցն եւ առաքել[ոցն] և ամենայն սրբոց, ժողովեսցէ զսոսա յիւր արքայութիւնն, եւ նմա փառք, յաւիտեան։*

*Այլ եւ զանպիտան գրիչս* զՄովսէս *եւ զծնողսն իմ աղաչեմ յիշել ի Տէր, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցւոյ, եւ Քրիստոս զձեզ յիշեսցէ։ Յիշեա ի Տէր։*

---

* *1178ա էջում պահպանվել է հետագա ստացող Մարգարե վարդապետի հետաքրքիր, անթվական հիշատակարանը. բերում ենք ամբողջությամբ. «Զվերջին ստացողս Սուրբ Գրոցս*

## 304

## ԱԻԵՏԱՐԱՆ

Վենետիկ 111, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 494—496

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Մաշկևոր և Անդրեասանց վանք

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն յաւիտեան յաւիտենից, ամէն։ Գրեցաւ սուրբ Աւետարանս որ է հրամանք փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, ամէն։ Փառք եռաՀիւսակ եզակի, անբաժին և անորիշ միասնական Սուրբ Եր-

---

Աստուածաշնչիս եւ ծաղկաւէտ բուրաստանիս աստուածային տառիս զՄարգարէ, վարդապետն եւ զծնաւղս իմ զՍտեփանոս քահանայ, եւ զմայր իմ զՀռիփսիմէ, եւ զեղբայրն իմ զՍանուկ երէցն եւ զդեռաբոյս որդին իւր զԱլիկսիանոսն, որ ետուն սոքա Ը (8) ֆլորի յԱստուածաշնչիս գինն։

Արդ, ստացա զսայ ի վայելումն անձին իմոյ, եւ յիշատակ ծնողաց իմոց, եւ դէռաբոյս կրաւնաւորաց իմոց, հոգւո որդեաց իմոց Առաքելին, եւ Մա[ր]կոսին, Մեսրոպին եւ Յոհաննիսին, Սիմէոնին եւ Պետրոսին եւ Բարդուղիմ[ե]ոսին, եւ մղտեսի Փողոցին, Դ (4) ֆլորի նայ երետ ի գին գրոցս։

Արդ, աղաչեմ զամենեսեան՝ զընթերցողսդ և զաւրինակողսդ և զհանդիպողսդ Աստուածաշունչ տառիս, յիշեսջիք յաղաւթս եւ մեղաց թողութիւն խնդրեսջէք մե[ղ]սաթաւալ անձինս Մարգարէ վարդապետ, եւ ծնաւղաց իմոց, եւ Աստուած թողցէ ձեզ զանցանս ձեր, ամէն։

Եւ այսչափ գիրք է, զոր ժողովեցի ես Մարգարէ վարդապետս ի վայելումն անձին իմոյ, եւ ոչ լուա իմաստուն Սողոմոնի որ ասէ. Զգուշ լեր ի ստանալոյ զգիրս բազումս։

Նախ՝ զԱստուածաշունչս,
Երկրորդ՝ կէս Աստուածաշունչս,
Երրորդ՝ Արարածոց մեկնիչն,
Դ. Երկոտասանից Մարգարէից մեկնիչն,
Ե. Եսայու մեկնիչն,
Զ. Պաւղոսի մեկնիչն,
Է. Կաթողիկէքն, Աղաւթքն, Տեսիլն, էր ընդ եղբարս, ձեռամբ իմով գրեալ։
Ը. Բուն Լուծմունք, ձեռամբ իմով գրեալ,
Թ. Ղուկասու մեկնիչն,
Ժ. Դիոնէսիոս,
ԺԱ. Հարցողացն,
ԺԲ. Բնութեանցն,
ԺԳ. Ասացուածոց Գիրքն,
ԺԴ. Հարցմունքն,
ԺԵ. Սաղմոսի քաղուածուն,
ԺԶ. Մեր ձեռամբ գրեալ բուն Քարոզգիրքն,
ԺԷ. Փոքրն,
ԺԸ. Աւետարանին քաղուածուն եւ Յոբայ,
ԺԹ. Եսային, Առակսն եւ Պողոսն,
Ի. Պարապմանցն, Առ Որսն, Վեցաւրէիցն, եւ Տումարն, եւ Քերականն,
ԻԱ. Արտաքին քաղուածուն եւ իւր Բնաբանն, ձեռամբ իմով գրեալ,
ԻԲ. Նուրբ Դրանաց Լուծմունքն։

Այսչափ դրանք ժողովեցի եւ նստայ լռութեամբ, զի առանց հանելու լռեալ են պատասխանիքն, եւ առանց խնդրելոյ փակեալ են ողորմութիւնքն, եւ առանց դեդերողաց հեռացեալ է իմաստութիւն, ըստ այնմ հեռասցի ի խորհրդոց անմտաց։

բորդութեանն և միաբան տէրութեանն՝ Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, աւժմ և յանզրաւ յաւիտենին, ամէն։ Զաստուածապատում և զերկնածիր, զմշտընջենաբուխ, և զյաւետախաղաց շնորհս Հոգւոյն Սուրբ, եռերշանիկ սուրբ և երանելի աւետարանիչքն, և զմայլեալք անմահական բաժակաւն, կարգեցան և մատռուակք երկնահոս և կենդանաբուխ վտակացն, արբուցանելով տիեզերաց զանմահականն զայս բաժակ, որով արբեալք և անմահացեալք յաւէրժ կենդանութեամբ, ուստի և անստիւրելի պահեցին զհաւատոյ խոստովանութիւն Սուրբ Երրորդութեանն, յերիս անձնաւորութիւնս և մի բնութիւն և աստուածութիւն ընդ սերոբէսն զեռահիւսակն գեղապարեալ սրբասացութիւն։ Ի բաց կացուցանելով ի հեթանոսական բազմաստուած մոլորութենէն և ի հրէական նուազութենէ, և ընդ ուղեղն առաշնորդեալ արածելով ի դալար վայրի բնակեցուցեալ, և ի ջուրն հանգըստարար մակաղեալ. մուծանելով յանքոյթ և ի խաղաղ հանգիստն, յաստուածակերտ և յանիմանալի խորանսն՝ եզուտ և մակեղուտ գործառնութեամբ։

Արդ այսմ ամենայն բարեացս և որ նման սոցին պատճառ և առիթ են մեզ աւետարանիչքս, յեդեմական հայրաշարժ աղբիւրէն՝ քառավտակ բղխմամբ, զսեռս բանականաց, այսինքն զիմանալին սգալուվն զովացուցանելով մշտահոս վտակաւք ըստ Տեառն, թէ Որ ըմբէ ի ջրոյն զոր ես տաց, մի ծարաւեսցի յաւիտեան։

Որում և ես անպիտան կրաւ[նաւ]որս և յետին ի դասս մանկանց նոր Սիոնի՝ Ներսէս ցանկացող եղէ աստուածախաւս մատենիս, և կենսաբաշխ սուրբ Աւետարանիս, ստացա զսա ինձ և իմոցն գանձ երկնային, ճանապարհ առ Հայր մտին, բանալի կենացն դրան, այլ և վերակացու ի կենցաղումս, առաջնորդ առ մշտակայն՝վերակացու կենաց. և հանգիստ ծնողացն մեր սովաւ ի Քրիստոս փոխելոցն, և մեզ ի նոյնն հասանել, զսա ունելով պարծանս ի փառս Քրիստոսի ըստ մարգարէականն ձայնի, երանելով զունողսն զաւակ ի Սիոն, և յԵրուսաղէմ ընտանի, որ ճշմարտապէս զայս գուշակէր ի հնումն։

Բայց գրեցաւ սա ի նշա[նա]ւոր ժամանակի, վասն զի անոպա գործաւք մեր ի բարկութիւն շարժեցաք մեզ զանբարկանալին բնութիւն, քանզի շարժեալ սասանեցաւ երկիրս մեր առ հասարակ, նաև բազում գաւառք այլազգեաց. և այս ոչ ի մի ժամանակս, մինչ զի անապատացան բազում շինանիստք, քանզի դղեակն կոչեցեալ Սարաւանիքար՝ ընդ մէջ հերձեալ յերկիր կործանեցաւ՝ զամենայն բնակիչսն ծածկելով, բաց ի սակաւուց, նաև Համուսն անուանեալ զմայր սիրելի որդւովք և որ մերձ էին՝ կորոյս տարաժամ վախճանաւք։ Տաց(՞) բանիս և որ կարի վշտալին է, քանզի գերահռչակն ուխտ Արքակաղինն անուանեալ և որ ընդ վիճակաւ նորա, բազում ազաւթանոցք և մենաստանք առ հասարակ ի վայր խաղաղացին։ Եւ ան[դ էր] տեսանել արժանի ողբոց պատահումն, և լսել ականջաց դառնութիւն, վասն զի ոմանք հեծիւն, և այլք հառաչ, կէսք ի ճիչ, այլ[ք] յողբս, և ով ոք կարասցէ պատմել զանպատմելի վիշտն, որ եհաս նահանգիս Կիլիկեայ, աւերումն եկեղեցեաց, քահանայիցն կորուստ, ժողովրդոց սպառումն, և ամենայն հասակի սուգ ան-

մխիթար։ Եւ զայսոսիք մեք իսկ տեսաք աչաւք մերովք. իսկ առաջակայն Տեառն գթութեան և ողորմութեան յանձին, վասն զի յոյժ զարհուրեալ եմք։

Բայց եղև այս ի ժամանակս գարնայնոյն, յամսեանն մայիս, ի թագաւորութեան բարեպաշտ արքային Հեթմոյ, և յիշխանութեան որդոյ իւրոյ Լեւոնի, այն ինչ նորընծա ի պարոնութիւն, և ի հայրապետութեանն տեառն Յակոբայ, յորում էր թիւ տոմարին ՉԺԸ (1269)։ Արդ ի սոյն ամի եղև սկսեալ աստուածախաւս այս մատեան ի մեծանուն եղբայրանոցն Մաշկաւոր կոչեցեալ՝ առ դուռն Սուրբ Կարապետի, եւ աւարտեցաւ ի գերահռչակ ուխտս Անդրիասանց՝ մերձ յանառիկն դղեակ Բարձր անուն կոչե[ցե]ալ, յառաջնորդութեանն տեառն Սիմէոնի և այլ միաբան եղբայրութիւնս, ի դուռն մաւրս Սիոնի և կենսակիր և աստուածընկալ Սուրբ Նշանիս։

Արդ, աղաչեմ զաստուածասէր հարսդ և եղբարս, որք պատահէք սմա ընթերցմամբ կամ գաղաբար առնուլ՝ զի ի ստոյգ աւրինակէ գրեցաւ մեծաւ աշխատանաւք, յիշեցէք զվերոյասացեալ պատուական քահանայն և զիս, [ի] Քրիստոս հանգուցեալ ծնողսն մեր և զազգատոհմն և զկարևոր բարեկամսն...

Դարձեալ աղաչեմ զաստուածահաճոյ հարսդ և զքրիստոսասէր եղբարսդ, ես տառապեալ Գրիգոր նուաստ կրաւնաւորս, զի որք պատահէք աստուածաբարբառ Աւետարանիս, բարի յիշման արժանի առնէք զմեզ, և զառ Քրիստոս գնացեալ ծնողսն մեր և զեղբարս, զի և մեզ ողորմեսցի ամենաբարի Տէրն։ Իսկ թէ յաւելումն կամ պակասումն կամ խոշորութիւն գրիս՝ ոչ իցէ ըստ կամաց, խնդրեմ զի սիրով ուղղէք զթերին, քանզի այսչափ էր կար մեր, և ոչ թէ ի ծուլութենէ, մանաւանդ զի անտուն, անտեղ շրջէաք, ոչ ունելով տեղի հանգստեան։ Եւ որ զմեզ սրտի մտաւք յիշէ ի բարին, և ինքն յիշեալ լիցի յողորմութիւնն Աստուծոյ, որում փառք յաւիտեանս, ամէն։

Բ

Գրիչ՝ Հեթում-Ստեփանոս

Զնուաստ Հեթում Ստեփանոս, սպասաւոր բանին Աստուծոյ, և զծնողսն իմ յիշեցէք ի Տէր, որ զսակաւս գծեցի, ո՜վ սուրբ եղբարք իմ։

Գ

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Գլակա Վանք

Փառք Աստուծոյ անսահմանին ի բոլորից արարածոց, ամէն, ամէն։ Ես տրուպս ամենայն վանականաց Ստեփաննոս կրաւնաւոր ըստացա գնոյ արծաթոյ յարդար վաստակոց ազարակս՝ աստուածայնով առլըցեալ գանձիւ, որոյ ճարտարապետ և արարիչ Աստուած է, և աւանդեցի ի տաճար Սրբոյ Կարապետին՝ ի վանս Գլակայ՝ յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և ամենայն ազգականաց։ Ոչ ոք ունի իշխանութիւն ձեռնարկել ի հանել զսա, ոչ աւտար և ոչ ազգականաց, առաջնորդ կամ իշխա-

խանուոր մի իշխեսցէ /// և քակել զյիշատակս մեր, զի մի քակեսցի յամենաղաւր աջոյն Քրիստոսի Աստուծոյ, պատճառաւ մի ելցէ սա ի Սրբոյ Կարապետէն, և ուր հանդիպեսցի՝ մի իշխեսցեն պահել ի զատ ի Սուրբ Կարապետէն։ Եւ որ ոք զանց առնէ զբանիւք մերովք և հանել ջանա կամ զգիրս ջնջէ, ինքն ջնջեսցի ի գրոյն դպրութեան կենաց, և ընդ Կայենի և ընդ Ղամեքի զեօթնեկին և զեաւթանասնէկին եւթից վրէժս լուծցէ յայսմ և ի հանդերձեալն։

Բայց եղև այս ի յառաջնորդութիւն տէր Գրիգորի հեզահոգի արհեպիսկոպոսի և եղբաւրորդւոյ իւրոյ տէր Յովաննէսի, որ են սոքա առաջին շինողք սուրբ ուխտիս։ Արդ որ ոք հանդիպեսցի սուրբ Աւետարանիս զինչ և իցէ պատճառաւք կամ աւկտութեամբ, աղերսեմ և յերեսս անկանիմ անմոռաց առնել. զՕրանի որում Թողութիւնն և զՔրիստոս Որդի Աստուծոյն։ Եւ յոքնամեղ Յովհաննէսի, որ նշանագրեաց զԱւետարանս և զյիշատակս գրեաց՝ ասացէք մի Տէր ողորմեա։

305

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4891

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Փոխրընդայ վանք

ա

248բ Փառք... Որ նոյն ինքնաբուն իւրով զաւրութեամբն զօրացուցջ զտկարութիւնս իմ, որ սկսեալ յանգ ելաւ գրութիւնս լուսայարմար հաւաքումն սուրբ Աւետարանիս, որ ի չորիցն սրբազանից բոլորեալ բարբեցաւ յարանցն հոգեկիր աւետարանագրաց Մաթէոսի, Մարկոսի, Ղուկասու և Յովհաննիսի, որ ըստ չորիցն ազենական գետացն մշտահոսեալ ընդ չորեքծագեան ոլորտս տիեզերաց զառ ի յերկրէ ի չորիցս կացեալ կենդանւոյ նիւթականաւս, և սորին կենդանածնութեանս լուսաւորի միշտ աստուածային լուսով, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Յիշատակարան փոքր:

Յամի եւթնհաւրիւրերորդի տասներորդի ութերորդի (1269) թուաբերութեանս Հայոց, յամս աստուածազգեցեալ սուրբ և ընդրեալ գիտապետի և առաջնոր[դ]ի տանս Թորգոմայ տեառն Յակոբայ, ի թագաւորութեան Հեթմոյ և յիշխանութեանն անդրանիկ որդւոյ նորա Լևոնի աստուածասիրի, զորս տացէ Աստուած մեզ անսասանելի և հաստատուն բազում ժամանակաւք։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս գլուխն Մաթէոսի և Մարկոսի ի ձեռն ումէմն, զորոյ ոչ գիտեմք զանուն, զորոյ Աստուած, որ գիտակն է, ողորմեսցի նմա յիւ[ր] գալստեանն, ամէն։ Իսկ գլուխն Ղուկասու և Յոհաննու իմոյ նուաստ և անարհեստ գրիչս յանձն առեալ գրեցի, ի խնդրոյ սրբազան քահանայի Մարտիրոսի, ի յիշատակ իւրոյ ելից յաշխարհէ։

Գրեցաւ ի գաւառիս Կիլիկիայի, ի սահմանս աստուածապահ դղեկիս Վաճկայի, ի վանս որոյ անունն Փոխրընդայ կոչի, ընդ հովանեաւ

*Սուրբ Ջաւրաւաբացս և Սուրբ Նշանացս*, ձեռամբ մեղաւորիս* Ստեփա-
նոսի:

*Արդ, աղաչեմք զմանկունս եկեղեցւոյ սրբոյ, որք ընթեռնոյք և լու-
սաւորիք, և որք լսէք և շահիք ի հոգևոր փարթամութենէ սորա, և ոյք*
249բ *աւրինակէք, յիշեսջիք սրտի մ‖տաւք ի մաքուր յաղաւթս ձեր ի Տէր Յի-
սուս Քրիստոս և յԱստուած Հայր և Սուրբ Հոգին* զՄարտիրոս *քահանայ
և զծնաւղս իւր, և ղաղդատոհմն նորա, որ ի քրտանց մարմնոյ իւրոյ
ստացաւ զսա գանձ անկողոպտելի հոգւոյ իւրոյ։*

*Յիշեսջիք և* զԿոստանդին *սրբասէր քահանայ և զծնաւղս և զազգա-
տոհմ նորա, որ առիթ և յորդորիչ եղև գրոյս։ Եւ ես յերեսս անկեալ աղա-
չեմ զամենեսեան զընթերցողքդ և զլսողք՝ իբրև հայր որդւոյ գթալ ի յիմ
նուաստութիւնս և անմեղադիր լինել խոշորութեանս և սղալանացս, զի
մեր կարն այս էր և Աստուած է անխալատ։ Եւ մարդ որ պարտապան լինի
բիւր քանքարոյ և ամենայն Աստուծոյ պատուիրանացն արտաքոյ գտուի,
զի՞նչ զարմանք է թէ և յարուեստ թերի գտուի։ Ապա յուսացեալ յանբար-
կանալին Աստուած, զի ձեռն միածնի Որդւոյ իւրոյ Յիսուսի Քրիստոսի
ձեզ և մեզ ողորմեսցի։ Այլ աղաչեմ զամենեսեան, ղի ոչ հարևանցի, այլ
սրտիւ հառաչմամբ յիշեսջիք զիս, և ղծնաւղսն իմ, և զեղբարքն իմ*
զԴրիգոր, զԽորեն, զԹորոս, *և* զԿոստանդին, *և զքուերսն իմ՝ զփոխեցեալ-
քըն առ Քրիստոս, և Աստուած ձեզ պարգևէսցէ, զս[ր] մեզ պարգևէք։*

ՋՍիոն *յիշեցէք, որ ի նիւթս աւգնական [եղև]։*

Բ

190ա* *Եղբա՛յր, ի երկու կէտն հանգիր, և ի ստորն լուր շունչ առ, մի
արագ իլիր, և ուր քաշն դրած է՝ անդր քաշէ։*

Գ

*Գրիչ՝* Ջաւրավար

71ա *Յիսուս Քրիստոս, ողորմեաց* Անդրեաս *քահանայի, և ծնողաց իւ-
րեանց, և եղբարց**, և* Վասլին, *և* Պապկանեն, *և* Մրտերին, *և* Ներսիսին *և
իւրեանցն ամենի, ամէն։ Եւ ինձ՝ բազմամեղ գրչիս* Ջաւրավարիս***, *և
ծնաւղաց իմոց, և եղբարց առ քեզ հանգուցելոց, և քեզ փառք։*

---

* *Գրված է «Նշանասցս»։*

** *Մի տող ազատ է թողած։*

*** *Գրված է «Ջաւրվ»՝ համառոտ ձևով, այդ պատճառով երկրորդ գրիչ Ստեփանոսը ան-
հայտ է համարում առաջին գրչին։ Ջաւրավարից 21 էջում միակ զարդագրված «է» տառի մոտ
գրված է. «գրողն է հանել»։*

## 306

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 2660

Կապող՝ Սիմէոն

286բ Յետ ամի ՉԺԸ երրորդի (1269) մեծ թուականի, դարձեալ կապեցաւ [ձեռամբ] Սիմեոնի մեղապարտի։ Աղաչեմ յիշել և զիս, և զիմսն համաւրէն, և զՍարգիս քահանայ, որ առատն է ամենեցունցս պարգևէ և նմա։ Փառք յամենեցունց արարածոց։

## 307

## ՅՈՎՀԱՆԷՍ ԱՐՔԱԵՂԲՕՐ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Երևան 345*

Գրիչ՝ Բարսեղ եպիսկոպոս

ա

42ա *Զստացող տառիս զտէր Յոհաննէս բաբունի՝ զեղբայր թագաւորին յիշեսջիք ի Տէր, և զծնաւղսն նորին՝ ամենայն զարմաւք իւրովք, ո՜վ աստուածասէր ընթերցողք։ Ընդ նմին և յանպիտան գծաւղս Բարսեղ, և զնաւղսն իմ, և զամենայն հաւատացեալս ի Քրիստոս. և Աստուած յիշողղացղ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեան, ամէն։*

բ

51ա *Ի յայսմ ամի, որ է թուականութեանս ՉԺԹ (1270), մեծ թագաւորն* Հեթում *ամենայն քրիստոնեից յԱստուած փոխեցաւ, և եթող մեծ սուգ և տրտմութիւն ամենայն Հայոց, որոյ Տէր Աստուած ընդ իւր սուրբ թագաւորս դասեսցէ զհոգի նորա, ամէն։ Եւ է յամսոյս հոկտեմբերի ԻԸ (29), և աւրն է երեքշաբթի*.*

գ

90բ *Զստացող տառիս զտէր* Յոհաննէս *բաբունի՝ եղբայր արքային* Հեթմոյ, *յիշեսջիք ի Տէր, և զամենայն հաւատացեալս ի Քրիստոս, և մեղապարտ գծողս* Բարսեղ, *և Աստուած յիշողացղ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

դ

145ա *Սուրբ մարգարէիս բարեխաւսութեամբ և ամենայն սրբոց քոց, Քրիստոս Աստուած, ողորմեա ստացողի տառիս տէր* Յոհաննիսի *բաբունոյ՝ եղբաւր արքայի, և ամենայն զարմից իւրոց՝ կենդանեաց և ննջեցելոց, և ամենայն հաւատացելոց ի Քրիստոս՝ կենդանեաց և հանգուցելոց։ Աղաչեմ յիշել և զմեղապարտ գծողս* Բարսեղ *և ծնողս իմ, և Աստուած յիշողացդ ողորմեսցի։*

*Յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս թագաւորն* Հեթում, *որո հանգիստ պարգևեսցէ Քրիստոս Աստուած և ընդ սուրբ թագաւորսն դասեսցէ զհոգի նորա։ Եւ յաջորդէ զաթոռ նորին որդի իւր* Լևոն՝ *յոյժ բարեպաշտ*

* Այստեղ մի տող՝ մաքրել է Արքաեղբայրը և գրել «Ստացողիս և ուղղողիս Յոհաննէս եպիսկոպոսի թողութիւն տացի Քրիստոս»։

և աստուածասէր և քաղցր առ ամենեսեան, որոյ ընդ երկայն աւուրս պահեսցէ Քրիստոս Աստուած, և զաւրացուցէ ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոս, և ամրածածուկ աջովն իւրով հովանի լիցի նմա մինչև յաւիտեանս։ Եւ Քրիստոսի մարդասիրի փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ե

162ա Զստացող տառիս զտէր Յոհաննէս րաբունի՝ եղբայր արքային Հեթմոյ, և ծնաւղսն իր յիշեսջիք ի Տէր։ Ընդ նմին և զմեղապարտ գծողս Բարսեղ և ծնողսն իմ, և Աստուած զձեզ յիշէ։

Զ

179ա Տէր և փրկիչ ազգի մարդկան,
Զքեզ աղաչեմք մեք անխափան,
Ի սոսկալի քում գալստեան
Յիշեա զծառայքս քո անարժան։
Զի մեղուցեալ եմք յոյժ բնական,
Եւ զարհուրեմք յաւր գալստեան,
Գոչմամբ փողոյն ահեղական
Առ քեղ կոչես զազգս մարդկան։
Զմեզ ազատեայ սիրող մարդկան
Զերծոյ ի հրոյն անշիջական,
Աղաչանաւք մաւր քո գթական
Եւ մկրտչին քո սուրբ հայցման,
Եւ ընդ արդարոցն միշտ անխափան
Քեզ երգեսցուք զփառս յաւիտեան։
Զստացող տառիս միշտ յիշեսջիք
Որք ընթերցողք եք սուրբ գրիս,
ԶՏէր Յոհաննէս Արքաեղբայր
Եւ զազգայինս իւր միաբան։
Եւ որք յիշեք զմեզ ի բարի
Աստուած և զձեզ ողորմեսցի Ամէն։

Է

244բ Զտէր Յոհաննէս րաբունի՝ եղբայր թագաւորին Հեթմոյ, և զծնողսն իւր,. և զամենայն հաւատացեալս ի Քրիստոս յիշեսջիք ի Տէր, ընդ նմին և զմեղապարտ գծողս Բարսեղ, և զծնաւղսն իմ, և Աստուած յիշելոցս և յիշողացդ ողորմեսցի և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ը

284բ Զստացող տառիս զտէր Յոհաննէս րաբունի և զծնողսն իւր յիշեսջիք ի Տէր, ով սրբասնեալ ընթերցողք, և զմեղապարտ գծողս, Բարսեղ և զծնողսն իմ, և Աստուած զձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ի

331բ Զառաջին Եզրասն դրեցի և զԵրկրորդս յաւժարեցայ ի կարգ այլ աստուածաշունչ բանիցդ հաւասարել, որ անկարծիքս է, զի մի իւիք թերի մնասցէ ի բանից, որք ունին զվկայութիւն ի վերայ իւրեանց յառաջնոց մեր սուրբ հարցն, և զի նոքա գրեցին Եզրաս Առաջին և Երկրորդ։ Ընդ Առաջնոյն և Երկրորդս հիւսեցաւ հրամանաւ տեառն Յոհաննիսի բաբունոյ և ձեռամբ մեղապարտի Բարսեղի, ի մխիթարութիւն ընթերցողացդ և ի պատիւ և ի փառս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ լրումն է աւրինաց և մարգարէից, եւ գլուխ եկեղեցւոյ իւր սրբոյ, յորոյ տրուպ անդամս ի մարմինն աճեցուցի զայս ի տաճարի սուրբ՝ ծառայս անպիտան, զպարտս պաշտաման, յորոյ լրումնս աւրհնութիւն և փառք նորին անուան, յայժմուս և յաւիտեան, ամէն։

Ստացաւղ տալիս զտէր Յոհաննէս և ղծնաւղսն իւր յիշեսջիք ի Տէր, ոյք ընթեռնույք զաստուածախաւս մատեանս։ Ընդ նմին և զամենայն հաւատացեալս ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ, ամէն*։

Ժ

316բ Առաջին ասելով զգիրսս՝ Երկրորդ նշանակէ զգիրս զկնի սորին գոլ Եզրի, որ և կայ առ մեզ, թեպէտ և ոչ յայս կարգս։ Գիրս մի այլ Եզրի, յորում տեսիլք և խաւսակցութիւն նմա և հրեշտակի՝ առակաւք և աւրինակաւք և ի կատարումնն՝ թէ շնորհս առ Եզր, և զամենայն գիրս, որք եղծած ի գերութեանն, նորոգապէս վերստին խաւսեցաւ և գրել ետ դպրաց յարտաքին դաշտ։ Բայց ոչ կարացաք ստուգել, թէ յառաջին հարցն ընկալեա՞լ եղև այն ընդ այլ աստուածաշունչ գիրսս, բայց միայն, զի Եւսեբի յիշէ զԻրէնիոսի խաւսս, ասացեալ թէ՝ Զի՞նչ զարմանալի է այդ, որ յեւթանասնիցն թարգմանեցան գրեանքդ հաւասարք, ուր զի և ի ձեռն Եզրի զգիրս սուրբս, որք կորեան ի գերութեանն, վերստին նորոգեաց ի Բաբելովն։ Եւ այս գրոց սրբոց նորոգմունք յայն Եզր յիշի և ոչ յայս։ Սակայն այլ բանքն յահուրք են և արհաւիրք, և տկար մտաց ի կարծիս, սակայն Աստուծոյ ամենայն ինչ դիւրին է, այլ՝ես զի չգտի հաւատարիմ վկայութիւն վասն նորին՝ ի գրոց հարցն մերոց, և ոչ յԵւսեբայ, բայց միայն զայդ բանդ։ Եւ զի յաւրինակս ուստի զԱռաջինս գրեցի, ոչ էր եդեալ և այն Երկրորդ ըստ կարգի։ Վասն այսօրիկ չհամարձակեցայ ես զնոյն անձամբ անձին դնել ի շարս Աստուածաշունչ գրոցս հիւսման, զմտաւ ածեալ, զի թէ զՅայտնութիւն Յովհաննու ի կարծիք ձգեցին վասն այսպիսի զարհուրական բանից յետ նորոյ շնորհացս, որչա՞փ զայն, որ ես առաւել է, նա և անհաւան է, թե ամենևին եղծան գիրք Աւրինացն և Մարգարէիցն ի Բաբելովն։ Զի գոյին և ի Բաբելովնի որք հաճոյք գտան Աստուծոյ նոքաւք դաստիարակեալք։ Եւ որպէս յայտ է ի Դանիէլէ կարգք ունէին և դատաւորք ի Բաբելովն, որք աւրինակաւք խրատէին, այլ ճշմարիտն է Աստուծոյ գիտելի։

---

* Գրված է Երկրորդ Եզրասի վերջում։

Զստացաւղ տառիս զտէր Յոհանէս և զծնաւղսն իւր յիշեսջիք ի Տէր, և զմեղապարտ գծողս Բարսեղ, և զծնողս իմ, և Աստուած զձեզ յիշէ, ամէն*։

ԺԱ

338բ Հայեաց ի Հրաշս որ պատմեցան,
Ո՞վ ընթերցող ի Յեսթերայն,
Զի ի յուսոյն ունայն շդարձան,
Որք աղերսիւ յԱստուած յեցան։
Իսկ մեր միջնորդ խաղաղութեան
Յիսուս Քրիստոս Հաւր ծոցոյ բան
Լիցուք ի նոյն յոյսն ապաստան
Եւս ընդունել շնորհ աւդնութեան։
Որոյ նուէր զկեանս մարմնական,
Տուեալ ի վարս ճգնութեան,
Առնումք մեք թագ արքայական
Ի Հանդերձեալ կեանսն անվախճան։
Զտէր Յոհանէս բաբունական
Մաղթեմ յիշել միշտ անխափան,
ԶԲարսեղ ծառայ և անպիտան
Որ եմ մեղաւք անյագական,
Նա և փրկիչն ազգի մարդկան
Զեռ ղորմի յաւուր ծագման,
Եւ նմա փառք այժմ յաւիտեան, ամէն։

ԺԲ

334բ Զստացող տառիս զտէր Յոհանէս րաբունի յիշեսջիք ի Տէր և զծնողսըն իւր։ Ընդ նմին և զՅոհանէս սրբասնեալ քահանայ, որ զաւրինակս ետ։ Աղաչեմ յիշել և զսուրբ ուխտիս սպասաւորն՝ երջանիկ կրաւնաւորն զԹորոս մառնապանն, որ բազում սպաս տարաւ մեզ և Հոգք։ Աստուած Հատուցանէ իւր, և Աստուած յիշողացդ ողորմեսցի։

ԺԳ

487ա Որք յայս Հայիք կենդանագիրս նմանութեան,
Նոյն և մտաւք ի Հսկոց և փորձս խորինըս բան։
Զոր ի Յոբայ առ բարեկամսն, որք Հուպ նստան
Եւ զնոցա պատասխանիսն խստութեան։
Ծանիք զՅովբ ի ճշմարիտ արդարութեան
Յորժամ բնութիւնն մնաց անխմոր չարին սերման։
Զոր արարիչն եբեր վկայ իւրն ստեղծման,
Առ սատանայ, որ զմեզ քարշէ յախտս զանազան,
Իսկ նա զսուտն ածէ ներհակ ճշմարտութեանն

* Գրված է Առաջին եզրասի վերջում։

Թէ ոչ բնութեամբ, այլ է ըստ քոյդ մեծ ագնութեան,
Թողու Աստուած ի նա զմարմինն անագնական,
Նույն և զմարմնոյն պէս պէս ստացուածըք մեծութեան։
Այլ ըղՀոդին ասաց ոչ տամ քեզ աւթարան,
Անդ մի խառնես դու զխորՀուրդս խռովութեան։
Նստեր ապա սայ ի տանջանքս մարմնական
Եւ էր Հոգւովն արթուն ի լուսյն գիտութեան։
Եկին ի ձև այս բարեկամքս վշտակցութեան,
Խառնեալ թունիւք սատանայի մոլորութեան։
Ասեն թէ՝ ես դու ի տանջանսդ մեղաց փոխման,
Այլ և ստիպէ կինն իւր ասել բան անզգամ։
Սա Համարի թէ եմ արդար ըստ իմս բնութեան,
Եւ ճշմարիտն է յիմս անսուտ վկայութեան։
Եւ այլ մարդիկ, որ մեղանչեն ոչ ըստ բնութեան,
Այլ ի տռռանց սատանայի ի նոյնն գան։
Զայս ի Յոբայ նախ դուշակեալս խորՀրդական
Յիւրն յայտնեաց Քրիստոս մարմինն անախտական։
Եւ ամաչեալն աստ սատանայ իւրն ստութեան
Գտաւ պատժեալ ի Քրիստոսէ մարդկան փոխման*։

ժդ

378ա Զպատմութիւն բանիցս փորձանաց արդեամբք ընդունողքս ի Համազգոյ և ոչ յաւտարասեռէ այս ամ ի գլուխ աւարտեալ մխիթարեայ, Քրիստոս, ի յաւթևանք երկնից քոյ արքայութեանդ, ո՛վ առատապարգև Տէր, գի Հածեալքս ի նանիր մխիթարեալք յարքայութիւն քո փառս վեր առաքեսցուք բարեգութ քում մարդասիրութեանդ յաւիտեանս, ամէն։

ժե

555բ Զստացող սուրբ տառիս և զուղղող Յոհաննես եպիսկոպոս և զնուաստ Բարսեղ եպիսկոպոս յիշեսջիք ի Տէր։

ժզ

579 Տարտամս յիմաստս սուրբ գրոց,
Որովք սնայ յարբունս տիոց,
ԱՀա կարաւտ սոցին Համոց,
Գտայ գեբեալ յաւտար Հոգոց։
Ուստի Հարեալ սրտիս ի խոց
Եւ տոչորմանս, որ կայ յիս բոց,
Զտյս սրսկեմ կաթս անձրևոց

* «Գիրք Յովբայ» գրված է էջի երկրորդ սյունակում, իսկ այս՝ առաջին սյունակում, որից Հետո նկարված են Հոբը՝ աղքատ, կիսամերկ, պատառոտված չորերով՝ գլխին լուսապսակ, իսկ դիմացը երկու ծեր և մի երիտասարդ։

Զձեռահիսս սուրբ գրոց։
Միթէ գնացիք այսոց գետոց
Իմ զովասցի ծարաւս ոգւոց
Եւ սփոփեսցի յիւրոց ցաւոց
Սրբել տաճար Տեառն աւթանոց։
Այսու յուսով յերկս վաստակոց
Կամ ի յոքունց մէջ ի հոգոց,
Զի արծարծեալ ճրագիս իմ բոց
Մի խրթնասցի յաւտար հողմոց։

ԺԷ

644բ Աւրհնութիւն քեզ գոհութեամբ և փառք երկրպագութեամբ Տէր իմ Յիսուս Քրիստոս, որ խաւսեցար ի ճառս գրոց սրբոց քոց մարգարէիցս զխորհուրդս քո հրաշալիս։ Ողորմեա ստացողի աստուածախաւս մատենիս տէր Յոճաննիսի բաբոյնոյ, և ծնաւղաց իւրոց, և ամենայն զարմից՝ կենդանեաց և հանգուցելոց։ Ընդ նմին և մեղապարտ գծողիս Բարսեղի, և ծնաւղաց իմոց, և ամենայն հաւատացելոց ի Քրիստոս, և այնոցիկ, որ սրտի մտաւք խնդրէն զթողութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

ԺԸ

669բ Սուրբ աւետարանիչ, բարեխաւսեա առ Քրիստոս վասն ստացողին՝ տեառն Յոճանիսի*, և գծողիս, և ծնողաց մերոց։

Ով սուրբ առաքեալ զտեառնագին հոմանուն ծառայս յիշեա սմռաջի Քրիստոսի և զիմսն**։

ԺԹ

Ստացող, ուղղող և մի մասի գրիչ՝
Յովճաննէս Արճաեղբայր

486ա Զեղկելիս ոգի զՍիրաքայս գրող և զտառիս ստացող մեղապարտ ծառայ Աստուծոյ և ամենայն ծառայիցդ նորա զՅոճաննէս եպիսկոպոս, զեղբայր բարեպաշտ արքային Հայոց Հեթմոյ, և զորդիս մեծին Կոստանդեայ, աղաչեմ զվայելողսդ սորա և զժառանգողսդ, և որք լուսաւորիք սոքաւք, յիշել սրտի մտաւք զմեզ ծնողաւքն մերովք և համայն ընդանեաւք և երախտաւորաւք՝ թողութիւն և ողորմութիւն և հանգիստ գտանել ի Քրիստոսէ Աստուծոյ այժմ և ապագային, զի կարաւտ եմք ձերդ բարի յիշման, որպէս և Տեառն ողորմութեան։ Եւ որ առատն է ի բարիս՝ Աստուած, մեզ և ձեզ և ամենեցուն ողորմեսցի, որ է աւրհնեալ,

---

* Գրված է Հովհաննու ավետարանչի նկարի վերևում և ներքևում։ Արքաեղբայրն իր անունը ավելացրել է համառոտագրված։

** «Իրք կնոշն շնացելոյ» հատվածից հետո գրված է. «Զայս շնորհ Տեառն աքանչելեաց Եւսեբի ժամանակագրէ, թէ ի հեբրայեցի Աւետարանէ անտի ընկալաւ եկեղեցի։ Վասն այնորիկ և անթեր պատշաճ համարեցաք կարգել ընթացից Յովհաննու Աւետարանիս, զոր յիշատակէ յերրորդ դպրութեան ԼԹ գլխին բանիւ Պապիայ» (714ա)։

գովեալ, բարեբանեալ և երկրպագեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն: Թողութիւն շնորհեսցէ Քրիստոս Աստուած նեղողացն զմեզ, և տագնապողաց, և բամբասողաց, և չարակամաց, ամէն:

ի

667ա Ով քրիստոսասէր եղբարք մեր, թողութիւն մեղաց և ողորմութիւն ոգո բազմպմեղիս Յոհաննէս եպիսկոպոսիս և իմոցն հայցեցէք ի Քրիստոսէ, զի յոյժ փափաքմամբ եւտու գրել զԱստուածաշունչքս, ի մեծ աշխատութեամբ տաժանեցա յուղղելն ի վաէլս եկեղոցդ: Բայց չէ ի թվի ուղեղ յինչ ինչ իրս վերագրեալ համարքդ*:

իա

Ի տեղիս տեղիս չէ ի թվիլ ուղեղ. զՅոհաննէս եպիսկոպոս յիշեցէք**:

իբ

786բ Զմեղաւք և վըշտաւք լցեալ եղկելի ոգիս զՅոհաննէս եպիսկոպոս՝ ստացող սուրբ տառիս և ուղղող, յիշել հայցեմ ի վայելողացդ զսա և ժառանգողաց յետ մեր, ի Քրիստոս Աստուած, զի գրեսցէ ի կենացն՝ իւր մատեան զմեզ մերայովքն և ողորմեսցի, յիշողքն յիշեալ լիցին ի Քրիստոսէ:

իգ

802բ Եղկելոյս ստացողի սորա և մեծ շանիւ ուղղողի Յոհաննէս եպիսկոպոսի Արքաեղբաւր և ծնողաց և զարմից թողութիւն խնդրեցէք ի Տեառնէ***:

## 308

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 4165

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Արքակաղնի վանք

ա

Փառք Սուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Հոգւոյ Սրբոյ յաւիտենից յաւիտեանս, ամէն:

157ր Շնորհիւ և ողորմութեամբ ամենախնամ Աստուծոյ յանկ եղեալ կատարեցաւ մատեանս սուրբ և կայծակնաքարոզ մարգարեին Եսաեայ, ի թուաբերութեանս Հայոց. ՉԺԹ (1270), ի թագաւորութեանն Հայոց քրիս-

* Ակնարկում է Մարկոսի ավետարանի համեմատական ցանկը:
** Գրված է ցանկի տակ, շղագրով:
*** Գրված է «Յովհաննու Յայտնութեան» առաջին սյունակում:
«Ես եմ ալփայ և ովշ» բառակապակցության դիմաց, որը այբուբենի առաջին և վերջին տառերն են և նշանակում է «սկիզբն և կատարածն»: Ուղղման նշանով Արքաեղբայրը ուղղել է՝ «այբ և քէ»:

տոսապսակ արքային Հեթմոյ, և ի հայրապետութեան տեառն Յակով-
բայ, հրամանաւ և ծախիւք աստուածապատիւ և առաքելաշնորհ արքե-
պիսկոպոսին տէր Սիովնի, վերադիտողի սուրբ և գերադրական անապա-
տիս Արճակաղնոյս, ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց և ամե-
նայն ազգականաց, ի սորայ և ի յընտիր աւրինակէ, զի որ ոք կամեսցի
158ա աւրինակ||եսցի, և մի ոք արգելցէ, վասն ընտիր գոլոյ և ստուգաբանի։

Եւ արդ, եղև գրաւ սորա ի սուրբ և գերադրական անապատիս Ար-
ճակաղնի, ընդ հովանեաւ սրբոց զաւրավարացն Միքայելի և Գաբրիելի
և կենսակիր սուրբ նշանիս Կոստանդեաւ։ Եւ արդ աղաչեմ զամենեսեան,
որք աւկտիք ի սմանէ և կամ ընդաւրինակէք, յիշեսջիք աղաւթիւք զաս-
տուածապատիւ եպիսկոպոսն զտէր Սիովն, և ծնաւղս նորա, նաև զքվե-
բորդի նորին զԳրիգոր պատուելի քահանայ, և ծնաւղսն իւր։ Եւ ինքն
Քրիստոս որ մեծն է ողորմութեամբ, առհասարակ յիշողացդ և յիշելեացս
ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Բ

182բ Գրեցաւ սայ ձեռամբ Ստեփանոս կրաւնաւորի և սուտանուն քահա-
նայի;

Գ

Գրիչ՝ Սարգիս

285ա Ի միւս անգամ գալստեան քո, Քրիստոս, ողորմեա Ներսիսի գրչի և
համաւրէն զարմից մերոյ, ամէն։

Դ

310բ Սորին թուղթ սուրբ առաքելին
Գլխաւոր սուրբ Պաւղոսին,
Որք ընթեռնոյք ի տաճարին,
Ո՜վ պաշտամնեայք սուրբ սեղանին,
Եւ սպասաւորք հրեղէն հացին,
Տէր Սիոնի արքեպիսկոպոսին,
Եւ հարազատին իւր Տուածին,
Եւ համաւրէն նորին զարմին
Աղաւթեցէք առ տէրունին,
Զի ժառանգեսցէն զանճառ բարին։
Ամէն, ամէն։

## 309

### ՇԱՐԱԿՆՈՑ ԱՌԱՋԱՐԱՆ

*Ցուցակ ձեռագրաց, որ ի «Հանդէս ամսօրեայ», էջ 107*

*Գրիչ՝* Յակովբոս
*Վայր՝* Կապոսի անապատ

ա

472 *Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Որդւոյ եւ Սրբոյ Հոգւոյն, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս որ է Առաջարան, և լեառն* Սուրբ Լուսաւորչին, *ի յանապատիս որ կոչի* Կապոսի, *ընդ հովանեաւ Սուրբ Յակոբայ եւ Սուրբ Սիովնի, ի թուին Հայոց ՌԺԹ (1270), ի թագաւորութիւնն* Հեթմոյ *եւ ի հայրապետութեանն տեառն* Յակովբայ, *եւ յառաջնորդութեան արքեպիսկոպոսին մերոյ տէր* Սարգսի՝ *մայրաքաղաքիս* Եզնկայի, *եղեւ կատարումն սորա ձեռամբ մեղապարտ եւ սուտանուն կրամաւորի* Յակովբոսի:

*Բայց գրեցաւ սա ի խնդրոյ պատուելի եւ սրբասէր եղբաւր մերոյ* Յոհաննիսի, *որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ, եւ յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց, հաւր իւրոյ սրբայնեալ ծերոյն* Առոմ *քահանայի, եւ մաւր իւրոյ* Տիկնոջ: *Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա եւ աւկտիք, յիշեսջիք զեղբայրն մեր* Յոհաննէս, *որ ստացաւ զսա յիշատակ իւրոյ. Տէր Աստուած վայելեալ տացէ։ Եւ ես մեղուցեալ ծառայս...* Յակոբոս *դրաւղ սորին, աղաչեմ յիշել յաղաւթս քո ///* զ*Մխիթար, *որ հանգուցեալն է, եւ եղբայր սորա* Յոհանն */// լոկ դպիր, որ զթուղթս կոկեաց բազում աշխատութեամբ։*

*Յիշեա զկազմող սորին զ*Թըստակէս *դպիր, որ ծաղկեաց եւ կազմեաց /// եւ դուք լիցիք յիշել /// ի Քրիստոսէ, եւ նմա փառք յաւիտեան։*

բ

245ա *Ո՜, սպանանեաց զիս քունն յայսմ տեղոջ, կենդանի է Տէր, եւս առաւել ճանճն զաչս իմ եհան։*

գ

471 *Ոհ բազում վիշտս ի ճանճէս։*

## 310

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար Բ. էջ 382*

*Վայր՝* Սիս

*Եղեւ գրաւ աստուածախաւս մատենիս այս ի մայրաքաղաքս* Սիս, *ընդ հովանեաւ Սուրբ Յակոբայ, ի թուականութեան Հայոց ի եաւթն հա-*

* *Երեք տող մաշված է։*

*բիւրերորդի, տասներորդի, իններորդի (1270), ի հայրապետութեան Հայոց տեառն* Յակոբայ, *եւ ի պարոնութեան* Լեւոնի, *բարեպաշտի։ Արդ ի յայսմ ամի, ի հոկտեմբեր ամսոյ, որ աւր էր Ի եւ Ե(25) հանգեաւ ի Քրիստոս բարեպաշտ արքայն Հայոց* Հեթում, *որում ողորմեսցի Նմա Տէր Յիսուս, եւ յիշատակ աւրհնութեան նորա մնասցէ յաւիտեան։*

*Եւ Տէր Յիսուս ետ շնորհս ցանկալի եւ աստուածասէր պարոնին Հայոց* Լեւոնի՝ *որդւոյ իւրոյ, եւ նա թագաւորեաց փոխան հաւր իւրոյ եւ նստաւ յաթոռն իւր կարողութեամբ Աստուծոյ։ Եւ աւր հանդիսի աւրհնութեան նորա եղեւ ի սուրբ յայտնումն Քրիստոսի, ի մայրաքաղաքն* Տարսոնի Կիլիկիոյ, *ի մեծ եկեղեցին Սուրբ Սոփի։*

*Եւ եղեւ ժողով մեծ յամենայն ազգաց՝ վերադիտողաւն Հայոց տեառն* Յակոբայ, *եւ բազում եպիսկոպոսաւք եւ վարդապետաւք, եւ բազումք ի Յունաց պատրիարքաց եւ յԱսորւոց եւ Ֆռանգաց, եւ յիշխանաց մեծամեծաց ի Հայոց, ի Ֆռանկաց եւ ի Հոռոմոց. յորս եղեւ մեծ հանդէս եւ ուրախութիւն ազգիս Հայոց։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան ազաւթս առնել նման եւ խնդրել յԱստուծոյ շնորհս եւ իմաստութիւն եւ զաւրութիւն... խաչին Քրիստոսի։*

311

*ՃԱՌԸՆՏԻՐ*

*Վենետիկ 237, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 564*

*Գրիչ՝* Բասիլ
*Վայր՝* [Խորին անապատ]

ա

*Բարեխաւսութեամբ սուրբ հայրապետին Պետրոսի ողորմեսցի Քրիստոս Աստուած* Պետրոսի *քահանայի՝ հանգուցելոյ ի Տէր, և զհոգի նորա անթառամ պսակաւքն զարդարեսցէ, նաև զ*Բասլի *մեղապարտ գրչի, և ամենեցուն որ զամէնն ասեն։*

բ

*Բարեխաւսութեամբ քրիստոսապսակեալ թագաւորին Թէոդոսի և սուրբ հայրապետացն, որ ի մի վայր գումարեցան վասն ուղղափառ հաւատոցն՝ ողորմեսցի Քրիստոս Աստուած* Տիրացու *եպիսկոպոսի՝ հարեղբաւր իմոյ և ուսուցչի, և նորին հարազատի* Առաքելի, *և ձեզ լսողացդ՝ Առաջաւորս։*

գ

*Քրիստոս Աստուած, ի ահեղ գալստեանդ՝ յորժամ հարուցանես զոր յԱդամայ զմեռեալս, յարութիւն կենաց պարգևեայ արքային* Հեթմոյ*, *որ զկնի երից աւուրց յիշատակիս փոխեցաւ յաստեացս; և ջնջեա զձեռագիր յանցանաց նորա՝ զկամայ և զակամայ, բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոց, և ողորմեաց այնոցիկ որ էքիպ. ծըն-*

* *Հեթում Ա վախճանվել է 1270 թվականի հոկտեմբերի 25-ին։ Ձեռագիրը գրվել է այդ ժամանակին։*

րագրութեամբ հայցեն ի քէն զթողութիւն նորա, և քեզ փառք յաւիտեանս։

Դ

Տէր Աստուած, յարութիւն կենաց պարգևեսցէ Կոստանդայ ծերունոյ և հիւրատեսի, և ծնողաց նորին և բնաւին զարմից, և ջնջեսցէ զձեռագիր յանցանաց նոցին, նա և ինձ և իմոցն, և լսողացդ և զամէնն ասացողաց։

## 312

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 1119

Գրիչ՝ Տիրացու

ա

304բ [Փա]ռք փառաց Թագաւորին և փրկչ[ին, որ հաս]ոյց զանարժանս ի գիծս վերջին, վասն որո [զու]գին երկար և ուղևորն կաղ, այլ և տկար, հասանէ աշխատութիւն ոչ սակաւ, որպէս և մեզ իսկ դիպեցաւ աստ։ Այլ քան զի ամենայն աստուածաշունչս գիրք յԱստուծոյ սկսեալ և առ Աստուած ունին զաւարտումն, որպէս և այս հոգեւից մարգարէս Դաւիթ յԵրանութեն[է ս]կսեալ և զի երանելի ինքն միայն է, ըստ Պաւղոսի. Երանելի ասեն միայն ՀՁ, վասն որո էա[ր]կ հիմն զերանութիւնն, որ յիմ[աս]տութենէն տնգին ի գնացս ջուրց և տան զպտուղ [քաղցր]ութեան ի ժամու, և աւարտեաց ի խաչն, որ է կատարումն տնաւրէնութեան · խորհրդ[ոց և] ասէ ի յաւրհնութեան Սաղմոսիս կատարման՝ աւր[հնութիւն] ի սրբութիւն։ Ջխաչէն ասէ սրբութիւն, զի նովին իսկ արա[ր սրբ]ութիւն մեղաց մերոց, և որ նովաւ սրբի երանելին տուգապէս, որոյ պտուղն ի դէպ հասեալ ժողովի յշտեմարանս անմահ կենացըն, և ումի զբոլոր խորհուրդ մարդանալոյն Քրիստոսի ծայրիւ բովանդակեալ և զի խոր է խորհուրդ սորայ, զոր և սուրբքն ի հայրապետաց և ընտրեալքն հոգւոյն ազդեցմամբ լայնատարած մեկնեցին յանցն իւր ժամանակի։ Եւ զի ամենայն ոք ոչ կարէր հ[աս]ու լինել [աստուածա]ին խորին խորհրդո վասն յաճախութեան բ[ան]ըցնն յայլ մեկնիչս, վասն որոյ մերս վարդապետն Վարդան՝ հայրս հա[սա]րակաց աւժանդակեալ ի Սուրբ Հոգւոյն համառաւտե||պար զբանիւ ի նոյն մեկնչաց և յազդմանէ Հոգւ[ոյն... սրբոյ դիւր]ահաս ընթերցողաց, որում և ես նորին անար[ժան]||։

Բ

5բ Աշխարհալուր և տիեզերալոյս վարդապետին Վարդանա պարզ և լուսաւոր խորին խորհրդով և դիւրագիտ լուծմամբ և բանիւ մեկնութիւն արարեալ Սաղմոսիս, շարժեալ ի Հոգւոյն Սրբո և յարհիականէն Հաղպատա և յաշակերտաց իւրոց, յոյժ աշխատեալ մտաւոր բանիւ, զոր ցուցանէ առաջիկա ամբարեալս ի վարժ մանկանց Սիոնի նաև զսրբոցն ամենայն ի մի հաւաքեալ՝ ձեռնահաս սիրողացն, զոր և ինքն հասցէ յիւրայօվքն երկնից արքայութիւնն։

[Զ]ի և ես Տիրացու նորին անարժան աշակերտ գծագրեցի զսա սատ իմով անարհեստ գրչութեամբս, յիշատակ անչինչ մեզ և ծնաւղաց մերոց և եղբարց, և որ զհոգո են Կախաբէրն և զՄուլուֆն, զի որ առ յապայսդ [հա]նգէք զսա՝ խնդրեցէք ի Տեառնէ մեղաց մերո[ց] թողութիւն, որք ընթեռնոյք և աւգտիք և կամ աւ[րինակէք, սրտի մտ]աւք յիշեցէք, և մի հարեանցիկ և ||| Քրիստոս Աստուած զձեզ· ամէն։

Գ

Զհոգիազարդ քոյրն իմ ըստ հոգւո, զանփորձն ի կորըստական
148ա աղալմանէ՝ զՄուլուֆն, և զբարեպաշտ այր նորա զԿախաբէրն, || զյիշ-
ման արժանիսն, յիշեցէք ի բարի մասին առաջի Քրիստոսի, խնդրելով
ի նմանէ զթողութիւն և զմեծ զողորմութիւն*։

Դ

179ա Զանպէտ, զյոգնամեղ գրիչ զՏիրացու յիշեա ի Տէր աղաչեմ։

Ե

246ա Եւ յոգնամեղ գրող գրոցս զՏիրացու և զծնաւղսն մեր, և զեղբարսն
յիշեցէք առ Տէր ի բարի, և երախտաւորաց մերոց հոգևորաց անդ արաս-
ցէ Քրիստոս Աստուած բարի հատուցումն, առաւել Կախաբարն և Մու-
լուֆին, և որք յիշէք, յիշիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ
յաւիտեանս ամէն։

Զ

300բ Նաև զանպտուղս ի բոլորից բարեաց՝ զնորին անարժան աշակեր-
տեալս զՏիրացու՝ զլի ամաւթալի գործոց անբարեաց, յիշել աղաչեմ ի
մաքրափայլ յաղաւթս ձեր, զի թերևս մեզ լիցի ողորմութիւնն գտանել
ի Քրիստոսէ յաւուրն անբրեակ։

## 313

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4515, Փիրղալեմյան, Նշխարք, Բ, էջ 39—40

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Կիսոնկա

ա

251բ Ո՜վ հրաշափառ և երջանիկ, երկնաւոր հրեղէն դասուց զարմանալի,
անբաժանելի ծոցածին Հօր բան, հեղ լիս՝ զանարժան ծառայիս քո ի
Յովհաննէս, և ի մեղուցեալ գծողս Բարսեղ ըզգթութեան վտակս, և մի
տար, Տէր, դատ ընդ ծառայիս քո, որ ոչ արդարանամք, այլ մաղթանաւք

* Ձեռագիրը գրված է մինչև Վարդան Արևելցու մահը (1271), ըստ այդմ դնում ենք 1270 թվաշարքում։

մաւր քո, Քրիստոս, զմեղաց լուծն մեր խորտակեա և քաւեա, և քեզ փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։

Ո՜վ երջանիկ դասք սրբազան քահանայից, որք հանդիպիք աստուածային սուրբ Աւետարանիս, յիշեսջիք ի Տէր զարքայն Հայոց զԼեոն, և զբարեպաշտ թագուհին իւր զԿեռան, և զորդին իւրեաց զԿոստանդին՝ զբարի ջատագովն, ի բարի արմատոց, որոց Տէր Աստուած տացէ ժամանակս երկայնս և խաղաղականս, և զաւրացուսցէ ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի, և պարագայց ամաւք շնորհեսցէ մեզ ընդ երկայն աւուրս, ամէն, ամէն։ Եւ որ զմեզ յիշեա աղաւթիւք, և նա եղիցի յիշեալ։

Բ

Այլ գրիչ

323բ Ի ութն հարիւրերորդի տասներորդի, իններորդի (1270) թուաբերութեան տումարի Հայոց, յառաջնորդութեան և ի դիտապետութեան անբիծ հեղինակին և յաջորդութիւն աթոռոյ Սրբոյն Գրիգորի տեառն Յակոբայ, և ի թագաւորութեան Կիլիկեցւոյ նահանգիս Հեթմոյ բարեպաշտի, և ի պարոնութեանն Հայոց Լեոնի որդւոյ Հեթմոյ արքայի, զոր Տէր Աստուած տացէ սոցա ժամանակ խաղաղութեամբ երկար ամաւք, և ետ ելից յայսմ աշխարհէ ի հանդերձեալ կեանս զանսպառ բարիսն պարգևեսցէ։ Նաև երջանիկ ամենաւրհնեալ ամուսնւոյն Լեոնի Կիր Աննայի և դեռաբոյս մանկանն նոցա Հեթմոյ տացէ Յիսուս Քրիստոս հոգի հեզութեան և իմաստութեան, և երկիւղ աստուածապաշտութեան, և բազում ժամանակ խաղաղութեան, և հանգիստ յաւիտենական ի յանվախճան կեանս։

325ա Վասն որոյ աղաչեմ զամենեսեան առհասարակ, ես նուաստս Յոհաննէս, յետինս յորդիս եկեղեցւոյ, որ ցանկացող եղայ այսմ լուսայեղձ և կենսակիր, քառաջահեան, մշտալոյս բանից Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ աւետեաց Աւետարանիս, և ստացայ զսա բազում աշխատութեամբ, ի լուսաւորութիւն մանգանց նորածնելոց Նոր Սիովնի և ի պայծառութիւն սրբոյ եկեղեցոյ, ի բժշկութիւն հիւանդաց և ի վանում այսոց չարաց, ի պարծանս քրիստոնէից և ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, ի յիշատակ հոգւոց մերոց, և ծնաւղաց, և բնաւ զարմից՝ և կենդանեաց և մեռելոց, սորա, որ ստացաւ ի յարդար վաստակոց իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և Թորոսի հանգուցելոյն ի Քրիստոս, և յիշատակ Գրիգորի քահանայի և կենակցին իւրոյ Հռիփսիմե, և ամենայն հաւատացելոց [և] ննջեցելոց։

324բ Արդ, ո՜վ սուրբ ճգնազգեաց կրաւ||նաւորք և առաքելազգումար դասք քահանայից, յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ, եդեմատունկ, աստուածատոյգ վտակաց աստուածային աւետարանական բանիցս, յիշեսջիք առաջի զենլոյն Քրիստոսի ստացողի սորին զՅովհաննէս՝ ողորմութիւն գտանել յահեղ աւուրն ի մեծի ծագմանն յաներեկ ատենին, մանաւանդ ղծող սորին՝ զԲասիլ քահանայ, որ ի բազում աղաչանաց յանձն էառ զգծել սորին՝ բազում աշխատութեամբ և տկար մարմնով, յանխաղաղ նաւահանգիստ այսր և անդր շրջելով, յայսր և ի ծէրպս, զոր իմաստոմ ընթերցողք և հմտական մտառուքդ ճանաչէք զարուեստ և զիմաստութիւն,

*որ ի սմա գանձեալ կայ, վասն որոյ աղաչեմ զամենեսեան, ընդ ստացողիս և զգրիչ յիշեսջիք ի Տէր, ողորմութիւն գտանել ի Քրիստոսէ։*

325ա *Ել|]նոյն ինքն հասարակաց պարգևատուն ամենեցուն ողորմեսցի ստացողիս, և գրչին, և այսմ յիշատակարանի գրողիս, և վայելողացդ, ամէն։*

*Արդ, գրեցաւ սա ի լեառնս* Կարմիր, *մերձ յանառիկ դղեակն* Բարձրբերդ, *ի վանքս* Լիսոնկայ, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և Սուրբ Նշանին, եւ աւարտումն սորա՝ ի յանապատս* Միծեռնաքոյն *եղև...*

գ

326բ *Երեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք պատահիք սմին, յիշեցէք ի սրբամաքուր աղաւթս ձեր զերիցս երանեալ ծերունի պատուական քահանայն* Յոհաննէս Գոմոձգերցի, *որ զաւրինակն շնորհեաց, Նաև զգրող աւրինակին* զՈստակէս, *և Տէրն փառաց ամենեցուն ձեզ և մեզ ողորմեսցի առհասարակ, ի յահեղ հրապարակին, ուր գործք թագաւորեն և սատանայ ամաւթ լինի։*

327ա *Նաև զպատճառ եղեալ կազմութեան սորա զքեռ թագաւորի Հայոց* Հեթմոյ *և զորդի աստուածասիրի և բարէպաշտի* Կոստանդեա *թագաւորահաւրն* զՀռեփսիմի *կրաւնաւորն յիշման արժանի արասջիք, և զկազմող սորա* զԳրիգոր *փակակալ և զեղբայր նորին* զՍտեփանոս *վանական քահանայք։*

## 314

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Զարբհանալյան Հայկական դպրութիւն, էջ 710*

*Հրամանաւ* Սօսթենէս *րաբունւոյ, որ էր վարժ և կիրթ յամենայն գիրս աստուածային՝ հնոցն և նորոցս և արտաքին փիլիսոփայիցն գեր ի վերոյ, որ և ի ժամանակիս մեր և ի թագաւորութեան* Լևոնի, *և ի հայրապետութեան* Յակոբայ *ոչ ոք է կատարեալ իբրև զսա յամենայն իմաստս, բաց ի մեծ րաբունեաց րաբունւոյն որոյ անուն ցաւղ է քաղցր, որ և* Վահրամ *կոչի։*

## 315

## ՎԱՀՐԱՄԱՅ ՐԱԲՈՒՆՒՈՅ ԼՈՒԾՄՈՒՆՔ

**Երևան 6362**

Գրիչ՝

ա

66բ *Զ*Վահրամ *գերաբուն բանի սպասաւոր և զստացօղ Լուծմանցս յիշատակիք ի Քրիստոս, մեղաց թողութիւն հայցելով Նաև զեղկելիս գրող սորին, հանդերձ ծնողօք մերովք յիշեսջիք, և որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ։*

Նոյն և զանյաղթ և երջանիկ րաբունիս մեր Գէորգ, հանդերձ գարմիւք իւրովք, որ և կամաւ սորին եղև գրութիւն սորա, և զընկերակիցքս մեր, և յիշողքն յիշեալ լիցին ի տեառնէ։

Բ

66ա Ի Քրիստոսի խաչելութենէն մինչև ի ՌՃ (1181) թուակ[ան] ամք ՌՃՁԲ (1182)*։

316

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երուսաղեմ 741, Պողարյան, Ցուցակ Գ., էջ 185

Ստացող՝ Գրիգոր

Ա

423 Յամի Զ երորդի, Ժ երորդի, Թ երորդի (1270) թուականութեանս Հայոց (1270), Գրիգոր տկարս եւ փանաքիս, յոյժ նուազեալ ի բարեաց տեսակէ և փարթամացեալս թշուառութեամբ, որ եւ դիմեցի յաշխարհէն Միջագետաց ի կողմանս յԱրեւելից, ի յուսումն վարդապետութեան առ տիեզերափայլ վարդապետս Վարդան, եւ փափաքեցա այսմ հոգեշահ տառի Մեկնութեանս, եւ գրել ետու զայս։

Բ

Գրիչ

Ո՜վ եղբայրք, մի մեղադրէք, վասն ամպին մթին ծռեցաւ տողն։

---

* Սույն թվականն ընդունված է որպես ձեռագրի գրության թվական։ Սակայն պատվիրող Գևորգը, որ Սկևռացին է, իսկ լուծմունքի հեղինակը՝ Վահրամ Րաբունի նշանավոր փիլիսոփան, ապրել են ԺԳ դարի երկրորդ կեսին, ուստի հիշատակարանը գնում ենք նրա անվանն առընթեր։

## 317

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2814

Գրիչ՝ Մխիթարիչ
Վայր՝ Գետկա վանք

ա

147ա Զորբազան քահանայն Գրիգոր միայնաւոր ստացաւղ սուրբ և պատուական Աւետարանիս, և զանարժան գրիչս Մխիթարիչս, որ ծրեցի ի գովելի աւրինակէ, ուղիղ և լի արուեստիւ, ի բան և ի գիր, ի տուն և ստոր, և ի գրադարձս, և յեղանակս, և ի վանկս, և յառագանութիւնս, զոր կոչեն Գրիգորի Մուղանեցոյ՝ ի բազմաց վկայեալ, ըստ յաւժարութեան մերում յաջողեաց մեզ Աստուած։ Բայց դիտէ այս սուրբ Աւետարանս, որչափ կարացի պահաւք և պանդըխտութեամբ գրեցի, վասն զի գրոց աշակերտ էի. զմիտքս ի վերա կալայ վասն ղորդութեան, վասն զի վարդապետք, որ տեսանէին՝ հաւանէին։ Աղաչեմ զձեզ յիշել զմեզ ի Քրիստոս, ամէն, ամէն։

բ

9ա Աւգնեա՛ Հոգիտ Սուրբ Աստուած ան[ա]րժան և մեղաւոր գրիչս Մխի[թ]արչիս, աւարտեա՛ զսա խաղաղու[թեամբ]։

գ

50ա Վա՜շ է աւրինակիս եւ իւր գրողիս։ Շատ ու բազում վարդապետք են հավանել։
Կիւրակոսի է հաւանած Գրիգորի Մուղանեցւոյն աւրինակ*։

դ

53բ Վաշ է աւրինակիս դրաւղիս,
Գրոց հմուտ գիտնականիս,
Վարդապետաց ընտրեալ բանիս,
Ես ինչ արնեմ գերիսւ
Բնութեան գրոցս ///**։

---

* Երկրորդ տողը կտրվել է կազմելու ժամանակ և բառերի վերին մասերն են երևում միայն։
** Կտրված է թերթի ստորին լուսանցքը։

ե

55ա Աստուած ողորմի ուրինակիս գրաւղին, հրաշափառ է, բայց ես պանդուխտ եմ ու ի պահս խիստ, մի մեղադրէք։

զ

61բ Քրիստոս Աստուած ողորմի Մանասի և Սիմէոնի պատանեկին, զի երկուսենքն խեղճ մեռան անյիշ[ատակ]։

է

64ա Տէր, ողորմեա Գրիգորո և Մխիթարիչ գրչի* ի քում գալստեանդ, յորժամ գաս հատուցանել ըստ իւրաքանչիւր գործոց։

Եղբայր, թողութիւն արա, խալատեցայ ի ցանկիս, յառաշ Մշակաց այգւոյն է և ապա Ցուցել Յիսուս զշինուած տաճարին։ Ջընութեան գիրքս կու քննեաք։ Ես մոռացայ գրել, յետոյ գրեցի**։

ը

92բ Զստացաւղ սուրբ Աւետարանիս զԳրիգոր քահանայ եւ զանարժան գրիչս Մխիթարիչս յիշեսջիք ի Քրիստոս։

թ

153բ Ի Գրիգորոյ Մուրղանեցոյն ուրինակէն է, և շատ երևելի վարդապետաց հաւանած զորդի ///։

ժ

154բ Զցանկս սաստիկ դժուար ձգեցի յիրար, և աշխատանաւք։ ԶՄխիթարիչս յիշեա։

155ա Կիւրակոս վարդապետն իւրն գրել ետ, որ վարդապետաց վարդապետ էր և երևելի։ Եւ ես զշատն վասն ուրինակի գրեցի, եղբա՛յր, ուրինակ լավ է, ի Գետկայ վանքս, որ է վարդ[ապետարա՞ն]***։

---

* Մինչև այստեղ գրված է երկաթագիր կցագրությամբ, մնացածը կարմիր բոլորգիր, հաջորդը՝ մանր բոլորգիր սև թանաքով։

** Խորանի տակ գրված է «Մխիթար գրիչ», ուրեմն Մխիթարը նաև ձեռագրի ծաղկողն է։

*** Դժբախտաբար կտրված է թերթի ստորին մասը։ Կիրակոս վարդապետաց վարդապետը նշանավոր պատմիչ Կիրակոս Գանձակեցին է, Նոր Գետիկի դպրոցի րաբունապետը։

Ձեռագիրը դնում ենք Կիրակոսի մահվան տարին, որպես վերջին հնարավոր թվական։

## 318

## ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 1903 (1600 թ.)

Հեղինակ՝ Վարդան Արևելցի

292ա Այլ և զհոգևոր դասս կրաւնաւորական եղբարցս, մանաւանդ թէև
հայրս զմիայնացեալսն ի տանց, զհեռացեալս յընդանեաց, և ի մեկնեալս
աշխարհական հոգոց, զսիրողս սրբութեանց և զաղբիւր առաքինութեանց
ալրհնեսցէ Քրիստոս Աստուածն մեր, և պահեսցէ անթառամ ծաղկաւք
վարուց սրբութեան ի պատիւ, ի փառս եկեղեցոյ, և ի յամաւթ բանսար-
կուին, և յետ աստեացս ընդ ճգնաւորացն դասակցեսցէ։ Նա և համշիրակ
եղբարցս՝ դասս սրբազանիցդ, զգրոց աշակերտեալ անձինդ, որ ծարաւիտ
էք ի ջրոյն կենաց, տացէ ձեզ ինքնին ըմբել զուխտս փափկութեանն,
մինչ զի եղիջիք իւրաքանչիւր ի շնորհաց հոգոյն բաժանեալ, որով
անմտաց ըստ թարգմանութեան տեառն ջուր կենդանական իմաստից
292բ անաղտ բղխմամբ պարագայից||և երկար ամաւք կրթիլ ձեզ ի մամուլս
առաքինութեան, և ի հրահանկս իմաստից ժամանիլ ի բարիոք աւարտն
ի փառս հանդերձեալ կենաց, ամէն։

Այլ և քահանայք և փակակալք եղիցին արթունք և պատրաստք լապտերաւք բարեգործութեան, զի գալ փեսային՝ արժանասցին մըտից առագաստին, ամէն։

Այլ և զկամարակապ հաստատութիւն և անդրթելի զաւրութեամբ
կացցէ դշխոյ ընդ աջմէ Քրիստոսի, ի հերքում դիւաց, ի բժշկութիւն
293ա հիւանդաց,||ի քաւութիւն մեղաց յուսով ի սմա դիմելոց, ի հալածումն
անաւրինաց, ի պապակումն բերանոյ հերձուածողաց, իղձ մաղթանաց,
հոսմունք արտասուաց, ծնրադրութիւն մայրամած դիմաց, խնդիրք աղա-
չանաց բարեսէր կամաց, տարածումն բազկաց՝ առ Տէրն գթած, լսելի
լինիցի ականջս Աստուծոյ և ամենայն խնդրուածք հոգևոր միջնորդու-
թեամբ սրբոյ տաճարիս ի բարին կատարեսցին, ամէն։

Այլ և շինողք սուրբ եկեղեցոյս և զկառուցող կամարակապ երկինս ի ծախոց և ընչից վաստակեաց վասն սիրոյն Քրիստոսի, փոխանակ այսմ սգալի խորանացս տացէ նմա տէր Աստուած զանձեռագործ խորանն և իմանալի տաճարն, ի ժառանգութիւն և ի հանգիստ անձանց նորին։

Այլ և ուխտաւորք և պտղաբերք և երախտաւորք և գործաւորք իւրաքանչիւր զփոխարէնս վաստակոցն իւրոց միոյն հազարապատիկ առնուցուն, զկեանս յաւիտենականս անսուտ բերանոյն և անվեհեր խոստմանցն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ*||ի։

---

* Վարդանի «Աշխարհացոյց»-ը ավարտվում է այսպես. «...և այլ բազումք ազգ և քաղաք և աշխարհ, զոր անաւգուտ համարիմ զշարակարգելն դոցա, վասն որոյ ոչ կամեցա գրել, և Քրիստոսի մարդասիրին փառք, յաւիտեանս ամէն», և անմիջապես հարում է «Այլ և զհոգևոր դասս կրաւնաւորական եղբարցս...» և այլն, ինչպես վերևում։ Այսպես է նաև № 2618 ձեռագրում (էջ 271 )։ Անմիջական շարադրանք լինելու հանգամանքը, բովանդակությունը, լեզուն և ոճը, թույլ են տալիս այն համարելու Վարդան Արևելցու «Աշխարհագրութեան» հիշատակարանը։

## 319

### ԳԻՐՔ ԲՆՈՒԹԵԱՆ, ԿԱԶՄՈՒԹԵԱՆ ԵՎ ԿՈՒՍՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՍԱՑԻՈՅ

*Երևան 469 (1260 թ.)*

Գրիչ՝ Վարդան Արևելցի
Վայր՝ Խոր Վիրապ

260բ *Գիրքս սրբոյն* Գրիգորի Նիւսացւոյ, *որ բաժանեալ է երիս հատածըս. ի Բնութեան, ի Կազմութեան և ի Կուսութեան, իմաստնոյ և շնորհալից եղբաւր մերոյ և սպասաւորի բանին* Գրիգորոյ, *մականուն* Բրձնեցոյն *է, շարագծեալ ի կրսերէ նորին* ի Ստեփանոսէ, *և շնորհեալ նմայ։ Աստուած վայելել տացէ երկար ամաւք։ Ոչ իմոյ և ոչ ստարաց ունի իշխանութիւն չալունշ առնել, և որ յանդգնի, յԱստուծոյ և ի Սուրբ Գրիգորէ և ի մէնչ ընդ կապանաւք է։*

*Ի թվ[ին] Հայոց ՋԻ (1271) գրեցաւ յետին գիրս, առ դրան* Սրբոյ Վիրապիս*։

## 320

### ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼՈՅՆ ՅԱԿՈՎԲԱՅ՝ ԵՂԲԱՒՐ ՅՈՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՉԻ

*Երևան 4086*

58ա *Թարքմանեցաւ ճառս այս երկուց քահանայից՝ ի* Դաւթէ *և ի* Յոհաննիսէ: *Եւ առաջին թարքմանիչն թարգմանեաց զԳարոզ վարդապետութեան առաքելոյն Յակովբայ և զգլխատումն ի հրէիցն հրամանաւն Հերովդէի, իսկ երկրորդն՝ զգնալն* Իսպանիա *ի ձեռն հրեշտակաց, որպէս և ճառս պատմէ կարգաւ։*

*Իսկ երանելի վարդապետն Հայոց* Վարդան *դրեալ զերկուցն թարգմանեալս, և ըստ իւրում իմաստութեանն միաւորեաց ի մի, զթերին ելից և ուղորկեաց յ*Երուսաղէմ, *և առաքեաց ի տեղիս-տեղիս։*

## 321

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

*Երևան 1094*

Գրիչ՝ Յոհաննէս

327բ Վարդան *վարդապետին և ստացողի սորա* Ներսէ *վարդ[ապ]ետի և իւրայոցն, և անարժան և ծոյլ գրչի* Յոհաննիսի *ողորմութիւն ի նմա***։

* «Գրիչը՝ Վարդան վարդապետն է, և այս նրա ինքնագիրն է ծերության հասակում, իր մահվան տարին»,—նկատում է Գ. Հովսեփյանը («Խաղբակեանք... էջ 253)։

** Ձեռագիրը հետագայում պատկանել է Խառաբաստա րաբունապետեր Սարգսին և Վարդանին, որոնք ավանդել են այս գիրքը Թովմա Մեծոփեցուն և նրա ընկերներին (էջ 400ա)։

Հաջորդ էջում պահպանվել է այսպիսի հիշատակագրություն. «Արիստոտելին գրէնք որ կայ այս է. Բ(2) Տամապատճառ, Ա(1) Սաչմոսի մեկնիչ, Ա(1) Արարածք, Ա(1) Արարածոց մեկնիչ, Ա(1) Առակս, Ա(1) Եսայի, Ա(1) Ճառընտիր, Ա(1) Տետր, Ա(1) Նեղոս, Բ(2) Նոհ, Բ(2) Ջուխտ սարմուզա, չարմին, Հացղորէն»։

## 322

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

Երևան 7452

Գրիչ՝ Սարգիս

ա

225բ Եւ Քրիստոսի Աստուծոյն իմոյ փառք և Վարդան վարդապետին գնացելոյն առ Քրիստոս ի յաւիտենականն լուսոյ հանգիստ, և րաբունեաց րաբունոյն Մխիթար վարդապետէն ողորմութիւն, և գծողիս մեղաց թողութիւն շնորհաւքն Քրիստոսի, և նմա պատիւ և ղաւրութիւն յաւիտեանս, ամէն։

բ

244ա Վարդան վարդապետին ողորմութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։

գ

262ա զՍարգիս գրիչ յիշեա ի Տէր աղաչեմ։

դ

277ա Մխիթար վարդապետին ողորմեսցի Քրիստոս։

ե

290բ Տէր Աստուած վայելել տացէ րաբունոյ վարդապետ Մխիթարայ։

զ

295բ Կատարեցաւ հինգ գիրքս Մովսիսի, շնորհաւք /// եանս ժամանակս երից /// յ[ես]թ հարիւրից և քսան ամաց (1271)։

է

Գրիչ՝ Ներսէս

285ա Զներսէս սպասաւոր բանիս յիշեցէք ի Քրիստոս։

## 323

### ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԽԻԹԱՐ ԱՆԵՑԻ ... 

ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԻԽԱՅԵԼԻ ԱՍՈՐԻՈՅ

Երուսաղեմ, 32 (1273 թ.) Պողարյան, Ցուցակ Ա, էջ 146

592 Ի թուականին Հայոց Չ և Ի (1271) փոխեցան ի Քրիստոս փառաւոր վարդապետքն Հայոց Վարդան և Կիրակոս, որոց սուրբ աղաւթք նոցա ի վերայ մեր և ամենայն աշխարհի։

## 324

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՃԱՌԻՑ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑՒՈՑ ԵՒԱՅԼՈՑ

Երևան 5518

Գրիչ՝ Յովանէս
Վայր՝ Վանկուճ

ա

184ա Գրեցաւ Լուծմունքս ձեռամբ Յովանիսի անարժան սարկաւագի, ի թուիս Հայոց ՉԻ (1271), ի վանքս որ կոչի Վանկուճ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի և Սուրբ Պաւղոսի, հրամանաւ սուրբ հաւրն մերո և հրաշաբան վարդապետի Սինասի: Արդ որք աւգտիք ի սմանէ, յիշեցէք զմեզ ի ձեր աղաւտքս և Աստուած զձեզ յիշէ։

բ

117բ Զեղկելի գրիչս զբազմամեղ անձս յիշեա։
Յափշտակեցաւ յերիս երկինս սուրբ առաքեալն աստուածային,
Որպէս և գրեաց յիւր կտակին, թե ես լուա զանճառելին,
Համանման եղեք նմին, այժմ կենաց առագաստին։
Անտեսին եղեք տեսաւղ, և պատմեցէք զանպատմելին;
Նիւսացիտ Գրիգորիոս, որ և անուամբ հրեշտակային
Եւ սրբազանդ Բասիլիոս՝ պատմեա գրիչ անճառ բանին,
Սերտեալ ի սէրն աստուածային Գրիգորիոս Աստուածաբան
Ինձ հայցէք ի Քրիստոսէ մեղաց իմոց զթողութիւն,
Աղաչեմ*։

գ

208ա Հոգի Աստուծոյ, Աստուած ճշմարիտ, առաջնորդեա հոգո իմո ելանել յերկինս և խառնիլ ի գունդս սրբոց, որք ի սկզբանէ հաճո եղեն քեզ և կամարար Հաւր և կենդանարար Որդո, և զհոգի եղբաւր իմո Ստեփանոսի քահանայի և զհաւատացեալ ծնողացն իմոց, որ սրտիւ հաւատացին յարդարութիւն և բերանով խոստովանեցան զփրկութիւն։ Ընդ նմին և զվարդապետն իմ զՍինաս և զեղբարս նորա՝ ծնողաւք իւրովք հանդերձ, որք զաստիս վճարեցին բարիոք խոստովանութեամբ, և հատուցման անճառելի փառաց քոց սպասեն, ամէն։

դ

130բ Աստուածային հոգով լցեալ և ի շնորհացն հղփացեալ,
Բանիւ զբանն քարոզեալ և յաղբիւրէն առատացեալ,
Գրիգորիոս աստուածարեալ, հոգով և մտաւք վերամբարձեալ,
Դարձեալ աղերս քեզ մատուցեալ սուրբ ժողովուրդն հաւատացեալ:
Եւ ի հեզոյն էիր ուսեալ արագագոյն զհետ ընթացեալ,

* Սկզբնատառերով հոդվում է. «ԶՅոհաննեսի ա»:

131ա Զիշխանն որ զհարկն պահանջեալ՝ քո խորհր||գով յանդիմանեալ,
Էղեալ հաւան և հնազանդեալ և ըստ ուրինի զնոսա գրեալ,
Ըստ սոյն և ինձ քեզ աղաչեալ, Հայրն Աստուծոյ զիս ընձաեալ,
Թագաւորին յաջմէ կացեալ և ընդ արսն պսակեալ։

Ե

171բ Ժողովուրդք ամե[նե]քին, որ էք ի տան աստուածային,
Ի միտ առէք ի միասին և գործեցէք զարդարարութիւն,
Լուարուք զվախճան անուրին, դառն և զչար թագաւորին.
Խոցեալ զնա սուրբ հրեշտակին և սատակեալ յաւտար երկրին,
Ծախեալ զիշխանն մահածին, իբր սաստիկ հողմ զփոշին,
Կործանեցաւ զանկանկնէլին և յիշատակին աղաղկին։
Հաւտք բանաւոր պատարագին և չարչարացք բռնաւորին,
Զայնակցելով մարգարէին և գոչեսցուք զանկամ Բելին,
Ղեկաւ չարին ուղղեալ նաւին և բարձրացաւ իբրև զալին,
Ճշմարիտ հողմով հոգին խորասուզեալ յատակ ծովին*։

Զ

171բ Զհոգիացեալ և զխնամածու վարդապետն Մինաս և զաշակերտ նորին՝ զգրիչս յիշեսջիք ի Տէր։

Է

42ա Սրտիս հառաչ կուգա, մեղուցելոյս, որ լերդիս ցաւ կուտա, ոհ, ոհ, ոհ։

43ա Աչուիս կու կուրնա, ու ձեռուիս կու թուլնա, աւա՜խ, աւա՜խ։

43բ Ո՛հ, Տէր, թող արա ինձ զի հանկեայց, զի պանդուխտ եմ ես՝ յաւտար երկրի։

Ը

71բ Ո՛վ հրաշաբան սուրբ վարդապետ Գրիգոր և աստուածային խորոցն քննող սուրբ Բարսեղ, շնորհեցէք անսրբոյս ի սուրբս հպիլ։

Թ

79ա Զբազմամեղ անձն իմ և զեղբայրն իմ Ստեփաննոս քահանա աղաչեմ յիշել՝ ի Տէր հանկուցեալն բարիոք խոստովանութեամբ՝ ի Հայր և Որդի և Հոգի Սուրբ։

Ժ

126բ Ելեր ի վերա բարձու լերին սուրբ քաբոզիչս Սիոնի,
Եւ գոչեցեր բարձր ձայնիւ մոլորելոց գալ զկնի։
Թողուլ զաղանդնս Աբելի ի միանձինս ժողովողի.
Եւ զանիծել Արիոսին զչարաչար բարժանողի։
Եւ գալ ի լոյսն անճառելի, և հաւատալ Աստուած զՈրդի,

* Դ և Ե միավորների սկզբնատառերով հորվում է հայոց այբուբենը՝ Ա-ից Ճ։

Միութիւնակից Հաւր և Որդո խոստովանել Աստուած զՀոգի։
Երիս անձինս բաժանեալ Հայր և Որդի և Սուրբ Հոգի,
Որով յաւետ փառաբանի Երրորդութիւն անճառելի, ամէն։

ԺԱ

92ա Զփանաքի և զեղկելի գրիչս զՅովաննէս աղաչեմ յիշե ի Տէր։

ԺԲ

120ա Ի Կոստանդինուպաւլիս էր, յորժամ զայս ասէր*։

ԺԳ

125բ Զկարցի այլ յիստակ իմանալ և գրել, տես դու, վարձք է։

ԺԴ

Գրիչ՝ Կոստանդին

245բ Գրեցաւ սա ձեռամբ իմով Կոստանդնի մեղապարտ և ախմար գրչի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ, մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և ննջեցելոց իմոց, ամէն, ամէն, և փառք յաւիտեանս, ամէն։

Այս լուծմունքս, որ գրեցի, նա Մինաս վարդապետին է, և թէ այլ մարդ ասէ թէ իմն է, նա սուտ է**։

ԺԵ

250 Ո՜վ հրաշալի եղբարք, որք ընթեռնոյք զգիրս զայսոսիկ, յիշեցէք զախմար գրիչ Կոստանդին դպիր, ընդ նմին զհայրն իմ և զմայրն, և որ յիշէ յիշեալ լիցի այժմ և ի հանդերձելումն, և ինքն՝ աւրհնեալ յաւիտեան։

ԺԶ

Ստացող՝ Մինաս

305ա Շնորհաւք ամենախնամ և մշտասէրտ զաւրութեամբ Հոգւոյն Աստուծոյ, որ է իւկապէս և տիրաբար Աստուած, ընդ Հաւր և ընդ Որդոյ յաւէտ, ես՝ Մինաս, սպասաւոր բանի, ստացա զգծ[ուա]ծք լուծմանցս սրբազանից արանց յոքնիմաստ և բազմահանճար գրութեանցն, զոր թելադրութեամբ տրամիմաստ վարդապետին մերո Դաւթա արարեալ է վսեմախորն և մեծ գլուխն հանուրց Հայաստանեաց եկեղեցւո տէրն Յակոբ. ի յիշատակ անձին բարեաց և պատճառին առ արդիւնակրեալքն յիմաստունող գրութեանցս, ի յիշատակ բարեաց և ինձ, և ծնաւղաց իմոց, եղբաւր, քեռ և ամենայն զարմից։ Վասն որո իսկ սիրովն Քրիստոսի աղաչեմ զաշակերտսդ բանի և զհանդիպեալսդ այսմ գրութեան ընթերցմամբ կամ գրութեամբ, արժանաւորել զիս, զՄինաս, ծնաւղաւք իմովք,

---

* Գրված է «Նորին Գրիգորի Մաքսիմոս յիմաստասէրս ճառի մասին։

** Վերջին նախադասությունը գրված է էջի ստորին լուսանցքում և վերաբերում է «Պարապմանց գրոց լուծմունքին։

եղբարք, քւերք, զարմիւք և ամենայն ընկերակցաւք, որո աղագաւ եղև ստացու[մն] սորայ յիշման բարո, զի և բարերարն Աստուած պարգևաց [բ]արեաց արժանաւորեսցէ զյիշողսդ զմեզ ի Տէր, որում փառք յաւիտեանս յաւիտենից։

## 325

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 199

Գրիչ՝ Կոստանդին
Վայր՝ Դրազարկ,
Վանկունճ անապատ

ա

433բ Աւրհնութիւն և փառք և գոհութիւն ամենասուրբ երրեակ անձնաւորութեանն ի միում տէրութեան և աստուածութեան Հաւր և Որդո և Հոգւոյն Սրբո, որում մեք վիճակիմք հաւատով, յուսով և սիրով։

Ի թուականութեանս Հայոց ութն հարիւր և քսանն (1271), ի հայրապետութեանն տեառն Յակովբա Հայոց կաթողիկոսի, և ի թագաւորութեանն Հեթմո Հայոց թագաւորի, կամաւքն Աստուծոյ փափագեցի բազմավրէպս Կոստանդին պիտակ անուամբ սպասաւոր բանին ստանալ զաստուածաբան մարգարէիցս տառս, և շնորհիւ Տեառն, ծախիւք իսկ և ձեռամբ իմով, գրեալ աւարտեցաւ ի հռչակաւոր ուխտս Դրազարկ և յանապատս Վանկունճ, ընդ հովանեաւ ամենաաւրհնեալ Սուրբ Տիրամաւրն, ի վայելումն մանկանց եկեղեցո և յիշատակ բարեաց առաջի Աստուծոյ ստացողի և գրողի սորա Կոստանդեա և ծնաւղաց և հարազատաց իմոց ըստ մարմնո և ի Քրիստոս։

Արդ, աղաչեմ Աստուծով զքրիստոսասէր պաշտամեայսդ սրբո եկեղեցո, որք պատահիք այսմ գրո ընթերցմամբ կամ աւրինակելով, համարձակ լերուք, զի բազում աշխատութեամբ ուղղեցի, և որ ինչ ի սմա ըստ մտի թուեցի, գոհութիւն Տեառն մատուցի, և եթէ սխալ ինչ հանդիպեցի, զիջմամբ ըստ իս ներելով թողցի, զի ոչ ծուլութեամբ անփոյթ արարի, այլ մեծաւ ջանիւ այդ չափ կարացի։ Վասն որո բարեմիտ կամաւք յիշեսջիք զմեզ և զծնաւղս և զհարազատսն մեր աղաւթիւք՝ յառատ ողորմութիւնն Աստուծոյ և յանծախելի սուրբ և անմահ պատարագն, զի արժանասցուք թողութեան մեղաց և արքայութեանն երկնից, ի փառս բարերարին Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Ո՜հ, զմեղաւք դատապարտեալ կազմաւղ սորա զԱռաքել Հնազընդենց, և զծնաւղս, և զհարազատս, և զուսուցիչս իմ զհանկուցեալսն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր։ Այլ Գրիգոր նորընծա քահանա, որ ծաղկազարդեաց զսա, և զընտիր գրչատրն զԱնտոն, որ զգլխագրեաց զսա, յիշեսջիք աղաւթիւք ի Քրիստոս, որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն։

բ

107բ Զայս Աստուածաշունչ մատեանս, զոր սկիզբն արարեալ իմոյ ձեռին Կոստանդեա սպասաւոր բանի, եթէ ի յանկ ելեալ աւարտեսցի զկնի

մահուան իմոյ, տաց զսա ի ժառանգութիւն մաւրն Աստուծոյ ի յԱւագ Մլիճին: Եթէ կամի Աստուած, ուր և հասանէ վախճան կենաց իմոց, անդր առաքեցից, զի իմ ժառանգաւոր Սուրբ Աստուածածինն է։ Եւ որ զայս գիրքս հանէ և կողոպտէ զՍուրբ Աստուածածինն՝ յետ իմ մահուան, հանցէ և զնա Քրիստոս իւր արքայութենէն, քանզի սեղանակողոպուտ է։ Եւ ժառանգաւորն սորա, զոր վերագոյն յիշեցաք՝ աւսոխ և դատախազ նմա ի համագումար ատեան հանդիսին։ Վասն որոյ ընծայեմ զսա ի Աւագ Մլիճոյն Սուրբ Աստուածածինն՝ ի յիշատակ ինձ և հաւր իմոյ Մանուէլ երիցու, զի իւր մահուան աւրն ինձ լուիլու յայն սուրբ տաճարին Աստուածամաւրն ընծայեաց և նուիրեաց զիս, և ինքն հաւն է թաղեալ ի դամբարանի, վասն որոյ անշարժ մնասցէ ի նմա եղեալ։ Ոչ ասեմ զտիւ և զգիշեր կալ մնալ ի նմա, զի այս անհնար է, այլ զի մի ոք իբր զիւր ստացուած առեալ գնասցէ ուր և կամի, զի զայս ես միայն կարեմ առնել յիմ կենդանութեան։ Ոչ ոք իշխեսցէ անցանել և արհամարհել զհաստատուն տիպ տառիս մարդկանէ, ո՛չ թագաւոր, ո՛չ իշխան, ո՛չ եպիսկոպոս, և ո՛չ հայր վանաց, ո՛չ մեծ և ո՛չ փոքր, ո՛չ եկեղեցական, և ո՛չ աշխարհական, զի մի՛ հպարտացեալ ի դատաստան սատանայի անկցի և զվերագոյն անէծքս առցէ։

Եւ այս վերոյգրեալս հաստատուն է կամաւքն Աստուծոյ, և վասն առաւել հաստատութեան՝ իմով ձեռամբս գծագրեցի։

Գ

305ա Բարեխաւսութեամբ և աղաւթիւք սուրբ մարգարէին Երեմիայի և ամենաաւրհնեալ Տիրամաւրն որոյ զգիրքս շնորհեցաի Աւագ Մլիճոյն եկեղեցւոյն, մի յիշեր զմեղս իմ, և մի բարկանար խստառ, զի գինք արեան քո եմ, և դարձոյ զսրտմտութիւնս քո յինէն։

Դ

169ա Եւ արդ լեր պաշտպան և վերակացու Յիսուս հոգւոյ և մարմնոյ իմ յամենայն ժամանակի, և անտես արար զյանցանս հաւատացելոց ի քեզ, և փառաւորեա բարձր ի գլուխ պսակաւ առ դատաստան, և արժանաւորեա, զի մնասցէ անջինջ յիշատակ ինձ ի յեկեղեցւոջ Աւագ Մլիճոյ Աստուածածնին և Սուրբ Փրկչին։

326

ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետիկ, 212, Սարգիսեան, Ցուցակ Բ, էջ 294

Գրիչ՝ Բասիլ
Վայր՝ Խորին ուխտ

ա

Քրիստոս Աստուած, որ յայսմ աւուր լոյս ծագեցար աշխարհի, լուսաւորեա զհոգի Երիանոսի, առաջնորդի սուրբ ուխտիս և ծնաւղաց նորին։ Նա և զյոքնամեղ գրչիս Բասլի՝ և Աստուածաստու եղբաւր իմոյ, և ծնողաց մերոց և որոց զամէնն ասեն։

Բ

Քրիստոս Աստուած, որ ի խանձարուրս պատեցար վասն ազգի մարդկան, անշիջանելի լուսով քո պայծառացո զհոգի Երանոսի և զՊետրոսի դիտապետաց մենաստանիս և ծնաւղաց նոցին։ Նա և զՍտեփանոսի առաջին հիմնարկողի սորին, և զիմ մեղաւոր գրչիս Վասլի, և ծնողաց իմոց, և որոց զամէն ասասցեն։

Գ

Հոգի Սուրբ Աստուած, աղբեր անսպառ, զերկնային պսակ քո պարգեեա Բարսղի և հանգո զնա ընդ ընտրեալս քո՝ որ զաւրինակս պարգեվեաց և ինքն զկնի սակաւ աւուրց փոխեցաւ յաստեացս, և էր առաջնորդ աստուածաբնակ ուխտին Խորնին: Ընդ նմին և Աստուածատրու քահանայի, որ բնաւին սպասաւորէր նիւթոց և ամենայն պիտոյից. և նմա պատրաստեա զարքայութիւն քո, և ծնողաց նորին, և ինձ յոքնամեղիս, և որոց զամէնն ասասցեն։

Դ

Քրիստոս Աստուած, որ լուաց զոտս աշակերտացն, լուասցէ և զյանցանս Ստեփանոսի և զԿոստանդեայ հարազատին և զՀայրապետին, որ բազում աշխատութեամբ շինեցին զմենաստանս։ Սրբոց իւրոց սեղանակից արասցէ զհոգիս նոցա։ Նա և զտարաժամ վախճանեալն զՍտեփանոս՝ զնոցին արմատն։ Հանգուսցէ Քրիստոս Աստուած և զհոգիս այնոցիկ, որ աշխատողաց գրոցս մեղաց թողութիւն հայցեն։ Նա և զիմս շարեաց պարտականիս, և զայնոցիկ, որ զամէնն ասասցեն։

Ե

Ողորմած և մարդասէր Աստուած, ողորմեա Բարսղի անարժան քահանայի և ծնողաց նորին, որ յարդար ընչից իւրոց ստացաւ տակեաց ի մատեանս յայս, դու հարիւրապատիկ հատո նմա ընդ միոյն յարքայութեան քում, և ամենայն եղբայրութեանս։ Նա և ինձ յոգնամեղ գրչի Բասլի, և հաւրն իմոյ Ներսիսի, և այնոցիկ, որ զամէնն ասեն։

Զ

Յամի ՉԻ (1271), յայսմ աւուր՝ որ է չորեքշաբթի, բարեպաշտ արքայն Հեթում փոխեցաւ առ Քրիստոս՝ կրաւնաւորական վարուք, զոր հանգուսցէ Քրիստոս զհոգի նորա ընդ Մակարա ճգնաւորի և ընդ այլ սրբոցն, ամէն*։

---

* Գրված է ձեռագրի 189-րդ թերթում։ Հեթում Ա թագավորը 1270 թ. հոկտեմբերի 20-ին հրաժարվելով թագից, կրոնավոր է դարձել, ընդունելով Մակար անունը։ Մահացել է նույն թվականի հոկտեմբերի 28-ին։

Առանձին հիշատակագրություններում հիշատակվում են «Վարդանայ պարտիզպան» Խորին անապատի, գրչի «Հեպայ՝ քոյրը», նրա որդի Խաչատուր սարկավագը, «Յովանէս կրոնավոր և ուխտի փականալ», հանգուցյալ Պետրոս քահանան, Վարդան սարկավագը, Տիրացու եպիսկոպոսը՝ գրչի հորեղբայրը և ուսուցիչը, Առաքելը, նրա հարազատը՝ անապատի տնտես Թորոսը, Կոստանդ ծերունին՝ հյուրատեսը և հանգուցյալ Դավիթ քահանան։

## 327

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Քյուրտյան հավաքածու 111*

Գրիչ՝ Բասիլ

ա

295ա *Փառք... յամի Չ-երորդի Ի-երորդի (1271) թուաբերութեան տամարի Հայոց, յառաջնորդութեան անբիծ հեղինակին եւ յաչորդին աթոռոյ Սրբոյն Գրիգորի տեառն Յակոբա, և ի թագաւորութեան Կիլիկեցւոց նահանգիս Լեւոնի, Աստուածատուր քահանայ ցանկացող եղեալ այսմ լուսայիղծ եւ կենսագիր...*

*Զստացող սորա զԱստուածատուր՝ զհոգւոյ եղբայրն իմ եւ ղծնաւղսն նորին։*

բ

224ա *Աղաչանաւք սրբոյն Ղուկասու աւետարանիչի ողորմեա Բասլի եւ ծնաւղաց իմոց։*

գ

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

296ա *Ո՜հ զմեղաւք դատապարտեալ կազմող սորա զԱռաքել Հնազանդենց եւ զծնաւղըսն իմ, եւ զհարազատսն իմ զԿարապետ քահանայ եւ զՊաւղոս սարկաւագ, եւ զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս աղաչեմ յիշել ի Տէր։*

*Ի թվին ՉԻ (1271) կազմեցաւ սա։*

դ

Հետ. ստացող՝ Յովհաննէս Արքաեղբայր

82ա *Զստացող սորա զՅոհաննէս եպիսկոպոս՝ արքաեղբայր Հայոց, ծնողաւք իւր եւ ընտանեաւք յիշեալ լիցին ի տեսողացդ եւ վայելողաց ապագայիցդ, եւ զձեզ Աստուած յիշեցէ, որպէս դուք զմեզ, ամէն։*

## 328

## ԳՈՐԾՔ ԴԻՈՆԻՍԻՈՍԻ ԱՐԻՈՊԱԳԱՑԻՈՅ

*Ալիշան, «Հայապատում», էջ 486*

Գրիչ՝ Յովհաննէս Արքաեղբայր

ա

*Ես Յովհաննէս եպիսկոպոս և րաբուն, ծառայ մեծին Աստուծոյ և ընտրելոցդ, որդի մեծ իշխանաց իշխանին Կոստանդեայ՝ աբրահամեան Հերունւոյ և աշխարհաշէն առաքինւոյ, և եղբայր համահայր ի Քրիս-*

տոս փոխեցեալ բարեպաշտ արքային Հեթմոյ, որոյ յիշատակն օրհնութեամբ և ցօղ կենսակայլակ կողից կենարարին իջցէ ի դամբարան շիրմի նոցա, ամէն։ Ի թվականիս Հայոց ՉԻ (1271) գրելետու զիմաստալի և գերապատում տառս սրբոյն Դիոնիսիոսի Աթենայ եպիսկոպոսի և տիեզերալոյս վարդապետի, ի թագաւորութեանս քրիստոսապսակ արքային Լեւոնի՝ տեառն իմոյ և եղբօրորդւոյ, զոր աջն Աստուծոյ միշտ պահեսցէ ի չարէ, աստուածաշնորհ զաւակօքն իւր՝ Հեթմիւ և Թորոսիւ և Ռուբինեաւ, փառաց ի փառս բարձրացուցանելով, ամէն։

Եւ գրեցաւ սա յերկուց գրչաց՝ ի Ստեփանոսէ և ի Յովհաննիսէ, որոց Տէր ողորմեսցի, ի կաթողիկոսութեան տեառն Յակոբայ, յորմէ և զօրինակն ընկալայ, ի լուսաւորութիւն խաւարեալոյս և յիշատակ բարի ինձ, և ծնողաց իմոց, և համայն զարմից։ Աղաչեմ Տերամբ Աստուծով, որք օգտիք ինչ ի սմանէ և կամ գաղափարէք, ողորմութիւն և թողութիւն խնդրեցէք մեզ ի Քրիստոսէ Աստուծոյ, զոր և ձեզ տացէ Քրիստոս։

Բ

Յաստուածային սէրըն հարեալ
　　Սա որ հրով նորին վառեալ,
Որ և ըղտաւս այս ըստացեալ
　　Բամբիշըն մեծ Ֆիմի կոչեալ,
Հեթմոյ քաջի նա դուստըր լեալ՝
　　Որ էր արքայ Հայոց օծեալ.
Անցաւոր զայս ծանուցեալ
　　Անանց թագին այն բաղձացեալ։
Նորափեսուր սովաւ պճնեալ,
　　Լի լապտերօք ընդառաջեալ,
Նոր փեսային է հարսնացեալ,
　　Մտից դրախտին արժանանալ։
Դղկելիս սովաւ թախծեալ
　　Երկամբք մատանցս ըղսա ստանալ,
Սակս որ ի մի գործ ըսկըսեալ
　　Փոքր ինչ յայլոց օժանդակեալ։
Ստացողք վերջո և որք օգտեալ՝
　　Հայցեմք բաժի մասըն մեզ տալ,
Ապրիլ ձեօք ի հրոյն գանձեալ
　　Մեք մերայօքըն զայս ժըտեալ։
Սըրտիւք ի ձեզ եմըք դիմեալ
　　Բուըըն զոտից ձերոց հարեալ,
Երանութեան սուրբ վկճակեալ
　　Եւ թողութեան պարգեւ շնորհեալ,
Մեզ և մերոցն յիշողքն յիշեալ
　　Եւ համայնիւքս Աստուած օրհնեալ*։

* Տների սկզբնատառերով հոդվում են «Յոհաննեսս ասեմ» բառերը։

Գ

Զիմաստութեամբ լցեալն և զամենայն բարեձևութեամբ զարդարեալն, զսիրողն Աստուծոյ և զսպասաւորն ամենայն ծառայից նորա, զարքածին բամբիշն Ցիմի և զաստուածապարգեւ զաւակսն նորին՝ զՊալիան և զՃուան, և ղհեղանաղն Մարկրուն յիշեցէք ի Քրիստոս Աստուած, ստացողք սորա և վայելողք։ Եւ Աստուած զձեզ յիշեսցէ ի բարի։

Այլ և զեղկելիս Յոհան եպիսկոպոս՝ մի մոռանայք զգրողիկս անարժան։

Դ

Ընկալ, ո՜վ աստուածասէր և գթասէր հոգի, մեծդ ըստ մարմնոյ և բարգաւաճդ ըստ հոգւոյ՝ ծիրանածինդ Ցիմի, զբաղձալին քո՝ երկամբք ձեռին մեղապարտիս Յոհաննէս եպիսկոպոսի կրսերոյ եղբօր հօր քո, որով յԱստուած և յաստուածայինսն խոկացիս միշտ և տրտմեալ սրտի քո սփոփանս սովաւ արասցես, գիտելով սեփհական է մարդոյ նժդեհութիւն և պանդխտութիւն և փորձանք։ Որոց անդորր տացէ ձեզ, որ ամենահնարն է։

## 329

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 10062

Գրիչ՝ Յոհաննէս.

ա

52բ Փառք Աստուծոյ Հաւր և բանի նորայ Յիսուսի Քրիստոսի և Սուրբ Հոգոյն յաւիտեանս, ամէն։

Թուականութեանս հայոց ի ՉԻ (1271) գրեցաւ Պատմութիւն վարուց երանելոյս Անտոնի։ Աղաչեմ զամենեսեան որք ընթեռնոյք զվարս սրբոյ հաւրս Անտոնի, յիշելոյ արժանի արասջիք զգրող սորայ զՅոհանէս անարժան, և զեռեսսին եղբարսս իմ՝ զԳրիգոր և զԱնդրիաս, և զմիւս Գրիգոր, և զհոգևոր հայրն մեր Զաւրվար՝ որ են սուրբք և ճգնաւորք ի կրաւնս քահանայութեան։ Եւ որք յիշէք, յիշեալ եղիջիք և դուք, և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։ Յիշեսջիք և զդեռաբոյս եղբայրս մեր Ստեփանոս:

Աստուածային շնորհացն առ ընդունիչ և Սուրբ Երրորդութեան տեղի աւթեվանի և բնակարան, ո՜վ ամեներջանիկ սուրբ հայր Անտոն, որ
53ա քոյով ամենայպայծառ սքանչելի և սուրբ և մարդկան անտ‖անելի ճըգնութեամբդ զսատանայական բռնութիւն ընկճեալ խորտակեցէր և կոխանս արարէր, առ ոտս քո անկեալ աղաչեմք զքեզ, մի մոռանալ զհաւատացեալքս Քրիստոսի և մաղթանս քո առ Տէր մեր և Աստուած, զի ապրեսցին ի պատրանաց բանսարկուին մեծաւ շնորհաւք մարդասիրութեան նորայ։ Յոյժ պաղատանաւք հայցեմք և մեք, որ զքոյ վերաստացաք զգիրս, աղաչեայ վասն մեր զՏէրն Քրիստոս՝ պարգևել մեզ զանշարժ զխաղաղութիւն ի կեանս յայսմիկ, պահել ամենազաւր աջով նորա

յամենայն փորձութենէ և յաւիտենական հանկստեանն արժանանալ ի Քրիստոս քոյով բարեխաւսութեամբ տէր և հայր։

Ընդ նոսին յիշեսջիք և զՄէք քահանայն, որ զաւրինակս պարգևեաց։

Բ

Գրիչ՝ Յոհան

310ա Փառք ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ո՜վ սուրբ և ընդրեալ և մաքրեալ ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ հոգեւոր հայր իմ Անդրէաս, յիշեայ զանարժանս և զանպիտանս Յոհան ի սուրբ և յարժանաւոր յաղաւթս քո, զի թերևս հաշտեսցի բարեգութն Աստուած քոին պաղատանաւք և բժըշկեսցէ զվիրաւք թարախեալ հոգիս իմ, զի մի ամաչեցից ի յաներեկ աւուրն, յորժամ բանք սպառին և գործք թագաւորեն, և Քրիստոս, որ առատն է ի տուրս պարգևաց մեզ և ձեզ ողորմեսցի, ամէն։ Աղաչեմ և խոշորութեանս մի մեղադրել, և ընկալ զսակաւ գրիկս իբրև ղերկու լումայս տառապեալ կնոջն կամ իբրև զյետինս մշակսն, որ ի յայգին գործեցին, և յիշեայ զբազմայմեղ ծառայս Քրիստոսի և ձերոյ սրբութեանդ, աղ/// յո՞ յերեսս անկեալ աղաչեմ յիշել զհոգևոր հայրն իմ զՎարդան սուրբ քահանայ, և Քրիստոսի փառք յաւիտեանս։

Գ

130բ Տէր Աստուած, բարեխաւսութեամբ սորա ողորմեա Անդրի[աս]ի և գրողի։

Դ

52բ Աղաչեմ յիշել ի Տէր զաշխատողս ի սմայ զխաչատուր քահանայ և զոզորմելիս Յոհան՝ եղբայր սորայ։

Ե

139ա Բարեխաւսութեամբ սուրբ Ճգնաւորիս, Քրիստոս ողորմեա մեղապարտիս Անդրէասի և մեղուցեալ ծառայի նորին Յոհ[ա]նի, ամէն։

Զ

306բ Վա՜յ մեղաւորիս Յոհ[ա]նայ, թէ ինչ կամիմ լինել յանքուն որդանցն։

Է

Գրիչ՝ Գրիգոր

245ա ԶԱնդրիաս քահանայ յիշեսջիք ի Քրիստոս։ Ընդ նոսին և զտառայպել գրող սորայ՝ զԳրիգոր բազմայմեղս, ընդ նոսին և զհոգևոր հայր մեր Զաւրվար:

Ը

Սրբագրիչ՝ Աւչին

321բ Ո՜վ սուրբ հարք և եղբարք, յորժամ աւգտիք ինչ ի սմանէ կարդալով և կամ գաղափար առնելով կամ լսելով, յիշելոյ արժանի արասջիք զԱւ-

չին Նուաստ քահանայս և զսպասաւորս Սրբոյն Նիկողայոսի, քանզի և ես սակաւ ինչ աշխատեցայ ի սմայ ուղղելով զսղալն զոր գտի։ Եւ զձեզ և մեզ և ծնողաց մերոց թողութիւն շնորհեսցէ Տէր Յիսուս, ամմէն։

Բ

318ա ԶՆուշին նվաստ քահանայս և ըզծնողսն մեր յիշեսջիք ի Տէր Յիսուս։

Գ

Կազմող՝ Ստեփանոս

321բ ԶՍտեփանոս պրակս, զկազմող տառիս աղաչեմ յիշել ի Տէր, և զհոգեւոր հայրն իմ զԹադեոս, և Աստուած զձեզ յիշէ իւր յահեղ ատենին, և ընդ աշոյսն դասէ զհոգիս յիշողացն։



330

## ԱՒԵՏԱՐԱՆ ԿԵՌԱՆ ԹԱԳՈՒՀԻՈՅ

*Երուսաղէմ 2563*

Գրիչ՝ Աւետիս

ա

6բ *Տէր իմ Քրիստոս փրկիչ մարդկան*
*Եւ Թագաւոր միշտ յաւիտեան,*
*Զարժանացեալսն ի քէն աւժդման,*
*Զկեռան արքայն ի Հայաստան,*
*Եւ զթագուհին սորին Կեռան,*
*Որ եւ ստացաւ ըզքոյս մատեան,*
*Յորժամ փառաւք գաս հայրական,*
*Ընգալ ի դասս աջակողմեան։*
7ա *Եւ զՀեթում սոցին որդի,*
*Թագաժառանգ Հայոց սեռի,*
*Պահեա կենաւք երկարեկի,*
*Հանդերձ եղբարբք իւրաւք բարի։*
*Եւ զծնողաց սոցին հոգի,*
*Իւրեանց նախնեաւքն եւ այլ զարմի,*
*Ընգալ ի լոյսդ ընդ գերարփի,*
*Եւ քեզ Տէր փառք յամենայնի։*

բ

372բ *Փառք ամենասուրբ Երրորդութեանն յամենայն արարածոց, երկնա-*
*ւորաց եւ երկրաւորաց, յիմանալեաց եւ զգալեաց, եւ յամենայն շնչոյ եւ*
*յամենայն եղականաց՝ ի գոյից եւ յոչ գոյից, որ ծանր եւ մթացուցիչ խոր-*
*հուրդս ի բաց եդեալ, ոչ յայլ ինչ քան յԱստուած եւ յաստուածայինսն*
*խոկալ փութան բանիւք եւ արդեամք, երկրորդ զստորեւ կացեալս վար-*
*կանելով, զի պնդելիք են եւ անկայանք, եւ վերնոյն, եւ արդարեւ անա-*
*պականին բաղձան բարւոյ, ի գլուխ ըստ իմաստացն զակն ոգւոյն ունե-*
*լով, յորմէ ամենայն եւ որով ամենայն, զոր է տեսանել յերանուհիս այս*
*բամբիշ, ի մաքուր աւբիորդ փեսային սուրբ, ի թագուհին Կեռան, որ*
373ա *զյոլով մասոմս‖առաքինութեան կրելով յինքեան, փութա այլս ի վերայ*
*այլոց բարդել, զի համայնիւքն պսակ բիւրակնեա յաւրինեսցէ ինքեան,*
*և ղանկապուտն թագ ի վերայ այսր կալցի, զի ամենագեղ վայելչութեամբ*
*հաճոյասցի Որդւոյն Աստուծոյ։*

Սոյն վասն ողջախոհ մոլութեամբ վարէր և հանապազաւր կանխէր
երկրպագութիւն Տեառն ի գիրկս մաւր մեր Սիովնի սրբոյ, ունկն գնէր
գրոց սրբոց, և լուալ զբանն, եթէ՝ Ծրանի որ ունիցի զաւակ ի Սիովն, և
ելեալ ի խնդիր իմոյ նուաստութեանս Աւետից գրչի յանձնարարեալ
ստանալ զճշմարիտ զաւակս զայս, զոր Հոգին թելադրեալ ի շրթունս
երանեալ աւետարանչացն, խաւսել վասն տնաւրէնութեան մարդացելոյ
373բ բանին, նաև‖վասն փրկութեան վարդապետութեան նորին Որդւոյն Աս-
տուծոյ, եւ նշանաց եւ արուեստից, զոր առ մերս բնութիւն, եւ վասն
իջման Հոգւոյ Սրբոյ առ ընտրեալ դասս առաքելոցն, եւ զնոսին առա-
քեալ քարոզս եւ աւետարանիչս տիեզերաց, եւ տալ իշխանութիւն որոց
կամիցի։ Ու իմ յանկ հանեալ զսայ, ետ ի ձեռն այլում հմուտ և յարգի
յարհեստ գրչութեան՝ զարդարել զսա խորանաւք և ծաղկաւէտ վայելչու-
թեամբ, և ոսկիատիպ պայծառութեամբ, և ետ ի վանս, որ կոչի Ակներ:
Վասն որոյ աղաչեմ զտեսողսդ և զվայելողսդ սորա, յիշել սրտի
մտաւք զերիցս երանեալ թագուհին զԿեռանն՝ զարմիւքն իւրովք կենդա-
374ա նեաւք՝ յաղաւթս ձեր, զի երկար ժամանակաւ ու‖զղեցէ զթագոհութիւնն
իւր, և ետ ելից աստի՝ թագակից և պսակակից լիցի սուրբ թագուհեացն։
Յիշեսջիք և զառ ի Քրիստոս հանգուցեալն զհայրն իւր զՀեթում, հան-
գիստ և ողորմութիւն շնորհելով նմա ի Տեառնէ, և ընդ աջեայսն իւր դա-
սեսցէ, և կենդանեացն իւր աջովն իւրով պաշտպանեսցէ, փրկելով յար-
ժանահաս նեղչաց և վշտաց անդորր տալով ամպրոպ խռովութեան կու-
տակեալ ալեացն, յորում շրջապատեալ սաղանիմք։
Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայկազնեա տումարիս ի ՋԻԱ
(1272), ի թագաւորութեան Հայոց Լևոնի աստուածասիրի, և ի հայրա-
պետութեան տեառն Յակովբայ:
Յիշել այժմ աղաչեմ առաջի զենման անարատ գառինն Քրիստոսի
374բ զամենայն բարեձևութեամբ զարդարեալ‖զարքայն Հայոց զԼևոն, զկե-
նաց կցորդ և ղրանից ընկեր, նա և թագակից երանուհոյն Կեռանի, եր-
կար ժամանակաւք աշխարհավարել զթագաւորութիւնն իւր արդար իրա-
ւամբք, և ետ աստի ելից ընկալցի զերկնային խորանսն թագաւորել ի
նմա ընդ սրբոց թագաւորացն Թէոդոսի և Կոստանդիանոսի: Նա և զծի-
րանածին որդեակն իւրեանց զՀեթում, զի հասցէ ի չափ հասակի կա-
տարման, և աջն աստուածային ի վերայ սորա լիցի, ի նստել ի տան և
ի գնալ ի ճանապարհի, ի ննջել և ի յառնել, ժառանգել զթագն հայրենի,
և կեցեալ ըստ աւրինացն Աստուծոյ վարժեալ գրովք աստուածայնովք և
զինուք սպառազինաւք՝ յաղթող լինել ի վերայ թշնամեաց խաչին Քրիս-
տոսի։
375ա Ընդ յիշատակալովքս աղաչեմ յի‖շել առաջի Քրիստոսի Աստուծոյ
զանդրանիկ դուստր սոցա Ջապրլ զփոխեալն ի Քրիստոս, զի ընկալցի
զսա ի կենդանեացն իւր խորանս, պայծառացեալ լապտերաւք մուծանել
յառագաստն ընդ իմաստուն կուսանսն։
Դարձեալ, յիշման արժանի առնիցէք և զերկրորդ քոյր սորա զՍպիլի
զննջեցեալսն ի Քրիստոս, զի փոխանակ զգալ ի վայելմանցս ունայնու-

թեան, դոր ոչ վայելեաց, վասնզի ստընդիա զոլով, ընկալցի զանթառամ
փառաց զպսակն, և զգեստն անկողոպուտ՝ զլոյս մշտընջենաւոր։ Խընդ-
րելով և զայս ևս ի Քրիստոսէ յառատաձիր պարգևատուէն, զի զկենդանի
քոր սոցին պահեսցէ անվրդով, նաև երկար ժամանակաւք տալ զսա
375բ հաւր և մաւրն լնուլ և փարատել զսուգ տրտմութեանն, զոր ի ծննդոց‖իւ-
րեանց ընկալան։

Վասն որոյ աղաչեմ զդասս սրբազանից՝ զվայելողքդ սրբոյ Աւետա-
րանիս, նաև զպատահեալ տեսողք սորա, առնուլ ի մտի զբան վարդապե-
տութեան Քրիստոսի, որ ասէ, Խնդրեցէք և տացի ձեզ, հայցեցէք և գտջիք։
Խնգրեցէք ի յԱստուծոյ ի հասարակաց կենաց տուողէն, զի զդեռաբոյս
որդեակն զկոչեցեալն Թորոս՝ մխիթարութեան որդին, որ այժմ տուեալ
եղև պարգևք աստուածային, առնուլ զհասակ երիտասարդական, և հա-
սանել մինչև ի խորին ծերութիւն, զաւրութեամբ հզաւրին զաւրացեալ և
առաւել քան զառաւել մեծացեալ՝ լնուլ զտեղ նախնոյն իւրոյ զմեծն Թո-
րոսի, ընդարձակել զաշխարհս Հայոց, առնուլ զվրէժս քրիստոնէից ի
376ա քաննասարա, նկուն լիցին ի սրոյ‖դորա բնակեալքն ի յԵգիպտոս, այս-
պէս փառաւոր լիցի յաստուածայնուստ յաշխարհի իբր զարեգակն ծա-
գեալ նուաղեցուցանել զլոյս ճրագաց։

Աղաւթս ձիգս մատուցանել առ Աստուած, մանաւանդ յիշմամբ և
սրտահառաչ ողբով յիշել զաղբաւրն յորդառատ, զմայրս իմաստութեան,
զերախտաւորն Հայաստանեայցս՝ զարքայն Հեթում, որով սոքայքս
յառաջածան։ Զի այնչափ սիրեաց զքրիստոնեայս և զեկեղեցիս Հայաս-
տանեայց մնալ հաստատուն, մինչ զի զանձն իւր եդ ի մահ բազում
անգամ, կեցեալ սորա բարեպաշտութեամբ և ուղղութեամբ թագաւորու-
թեանն, կատարեալ [ը]նթացս իւր փոխեցաւ ի Քրիստոս։ Տացէ սմա Աս-
376բ տուած փոխանակ անցականից զանանց թագաւորութիւնն ասելով‖սմա՝
Ծառայ բարի և հաւատարիմ եկ մուտ յուրախութիւն Տեառն քո։ Լիցի
սա թագակից և պսակակից սրբոց թագաւորացն, վայելել և թագաւորել
յերկնային քաղաքն ի Վերինն Երուսաղէմ։

Զողորմածն, զհեզանազն, զբարէբարոյ, զաղքատասէրն, զբազմա-
բաշխն, զլցեալն ամենայն բարութեամբ, զճշմարիտ ժառանգն Հայաս-
տան աշխարհիս Զապիլ թագուհի՝ զհանգուցեալն ի Քրիստոս, յիշեցէք
յաղաւթս մաքուրս, զի և նա բազում հոգէբարձութեամբ նախախ[նա]-
մեաց զաշխարհս, նաև զեկեղեցիս և դվանաւորեայս, և ի վերա ամենայն
բարեացն զոր գործեաց, յաւել և զայս, զի ետ Հայաստան աշխարհիս
ժառանգ, զի ոչ շրջեցաք անտերունչս, և կամ վարատեալս, այլ զբնա-
377ա կութիւնս‖մեր կալաք։ Տացէ սմա Աստուած սեփհական հայրենիք
զդրախտն եդեմական, զուարճանալ և բարգավաճիլ ընդ հեղինեանսն, և
ընդ այլ սրբոց թագուհեացն։

Յիշել աղաչեմ ի միշտ զենեալ և անմահ կենդանւոյն զենումն զմեծ
զաւրականն Քրիստոսի, զգեղաղէշն քաջակորով, զարեամբ նահատա-
կեալն զԹորոս՝ որդի սոցին, որ սրախողխող եղեալ ի Մառի: Վասն զի
մեծ և անպատմելի ոճիրս գործեաց յանաւրինացն զաւրս, ընդ որս մա-
խացեալ սրախոց և կոտրատմահ արարին յոլով նիզակակցաւք համաղ-



27—487

նէիւք նորին, որո յիշատակն աւրհնութեամբ։ Անուն սորա ի դպրութիւն
կենաց գրեսցի, զի անսուրբ և ամբարիշտ ձեռաւք նուիրեցաւ ընդունելի
պատարագ Աստուծոյ Հաւր փ հոտ անուշից ի վերայ խաչին սեղանւոյ,
յորս հաճեսցի Տէր իբր յԱբելին, ի Նոյին և յԱբրահամուն բոլորապտուղ
զոհացս, ամէն։ Որ թէպէտ և հաճոյ գտաւ Աստուծոյ սակաւ աւուրբք և
կատարեալ քան զբազմամեայսն, զի ցանկալի էր Տեառն անձն նորա,
վասն այնր ի միշոյ մեղաւորացս փոխեցաւ անաղատ լապտերաւք, ղի
մի մռայլ ինչ նսեմութեան զճաճանչ նշոլից նորա մղտացուսցէ, և այժմ
թագապճնեալ ընդ համասեռսն ինքեան գեղապարէ զեռահիւսակն նուագ
երիցն և միոյ Տեառն մատուցանէ սփոփութիւն յուրայոցն, անմխիթար
սրտից խնդրելով գերեաց դարձ, կապելոց արձակումն, կորուսելոց գիւտ,
378ա վարատելոց և սա‖տանգէլոցն կազդուրումն և խաղաղութիւն։
Ընթերցողք այսմ մատեան աստուածաբան Աւետարանիս զսոյնս
բառնալ ի ձեռս եւ խնդրել ի Քրիստոսէ միջնորդութեամբ սորին, զի
միշտ ղաւդուտն մեր և զհաճոյսն իւր տնաւրինեսցէ թագաւորութեանս
մեր, ներել եւ անոխակալ լինել յանցանաց մերոց։ Եւ մի ըստ մեղս մեր
տալ մեզ, այլ ի մեղս եւ յանաւրէնութիւնս վերակացու իւրագին ծառա-
յիցս լիցի, եւ յիշողացդ եւ յիշելոցս Տէր ողորմեսցի։
Այլ եւ զեղկելի յԱւետիս գրիչ յիշել յաղաւթս մի մոռանայք, ո՜վ
աստուածազարդ եւ սրբասնեալ քահանայք, որք յայսմ աստուածախաւս
378բ մատենիս խրախանայք եւ յոսկիանկար ծաղկոց եւ պատկերացս‖բար-
գաւաճիք, զհանգուցեալս ի Քրիստոս զպարոն Կոստանդին զտէր Լամբ-
րունին, զմեծ հայր բարեզարդահոյս Կեռանի յիշեցէք յաղաւթս, զի տացէ
նմա Աստուած հանգիստ յանսպառ կեանսն, դասակցելով սրբոց իշխա-
նացն, որք վասն Քրիստոսի նահատակեցան։ Զի ազգայնովք ընտիր
գոլ նմա եւ հարազատութեամբ գեր ի վերոյ, որդի մեծին Հեթմոյ սեւաս-
տաւսիոսի, եղբաւր տեառն Ներսէսի, եւ աստիճանաւ պատուեալ, զի են
թագադիրք թագաւորութեանս Հայոց, զի շնորհեսցէ նմա Աստուած թագ
արքայական բրաբիոն պսակ ի գլուխ նորա, եւ փոխանակ անցականիս
379ա թագաւորելոյ, ընկալցի ի Քրիստոսէ թագաւորու‖թիւն մշտընջենաւոր։

Դ

Ի թուաբերութեանս Հայոց ՉԻԳ (1274), յամսեան մայիս ի հնգետա-
սան աւրն, յԱստուած փոխեցաւ Ըռովբէն, որդի երանուհոյն Կեռանի,
եւ եթող սուգ մեծ, զի յոյժ գեղազարդեալ էր տեսակով, ընդ որս եւ դուք
ցաւակից գոլով, սրբերամ դասք, յաղաւթս յիշատակել զտրընդեալս
զայն, զի ընդ անմեղ մանկունս Աստուծոյ Հաւր նվիրեցան դասակցեսցի
եւ սփոփանս հաւրն եւ մաւրն արասցէ ի խոր տրտմութենէն ազատել։
Յաղաւթս յիշել աղաչեմ զՍմբատ զմխիթարութեան որդեակ սորա,
որ ծնեալ եղեւ յետոյ մահուանն ըՌուբէնի, երկար ժամանակաւ վայելել
379բ ի տես սորա, խնդալ‖ի տուրս աստուածային, զի ոչ եթող թերի զտեղի,
զոր առ իւրն տարաւ։ Այլ եւ մաղթանս առ Աստուած մատուցուք, զի
զդեռաբոյս քոր սորին զՍպիլ պահեսցէ Աստուած անվրդով երկար ժա-
մանակաւ մնալ նմա, զի յոյժ սիրեցեալ եղեւ յաչս հաւրն եւ մաւրն։ Սրտի

*մտաւք աղաւթս արարէք եւ միւս այլ քաւր սոցին Զապէլի, որ է ամաց երրորդի՝ կեալ յաստիս յերկայն աւուրբք հասանել ի չափ հասակի, բարիոք աշխարհավարիլ սրբամիտ եւ ողջախոհ մարմնով և տալ փառս ամենասուրբ Երրորդութեանն։*

*Ո՜վ եղբարք, խնդրեցէք յաղաւթս ձեր զստնտեա տղայք արքայհոհոյն, զ*Կոստանդին, *զ*Ներսէս, *զ*Աւշին *և զ*Ռուբէն *մնալ անսասանելի ամենայն պատահմանց**։

331

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 7651*

*Գրիչ՝* Աւետիս

ա

130բ *Ո տէր իմ Յիսուս Քրիստոս, յորժամ նստիս յաթոռ դատողական հատուցանել մարդկան իւրաքանչիւր զգործս իւր, ղոչ թողեալս ի դատաստան քո և զխլեալս յիրաւանց քո զ*Աւետիս *գրիչ, որ խրատեալս եմ վճիռ տալով մեղաց իմոց, բաւականասցի ի մարդասիրէդ, ղի ընդունիցեմ զարքայութիւնդ։*

բ

268բ *Փառք քեզ անսահման անում և անզուգական անձնաւորութիւն, Հայր և Որդի և Սուրբ Հոգի յամենայն արարածոց, և բնաւից եղականաց, ամէն***։

332

*ԼՈՒԾՄՈՒՆՔ Ի ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ԺՂԼԱՆՔ ԿՈՉԵՑԵԱԼ*
*ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ*

*Երուսաղեմ 898 (1619 թ.) Պողարյան, Ցուցակ Գ, էջ 414*

*Գրիչ՝* Ստեփանոս Իրիցորդի

ա

24 *Զամենագով եւ զտրամաբան վարդապետն* Վարդան՝ *զարարող բանիս, եւ զստացող սորա զմեծապատիւ բարեպաշտ մայրն* Կեռան *թագուհէ*՝ Թեւանու, *հրամայեաց ինձ մեղաւորի* Ստեփաննոսի *եւ մականուն* Իրիցորդի *գրել զհոգիալից տառս՝ ի մխիթարութիւն աստուածասիրաց անձանց։ Արդ, աղաչեմ, որք հանդիպիք սմայ յիշեսջիք աղօթիւք զվերոյ գրեալն՝ զհոգեւոր մայրն ա[ամենայն] կրօնաւորաց, եւ զաստուածատուր դստերքն իւր՝ հանդերձ ուստերօք եւ դստերօք, անփորձ մնալ յաստիս եւ ի հանդերձեալ գալստեանն յաջագահ դասուն հանդիպիլ սմայ, եւ ընդ հրեշտակս փառաւորել զամենասուրբ Երրորդութիւնդ, յանըսպառ յաւիտեանս, ամէն։*

* *Հետագայի ստացող Եսաի Ամթեցին եղծել է անունը («Գրիգոր») և գրել իրենը։*
** *Գրիչը նույնն է նախորդի հետ։*

Բ

32 Զսրբազան վարդապետն Վարդան, յարմարօղ տառիս եւ զստացողս սորա, եւ զգրողս, աղաչեմ յիշել ի Տէր, եւ Աստուած մեզ եւ ձեզ ողորմեսցի։

Գ

72ա Զարժանին յիշատակի զսուրբ վարդապետն Վարդան յիշեսջիք աղօթիւք։ Ընդ սմայ եւ զբարեպաշտ տիկինն եւ ղխաչընդուս բարձօղն, որ է մայր Թագուհէ ամենայն Հայոց Կեռանի եւ ստացող այսմն գծի, որ Թեւանուն կոչի, որք հանդիպիք այսմըն տառի, աղօթից անձին ձեզ ինք լիցի Քրիստոս, եւ ձեզ ողորմեսցի և ամենայն հաւատացելոց ի Քրիստոս այսմ եւ յաւուրն ապագայի։

Դ

81բ Որք օկտիք ի սմանէ, ծաղքելով ի հոգեւոր կերակրոյս իբրեւ զմեղու զխորիսխ, յիշեսջիք զսուրբ եւ զարդիւնական վարդապետն Վարդան, զարարօղս սորա, ընդ նմին եւ զպատուական եւ զբարի մայրն կրօնաւորաց, եւ տառապեալ աղքատաց, զոր զրէ թէ Քրիստոսի զինքն հրամայեաց՝ Աղքատ էի եւ տեսէք։ Զոր յուսամ յիւր մարդասիրութիւնն աղատիլ ի մեղաց մեզ եւ ամենայն քրիստոնէից այնմ ահագին աւուրն։

Ե

15բ Որք օկտիք ի սմանէ և մխիթարիք, յիշեսջիք աղօթիւք զստացօղս սորա եւ զգծողս սորա, զմայր ///

333

ԽԱՉԳԻՐՔ

Երուսաղեմ 1654, Պողարյան, Ցուցակ Ե, էջ 485

Գրիչ՝ Ստեփանոս քահանա
Վայր՝ Սկեւռայ

163 Փառք համագոյ անբաժանելի Երրորդութեանն եւ միոյ տէրութեան եւ աստուածութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յեւթնհարիւրորդի քսաներորդի առաջներորդի (1272) թուականութեանն Հայոց գրեցաւ երաժշտական տառս ձեռամբ Ստեփանոսի քահանայի, ի խնդրոյ պատուելի եղբաւր մերոյ Գրիգորի քահանայի, ի վայելումն անձին եւ յիշատակ ինքեան եւ ծնողաց իւրոց՝ փոխեցելոց ի Քրիստոս, եւ որոց դեռ եւս ի մարմնի, եւս առաւել սնուցչին իւրոյ հոգեւոր տեառն եւ վարժապետի տէր Սիմէոնի՝ առաջնորդի սրբոյ ուխտիս Սկեւռայի, ուրանաւր եւ ձեռահիւսս աւարտեցաւ, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս եւ ամենասուրբ ծնօղի իւրոյ, եւ Սուրբ նշանի, ի հայրապետութեան տեառն Յակոբայ քաջահանճար հռետորի, եւ յարքայութեան բարեպաշտն Ղեւոնի՝ որդւոյ Հեթմոյ, զորս խնամք մեծին Աստուծոյ զբնաւ նախայիշե ///

334

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Մատթէոսյան, Ցուցակ Մշո, էջ 97—98*

*Վայր՝* Շերժիոյ և Բագոսի վանք,

*Փառք Աստուծոյ եւ Յիսուսի Քրիստոսի եւ կեցուցիչ Հոգւոյն Սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Որպէս օտարն, որ տեսանէ օտարութենէ իւր գաւառն, նոյնպէս գրողն փափաքի՝ յորժամ գրոց տեսանէ վերջ եւ վճարին կատարէ։*

*Գրեցաւ լուսազարդ Աւետարանս ի թւականիս յաւիտենից ՑՁՇԱ, եւ Հայոց թուիս ՉԻԱ (1272), յերկիրս* Շէրժիոյ *եւ ի վանքն նոյն փառաւոր վկայիցն Սերժիոյ եւ Բագոսի, առ ափն* Եփրատ *գետոյ, ընդ հովանեաւ ամենասրբուհւոյ Աստուածածնի, իշխանութեան* Կիր-Կոստանդին Ղատաս *ամիրային, զոր երկար ժամանակ արասցէ Քրիստոս տամբ եւ զաւակօք, ամէն։*

335

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԻԳՆԱՏԻՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Երուսաղեմ 352, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 248*

*Գրիչ՝* Յոհաննէս

*Փառք Քրիստոսի, որ արժանի արար հասանել յաւարտումն կտակիս, շնորհեա եւ այժմ ողորմութեան քում ժամանել յահաւոր քում գալստեանըդ, ամէն։*

*Յամի ՉԻԱ (1272) ի թուականութեան Հայւոց գրեցաւ մատեանս հոգելից աւետարանչին Ղուկայ, զոր մեկնեաց սուրբ վարդապետն* Իգնատիոս *եպիսկոպոս, ի խնդրոյ մեծի դիտապետին Հայոց տեառն* Գրիգորիսի: *Զոր տեսեալ պատուական քահանայն* Վարդան *փափաքեց սմա ըղձալի սրտիւ, եւ ետ գրել զսա յիշատակ բարի հոգւոյ իւրում, եւ ծնաւղաց իւրոց, եւ ամենայն ննջեցելոց իւրոց։ Եւ ես փցնագիրս* Հանեսուկ, *ոչ հայելով, ի խոշորութիւն եւ յանյարմարութիւն գչ(՞)լիս, այլ եռանդոտ յաւժարութեամբ գործ ի ձեռն առեալ գրեցի զսա ի վարժումն ուսումնասիրաց, եւ յիշատակ ծնաւղաց իմոց եւ եղբարց եւ բազմամեղ անձին իմոյ։*

*Արդ, գրեցաւ ձեռամբ անարժան ծառայի Աստուծոյ* Յոհաննէսի, *զի անձն իմ լցեալ էր ամենայն մեղաւք, եւ ի միում աւուր ոչ եմ կացեալ ի պատուիրանն Քրիստոսի զի միտք իմ///*

**336**

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Երուսաղէմ 306, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 154—155*

*Գրիչ՝* Թորոս դպիր
*Վայր՝* Մեծքար վանք

### ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս, ամէն։*

*Արդ, գրեցաւ Աստուածաշունչ տառս սրբոց մարգարէիցն ամենայն ի թագաւորութեան Երկրորդ* Լեւոնի *եւ ի Հայրապետութեան տեառն* Յակոբայ, *ի վանքս որ կոչի* Մեծքար, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին եւ նշանին սրբոյն Թէոդորոսի եւ այլ սրբոց վկայից, որ ի սմա՝ Տարագոսի, Պրոբոսի եւ Անդրոնիկոսի, ձեռամբ անարժան դպրի* Թորոսի, *ի խնդրոյ պատուական հոգեւոր եղբաւր մերում* Սարգսի *քահանայի, որոյ Տէր Աստուած վայելել տացէ զսա ընդ երկայն աւուրս։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ագտիք ի սմանէ ընթերցմամբ կամ աւրինակաւ, զստացաւղ սորա զ*Սարգիս *քահանայ, եւ ըծնաւղսն իւր, եւ զամենայն ազգայինս աղաչեմ յիշել ի Տէր, եւ խնդրել մեղաց թողութիւն։*

*Ընդ նմին եւ զիս՝ զեղկելի գրիչս* Թորոս, *եւ ըծնաւղսն իմ, ո՜հ, եւ զերջանիկ ծերունին՝ զհաւրեղբայրն իմ զ*Թորոս Վանկցի*, *մականուն կոչեցեալ* Քարձ, *եւ զառաջնորդ ուխտի անապատիս զտէր* Յակոբ *աղաչեմ յիշել ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր, եւ հայցել մեղաց թողութիւն ամենեցուն, առ հասարակ, մեզ՝ գրողին եւ ստացողին եւ այլոց հարցս։ Եւ Քրիստոս Աստուած որ փչեաց զՀոգին Սուրբ ի մարգարէքս յայս՝ մարգարէանալ եւ գուշակել զիւր մարմնանալն ի սրբոյ կուսէն եւ զկրկնակի գալուստն եւ զդատաստանն, ձեզ յիշողացդ եւ մեզ յիշելեաց առ հասարակ ողորմեսցի եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։*

*Եպիսկոպոսն սնոյց եւ կերակրեաց, եւ հաւրեղբայրն ուսոյց բազում տառապանաւք, ո՜հ, առաւել աղաչեմ վասն սոցա՝ խնդրել եպիսկոպոսին հանգչել ընդ Մելքիսեդեկի, եւ հաւրեղբաւրն՝ ընդ քահանայիցն սրբոց, եւ թէ դուք մէկ խնդրէք եւ հայցէք, եւ նոյն ձեզ բիւրապատիկ պարգեւեսցի։*

### բ

*Փառք ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս, ամէն։ Արդ, գրեցաւ սա ի ստոյգ եւ յընտիր աւրինակէ, ի թուի ՉԻԱ (1272)։ Արդ, աղաչեմ զամենեսեան որք կարդայք եւ ընդաւրինակէք՝ յիշեցէք զստացաւղ սորա, եւ զգրող սորա, եւ ըծնաւղսն մեր՝ ի մաքրափայլ յաղաւթս ձեր, եւ զոր դուք մեզ՝ եւ Աստուած՝ ձեզ։*

### գ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ մի աստուածութեանն յաւիտեանս, ամէն։ Ո՜վ դասք լուսերամից, աղաչեմ յիշել յարժանաւոր յա-*

---

* *Պետք է լինի «Վահկցի»։*

ղաւթս ձեր ըստացաւղ սորա զՍարգիս քահանայ եւ զծնողսն իւր, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ, եւ յիշատակ հոգոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց։ Ընդ նմին եւ զիս, զեղկելի գծող սորա զԹորոս սարկաւագ, եւ զհաւրեղբայրն իմ՝ վերլուծանող բանի եւ մականուն կոչեցեալ Քարձ Թորոս, եւ զծնաւղսն իմ յիշեսջիք ի Տէր, եւ դուք յիշողքդ յիշեալ լիջիք ի Տէր Յիսուս եւ ընդ սուրբս դասեսջէ զձեզ։

Դ

Ո՜վ պատուական քահանայք, որ կարդայք եւ աւրինակէք, յիշեսջիք ի Տէր Յիսուս զստացաւղ սորա զՍարգիս սպասաւոր բանի, եւ զծնաւղսն իւր, եւ զամենայն ազգայինս։ Ընդ նմին եւ զիս՝ զեղկելի գծողս Թորոս դպիր, եւ զծնաւղսն իմ, եւ զհաւրեղբայրն իմ զԹորոս Վահկցի՝ մականուն կոչեցեալ Քարձ, եւ Քրիստոս, որ առատն է ի տուրս պարգեւաց, ձեզ յիշողացդ եւ մեզ յիշելեացս առհասարակ ողորմեսցի, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 337

## ՏԵՍՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՑՆ ՍՈՂՈՄՈՆԻ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Տիրայր վրդ. Ցուցակ Օքսֆորդի, էջ 578 (1184 թ.)

Գրիչ՝ Սարգիս

ա

3ա Տեսութիւն առակացն Սողովմոնի Ներսիսի եպիսկոպոսի Տարսոնի, ի թուականին Հայոց ՉԻԱ (1272) աւարտեալ։

Բ

32ա Ստացաւղ սորին զԿարապետ բաբունի և զծնողսն իւր, գրեա՛, Քրիստոս, ի գիրն կենդանի։ Ընդ սմին և զմեղապարտ ծրողս Սարգիս։

գ

129ա Ստացող սորին՝ զգերիմաստ հռետորն զԿարապետն և զեղկելի գրիչս Սարգիս յիշեսջիք ի Քրիստոս, աղաչեմ, զմաքրամիտ յիշողսդ։

դ

232բ Ձերջանիկ ստացող սորին զԿարապետ բաբունի յիշեսջիք ամենայն արեան մերձաւորաւք, որոց տացէ Աստուած զառատ ողորմութեան պարգևն, ամէն։ Ընդ նմին զեղկելի գրողս Սարգիս անարժան և սուտանուն քահանայ յիշեսջիք սրտի մտաւք, որում բազումողորմն Աստուած ողորմեսցի [յա]հեղ աւուրն, ամէն։

## 338

## ՀԱԻԱՔԱԾՈՅ

*Վիեննա 2286, Սեքուլյան, Ցուցակ, էջ 870*

ա

37ա *Զկենդանի ծառ կենաց պտղոյս տերունական բանիցս անմահացուցիչ քաղցրաճաշակացս կերող ընթերցման՝ զլոյս վարդապետն Վարդան յիշատակեայ ՝ի Տէր Քրիստոս։*

բ

39բ *Զանյայտ գանձիս յայտնիչ զՎարդան գանձապահ, որ փարթամանայք հոգով, յիշատակեսջիք ի բարէբախտիչն ի Տէր։*

գ

55բ *Սրբազան կաթողիկոսի Հայոց տեառն Կոստանդեա ողորմեսցի Տէր և լոյս վարդապետին Վարդանայ, որ ղբանքս յարմարել է։*

դ

122ա *Զարժանի յիշատակի զսուրբ վարդապետն Վարդան լուսոյ բանիցս ծագաւղ յիշեա ի Տէր։*

## 339

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂԱԻԹԻՑ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԻ ԽՈՍՐՈՎԻ ԱՆՁԵՒԱՑԻՈՅ

*Երևան 1329*

*Գրիչ՝* Սարգիս
*Վայր՝* Նեղուսի վանք

191բ *Եւ արդ, գրեցաւ գիրքս հրամանաւ և արդեամբք սուրբ և առաքելաշնորհ եպիսկոպոսին Բջնոյ տէր* Գրիգորի, *ի թիւս Հայոց ՉԻԱ (1272), ձեռամ[բ] մեղապարտ* Սարգսի, *ի վանս որ կոչի* Նեղուս, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածա[ծն]իս և այլ սրբոցս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք և լու[ս]աւորիք ի սմանէ, զբարէհամն և զանուշահոտն ղտէր* [Գրիգոր]* *սրտի մտա[ոք] յիշեցէք առ Աստուած՝ բոլոր ազգայնաւքն։*

## 340

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 284*

*Գրիչ՝* Կիւրակոս

ա

*Փառք քեզ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւնը Հայր և Որդի և Սուրբ Հոգի յամենայն արարածոց, ամէն։*

* *Հետագայի ստացող Եսայի Ամթեցին եղծել է անունը («Գրիգոր») և գրել իրենը։*

325ա Շնորհիւն Աստուծոյ սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի խնդրոյ աստուածասէր առն Պաւղոսի, որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց ի յիշատակ հոգւոյ իւրոյ, եւ պարգևեաց զսա աստուածարեալ քահանային Սարգսի առ ի յիշատակել զոգի նորա ի յաղաւթս իւր և ի պատարագս։ Արդ, որք հանդիպիք սմա, կամ ժառանգէք զսա, կամ ընթեռնոյք, յիշեցէք աղաւթիւք զստացաւղ սուրբ տառիս զՊաւղոս, և զծնաւղս իւր, և զՍարգիս քահանայ, և առատն ի
325բ պարգևս Քրիստոս առհասարակ յիշողացդ և յիշե||ցելոցս ողորմեսցի ի գալստեան իւրում։

Բայց գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՉԻԱ (1272), ի հայրապետութեանն տեառն Յակոբայ, և ի թագաւորութեանն Հայոց Լևոնի բարէպաշտ արքայի, ձեռամբ մեղաւոր գրչի Կիւրակոսի*, որ և աղաչեմ յիշել յաղաւթս և զիմ զանարժանութիւն և զծնաւղսն իմ, և Աստուած զձեզ յիշեսցէ յառատ ողորմութիւն իւր, և նմա փառք այժմ և յանսպառ յաւիտեանս, ամէն։

Աղաչեմ յիշել ի Քրիստոս զԳրիգոր կազմող սորա, և զհարազատն իւր Ստեփաննոս, որ տարաժամ հանգեաւ ի Քրիստոս։

Բ

105բ Ստացաւղի սորա Պաւղոսի և վայելողի սուրբ տառիս Սարգսի քահանայի ողորմեա Քրիստոս ի գալստեան քում, և մեղաւոր գրչիս Կիւրակոսի, և որ ամէն ասէ, ամէն։

Գ

254բ Պաւղոսի առն աստուածասիրի ստացողի սուրբ Աւետարանիս, և Սարգսի քահանայի վա[ելողի] զսա, և տառապեալ գրչի ողորմեա Քրիստոս ի գալստեան քում, և որք ամէն ասեն, ամէն։

## 341

## ԱՒՆՏԱՐԱՆ

Գուշակյան, Ցուցակ Սեբաստիո, էջ 21

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Երզնկա

ա

550 Շնորհիւ Տեառն սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՉԻԱ (1272)։ Ես Սիոն կուսակրաւն քահանայ, ստացայ զսա ինձ զաւակ ի Սիոն եւ ընտանի յԾրուսաղէմ, յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց, եւ եղբարց իմոց ի Քրիստոս կատարելոց, որ անգան ի սուր, որոնց Քրիստոս Աստուած ողորմեսցի ի գալստեան իւրում։ Արդ, ես՝ Գրիգոր, ատարաշխարհիկ գոլով, գրեցի ըստ իմում

* Կրված է եղել «Կիւր» ձևով, հետագայում դարձրել են «կար»։ Բայց բ հիշատակարանում անունը եղծված չէ։

կարի ի վանս Երիզաի դրան Սուրբ Աստուածածնիս, ընդ հովանեաւ Սուրբ Լուսաւորչիս, ի յառաջնորդութեան եւ ի հայրութեան Գորգա, որոց Քրիստոս Աստուած վարձս բարիս հատուցէ նմա եւ այլ եղբարցս հաւասար, որք աղտակարք եղեն մեզ ի յամենայն ինչ եւ իցէ, որք խնդրող եղեն բանիցս Քրիստոսի։ Ահա մարգարիտս անփտելի, զորս անճառելի ասեն, թէ փառք քեզ են, եւ որ չեն կամ այսպէս ասին կամ՝ այնպէս։ Քրիստոս Աստուած վարձս տացէ Աւետին եւ եղբարց իւրոց, ամէն, որ զաւրինակս ետուն, որ է սա ի սեռէ ընտիր յաւրինակէ. եւ որ ընծայեն սա ի Քրիստոս, յիշեսջիք զմեզ ի Քրիստոս Յիսուս։ Արդ, գրեալ եղեւ սա ի գաւառս Երիզա, որ յորջորջի Եկեղեաց գաւառ, ի հայրապետութեան տէր Սարգսի, իշխանակալութեան որդւոյ նորա պարոն Յոճանիսի, որ է ի ժամանակս սոցա խաղաղութիւն քրիստոնէից, զորս Քրիստոս Աստուած երկարակեացս արասցէ, ամէն։

Բ

Ջեղկելիս Գրիգոր յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր։

342

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10099, Բարխուդարյան, «Արցախ», էջ 226—227

Զաստուածափառ և զաշխարհալոյս սուրբ Աւետարանս, որ ձեռաւք Հասնայ Ուզին որդոյ բերաւ ի Կեսարիոյ, և նույն Հասնայն և ամուսին Ելթի և պարծանաց որդիք իւր Հասըմբեր և Սասնայ ետուն զսա յիւրեանց տապանատունս, որ էին տեղւոյս իշխանք՝ զտուն Շիրանշահաց, Դաւթի ձեռաւք, ի վանս Եղիշէի, և հաստատի սմա բանիւն Աստուծոյ և յանուն Հասնային և Ելթոյն յետ մահու պատարագ ի Քրիստոս յամեն եկեղեցիս, ի զատկին յարութեան աւրն, որ յարոյց ընդ իւր բազում մեռեալք և յարուսցէ Քրիստոս փառաւք զՀասնայն և զԵլթի հանդերձ իւր ծնելաւք միւսանգամ գալստեանն։

Արդ, որք խափանեն զպատարագն և կամ հանէ զԱւետարանս և զՇիրանշահեանց տունն ի տապանատնէս, հանեսցի նա յարքայութենէն Աստուծոյ։ Առանց աշխարհաւերի թւին Հայոց էր ՉԺԵ (1266)։ ՉԻԱ (1272) շինեցաւ ժամատունս*։

---

* Ձեռագիրը Լեռնային Ղարաբաղի Թալիշ գյուղի «Բեգյունց» կոչված նշանավոր Ավետարանն է։ 1962 թ. Մատենադարանի գիտական արշավախումբը Թալիշ գյուղում գտավ այդ նշանավոր ձեռագրից 18 թերթ միայն, մի ավետարանչի նկարով։





## 343

### *ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԻԽԱՅԷԼԻ ԱՍՈՐԻՈՅ*

*Երուսաղեմ 32, Պողարյան, Ցուցակ Ա, էջ 144—146*

*Գրիչ՝* Գրիգոր
*Վայր՝* Ականց անապատ

ա

*Ի թուականին Հայոց ՈՀԸ (1229) կատարեցաւ աշխարհապատում Պատմութիւնս տէր* Միխայլի *սուրբ պատրիա[ր]գին Ասորոց, զոր ստուգիւ գրեաց ծայրաքաղ առնելով. յաստուածաստեղծ մարդոյն Ադամայ սկիզբն առնելով, ասաց մի ըստ միոջէ զկարգ և զծնունդ և զշինութիւն արարածոցս, զոր նախ քան ջրհեղեղն աշխարհակործան, և զոր յետոյ ջրհեղեղին յորդոցն Նոյի շինեալ, և աճել ըստ հրամանի և ուխտին ամենակալին Աստուծոյ, որ եդ ընդ նոսայ յետ ջրհեղեղին։ Եւ ի վերայ այսորիկ զկարգ և զթիւ թագաւորացն Հոռոմոց և զՊարսից, և ղկնի Պարսից թագաւորութեանն վճարելոյ սկիզբն առնէ թագաւորութեանն Արաբկաց, որ են տաճիկք, և ի կատարածի սոցայ զԹուրքաց սուլտանութեանն, և զտիրելն բազում աշխարհաց և գաւառաց, զոր դեռ այժմ եւս ունին բռնացեալք ընդդէմ բազում ազգաց և ազանց։*

*Որ են թիւք ամացն յելիցն Ադամայ մինչեւ ի ժամանակ կատարելոյ գրոցս ի ձեռն* Միխայլի *Ասորոց պատրիարգի՝ ամք վեց հազար չորս հարիւր և երեսուն, և այժմ է թիւս Հայոց ՉԻԲ (1273), որ գրեցաւ գիրքս ձեռամբ տառապեալ* Գրիգորոյ, *զոր կամաւքն Աստուծոյ գրեսցուք և մեք զպակասութիւն սորայ զամաց խ (40) և չորից։*

բ

*Քրիստոս Աստուած, քո սուրբ տնաւրէնութեանդ բարեխաւսութեամբ և ամենայն ուղղափառ դաւանողացն զքո անճառ աստուածութիւնդ, սրբոց հայրապետացն և ամենայն սրբոց բարեխաւսութեամբ, փառաւորեայ կ՟աւր* Ստեփաննոսի *հոգին և զիւր ննջեցելոցն ի քո սուրբ արքայութեանդ՝ ղստացողի գրոցս։ Ընդ սմին և զփակակալ* Վարդանայ, *որ յաւժար կամաւք առիթ եղեւ-մեղ տեւել և գրել ղգիրքս, ողորմեա Քրիստոս Աստուած նմայ և ծնողաց իւրոց, ամէն։ Եւ ինձ մեղուցեալ գրչիս* Գրիգորոյ, *և* Կոստանդէ, *որ զթուխտս կոկեաց, ողորմեա Տէր Աստուած, ամէն։*

Գ

*Քրիստոս Աստուած, քո ամենակարող աստուածութեամբդ և մարդասիրութեամբդ փառաւորեա զհայր Ստեփաննոսի հոգին ի քո սուրբ յարքայութիւնդ։ Ընդ սմին և զփակակալ սուրբ անապատիս սրբութեանցս՝ զՎարդանայ, և զամենայն եղբայրութեանցս հոգին լուսաւորեա քո ողորմութեամբդ, ընդ սրբոց առաքելոցն։ Ընդ սոցին և զմեղուցեալ գրչիս, և քեզ փառք, ամէն։*

Դ

*Ո՜վ սուրբ մանկունք Նոր Սիոնի, որք ընթեռնոյք և աւկտիք յաշխարհապատում մատենէս, 'յիշեցէք յողորմութիւնն Աստուծոյ զՊասկ անուն հայրն Ականց անապատիս՝ զՍաեփաննոս, ընդ սմին և զփակակալն Վարդան, և զամենայն միաբան եղբարքս, և զմեղուցեալ գրչիս։ Եւ դուք, որ յիշէք զմեզ, յիշել լիշիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեան, ամէն։*

Ե

*Զարժանացեալն բարի յիշատակի, զաստուածազարդ հայրն Ականց անապատիս զՍտեփաննոս, և զծնողսն իւր յիշեսցուք յողորմութիւնն Աստուծոյ, ո՜վ սուրբ դասք ուղղափառաց, ընտրեալ և բանաւոր հաւտք ճշմարիտ հաւատապետին Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Ընդ սմին և զսիրողն սրբութեան, զմեծահոգի փակակալն Վարդան, և զամենայն միակամ եղբայրութիւնս, և զիս զտառապեալ գրչիս յիշեսջիք ի Քրիստոս, ո՜վ պատուական լսողք և ընթերցողք։*

Զ

Գրիչ՝ Վարդան

*Եւ ես Վարդանս աղաչեմ և աղաչսեմ զընթերցողս և զլսողսդ, յիշել ի մեղաց թողութիւն, զի յոյժ քաղց կենացն հացին եմ։*

Է

*Ցայսմ վայրի Տէր Աստուած ողորմեայ Վարդանայ և իւրայոցն ամենեցուն, ամէն։*

Ը

*Եւս առաւել մաղթեմ յիշել զմիւս Վարդան ի մեղաց թողութիւն։*

Թ

*Եւ միւս Վարդան անկեալ յերես աղաչէ զձեզ առհասարակ՝ յիշել զնա ի մեղաց թողութիւն։*

Ժ

Գրիչ՝ Բարսեղ

*Տէր Աստուած ողորմեսցի Բարսեղ վարդապետին, ամէն։*

ժա

*Քրիստոս Աստուած քո անմահ աստուածութեամբդ ողորմեայ* Յո-վաննիսի, *ամէն։*

344

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԱԹԱՐԱՑ

*Երուսաղեմ 32, Պողարյան, Ցուցակ Ա, էջ 116*

*Հեղինակ՝* Գրիգոր
*Վայր՝* Ակների անապատ

ա

594բ *Յամի եւթնհարիւրերորդի, քսաներորդի, երկրորդի (1273), թուականութիւնս Հայոց գրեցաւ աշխարհապատում տառս այս, հրամանաւ սուրբ և փառաւորեալ հաւր* Սահփաննոսի Ականց *անապատիս, այլ և կամակցութեամբ փակակալի սուրբ անապատիս՝* Վարդանայ *և ամենայն եղբայրութեանս, քահանայից և կրաւնաւորաց, ձեռամբ տառապեալ գրչի* Գրիգորոյ *սպասաւորի բանին։*

*Արդ աղաչեմք ղպատահեալսդ ի սմայ, որ ոք ընթեռնոյք զաշխարհապատում տառս զայս, յիշեցէք ի Քրիստոս զհայր* Ստեփանոս, *և զծնողսն իւր, ընդ սմին և զամենայն եղբայրութիւնս սրբոյ անապատիս՝ զքահ[ան]այքս և զկրաւնաւորքս, և ղմեղուցեալ գրիչս, զի և դուք որ յիշէք զմեզ՝ յիշեսցէ և զձեզ Քրիստոս Աստուած յողորմութիւն իւր, ամէն։*

բ

*Կատարեցաւ Պատմութիւն տաթարիս գործելոց ԽԴ(44) ամաց բայց համառաւտ և ոչ ամէն։*

գ

*Արդ, ես եղկելի գրիչս* Գրիգոր, *աղաչեմք ղպատահեալսդ ի սմայ, յորժամ ընթեռնոյք զարարածապատում պատմութիւնս, ասացէք* Տէր *Աստուած, ողորմեսցի հաւր* Սահփաննոսի, *առաջնորդի սուրբ ուխտի* Ակներոյս, *և ամենայն ննջեցելոց իւրոց։ Ողորմեսցի Քրիստոս Աստուած փակակալ* Վարդանայ *և ծնողաց իւրոց։* Տէր *Աստուած ողորմեսցի ամենայն գործաւորաց և սպասաւորաց սրբոյ ուխտիս, առաջնոցն և միջնոցս, այլ և վերջնոցն, որ գալոց են զկնի մեր։ Ողորմեսցի Քրիստոս Աստուած* Կոստանդ *և* Սիոն *քահանայիցն, և համաշունչ եղբարցն, որ զթուխտս կոկեցին։*

*Եւ ի վերայ այսր ամենայնի յիշեցէք յողորմութիւնն Աստուծոյ զտառապեալ գրիչս, զի բազում աշխատանաւք և տկար մարմնով գրեցի։ Յիշեցէք և զծնողսն իմ, զննջեցեալսն ի Քրիստոս, և զհարազատ եղբայրն իմ* զՄխիթար, *որ տարաժամ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս։*

*Յիշեցէք ի Քրիստոս և զպատուական քահանայն* զՅոհաննէս, *որ զվերջի տետրս գրեաց, զի մեք էաք յոյժ տկար և անխել։ Յիշեցէք և զտէր* Թադէոս *զհայր* Աւագ *անապատին, որ զաւրինակս շնորհեաց, և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Դ

Գրիչ՝ Յովհաննէս

Յիշեսջիք զսրբազան և զսրբամատոյց զվարդապետն մեր զԳրիգոր. որ բազում աշխատութեամբ և ժուժկալութեամբ ի յանգ եհան զաստուածային տառս։ Եւ զիս՝ զծովացեալս մեղաւք զՅոհաննէս սուտանուն կրաւն[աւ]որ, որ լի եմ մեղաւք, յիշեսջիք ի Տէր։

Ե

Ստացող՝ Ստեփանոս վանահայր

Բազմադիմի է շնորհք մարդասիրին և բարերարին Աստուծոյ առ ազգս մարդկան, վի յորդորէ հանապազ զբնութիւն մարդոյ ի գործս բարիս և ի շինութիւն հաւատոյ, այսինքն ի սէր և ի պարծանս ամենասուրբ անուան իւրոյ։ Վասն զի որպէս ինքն արարիչն և ամենազաւրն Աստուած բնութեամբ բարի է, նոյն և սիրող է բարէսիրաց և բարէգործաց ազգի մարդկան, ըստ այնմ որ ասէ՝ Բարի առնէ Տէր բարեաց. և դարձեալ թէ՝ Բարի է Աստուած և բարեաց արժանաւորացն տւող։

Եւ արդ զինչ է պտուղն բարոյն, եթէ ոչ խաչն և եկեղեցին և գիրքն, որով յորդորին աստուածասէր և բանաւոր մարդիկ, գործել և սիրել զբարիս, վասն յիշատակի և փոխարինի հանդերձելոցն բարեաց։ Վասնզի ոմանք շինեն եկեղեցիս՝ հրեշտակաց բնակարան և մարդկան քաւարան։ Ոմանք կազմեն խաչս յոսկւոյ սրբոյ, և զարդարէն պատուական և պայծառ ակամք, վասն յիշատակի և սիրոյ խաչելոյն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ արար խաղաղութիւն յերկինս և յերկրի արեամբ խաչին իւրոյ։ Ոմանք գծագեն գիրք, այսինքն գրելով զյիշատակս մարտիրոսաց, յաղագս բարէխաւսութեան առաջի ահեղ ատենին Քրիստոսի։ Ոմանք արձանագրեն զյաղթութիւն և զպատերազմունս թագաւորաց աշխարհակալաց՝ յուշ առնելով ազգի մարդկան, առժամանակ մի լինել զթագաւորութիւն մահկանացու թագաւորացս։ Իսկ անմահ թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ թագաւորութիւնն անանց և յաւիտենական։

Արդ, ես նուաստս յամենայնի Ստեփաննոս հայր Ականց անապատիս եառու գրել զՊատմութիւն տեառն Միխայէլի պատրիարգի Ասորոց զոր է գրեալ ծայրաքաղ յԱդամայ մինչև ի ծնունդն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ ի Հայոց թուականին վեց հարիւր յեւթանասուն և յութն (1229) Եւ զՊատմութիւն տաճարին, այսինքն ազդին նետողաց, ԽԴ (44) ամաց գործելոց մինչեւ առ մեզ, վասն իմանալոյ զանցաւորութիւն սուտ և պատրող կենցաղոյս ընթերցողացդ և լսողացդ։ Զի ոչ թագաւորութիւն, ոչ իշխանութիւն, ոչ այլ ինչ արարածական մնալոց է յայսմ աշխարհիս, այլ ամէնն է ունայնութիւն ունայնութեանց, որպէս ասաց իմաստունն Սաղոմոն, անցանելով և տեսանելով զամենայն կենցաղս սուտ և ոչինչ խաբող և անցաւոր ///

## 345

## ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ ՊԱՏՐԻԱՐԳԻ ԱՍՈՐՈՑ ՅԱՂԱԳՍ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՈՒԹԵԱՆ

*Երուսաղեմ, 960 (1602 թ.), Պողարյան, Ցուցակ Գ, էջ 527*

*Գրիչ*՝ Մաղաքիա վարդապետ

*Արդ, ես նուաստս յամենայնի* Մաղաքիա *սպասաւոր բանի, գրեցի զՊատմութիւն Տեառն* Միխայէլի *Պատրիարգի Ասորոց, զոր է գրել ծայրաքաղ յԱդամայ մինչեւ ի ծնունդն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ ի Հայոց թվական ՈՀ եւ Ը (1229), եւ զՊատմութիւն Տաթարին, այսինքն, ազգին նետողաց, ԽԴ (44) ամաց գործելոց մինչեւ առ մեզ (1273), վասն իմանալոյ զանցաւորութիւն սուտ եւ պատրող կենցաղոյս, ընթերցողացդ եւ լսողացդ, զի ոչ թագաւորութիւն, ոչ իշխանութիւն, ոչ այլ ինչ արարածական մնալոց է յայսմ աշխարհիս, այլ ամենեւին է ունայնութիւն ունայնութեանց, որպէս ասաց Սողոմոն, անցանելով եւ տեսանելով զամենայն կենցաղս սուտ եւ ոչինչ, խաբող եւ անցաւոր։*

## 346

## ՆԵՐԲՈՂԵԱՆ ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԹԷՈՎՓԻԼՈՍԻ

*Երուսաղեմ 89 (1273 թ.). Պողարյան, Ցուցակ Ա, էջ 281—282։*

*Գրիչ*՝ Պաւղոս
*Վայր*՝ Արքայկաղնի անապատ

ա

*Թարգմանեցաւ լուսազարդ և վայելչաշար ճառս այս ի յունականէն ի մերս հրամանաւ երիցս երանեալ հայրապետին տեառն* Գրիգորիսի Հայոց Մեծաց *կաթողիկոսի, ի ձեռն իմաստուն և հանճարեղ թարգմանչին* Թէոփիստէի, *զոր և մինչեւ ցայժմ ճրագս այս թաքուցեալ էր ընդ մահճաւք և ծածկեալ էր ընդ գրուանաւ, իսկ ի հրամ(ան)էն Աստուծոյ յայտնեցաւ սա ի սուրբ վանս յ*Արքայկաղնիս:

*Իսկ իմոյ անարժանիս յոգնամեղ և անպիտան կրաւնաւորիս* Պաւղոսի *ըղձալի փափագանաւք գրեալ՝ եդի զսա ի հոյակապ մայրաքաղաքացեալ սուրբ անապատս* Արքայկաղնիս, *ի յիշատակ մեղաւոր հոգւոյ իմոյ և ծնաւղաց իմոց։*

*Իսկ համբաւ սորա իբրեւ պսակազարդ թագաւորի հասեալ ի յերկնանման սուրբ և աստուածաբնակ անապատն ի յ*Ակներն, *առ լուսասգեստ սուրբ և երջանիկ հայրն* Ստեփանոս, *և նորա առաքեալ որակս, և հրամայեաց գրել և աւանդել զսա ի դրունս սուրբ տաճարին Աստուածամաւրն, ի պայծառութիւն տանի մեր Լուսաւորչին և յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց և իմոյ ամենամեղիս Եւ ես ըստ իմում կարի գրեցի և առաքեցի։*

*Եւ աղերսալի պաղատանաւք աղաչեմ, ո՜վ սրովբէանման դասք լուսերամից, յիշեսջիք աղաւթիւք զաստուածապատուեալ հայրն* զՍտեփա-

նաս, զառաջնորդ սուրբ ուխտիս Ականց անապատիս, և զծնաւղսն իւր և ղիմաստուն երաժիշտն զՄանուէլ, որ ուսով իւրով բնրաւղ եղեւ Հառիս ի վանս, և զաշխատաւղ գրիչս զՊաւղոս, և զծնաւղսն մեր, և զամենայն ի Քրիստոս հաւատացեալսւ Եւ Քրիստոս, առհասարակ, յիշաւղացդ և յիշելեացս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս ամէն։

Բ

Զխաչակրաւն և զհոգիաղարդ միայնակեցն զՍտեփաննոս մառընպանն ծնաւղաւք իւրաւք և ամենայն զարմիւք աղաչեմ յիշել ի մեղաց թողութիւն, ով սուրբ եղբարք, և Աստուած զձեզ յիշէ։

## 347

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Երուսաղեմ 89, Պողարյան, Ցուցակ Ա, էջ 282—83

Գրիչ՝ Ղազար
Վայր՝ Ականց անապատ

ա

357բ Զաստուածային անբաւ գթութեանցն շնորհ, որ միշտ առ ի յաւգուտ մարդկան ըստ իւրաքանչիւր ՚ ժամանակի, առատաձիր նախախնամութեամբ սրբոյ եկեղեցւոյ պարգեւի...։ Իսկ թուականութեանս Հայոց ՉԻԲ (1273), զկնի ՃԱ (101) ամի փոխման սրբոյ հայրապետին Ներսիսի, ի հրամանէ հաւր Ստեփանոսէ աստուածազարդ ծերոյ և սպասաւորէ սուրբ ուխտիս Ականց անապատիս, շարագրեցաւ պատմութիւն սուրբ հայրապետին Ներսիսի և իւրոց նախնեացն, ճշմարտաճառ և անսուտ պատմութեամբ, ի ժամանակս քրիստոսապսակեալ բարեպաշտ թագաւորին Հայոց Լեւոնի՝ որդոյ թագաւորին Հեթմոյ, յաշխարհիս Կիլիկեցւոց:

Արդ, վայելողք սրբոցս արանցս պատմութեան, յիշեսջիք սիրով ի Քրիստոս զվերոյ նշանակեալ պատուական հայրն Ստեփանոս, և զամենայն եղբայրութիւն սուրբ ուխտիս զմեծ և զփոքր, զքահանայ և զկրաւնաւոր, ի մշտամատոյց յաղաւթս ձեր, և Աստուած զձեզ յիշեսցէ յողորմութիւնն իւր, ամէն։ Յիշեսցէ Քրիստոս Աստուած և զՎարդան փակակալ սուրբ տաճարիս։ Կարձեալ աղաչեմ զձեզ, ո՛վ դասք լուսերամից, ես անպտուղս ի բարեաց և՛ լցեալս մեղաւք, յիշեսջիք զիս զանարժանս Ղազար ի մաքրափայլ յաղաւթս ձեր։ Յիշեսջիք և զեղբայրն իմ զԱւետիքն, և զծնաւղսն իմ, և զայլ ազգաինսն։ Յիշեսջիք զկոկող նիւթիս զպատուական քահանայն Քեռվքէ: Եւ ինքն ամենասուրբ Երրորդութիւնն գթասցի յարարածս իւր և յիշեսցէ զամենայն հաւատացեալս անուանն իւրոյ ամէն, և նմա փառք յաւիտեանս յաւիտէնից, ամէն։

Բ

Կազմող՝ Մանվել

417բ Ո՛վ մանկունք եկեղեցւոյ և որդիք վերին Սիոնի, յորժամ ընթեռնուլք ըգիրս զայս, զտառասյեալս ի բարեց զՄանվել յիշեսջիք, զի սա-

կաւ մի և մեք աշխատեցաք ի կազմված գրոցս. զի թէպէտ և մեք տըխմար էաք, բայց նիւթն վատ հանդիպեցաւ։ Որ զիս յիշէ և զԱստուած ողորմին ասէ, Տէր զինք յիշէ, և նմա փառք յաւիտեանս։

Գ

Գրիչ՝ Վարդան

305ա Վարդան երեսս անկեալ աղաչեմ զլսողդ և զընթ[երց]ողս, յիշել ի մեղաց թողութիւն։

348

ԱՒԵՏԱՐԱՆ

«Բազմավէպ», 1968, էջ 116—118, Ա. Անդրեասյան, «Պոլսոյ Սկեռայի Աւետարանին յիշատակարանները»

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Սկեռա

Փառք համագոյ եւ անբաժանելի սուրբ Երրորդութեանն, Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյ սրբոյ, ամէն։

Յորոյ արարչագործ խնամոցն միշտ բարեգործին բոլոր եղականքս, որ եւ ի ձեռն արժանընդունակ սպասաւորաց իւրոցն՝ կամաց՝ բազմամասնապէս ձրիւք զսուրբ եկեղեցի իւր զարդարէ։ Ու նոյն ինքն եւ ի նուազել ժամանակիս յառաջեալ ի քահանայապետական սպասահարկութիւնն եւ յաշտիճան եպիսկոպոսութեան սրբոյ աթոռոյս և հռչակաւոր ուխտիս Սկեռայի զարժանապատիւ առաջնորդս զՏէր Սիմէոն, որ յաղագս աստուածասէր կամաց իւրոց ի պէտս հոգեւոր հրճուանաց եւ սրբավայելուչ պատուասիրութեան սուրբ եւ աստուածաբնակ մաւրս մերոյ կաթողիկէ եկեղեցոյս, ընդ այլ նշանավոր եւ ականաւոր զարդուցն յիշատակաց՝ ստացաւ եւ զայս պանծալի քարս պատուական եւ զմարգարիտս գեղեցիկ, զաստուածաւանդ, ճշմարտապատում, հոգեբուղխ վիպագրութիմս աստուածավայելուչ եւ փրկութիմագործ անշփոթ մարդեղութեան բանին Աստուծոյ, որ զմեր մեղս իւրով մարմնովն վերացոյց, զի մեզ տացէ զիւրն արդարութիւն։

Զոր եւ կարգ ըստ կարգի լի եւ համառաւտ պատմաբանութեամբ վերաօարողեալ հռչակեցուցանէ ընդ ոլորտս տիեզերաց հոգիահրաշս այս աստուածաբանութիմ, որ քերթողաւրէն ստուգաբանութեամբ կոչի Աւետարան՝ յիրէն ընկալեալ զկոչումն անուանն, զի աւետիս, տայ աշխարհի, զԱստուած մարդ եղեալ եւ զմարդիկ աստուածացուցեալ, զերկայն պատերազմն քակեալ եւ զթշնամիսն սիրելի որդիս եւ ժառանգս Աստուծոյ եղեալ։

Որոյ յոքնատենչ ըղձից փափաքմամբ նախայիշատակեալ Տէրս Սիմեւոն, մեծածախ պատրաստութեամբ հոգ տարեալ սուրբ մագաղաթի, եւ գեղապանծ գրով, արհեստակիտուած ոլորակաւք, բազմապայծառ զարդարուք, սքանչելափառ խորանաց ոսկենաճանչ խառնուածով, յոքներանգ ծաղկանց պճնապաճոյճ յաւրինուածով, ոսկեգիր դրոշմածիւք



28—487

զտէրունական անուանսն փառաղարդեալ, վերընծայեաց սրբոյ տաճարիս, ի բերկրումն հոգեւոր եւ ի հրճուանս մխիթարութեան զգալի աչաց սրբազան դասուց մանկանց Նոր Սիովնի, եւ յիշատակ պանծալի հոգեւոր եւ մնացական իւր եւ ծնողաց իւրոց եւ բոլոր զարմից ըստ մարմնոյ։

Զայսու ժամանակաւ հանդիպիւր թւականս ՁԻԲ (1273), յորում զդիտապետական գահագլխութիւնն վարէր Տէր Յակովբ քաջահանճար հռետոր եւ սրբազան կաթողիկոս։

Իսկ աստուածասէր եւ բարեպաշտն Լեւոն, որդի Հեթմոյ, զթագաւորութեանն առաջնորդէր զհանդէս, զորոյ զհեզահայեաց հանդարտութիւնն եւ զխաղաղասէր բարուցն խոնարհութիւն եւ զանոխակալ մարդասիրութեանն տկարանայ լեզու ի պատմել։

Ընդ որոյ բարեպաշտութեանն նազելի պարկեշտութիւն նախանձաբեկ եղեալ բանսարկուն, ջանայր շիջուցանել զճրագն տանս Հայոց։ Եւ սպասաւորս կամացն իւրոց չարութեան գտեալ զոմանս ի ծառայիցն նորա, որոց բազում ձիրս պարգեւաց ընկալեալ էին ի նմանէ, եւ ի հաւրէն նորա իշխանութիւնս գաւառաց, բերդից, գեղից եւ եւս զանազան փառաւորութիւնս։

Սակայն անմտաբար ի մաւռացօնս եկեալ այնքան բարեգործութեանցն, եւ նմանք եղեալ Յուդայի, եւ եւս քան զնա չարագոյն, դաւաճանութիւն մահու խորամանդէին ի վերայ անձինն արդարոյ, բնիկ հայրենի իւրեանց տեառն թագաւորի, որպէս շունք կատաղիք եւ ծառայք չարք գտեալք, աստուածասպան հրէիցն կցորդք։

Որոց նախագլուխ չարին խորհրդոց Վահրամ իշխան տէրն Համուսին, եւ Լեւոն տէրն Մոլեւանին, եւ Ապլխարիպ իշխան երեւելի։ Սոքա ի յունաց։

Էր եւ ի հայոց համախոհ անաւրէնութեան սոցա դժնդակ եւ չար խորամանկութեամբ լցեալ ապերախտ եւ տիրանենգ վատըշուերք ոմանք, որ երեւելի իսկ էին հռչակեալ ճարտարութեամբ կորովաբանութեան, իբրեւ զԱլիտոփելն զայն ի հնումն եւ այլք յոլովք զինուորական գնդէ, զորս աւելորդ էր յիշատակելն, որք միաբանեալ էին յեղեռն խորհրդոյ տիրասպանութեանն։

Իսկ իբրեւ ի խնամոց Աստուծոյ իրազեկ լինէր արքայն դաւաճանութեանն, այն ինչ ապա եւ չարքն այնոքիկ գիտելով զխիղճ մտաց իւրեանց, ահաբեկ լինեն, կասկածելով ընդ անգործ մնալ խորհրդոյն չարի, զոր ծածկել չէր ի դէպ, այսր անդր ապա ճողոպրել ջանային։ Սակայն զգուշն փորձեալ անձամբք պարտ էր լնուլ։ Յանկարծ ի նրբափողոցս քաղաքին Սիսոյ իշխանն Համուսին հարեալ լինէր յումեմնէ զկարեվէր խոցումն մահու։ Իսկ տէրն Մոլեւանին, հանդերձ Ապլղարպիւ, իբր զչար ապստամբ յամուր բերդին անկեալ բռնանայր, զզաւրս տաճկաց ի թիկունս կոչելով, որոց եւ զամուրն իսկ էր վաճառեալ առ որս հրեշտակս արձակեալ՝ ի խաղաղութիւն կոչէր արքայն. եւ անմիտքն դեռ եւս խիզախեալ յոդիս ապաստան լեղեալ, կարծելով հաստատել զոր խորհէինն, թշնամանս եւս արքային դարձուցանէին. որոց եւ պատրիարգն յունաց լինէր թելադիր՝ յերթալն առ նոսա պատգամ յարքայէ։

*Յայնժամ շրջափակեալ զամուրն* Մոլեւան *զաւրացն արքայի, եւ գործակցութեամբ աստուածապաշտից ոմանց հայկազանց ներքսաբնակաց, յետ սուղ ինչ աւուրց զամուրն յինքեանս գրաւէին եւ զ*Լեւոն *տէր բերդին ձերբակալ արարեալ։ Իսկ* Ապլղարիպն *վանդակաւ կախեալ ի բերդէն հանդերձ եղբարքն ի բուռն անկանէր եւ զարդարադատ վճիռ մահու ընդունէր։ Զեւ եւս այսոցիկ յաւարտ հասելոյ, փութով արձակէր արքայն զնախասացեալ Տէրս* Սիմէոն *յամուրն* Պէճեստնի, *կասկածելով ղի մի ապստամբեսցեն բնակիչք բերդին, յորում ի պահեստի կայր մանկիկ մի փոքրիկ ապստամբին* Վահրամայ: *Եւ սորա զվտանգ ծերութեանն անտես արարեալ, շտապով անդր հասանէր եւ զառաջի եդեալ գործն բարւոք վճարէր ընդ ձեռամբ արքային զամուրն գրաւեալ։*

*Իբրեւ փոքր ինչ գրեթէ գոռ աղմկիս ներքոյ դադարէր, յորոց զյոլովս ոչ յիշատակեցաք, արտաքին թշնամիքն յառաջ մատչէին. եւ* Փառւաճայն *իշխանն տաճկաց դաւաճանութեան կամաւք յեզր սահմանաց աշխարհիս զարքայն կոչէր ի պատճառս սինաւռ կտրելոյ. զորոյ իմացեալ զդաւ նենգութեան, յետս դառնայր չու արարեալ երթալ յանդիման լինել Էլղանին* Ապաղայի, *մեծամեծ ճգանց տալով զանձն վասն փրկութեան քրիստոնէիցս։ Որոյ ճանապարհին Աստուած լիցի առաջնորդ, տալով նմա շնորհս առաջի արքայից արքայի, եւ բաղում փառաւք այսրէն փութով յաթոռ իւր դարձուցէ, ընդ երկայն աւուրս պահելով զնա հանդերձ աստուածապարգեւ որդովքն իւրովք։*

*Արդ, յայսմ ամի յորում այսպիսի դիպուածովք ճգնէր արքայն եւ աշխարհս, եղեւ աւարտ գրչութեան սրբոյ Աւետարանիս ի սուրբ Ուխտս* Սկեւռայ, *ի ձեռն* Ստեփանոսի *ամենամեղ գրչի եւ* Յովասափի *նկարչի, հրամանաւ տեառն* Սիմեոնի: *Որոց ամենեցուն հրամայողին եւ կատարչացս վարձս բարեաց լիցի գտանել ի Քրիստոսէ յաւուրն յետնում, յամենանուշակ արքայութեանն անդադար փառաւորել զամենասուրբ Երրորդութիւնն յաւիտեանս յաւիտենից, ամեն։*

**349**

### *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երուսաղեմ 1288, Պողարյան, Ցուցակ Դ, էջ 484—496*

*Գրիչ՝* Մխիթար
*Վայր՝* Գետկայ վանք

ա

*Փառք Հաւր անեղի, Որդոյ միածնի եւ ազատիչ Սուրբ Հոգուն յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։*

*Յամի եւթնհարիւրերրորդի քսաներորդի երկրորդի (1273) թուականութեանս Հայոց, յորում ժամանակի հով[ու]էր ղուղղափառութիւն հաւատոյս քրիստոնէութեան վերադիտողութեամբ ճշմարիտ աթոռակալ Լուսաւորչին մերոյ տէր* Յակոբ, *եւ յ*Աղուանիցն *տէր* Ստեփաննոս, *եւ ի տիեզերակալութեան* Ապաղա *[ղա]նին, եւ յանիշխանութեան մերո աշխարհիս, յաթաբակութեան* Սադունին, *եւ ի տէրութեան տեղոյս* Ճարին,

ստանաւր կատարեցաւ տաՌ մատենիս ի սուրբ եւ ի հռչակաւոր վանքս Գետկա, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, եւ Սրբո Նշանիս Մ[եծկուռ]իոսի, այլ եւ առ ոտս սուրբ եւ վսեմապայծառ վարդապետիս Յովասափիս, որ է ամենայնիւ աւրինակ բարեաց վարուց եւ բանիւ Վասն զի չէր բաւական մեր նուաստութիւնս մի ըստ միոջ պատմել զառաքինութիւնս նորայ։ Վասն զի յոյժ զարդարեալ է գիտնականաւն [գործ]նականաւն, արիութեամբ, ողջախոհութեամբ, արդարութեամբ, [ողորմած]ութեամբ, գթած առ աւտարս եւ առ մերձաւորս, մանաւանդ առ մեզ եւս։ Զի յետ Աստուծոյ սա էր կենաց պատճառ պանդխտութեանս մերոյ, ոչ միայն բանիւ վարդապետութեան, այլ եւ մարմնական պիտոյիւք, զոր հատուսցէ սմայ այն, որ առատն է ի տուրս զհազարապատիկն եւ զբիւրապատիկն, յաւուրն յայնմիկ, որ ոչ ոք աւգնական, բայց միայն գործք բարիք, ամէն։

Արդ, ես յոքնամեղս Մխիթար, առ ոտն սորա կալով եւ յաղաւթս սորայ ապաւինեալ եւ յԱստուած, մոռացում արարի ամենայն մարմնականիս եւս առաւել տկարութեան մարմնոյ, առ յոյժ փափաքումն աստուածային մատենիս, եւ յոյժ նեղութեամբ եւ տառապանաւք գծագրեցի իմով ձեռամբ ի վախճանումն անձին իմոյ եւ յիշատակ հոգոյս։

Արդ, երկրաթաւալ գիմաւք աղաչեմ զպատահեալսդ, յիշեցէք ի սրբամատոյց յաղաւթս ձեր զվերագոյն ասացեալ վարդապետն զՅովասափ, եւ ըստ մարմնո ծնաւղսն մեր՝ զհայրն իմ զԳերգ և զմայր իմ Մամախաթուն, եւ զհանիկն իմ Գէնի: Ընդ նմին եւ զբա[ր]ձրողէշ ծառն արմաւենի եւ նորատունկ այգին, զխնձորն քա[ղ]ցրահամ ի մէջ անտառաց, զԱռաքել վարդա<պա>պետն, որ [ելից զ]պակասութիւն քարտիս։ Եւ յիշողքդ յիշել լիջիք յ[աւուրն մ]եծի։

Կատարեցաւ ի յահկի քսան եւ ինն, յաւուր [շաբաթ]ու, ընդ ծագել արեգականն, ի փառս Աստուծոյ աւրհն[ելոյն յաւ]իտեանս։

Յայսմ ամի վախճանեցաւ [իշխանաց իշխա]նն Սմպատ, եւ սուգ մեծ էր տանս Արեւելից: [Վասնզի բազ]ում խաղաղութիւն շնորհեաց Աստուած [ի ձեռս նորա] Արեւելից, մանաւանդ եկեղեցեաց։ Քրիստոս Աստուած ի գալստեան իւրում ի վերա տասն քաղաքաց կացուսցէ զնա, ամէն։

Բ

Այսաւր զիմ ճաղն կտրեցին, բայց ես չմեռնեմ։ Բայց եղուկ է լուէս զի նեղեցին յոյժ։

Գ

Զեղկելի գրիչս զՄխիթար յաղաւթս յիշեցէք եւ զծնաւղսն իմ, եւ դուք յիշեալ լիջիք։

Դ

Ո՜վ պատուական հա[ն]դիպողք, զտառապեալ գրիչս Մխիթար յաղաւթս յիշեցէք։

Ե

Այ վա՜ի մէջս խիստ կու ցաւի, ու թանաճանճս ու լոյս խիստ նեղ կու առնէ։

Զ

Մխիթար ի մեղս ղառածեալ աղերսիւ հայցէ յընթերցողացս թողութիւն խնդրել ի Յիսուսէ բաղում յանցանացս, ղի յոյժ շատ է։

Է

Եւ այս կատարեցաւ, ո՜ եղբայր, թէ քեղ հաճո թուի դու փոխեա, ապա թէ ոչ ղիս մի պարսաւեր, զի ես սիրեցի եւ գրեցի։ Յիշել եւ փառաւորեալ Վանական վարդապետն, որ սատարեաց զսայ առ ի յաւդուտ թերավարժիցս։

Ը

Ո՛վ պատուական ընթերցողք, զմեղապարտ գծողս զՄխիթար յաղաւթս յիշեջէք, ղի յոյժ բազում են յանցանք իմ, եւ ծանր քան զաւաղ ծովու։

Թ

Ո՜վ սիրելիք, ամաչեսցէ ոչ բնութիւն զանգուածոյս սակ ճարտարութեան արուեստարկողին, այլ յեղումն կամողին, ունելով գրողիս ապականացու մարմին, քան զչնչին որակութեան քարտիս. սորա մնալ կենդանի, եւ ինձ հողանալ վաղվաղակի։ Բայց զի յարայտեսութիւն մեղասատար սեւակիս, յարայտեւելով յայլմէ յայլ, շահընկալ զիս ցուցանէ։ Ի նոցունց մաղթանաց վստահանամ գերայզանցիլ յապայսն յամենայն նիւթոյ յաղթութիւն վերըստին առեցելովն, անկարացեալ սադրանք ստորայսուղին զքաջատոհմութիւն յուսոյն նուաստացուցանել։ Ուստի որք աննախանձաբար այսմ յուսոյ գործակից են աղաւթիւք, ընկալցին եւ նոքայ առանց տարժամանց ի համարահատին ժամանակի զիւրեանց ըղձիցն լրումն, ամէն։ Եւ Սուրբ Երրորդութիւնն յամենայն արարածոց աւրհնեալ եղիցի, ամէն, ամէն։

350

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5559

Գրիչ՝ Առոմ
Վայր՝ Պազար

ա

192ա Փառք յարուցելոյն ի մեռելոց, որ արժանի արար հասանել յաւարտումն և ի կատարումն աստուածահրաման շարակարգեալ, զաւետաւոր, զհրաշափառ և աստուածունակ հրաւիրեալ զյոլորտս տիեզերաց առ ի կանգնումն անգելոցս։ Արդ, գրեցաւ սայ ձեռամբ մեղապարտ և անարժանի, յոգնամեղի և անթերի յամենայն մեղաց լցեալ և յագեալ ի չա-

րեաց, որոյ անուն քահանայի առեալ և գործք հեռացեալ, որպէս երկինք յերկրէ, որոյ անուն Ատում ճանաչի։ Գծագրեցի զսայ յաղագս գերամաքուր և երջանիկ քահանային Յոհաննիսի, առ ի վայելումն ղարմից և զաւակաց իւրոց և յիշատակ ծնողաց և իւրոցն ամենից, որ է սայ ի մայրաքաղաքն յՈւմի, մերձ [առ] լերամբն, որոյ են շիրիմք սուրբ առաքելոցն Յուդայ Յակոբեան և Շմաւոն Նախանձայոյզ։ Եւ սայ բազում աղաչանաւք և աղերսիւ ստ[աց]աւ ղ[սուրբ Աւետարանս յիշատ]ակ իւրոց։
192բ Եւ ես գա///աչելի ծերութեամբ գրեցի զսայ բազում աշխատութեամբ ի բացավայր սահմանս, որ անուն Պաղար կոչի, ընդ հովանեաւ Սուրբ Սարգսի զաւրաւարին, որոյ յարկ վրանաւ է գրեալ հովահար, և արեգականակէզ շատ աշխատանաւք եղև կատարումն։

Արդ, գրեցաւ սայ ի ժամանակիս, որ է թիւ Հայական տումարի թուաբերութեան ՉԻԲ (1273), եւ է աշխարհակալ թագաւոր Ապաղայ, որ է սայ որդի Հուլայու ղանին, և են սոքա յազգէն մեծ տոհմին Չընգզ ղանին, եւ ունի [ահ] և երկիւղ սոցայ յարևելից մինչ ի մուտս արևի։

Արդ, ի յայսմ ամի եղև սա զաւրաժողով ի վերա սուլտան[ին] Մըսրայ, և ի ժամուս յայսմիկ ոչ ևս է երևումն գործ պատերազմի։ Չայս միարան աղաչեմք զԱստուածն ամենեցուն և զՏէրն մեր Յիսուս Քրիստոս, զի տացէ թագաւորիս մերոյ Ապաղայ ղանիս զաւրութիւն և յաղթութիւն սմայ ի վերա թշնամեաց խաչին, սուրք թշնամեաց սորա մտցեն ի սիրտս իւրեանց, և մի կարասցեն կեալ ընդդէմ սորայ հակառակորդք սորայ, այլ եղիցին թշնամիք սորա կոխան ամենայն ազգաց քրիստոնէից, ամէն, եղիցի կամաւն Աստուծոյ։

Եւ է թագաւոր Հայոց Լևոն բարեպաշտ և բարձր ի վերա թշնամեաց իւրոց, զոր և տացէ նմա Քրիստոս Աստուած զաւրութիւն, և յաղթութիւն ի վերայ թշնամեաց իւրոց, ամէն։ Եւ է հայրապետ Հայոց տէր Յակոբ սուրբ և արժանի ///

Բ

Ծաղկող՝ Մարտիրոս

140բ ԶՄարտիրոս երեցս յիշեսջի*։

## 351

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սմբատյան, «Երնջակ», էջ 2[illegible]0

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Գեռմաղբիւր

Գրեալ... ի թւին ՉԻԲ (1273), ի թագաւորութեան Լևոնի բարեպաշտի և ի հայրապետութեան տեառն Յակոբայ, ի վանս Գեռմաղբիւր յապահով վարդապետանոցի, ձեռամբ Յովհաննէս գրչի։

* Գրված է հրեշտակապետների նկարի մոտ, ըստ երևույթին ծաղկողն է։



ՉԻԳ 1274

## 352

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 586—595*

Գրիչ՝ Կոստանդին
Վայր՝ Սիս

ա

*Որ ի Հաւրէ լուսոյ ծագեալ*
*Եւ ի կուսէն մարմնով ծնեալ,*
*ԶԱւետարանս լուսազարդեալ,*
*Մարդկան կենաց կտակ շնորհեալ,*
*Որում* Աւշինն *տենչացեալ,*
*Որ մարաջախտ Հայոց պատուեալ*
*Զայս աւետեաց մատեան ստացեալ։*

*Սայ յիշատակ բարեաց լիցի,*
Աւշին *սորին ըստացողի,*
*Եւ* Կոստանդեա *եւ* Ստեփանի,
*Ծնողաց նորին, որ ի յերկնի։*
*Նաեւ որդոցն իւր ցանկալի,*
*Նախ* Կոստանդիա *մեծ իշխանի,*
*Այլ եւ* Հեթմոյ *պատանեկի*
*Եւ ամենայն նոցին տոհմի։*

բ

314ա *Փառք... Արդ ղայսպիսի խնկելի եւ նախանձելի հոգեւոր գանձ եւ անկապուտ մեծութիւն, մեծայոյս հաւատով եւ եռանդնոտ սիրով սեպհականել ինքեան կամեցաւ եւ անձկացեալ հոգւով տրփացաւ, խոհեմն ի խորհուրդս եւ ջերմ ի բարեպաշտութեան, յաղթողն ի ճակատս, եւ հաբազատն յիշխանութեան, մեծ ղաւրապետն Հայոց* Աւշին, *որդի մեծ իշխանաց իշխանին* Կոստանդեա *տեառն* Լամբռնի, *ոչ նոր ինչ կամաւ տարբերելով յինքեան զբարեացն յեղանակ, այլ ի գովելի նախնեացն պայազատեալ, եւ զարդիւնս ընտիր արմատոցն պըտղաբերեալ, զմեծաշուք հարց գոլով գովելի որդի եւ շառաւիղեալ ի նախնեաց յընտիր ցեղէն* Պահլաւունի, *յոր եւ* Արշակունեանքն *խառնեցան զարմն։ Ըստ որում իսկապէս ժառանգն աւրհնութեանն աւետեաց, զի գոլով սերունտ յԱբ-*

*բաՀամէ եւ շառաւիղ մեծի* Լուսաւորչին, *յորոց տընկոց եւ ի վերջին աւուրս եւ ի լնացեալ ժամանակս պըտղաբերեցաւ ճիռն աւրՀնութեան եւ Հոգեւոր ողկոյզն, որ զգեղեցիկ վարդապետութեանն մզելով զինի եկեղեցւոյ մանկանց, զամենեսեան արբեալս գործէ երկնաւորին սիրով, եւ ինքն ըստ անձնակիր խառնման ի սրբագործ Հարազատ սէրն, ըստ Որոտման Որդւոյն, զսիրելին ասեմ նմա յատկութիւն անուան աշխարՀալոյս վարդապետն, երկնաքաղաքացին* Ներսէս:

*Արդ, այսպիսեաց գոլով ընտանի բարեպաշտն* Աւշին *զսոյն շանալով բերել նախանձ լաւութեան, եւ գրել զսուրբ եւ զերկրպագելի Աւետարանս արդար արդեամբք Հռչակաւոր գրչին* Կոստանդեա՝ *մեծաւ փափաքանօք, եւ վասն յոյժ սիրոյն որ ի Տէր՝ առաւել վայելչացոյց զսա ոսկէնկար ծաղկաւք եւ տփիւ ի պայծառութիւն եկեղեցւոյ, որպէս թէ զոր կարէր եւ էր Հնար մատուցանելով Աստուծոյ։ Եւ զայս ոչ ընդդէմ աստուածային կամացն եւ աւրինաց; Առաջին, զի ոչ թէ ի զրկանաց տնանկաց մատոյց զնուէրս, որ դոՀ պղծութեան է Աստուծոյ, եւ կամ թէ անտես առնելով զաղքատացն տուրս եւ զողորմութիւն, որ նախապատիւ է ամենայն բարեաց, եւ յայս միայն փութացաւ, այլ սա ըստ ղաւրութեան, նախ ղնոցայն մասնաւորելով զայս պատարագ անուշաՀոտ արար Աստուծոյ։ Եւ երկրորդ՝ զի նոյն ինքն Աստուած ղիւրն խորան՝ զսեղանս եւ զտապանակ եւ զտաճարն իսկ ոսկով եւ զուտիւ ասէր ածանել, եւ իւրաքանչիւրոցն ըստ պատշաճի կարին խնդրէր զնուէրսն, որով եւ զիշխանաց ցեղից մատուցեալ ոսկին ընդունէր, եւ նոյն ի մարդանալն, եւ տղայն ծնանիլ մանուկ, ի մոգուց զոսկին մատուցեալ ոչ ընկեց անարգնալ։ Ոչ իբրու կարաւտ այսպիսեաց, այլ միայն ընդ մերն բերկրելով ջերմն յաւժարութիւն ըսա կարի, որպէս երեւեալ նկատի ի պատարագն Աբելի, թողում ասել եւ զի Տեառնէն պատասխանի որ առ կնոջն ածողի։*

*Արդ, այսպիսին ներբողելի Հաւատով, յանգեցաւ գրութին սորա ի մայրաքաղաքս* Սիս *ընդ Հովանեաւ Սուրբ Նշանին եւ Սուրբ Հրեշտակապետացն, ի թուականութեանս Հայոց ՑԻԳ (1274), յորում ժամանակի փոխանորդէր զՀովուապետական Լուսաւորչին մերոյ գաՀ, որ գործնական մաքրութեամբ յաջորդէ եւ զվարս նորին պատկառելի քաՀանայապետն Աստուծոյ եւ մեծ Հռետորն տէր* Յակոբ: *Յարքայութեան Հզաւր եւ աստուածասէր ժառանգաւորին իշխանութեանս Հայոց՝ ծիրանածին արժանապսակ թագաւորին Երկրորդին* Լեւոնի, *թոռին առաջնոյն մեծին* Ռուբենեանց *զմերս սպառեալ իշխանութիւն եւ թագ նորոգողի, եւ որդւոյ արժանեացն յիշատակի բարեաց բարեպաշտի* Հեթմոյ *եւ քրիստոսասիրին* Զապելի, *որ Հարցն քաջութեան եւ ընդարձակելոյ զմերս տէրութիւն ոչ ինչ պակաս գտաւ, այլ մանաւանդ առաւելաւ, եւ պարկեշտութեամբ մարմնոյ, եւ Հեզութեամբ բարուց զլոլովս ի ստորեաւ եթող։ Մանաւանդ Հոգաբարձութեամբ եւ գթով ի սուրբ եկեղեցւոյ կարգս, ընդ որ եւ Համալծորդ գոլով վեՀն գովութեան բանի քրիստոսասէր եւ թագուհեա դշխոյ նորին* Կեռան, *որ ի նախապատմեալսն զարմից եւ եղբաւրորդի է ստացողի գրոցս* Աւշնի, *եւ դուստր քաղցրաբարոյին* Հեթմռ *արեամբ նաՀատակելոյ ի վերայ ճշմարիտ Հաւտոցս Քրիստոսի, որ սոյն*

այս դշխոյ ամենայն առաքինութեամբ ճոխացաւ լծելով տիրատուր իշխանութեանն ղաղաւթիցն բարիս, եւ զժուժկալութիւն գովելի ողորմածութեամբ, որոյ բարեպաշտութիւնն գրեթէ սիւն է թագաւորութեանս։ Զոր Տէր Յիսուս գլխովն իւրով արքայիւն մերով եւ վայելչածաղիկ ժառանգաւորաւքն ընդ երկայն աւուրս տացէ մեզ եւ անվաղճան արքայութեանն արժանի արասցէ, եւ զձեզ զամենեսեան աղաչեմք, որ վայելէք յամենալի սեղան մատենիս, մաղթեցէք առատ շնորհացն Աստուծոյ դրել ի կենաց դպրութիւնն եւ յանջինջ յիշատակ բարեաց զբարեպաշտ մարաջախտն Հայոց Աշին քաւել եւ թողուլ զսղալանս նորին նորոգութեամբ արդարութեան եւ համադաս եւ զուարճակից առնել սրբոյ Աւետարանիս գրողացն, քարոզողացն եւ զվարդապետութիւն սորին կատարողացն։

Նա եւ որ անծախելի մեծութեամբն սիրէ եւ սովոր է զտալն առատութեամբ, եւ առհասարակ, որպէս տեսանեմք զհեղումն աւդոյ եւ ծագումն լուսոյ, եւ զնոյն զկենացն աւետիս վարձակիցս եւ հաղորդս հոգեւորական ընթրեացս եւ աստուածային սեղանոյս արասցէ զամենայն ազգատոհմն եւ զմերձաւորս պարոնին Աշնի խրախութեանս պատրաստողի, նախ զշրջապատեալսն զնովիմբ, որպէս զնորատունկս ձիթենոյ զաստուածատուր եւ զառոգապտուղ զաւակսն զկորովանի զակ եւ օքաշազաւր իշխանն իշխանաց եւ զուարթաբարոյն եւ զգեղանձնեայն Կոստանդին, որ զամենայն բարեացն տեսակս զոր բերէ յանձին առաւել պսակէ յեռեալն հոգւով յամենայն աստուածայինսն, եւ խանդակաթ գոլով ի սէր սրբոյ եկեղեցւոյ, եւ զդեռաբոյս պատանին Հեթում, եւ զհամեստ դուստրն Թէֆանաւ, մանաւանդ զնմանն առաքինութեանն Սառայի, զամուսին բարեպաշտ իշխանին Աշնի զտիկինն Ակաց: Նաեւ զքուերս նոյն իշխանի զԿեռան, եւ զորդիս իւր զերկիւղած թագադիրն Հայոց Կոստանդին՝ պիտանի եղբարքն Աշնիւ եւ Սմբատիւ, եւ զմիւս քոյրն զՇահանդուխտ, եւ զորդի նորին Լեւոն՝ հարբն իւրով, եւ զայլ արիւնառու մերձաւորս զամենայն, զորս խնդրեսջիք յԱստուծոյ պարագայց ամաւք խաղաղութեամբ պահել եւ երկնաւոր փառացն արժանաւորել։

Բայց առաւել աղաչեմք զձեզ ոչ մոռանալ ի յիշումն բարեաց եւ զնախնի ննջեցեալս նորին, զբարեսէր հայր նորին Կոստանդին՝ տէր Լամբրունի, եւ զպարկեշտուհի մայր Ստեփանեա, եւ զկատարեալ արեամբ եղբայր նորին Հեթում, ոչ անտեսել զպապ նոցին զՀեթում, որ կրաւնաւորեալ Հեղի կոչեցաւ, այլ եղբարքն իւրովք, յորոց է եւ եռամեծն Ներսէս: Նաեւ յիշեսջիք զհանգուցեալ փեսայ սոյն իշխանի, զքաջասիրտն Ճոֆրի, զտէր աստուածաշէն դղեկին Սարվանդոյ, եւ զամենայն ծանաւթս եւ զազգայինս զննջեցեալսն ի Քրիստոս, յորոց ոսկերսն ցաւղեսցի քաւութիւն արեանն Քրիստոսի եւ հոգւոցն հանգիստ ընդ արդարս պարգեւեսցի, եւ ձեզ յիշողացդ հարիւրապատիկ փոխարէն հատուցէ բաւականն յառենայն եւ ամենազաւրն Աստուած, որպէս զի ի՛ մի բերան փառաւորեսցի աւրհնեալն ի բնաւից ամենակալ տէրութիւնն Հաւր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Զխոհեմ այրն եւ զիմաստից իմաստակն, զճարտասանն ի գործս, ի բանս, ի խորհուրդս յամենայն կողմ՝ <մինչ-գրեթէ> մինչ գրեթէ

*եւ զգազանաբարոյսն եւ զթիմաւորսն ի քաղցրութիւն փոխարկեալ ողոքական եւ հեզ շրթամբք իւրովք զմեծ իշխանն Հեթում Զաւտկանց զսրնդեկնոսն նոյնո իշխանի, որ զաւետաքեր մատեանս ետ գրել, յիշեցէք սրտի մտաւք ըստ նախագրելոցս...։*

Գ

*Ծաղկո՞ղ* Ստեփանոս Վանկացի

*Նաեւ զարի երշանիկ քահանայ* Գրիգոր *որդի* Կոստանդեա *իշխանի, որ էր ի տան դշխոյին իշխեցոյ ի վերայ մեծի եւ փոքու, եւ որպէս հայր տածող եւ խնամող ամենեցուն, որ զայս յիշատակ շարայարեաց ի ձեռն մեծ վարդապետի եւ եպիսկոպոսի* Յակոբայ՝ *քեռոյ իւրոյ, ուր եւ սնեալն էր եւ վարժէր դիմաստից աստուածային եւ զ*Ստեփանոս Վանկացի *որ զսա* յամենեսինս յիշատակի արժանի արարէք։*

353

*ԺԱՄԱԳԻՐՔ*

*«Էջմիածին», 1951 թ., IV—VI էջ 57—63*

*Գրիչ՝* Ստեփանոս Վանկացի

337 *Փառք միայնոյ, անբաժանելոյ, անհասանելոյ, եռանձնեան և անեղրական Սուրբ երրորդութեանն և միաստուածութեան ի վերնայնոյ հրաբունից դումարտակաց և ի ստորաքնակ եղականացս յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։*

*Շնորհիւ Տեառն և ամենառատ ողորմութեամբ ամենակարող և անճառ զաւրութեան նորա և գերագոյակ անեղրական իմաստութեան արգահատութեամբ Հոգւոյն Սրբոյ աւժանդակեալ կատարեցի զաստուածամաղթան և տիրապետում տառս մարգարէից և զքրիստոսայայտ տնաւրէնութեան բացայայտութիւն առաքելական և աւետարանական թղթովք, որ է գանձ ծածկեալ բազմաբեղուն և չքնաղատիպ մարգարիտ և ակն լուսատու, և սոփերայեան ոսկի, որ և դէպ է ըստ տեսողին, եբր և ոսկի ընդ սարդիոն յեռեալ և կինամոն տաշխիւք կնդրկաց խնկեալ անմահաբար հոտիւք, զոր նուաստս ի յորդիս եկեղեցոյ և փցուն գրիչս* Ստեփանոս Վանկայցի *յանգ ելեալ կատարեցի հրամանաւ և ծախիւք քրիստոսասպսակ բարեպաշտին և աստուածունակ արքային Հայոց* Լեոնի՝ *որդւոյ* Հեթմոյ՝ *որդւոյ* Կոստանդեայ, *և մայրենի ազգաւ որդի* Զապէլ *թագուհոյ, որդւոյ* Լեոնի *թագաւորին Հայոց առաջնոյ յ*Ռուբինանց, *որ ի յարմատոց բարեաց գտաւ գերազանց բարունակ ստեղնեալ անուշահոտ և քաղցրաճաշակ պտղովք աստուածայնոցն առլցեալ կտակարանացն ըղձիւք և մեծատենչ եւ, որ առ տէր հրով սիրոյն փափաքմամբ միշտ վառեալ, որ*

* *Մի բառ անընթեռնելի է։*

և յաղագս անբաղդատելի սիրոյն առ Աստուած և առ ամենայն ուղղափառ
քրիստոնեայս, բաղում անգամ գանձ ի մահ եդ, աւրինակ եղեալ ///*

### 354

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4086

Գրիչ՝ Ստեփանոս Վանեկացի

ա

98բ Ո՜վ պատվական հովիւ քաջ բանաւոր հաւտի, քրիստոսահանգէտ
քաղցր և բարի, որն նմանապէս սրբոց առաքելոցն՝ ընդ ամենայն ոլորտս
տիեզերաց քարոզեցէր զբանն կենաց, և լուսաւորեցէր զամենեսեան ան-
լուծանելի լուսով, և ի Քրիստոս Աստուած միացուցէր շնորհաւք ամենա-
սուրբ Հոգոյն, և զորդիսն սատանայի որդիս Աստուծոյ արարէր և ժա-
99ա ռանգակից Քրիստոսի, ամենասուրբ աւազանաւն‖և աստուածահրաշ
սրբազան հոգիաներկ սուրբ միւռոնիւն ածութեամբ հանուն Հաւր և
Որդւոյ և Հոգոյն Սրբոյ, Երրորդութեանն և մի աստուածութեանն, ամե-
նակալի, անմահի, անեղի և արարչի։ Եւ այսպիսի ամենասուրբ իւղովս
և դաւանութեամբս հաստատեցէր զեկեղեցիս Հայաստանեայց՝ ի վերայ
առաքելական վիմի, ի մի Տէր Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ, զոր և
դրունք դժոխոց ոչ յաղթահարեցին և ոչ կարեն յաղթահարել յաւիտեան։
Այսպիսի ամենասուրբ հաւատովս պահեա զամենեսեան, և զմեզ ան-
պիտան ծառայքս մինչ ի վերջին աւր կատարման մերոյ, և ի յարութեան
համաւրէն մանկանց եկեղեցոյ սրբոյ քո եւ ընգառաջ սիրով, և գրկեա
› համբուրիւ, և փարատեա զմէգ մեղաց տեսակաց, զոր բանսարկուին
պատրանաւք մեղուցեալ եմք, և քաւեա աստուածայնապէս, և ասա առաջի
տեառն և փրկչին բոլորեցունց՝ահաւասիկ ես և մանկունք իմ չորս ետուրն
ինձ՝ զարեամբ գնեալքս քո, ընդ որս և զԱւշին ծնողաւք իւրովք և զար-
միւք, և զծառայս մեղապարտ զՍտեփանէս Վանեկայցի, որ ձեռամբ իմով
շարեցի զճառս ներբողական Սուրբ Լուսաւորչիդ մերոյ։
99բ Աղաչեմք հողամած երեսաւք զաստուածատիպ սուրբ հայրդ հա-
նուրց, զմեծդ Գրիգորիոս Լուսաւորիչ Հայաստանեայց, զի ճշգրտիւ առ-
նուցումք՝ զոր հայցեցաքն ի ձէնջ, ընդ առաջ ելանել մեզ աստուածայնա-
պէս ըստ անառակ որդոյն, և խրախացուցանել զմեզ և զամենեսեան, և ի

---

* Ստորին լուսանցքի վրա կա նոտրգրով մի հիշատակագրություն. «Գրեալ է ժամագիրքս յամի տեառն 1224 և ի Թուին հայոց ՉՃՀԳ-ին, ձեռամբ Ստեփաննոսի Վանկեցւոյ»: «Այդ թվականին Հեթումի որդի Լևոն չկար, որին Ստեփանոս Վահկացին նկարեր կամ նրա համար Աւետարան (պետք է լինի ժամագիրք) գրեր»,—գրում է Գ. Հովսեփյանը, և գտնում, որ այն գրված պետք է լինի 1270-ական թվականների սկզբին (անդ, էջ 65)։ Անշուշտ թվականը սխալ է կարդացել նոտրգրողը։ Հավանաբար տասնավոր «Ի»-ն «Հ» է կարդացել, այլապես կունենայինք ՉԾԻԳ=1274-ը, որը կհամապատասխաներ Թագավորի օծման առթիվ գրած Աւետարանի ժամանակին (Երուսաղեմ, ձեռ. № 2564, «Ստեփանոս Վահկացի», Էջմիածին. 1951, IV—VI, էջ 64)։ Այդ թվականն է ընդունում նաև ձեռագիրը նկարագրող Արտավազդ Արքեպիսկոպոսը («Լևոն Դ Թագավորի ժամագիրքը», անդ, էջ 61)։ Հիշատակարանն ըստ այդմ դնում ենք 1274 թվականի ներքո։

վերայ ուսոյ բարձեալ ըստ մոլորեալ ոչխարին տարացուցի, և պառկել հարսնացուցանել փրկչին արարածոց և փեսային Քրիստոսի Յիսուսի տեառն մերոյ, որում փառք, պատիւ, և զաւրութիւն, գոհաբանութեամբ հանդերձ, և երկրպագութիւն յաւիտեանս, ամէն։

Ո՛վ գերահրաշ ընթերցողք և վերծանողք և մտառուք, որք և լսեքդ զբազմաչարչար առաքինութիւնս սրբոյս, հաղորդակից լերուք չարչարանաց սորա, զի և անճառ փառացն նորա կցորդակից լիջիք, և բոլորով հաւատով ի սուրբ սրտէ թողութիւն մեղաց և հանգիստ յաւիտենից խնդրեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ՝ և ի Հաւրէ, և ի հոգոյ նորին, և ի սուրբ վկայէս Քրիստոսի Աստուծոյ, զի հաշտեսցի ընդ զվերադրեալքս՝ ընդ Աւշին և ծնողս նորա, և ընդ Ստեփանոս գրիչ և ընդ ծնողս նորա, դի և դուք արժանաւորիք այսմ բարութեանցս, որ ի Քրիստոս Յիսուս, ամէն։

Բ

26ա Սուրբ և փրկական ծննդեամբդ քո, Քրիստոս Աստուած մեր, թող զմեղս ամենայն հաւատացելոց ի քեզ, ես և զԱւշին՝ որդւոյ պարոն Թաւտաւրէի, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ամէն։ Նա և զանպիտան գրողին Ստեփանոս և ծնողաց նորա։

Գ

38ա Զմեղաւոր ծառայս Յիսուսի Քրիստոսի ամենակալի և Հաւր և Հոգոյ նորին՝ զՍտեփանոս, ծնողաւք և զարմիւք յիշեսջիք, յոյժ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր, ո՛վ քրիստոսասէր սուրբ հարք մեր և եղբարք՝ մանկունք սուրբ եկեղեցոյ։ Նա ևս առաւելապէս զԱւշին՝ որդի Թաւտաւրէի, եղբարբք իւրով, և ծնողաւք, և համայն զարմիւքք, որ ստացաւ զսա գանձ անապական յերկինս, և յիշատակ հոգոց և մարմնոց, այժմ և յաւետ յամենայնի։

Դ

58ա Զպարոն Աւշին որդի պարոն Թաւտաւրէի, որ ստացաւ զաստուածային զգանձս զայս, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողաց նորին, և ամենայն զարմից նոցա, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի և դուք մակունք սուրբ եկեղեցոց, յիշեցէք ի բարին ի Քրիստոս Աստուած մեր*։

---

* Ստեփանոս Վահկացու ձեռքով գրված մասը ավարտվում է ժ (13-րդ) պրակով, 99-րդ թերթում։ Ձեռագիրն այժմ կազմում է 1323 թ. գրված մի ձեռագրի սկզբի մասը։ Վահկացու հիշատակարանների մի մասը (Ա, մասամբ և Դ) տե՛ս տպագրված «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանների» (Երևան, 1950) 185 էջում։

## 355

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղեմ 1955, Պողարյան, Ցուցակ Զ, էջ 524—525*

*Գրիչ՝* Կոստանդին
*Վայր՝* Մաշկեւոր եւ Դրազարկ

ա

621ա *Աւրհնութիւն և փոհութիւն, փառք եւ պատիւ անբաւից եւ անհասանելեաց, ամենասուրբ եւ երկրպագելի Երրորդութեանն, միոյ տէրութեանն եւ աստուածութեանն, Հաւր արարչի, եւ Որդւոյն միածնի, եւ Հոգւոյն ճշմարտի, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Որ ետ ղաւրութիւն իմոյս տկարութեան հասանել ի վերջին գիծ գրոց քառավտակ կենսունակ սուրբ Աւետարանիս, զոր ընկալեալք սիրելիք բանին եւ սիրեցեալքն ի բանէն, զբանն կենաց անդստին յանծայրածաւալ ծովէն առատապէս անհատաբար յառաջ բղխեալ յանսպառ յաղբիւրէն, անորիշ բաժանմամբ քառառաչ շարժմամբ յաւէտախաղաց ընթացիւք, աւանդեցին պասքմամբ լքելոյ ազինս յարբումն անսպառ։*

*Յորմէ ոգիակենդան վերանորոգ գերփայլեալ ի ծագմանէ էականն լուսոյ լուսալրացեալ եւ յորդիս լուսոյ եղեալ, ընծա խորհրդական, անունդ սրբութեան, վարժեալ աստուածային աւրինաւք, կատարեալ տեսական եւ արդիւնական, գերապայծառ եւ տիեզերափայլ վարդապետութեամբ, լի եւ առաւելեալ ամենայն մաքրութեամբ եւ բոլոր առաքինութեամբ, սուրբ եւ երից երանեալ այրն Աստուծոյ, տէր սուրբ* Յակոբ, *որ աստուածային նախահրաւէր ընտրութեամբ արժանապատուեալ յառաջնորդութիւն հայրապետութեան հայկազեան ազգիս շնորհեցաւ գլուխ պատուական եկեղեցւոյ՝ Քրիստոսի արեամբն գնեալ բանաւոր հաւտին հովիւ քաջ եւ բարի; որ փափագաւղ եղեալ կենսունակ սուրբ Աւետարանիս, ոչ հայելով ի վայելչութիւն նիւթոյ և գրոյ, այլ ի լուսաւորութիւն բանի եւ յուղղութիւն գրոյ, որպէս է սովորութիւն ընթերցասիրաց։ Ի սորին հրամանէ եւ ի խնդրոյ, ես տրուպ աշակերտ սորին եւ նւաստ որդի ըստ հոգւոյ՝* Կոստանդին *սպասաւոր բանին. յանձն առեալ, շնորհիւ Տեառն սկսա զսա ի սուրբ անապատս* Մաշկեւոր, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին, եւ Սուրբ Կարապետին եւ Մկրտչին Յովհաննու, եւ ողորմութեամբն Աստուծոյ յանկ հանեալ աւարտեցի զսա ի հռչակաւոր եւ Սուրբ ուխտս* Դրազարկ, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին եւ այլ սրբոցս, յամի յորում էր թիւ Հայկազան տոմարիս ութն հարիւրորդ քսաներորդ երրորդ (1274), ի հայրապետութեան սորին՝ տեառն* Յակով-բա *կաթողիկոսի ամենայն Հայոց, եւ ի թագաւորութեան քրիստոսապսակեալ սուրբ թագաւորին ամենայն Հայոց* Լեւոնի, *զորս տացէ մեզ Տէր ընդ երկայն աւուրս պարագայց ամաւք զաւրաւոր եւ յաղթող ի վերայ թշնամեաց իւրոց։*

*Ո՜վ աստուածարեալ սուրբ հարք, եւ ճգնազգեաց սրբասնունդ քահանայք, որք կարդայք եւ լուսաւորիք եւ որք լսէք եւ մխիթարիք, կամ որք ընդաւրինակէք, մանաւանդ յորժամ բառնայք զսա ի վերայ աստուա-*

ծարեալ բազկացդ ի ժամ սոսկալի եւ մեղսաքաւիչ պատարագին, յիշեսջիք առաջի սրբոյ սեղանոյն ըստացաւղ աստուածախաւս մատենիս զտէր սուրբ Յակովբ կաթողիկոս Հայոց, որ ստացաւ զաւետահրաւիրակ եւ տիեզերաքարոզ Սուրբ Աւետարանս յիշատակ բարեաց անձին եւ ծնաւղաց եւ հարազատաց իւրոց։

Աղաչեմ և ես մեղապարտս Կոստանդին, զի եւ զիմ անարժանութիւնս արժանի առնիցէք յիշատակի, եւ որք յիշէքդ յիշեալ լիջիք եւ դուք յողորմութիւնն Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Երդմնեցուցանեմ զքեզ, որ գրես զգիրս զայս, ի Տէր Յիսուս Քրիստոս, եւ ի սքանչելի գալուստն նորա, այն որ ի նմայն գայ դատել զկենդանիս եւ զմեռեալս, զի համեմատեալ կշռեսցես դու զայդ այսմ աւրինակի ուստի գրեցերդ զդա, եւ հոգաբարձութեամբ եւ զսոյն զայս երդումն գրեսցես եւ դիցես ի գիրսդ զոր գրեցեր։

Բ

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

625ա Ո՜հ զմեղաւք դատապարտեալ կազմաւղ սորա Առաքել Հնազանդենց, եւ զծնաւղսն իմ, եւ զհարազատսն իմ՝ զԿարապետ քահանայ և զՊաւղոս սարկաւագ, եւ զուսուցիչսն իմ զՍարգիս քահանայ, եւ զեղբաւրորդեակն իմ զԹորոս, զհանգուցեալսն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր։

Ի թուին ՋԻԴ (1274) կազմեց[աւ]։

Երկրորդ ստացող

Գ

625ա Զ[երկրորդ] ստացաւղ Սուրբ Աւետարանիս զոր ի հալեալ արդեանց ստացաւ զսա՝ Աւշին մարաջախտ Հայոց, որդի բարեպաշտ իշխանաց իշխանին Կոստանդեա, տեառն Լամբրունին, թագայորի Հայոց, աղաչեմ զմանկունս մաւր մերոյ Սիոնի յիշել եւ ողորմութիւն խնդրել, յորժամ ընթեռնոյք։

356

ԱՒԵՏԱՐԱՆ

Պալյան, Ցուցակ Կեսարիո, էջ 29 (1203 թ.)

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

293ա Ո՜հ զմեղաւք զդատապարտեալ կազմաւղ սորա զԱռաքել Հնազանդենց, եւ զծնաւղս իմ, եւ զհարազատսն իմ զԿարապետ քահանայ եւ զՊաւղոս սարկաւագ, եւ զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ, եւ զեղբաւրորդեակն իմ զԹորոս՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր։

Ի թվ. ՋԻԳ (1274) կազմեցաւ սա։

## 357

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Կոնիբեր, Ցուցակ Լոնդոնի, էջ 85*

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Սիս

*Փառք... Յամի ՉԻԳ (1274), ի թուականիս Հայոց գրեցաւ Տետր եղանակաւորս, ձեռամբ թարմատար և բևրբևր մեղապարտ և տխմար գրողիս* Յակոբ, *ի մայրաքաղաքս ի* Սիս, *ընդ հովանեաւ Սրբոյն Յակոբա, ի վեբադիտողութեանն Հայոց ազգիս տեառն* Յակոբա, *և ի թագաւորութեան աստուածասէր ե բարեպաշտին* Լևոնի...

*Արդ, ստացաւ զսա սրբամիտ և բարեբարո դպիրն* Կարապետն, *որ է որդի* Թորոսի *ձիաւորի, ի յարդար ընչից իւրոց, ի վայելումն անձին իւրոյ...*

*Դարձեալ աղաչեմ զամենեսեան յիշելո արժանի առնել... զծնողն և զուսուցաւղսն մեր, և զ Բ (2) որդեկներ, զոր գերեցին և տարան յԵգիպ*տոս: *Առ ոտս անկեալ յամենեցունց խնդրել դարձումն գերելոցն, և զառաքին[ի] հոգևոր եղբայրն մեր* Գրիգոր *երէց, որ էրետ գրել զսա իւրով միջնորդութեամբ, աղաչեմ և զնա յիշել...*

## 358

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 47ա*

Գրիչ՝ Յակոբ դպիր
Վայր՝ Մամեստիա

*Փառք Սուրբ Երրորդութեան յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Յամի եօթն հարիւրերորդի քսաներորդի երրորդի (1274) թուականութեանս Հայոց, ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *և ի թագաւորութեան Հայոց* Լևոնի *որդւոյ* Հեթմոյ *մեծի արքայի, գրեցաւ Նոր Կտակարանս ընդ հովանեաւ Սրբոյն Ղազարու կաթողիկէի, ի քաղաքիս* Մամեստիայ, *ի խնդրոյ սուրբ և երջանիկ, առատաձիր և շնորհազարդ անձին տեառն* Յովհաննէսի Մշեցւոյ, *ձեռամբ թարմատար* Յակոբայ *դպրի։*

## 359

### ՎԱՐԴԱՆԱ ԽՌԱՄԵՇԻ ՍՈՓԵՍՏԻ ԺՈՂՈՎԵԱԼ ԱՐԴԱՐԵԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՋԱՒԳՈՒՏՆ Ի ԲԱԶՄԱՑ

*Տիսերան, Ցուցակ Հռոմի, էջ 47 (1631 թ.)*

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդոյ և Հոգւոյն Սրբոյ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ցամի եւ-թն հարիւրերորդի քսաներորդի երրորդի (1274) թուաբերութեանս Հայոց**։

## 360

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 47*

*Գրիչ՝* Իգնատիոս
*Վայր՝* Ջիմառա

*Փառք ամենասուրբ Երրորդութեան... ամէն։*

*Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան սարկաւագ* Իգնատիոսի, *ի թուին Հայոց ՉԻԳ (1274), ընդ հովանեաւ Սրբոյն Յովհաննու, ի գիւղաքաղաքիս, որ կոչի* Ջիմառայ:

*Արդ աղաչեմ* ///

## 361

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

*Երևան 3929 (1247 թ.)*

*Ստացող՝* Բարսեղ

337բ *Ի ՉԻԳ (1274) թուին Հայոց, ես* Բարսեղ *կրաւնաւոր ստացայ զայս գիրքս ի յիմ արդեանց ինձ ի վայելումն և յիշատակ հոգոյ իմոյ և ծնողաց իմոց։ Արդ, աղաչեմ զպատահեալսդ և յո ոք եւ անկանի սայ յետ մեր, յիշեսջիք ի Քրիստոս զ*Բարսեղ *միակեաց՝ հանդերձ ծնողաւք և ազգականաւք, և որք զմեզ յիշէք սրտի մտաւք, Քրիստոս զինք յիշէ յիւր արքաուբիւն։*

---

* «Այսչափ էր գոած առաջին Յիշատակարան և ոչ աւելի»,— գրում է գրիչը,— «Ոհ, զի խիստ ծեր էր աւրինակս, հազիւ կարացի յանկ հանել։ Իսկ Ձեռագրի հիշատակարանում գրում է. «Եւ ես Յովհաննէս վարդապետս Կոստանդինապօլսոյ պատրիարգ անուամբ, ի Հռոմ գնալս պատահեցայ ի Լով քաղաքն, տեսի զՎարդան վարդապետի Պատմագիրն, զի խիստ հնացեալ էր, վասն որոյ եղի աւրինակ և գրեցի զգիրս։ Անմեղադիր լերուք, ծերութեան ժամանակի գիրս է, եւ այս եղև թվ. ՌՁ (1631) դեկտեմբերի առաջին աւրն, որ էր հինգշաբթի»։

## 362

### ԿԱՐԳ ԱՍԱՑՈՒԱԾՈՑՆ

Երևան 5197

Գրիչ՝ Շմաւոն
Վայր՝ Գեաւիկ

ա

233բ Զստացաւղ Սարգիս յիշեցէք առ Տէր Յիսուս, և զՇմաւոն գրիչ յիշեցէք առ Քրիստոս Աստուած*։

բ

315ա Ո՛վ պատուական, վասն Աստուծոյ զՇմաւոն յիշեա ի Տէր։

գ

320բ Տէր Աստուած ողորմեսցի Ալաւխսիոսի, ամէն։

դ

420 ԶՍարգիս զստացող յիշէ, և զՇմաւոն գրիչ, զԱլաւխսիոս յիշէ։

ե

Այլ գրիչ՝

434բ /// անձն զՍարգիս յիշեա ամէն։

## 363

### ԼՈՒԾՄՈՒՆՔ ԳՐՈՑՆ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑՒՈՅ

Երևան 5239

Գրիչ՝ Մարկոս
Վայր՝ Առաջնաւոր

Փառք եռակի, եզակի Սուրբ Երրորդութեանն՝ Հաւր և Որդոյ և Սրբոյ Հոգոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

93ա Ի թուիս ՉԻԳ (1274) գրեցաւ գիրքս այս մեծ և խոհեմ կորովամիտ առնն աստուծոյ Փիլոն կոչեցելոյ, ազգաւ Իսրայելացի, ի ցեղէ Ղևտացի, դպիր գոլով, ձեռամբ անարժան և անարհեստ գրչի Մարկոսի, ի վանս Առաջնաւոր, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ընդ իշխանութեամբ և ընդ [գլխ]աւորութեամբ բաբունեաց պետիս, որ է մեստր և տելետ Գրիգոր Բջնեցի մակադրեալ, զոր Տէր Յիսուս անսասան պահեսցէ ի ներհ[ակ]ս զոռոզէն։

---

* Ստացող Սարգիս վարդապետի հիշատակարանը 1280 թվականի տակ է, ուր ասում է «կտոռ գրել... զԿարգ ասացուածոցն... ի Գեաւիկ, ի թվին Հայոց ՉԻԳ (1274)»։ Հենվելով այս վկայության վրա նշանակել ենք թվականը և տեղը։

93բ Այլ Աստուածն իմ Յիսուս Քրիստոս ողորմածն և ///ածն, մարդասէրն և բաղամողորմն, այցարարն և խնդրողն, դարձուցանողն և փրկողն զգեր[ե]ալսն ոչխարին, խնդրողն և տանն աւել ածողն, ընդ մաքսաւորն ուտողն և զպոռնիկս արդարացուցանողն, ողջաց պահողն և հիւանդաց առողջացուցանողն, արդարոց դոյացուցանողն և մեղաւորաց փրկութիւն շնորհողն, և որ յարմար սմին երթայք ուսարուք յինէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ, և դտջիք հանգիստ անձանց ձերոց, զի լուծ իմ քաղցր է և բեռն իմ փոքրոդի, փոքրացուսցէ նոյն ինքն բանն Աստուած, այսինքն լուասցէ իբրև զձիւն, սպիտակացուսցէ զհոգի և զմարմին ամենայն երախտաւորաց մերոց, երջանիկ եպիսկոպոսին տէր Սարգսի, և հաւրեղբաւրն իմոյ Մխիթարի՝ [ը]ստ մարմնոյ, սնուցող և հայրապէս գթած և ըստ ոգո մատակարար, և ծնողացն իմոց Ամէնատէրին և Աղուտին, ես առաւել եղբաւրն իմոյ Հասանա: Սոցա ամենեցուն ստ յիշատակեցելոցս ողորմեսցի բազմագութն Աստուած, ասելով. Եկ բարի ծառա հաւատարիմ, մուտ յուրախութիւն Տեառն քո և մեզ յիշէ ի բարիսն, և ինքն հանդիպեսցի այնմ բարեաց, և որով հայցէ մեզ ի Տեառնէ, զնոյն և առցէ յաւուրն սոսկալի ի Քրիստոսէ Աստուծոյ, որ է աւրհնեալ, գովաբանեալ և փառաւորեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

## 364

## ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆ

Երուսաղէմ 353, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 250—251

Գրիչ՝ Սանակ Ասորի

ա

205ա Տէր Աստուած Իսրայէլի ողորմեաց ըստացողի գրոցս տէր Կոստանդեայ պատուական քահանայպետի, ընդ նմին եւ գծողի սորա նուաստ քահանայն Սանակայ Ասորւոյ, եւ Աստուծոյ փառք յաւիտեանս, ամէն։

բ

259բ Կատարեցաւ գիրքս Յեսուա մարգարէին եւ աստուածախաւսին, որ է դատաւորք ցեղիցն Իսրայէլի, ձեռամ[բ] յո<ւ>գնամեղ քահանային Սանա[կայ] Ասորւոյ, ի խնդրոյ աստուածասէր քահանային տէր Կոստանդեա: Վայելել տացէ սա Տէր իւր, ի զրաւ սորա։

գ

Ստացող և սրբագրող՝ Ստեփանոս

297ա Փառք Թագաւորին երկնաւորի, որոյ անվախճան է Թագաւորութիւնն, ամէն, ամէն։ Ո՛վ սրբասէր հարք եւ եղբարք, որք հանդիպիք

* Հիշատակարանի սկզբում այլ գրով և Թանաքով գրված է «Եսայի վարդապետին է գիրքս»։

սմա մեղաց թողութիւն հայցեցէք ի Տեառնէ ստացողի սորա Ստ[եփանո-սի], եւ ուղղչի, որ բազումս աշխատեցայ, որպէս եւ տեսանէքդ։ Եւ Աստուած զձեզ յիշէ յիւր ողորմութիւնն։

Դ

407բ Ո՜վ աստուածարեալ մանկունք Վերին Սիոնի, որք ագուցք ի սմանէ՝ բազմամեղ ստացողի սորա ըՍտ[եփանոսի], եւ ծնաւղաց իւրոց, եւ ամենայն աշխատողաց ի սմա՝ մեղաց թողութիւն հայցեցէք ի Տեառնէ, եւ սխալանացս որ ի սմա անմեղադիր լերուք, զի գրողն ասորի էր, եւ յոյժ թիւր էր դրել եւ անյարմար։ Ես ըստ կարի իմում համարձակեցա ուղղել զսա ի ստոյգ աւրինակէ, եւ խիստ վիշտ կրեցի յուղղել սորա, զի կարի սխալ էր որպէս եւ տեսանէք։ Բայց ընդ այս ուրախ եմ, զի թէպէտ գիրս այլայլեցաւ վասն ուղղելոյն, այլ որ ընթեռնու՝ կամ ըն-գաւրինակէ՝ նմա յոյժ աւգուտ է։ Եւ [որք] յիշէքդ զմեզ՝ եւ դուք յիշեալ լիջիք ի բարերար Տեառնէն մերմէ, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտե-նից, ամէն, ամէն, ամէն։

Ե

91բ Որ զերեսն Մովսէսի պայծառացուցեր՝ եւ զխորանն շնորհաւք Հոգւոյդ լցեր, լուսաւորեա եւ զմեղապարտ Հոգի ստացողի սորա Սաե-փա[նոսի] եւ ծնողաց իւրոց։ Նաեւ զուղղիչ սորա զԿոստ[անդին], եւ զծնաւղսն իւր ընկալ ողորմութեամբք ի լոյսդ անմատոյց։ Եւ որք յիշենն զմեզ՝ եւ ինքեանք յիշեալ լիցին ի Տեառնէ։

Զ

Կազմող՝ Կարապետ

408բ Կազմեցաւ սայ ձեռամբ մեղուցելոյս Կարապետի, ի թուականին Հայոց ՉԻԳ (1274)։ Արդ, ես տառապեալ կազմող սորայ, զերեսս ի մո-խիրն դնեմ ընթերցողացդ եւ աղաչեմ յիշել ի մեղաց թողութիւն զիս, եւ զծնողքն իմ, եւ զեղբայրքն զհանգուցեալսն ի Քրիստոս, եւ ըստ Հոգոյ եղբայրս իմ զՍտեփանոս եւ զՍաչեր կրաւնաւոր, որ աստուածայսիրա-բար խնամէ մեզ յայսմ աւտարութիւնս. եւ որք յիշէքդ, եւ դուք յիշեալ լիցիք ի Քրիստոս, որում փառք յաւիտեանս, ամէն։

365

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Վենետիկ 23, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 171

Գրիչ՝ Սանակ Աւորի

Ա

193ա Կատարեցաւ Իմաստութիւն Սողոմոնի՝ ի խնդրոյ աստուածասէր և բարեպաշտին պարոն Յակովբայ՝ ձեռամբ յոգնամեղ և նուաստ քահա-նայի Սանակա Աւորոյ փծցում գրչի։

Բ

96բ Ո՜վ քրիստոսազգեաց գասք, յորժամ ընթեռնոյք զհոգեշահ իմաստքս որ աստ գրեցան, յիշեսջիք ի Քրիստոս զստացաւղ սորա զՏէր Յակոբ և զծնողս իւր, ընդ նմին և զգծող սորին զՍաճակ:

Գ

81բ Զամենիմաստ ստացող գերահրաշ իմաստիցս զպարոն Յակովբ և ըզծնաւղս իւր յիշեսջիք ի Քրիստոս։

## 366

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

*Վենետիկ 268, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 872*

Գրիչ՝ Յոհանէս
Վայր՝ Անախոֆ

ա

216բ Փառք ամենայսուրբ Երրորդութեանն, Հաւր և Որդոյ և Սրբոյ Հոգոյն։

Գրեցաւ Եւխաւլաւիաննս ի գաւառին Անախոֆայ, ընդ հովանեաւ Սրբոյ<հոյ> Սարգսի, ձեռամբ անարժան և յետին քահանայի և ծառայի Աստուծոյ Յոհանիսի յետին և ի փցուն գրչի, և մի մեղադրէք վասն խոշորութեան և սղալանաց գրիս, զի այսչափ կարացաք դրեալ։

Գրացաւ ի թվականութեան յաւիտենից [ՉԻԴ] (1275), և Աստուած վայելել տացէ։ [Արդ որք աւ[գ]տիք ի սմանէ՝ մեղաց թողութիւն]... խնդրեցէք ծառ[այ]ին Աստուծոյ Յոհանէսին և ծնողաց։

Բ

Վայր՝ Կեսարիա

247ա Կատարեցաւ տառս այս ի մայրաքաղաքս Կեսարիայ, ընդ հովանեաւ Սուրբ Ստեփանոսի, [յիշատակ] Պարոնին և ի բարեխաւսութիւն հաւր իւրոյ Պապանվան, և համաւրէն ննջեցելոց իւրոց և ի վայելումն որդոց իւրեանց... Պարոնին և ///

Արդ, որք աւկտիք ի սմանէ կամ ընդաւրինակէք, յիշեցիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՊարոն և զիր ննջեցեալսն, և Քրիստոս, որ առատն է յամենայնի՝ մեզ և ձեզ ողորմեսցի յիւրում գալստեան, ամէն։

Գրեցաւ ի թվիս ի ՉԻԴ (1275)։

Գ

Գրիչ՝ Գրիգոր

147բ Եւ զիս բազմամեղս զԳրիգոր գրիչս յիշեսցի ի Քրիստոս, և յիշողս ///

## 367

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7534*

Գրիչ՝ Ստեփանոս Վանկայցի

ա

273ա *Փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։ Ի թվին Հայոց*
*Մեծաց ՉԻԴ (1274) և ի հայրապետութեանն տեառն* Յակովբա, *և ի թա-*
*գաւորութեանն Հայոց* Լևովնի, *գրեցաւ իմով ձեռամբ* Կոստանեա *քա-*
*հանայի սուրբ Աւետարանս ի յղորդ և յընտիր աւրինակէ, ի խնդրոյ եղ-*
*բաւր մերոյ* Դաւթի *կրաւնաւոր քահանայի, ի վայելումն անձին իւրոյ և*
273բ *ի յիշատակ ծն‖ողաց իւրոց* Վահրամ *քահանայի և* Պահրկանն, *և քուերց*
*իւրոյ* Արճայաիկնայ *և* Փառացտիկնայ, *և որդւոյ նորա* Գրիգորի *սարկա-*
*ւագի, և հաւր սորին* Ներսէս *քահանայի։*
*Արդ, եղև գրաւ սորա յայսմ ամի, որ է Հայոց թուականն ՉԻԴ (1275),*
*զոր կարճ ի կարճոյ ճշտիւ և համառաւտ յիշել պարտ է զդառնաքեր ժա-*
*մանակս ի վերայ երկրիս* Կիլիկեցւոց: *Յամսեանն մարտի, որ աւր* Ի և Ե
*(25) էր, երկուշաբթի, գոռոզն փարաւոն, արքանեակն սատանայի, առեալ*
*զառաջնորդն իւր զԲելիար ամենայն զաւրաւքն իւրովք ի յաւգնութիւն իւր*
*և զաւրաց իւր և ամենայն զաւրաւքն իւրովք ի յաւգնութիւն իւր և զաւրաց*
*իւր և ամենայն հնազանդելոց նորա, զաւրաժողով արարեալ զամենայն*
*երկիրն* Եգիպտացւոց՝ *ի մեծէ մինչև ցփոքունս, մինչ գրեթէ Ժ(10) բիւր*
*էր զաւրք նորա, և եկեալ երկիրս* Կիլիկեցւոց, *և գտեալ անպատրաստ*
*զամենեսեան, որպէ[ս աս]աց Տէրն, թէ Արթուն կացէք չմատնել ի փոր-*
*ձութիւն։*
*Եւ զայս ոչ միտ առեալ թագաւոր[ին] մերոյ և ամենայն զաւրաց*
*նորա, այլ որպէս արբեալք և յիմարեալք կացին և ոչ կարէին զդէմ ունել,*
274ա *և հրեշտակութիւն առաքէին ի խաղ‖աղութիւն և կամ տալ հարկս, զի մի*
*եկեալ գերեսցէ զամենեսեան; Եւ նա յանկարծակի, որպէս զհուր ցոլա-*
*ցեալ ի վերայ ամենեցուն, ցիր և ցան արար զնոսա, և զամենայն քա-*
*ղաքս և զգեաւղս՝ զդաշտայինս և զլեռնայինս, հրկէզ արար և զարս և*
*զկանայս ի քսանամենից ի վեր՝ ի սուր սուսերի մաշեաց, և զտղայսն*
*առ ոտս երիվարացն արկեալ զի տրորեսցին, որպէս զմարախ անթիւ*
*բազմութեամբ, և զաղջկունս և զմանկունս գերի տարեալ յաշխարհն իւր,*
*և կացեալ յերկիրս* Կիլիկեցւոց *զաւուրս երեսուն անսասան և անհոգ, և*
*ոչ ոք էլ ընդդէմ նո[րայ] և ոչ մի, և ոչ մնաց ի սահմանացն դաշտ[այ-*
*ն]ոց, ոչ մեծ և ոչ փոքր որ ոչ ըմբռնեցաւ ի ձեռս նորա ամենայն ստա-*
*ցուածովք իւրեանց; Եւ մնաց երկիրս այս աւերակ յամենայնի, զատ ի*
*քարանձաւաց և յամրոցաց աշտարակաց, և զաղէտ սորին և կսկիծ որ-*
*պիսի կարացից ընդ գրով արկանել, զի հակառակն ճշմարտութեան և*
*մարդասպանն ի սկզբանէ նախանձեցաւ ընդ ճշմարիտ գառինն զենումն,*
274բ *որ յամենայն աւուր զամենեսեան վերստին նորո‖գէր և լուսաւորէր, և*
*զաւրացուցանէր զհաւատացեալս իւր։ Եւ յայսմ ժամանակի ոչ կարաց*
*հանդուրժել, այլ եմուտ ամենայն զաւրաւք իւր ընդ ձեռամբ անհաւատին*

փարաւոնի, որպէս ի հնումն էր սովորութիւն նորա առ Մահմեդին, և զտաճար ընդհանուր Հայաստանեայց զմայր մեր Սիոն կոխան արար այլազգեաց և ծաղր և այպնկատա[կա]նաց, և զկենսակիր Սուրբ Նշանն Քրիստոսի Աստուծոյն մերոյ առ ոտն խոզիցն յերկիր տարածեաց որպէս զշիթս անձրևաց։ Նաև զքահանայիցն և զսարկաւակացն և զամենայն ուխ[տ]ի մանկանց եկեղեցոյ զինչ ասացից կամ զինչ խաւսեցայց, զի ասի ի բերան եղէց և ոչ խաւսեցայց զառականս զնախատինս մեր, որ 'ի ծովացեալ մեղաց իմոց և ի կոհակաց կուտելոց, որպէս զլերինս անպատումս և անճառելիս եղև և այլոց առհասարակ ըստ չափու ոչ էր, այլ անթիւ էր յանցանքն, մինչև եղ աղաղակ չարութեան մեր առ Տէր։ Եւ նա ի ձեռն հրեշտակի չարի արբոյց մեզ զմրուր դառնութեան, և մեք յամառեալ ի նոյն հայհոյութիւն դարձուք և ոչ ի զղջումն։ Եւ այս Դաւիթ շատ աշխատեցաւ ի յայսմ ժամանակի որպէս զքաշ նահատակ, մինչ ի յաւարտ սորա հասաւ։

275ա Իայց քաջս այս և արիս ի բարեփառութիւն և ի յողջախոհութիւն զմահ յանձն առեալ, և անկեալ ի մէջ անաւրինաց, և Տէրն ամենեցուն, պահապանն Իսրայէլի, առաջնորդեաց սմա և անցոյց ընդ գետն մեծ Ճանճուն, և ի ձեռն նորա զայլս բազումս և փրծանէր ի նոցանէ անսայթաք; Եւ յայլ բազումս ազգի ազգի վշտաց փրկեաց զնա Աստուած որպէս զՄովսէս ի ձեռաց փարաւոնի, և յոյժ աշխատեցաւ ի վերայ սորին որպէս Դաւիթ ի վերայ տապանակին, և զայլն է իմանալ ի մտաց սորին։ Եւ յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Աստուծոյ, սրտի մտաւք յիշատակեցէք զյառաջասացեալ քահանայ Դաւիթ և զծնողսն նորա, և զամեն արեանառու մերձաւորք իւր, նա և զգծող սորին զԿոստանդին քահանայ, և զՍտեփանոս համարուեստ իւր, որ սակաւիկս գծեցի, և զքեռիք Դաւթի՝ զԱւեսփսն և զՅովաննէս, և զքեռորդի սորա զՍտեփանոս քահանայ, և զհայր իւրեանց զՅորդորն, և մայրն, և զամենայն զարմ իւրեանց՝ զկենդանիս և զհանգուցեալս, և զամենայն հաւատացեալս ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք, պատիւ և երկրպագութիւն յամենայն հաւատացելոց իւրոց, ամէն, ամէն, ամէն։

Բ

136բ Ո՜վ պատուական հարք մեր և եղբարք, որք կարդայք կամ աւրինակէք, յիշատակեցէք ի մեղաց թողութիւն զԴաւիթ քահանա, և զծնողսն իւր՝ որ ըստ մարմնոյ և որք ըստ հոգոյ, նաև զքուերսն իւր, և զքուերորդիքն, և զհաւրաքեռքն, և զամենայն ազգատոհմն, մինչև ի հազար ազգ, և զոր յԱդամա մինչև ցայս աւր հաւատով և յուսով են հանգուցեալ ի տէր Քրիստոս Աստուած մեր, և դուք որ յիշէքդ, յիշեալ լիջիք յանեղէն Աստուծոյ միայնոյ։ Նա և առաւել զանարժանս յիշատակի ըստ բարի կամաց ձերոց գթածաբար ողբալով և յոգոց հանելով ողորմեցարուք բազմամեղիս Ստեփանոսի Վանկացոյ, որ սակաւ թերութիւն տառիս շարագրեցի։

Գ

2ա *Ձտառապեալս ի բարեաց* Ստեփանոս Վանկայցի, *որ զհամաբարբառս գրեցի և զԴաւիթ քահանայ, զստացող սորա, յիշեսջիք ի մեղաց թողութիւն։*

### 368

## ՄԱՆՐՈՒՍՈՒՄ

*Սյուրմեյան, Ցուցակ Հալէպի, Ա, էջ 243*

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Սկևռայ

114 *Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Որ տա զաւրութիւն յինքն հայեցողաց ի ներհակ եկամտիցն պարսպել զանձինս և բնաւորական արաբչադիրն հետևիլ սահմանի, յորոց մի է և այժմու յիշատակեալ պատուական քահանայս* Յովհաննէս, *զի յետ ամենայն բարեաց առաւել մանուկ մի ի տհաս հասակի, և հայրական խնամով սնոյց աստուածային երկիւղիւ վարժեալ անուն* Կոստանդին: *Եւ իբրև եհաս յաշտիճան քահանայութեան, կամեցաւ զի անմոռաց պահեսցէ զնա ի սրտէ, և փոխանակ աշխատութեան տրիտուր հատուսցէ նմա մասամբք աղաւթից եւ պատարագաց։*

*Եւ ի թուիս Հայ[ոց] ՉԻԴ (1275), ի հայրապետութեան տեառն* Յակովբայ, *եւ ի թագաւորութեանն* Լեւոնի *որդւոյ* Հեթմոյ, *յորում ըստ մեղաց մերոց զաւրացեալ անաւրէն իշխանն հարաւոյ՝ տէրն* Մսրայ, *ելեալ աշխարհս* Կիլիկեցւոց *բազում զաւրաւք, և ի սուր սուսերի մաշեալ զբնակիչս գաւառիս, և զքաղաքս և զգեաւղս հրոյ ճարակ արարեալ, և անթիւ բազմութիւն մարդկան ի գերութիւն վարեալ, բազում աւարաւ՝ ողջանդամ յաշխարհ իւր դարձաւ։ Եւ մնացեալքս ի լերինս և ի ծերպս վիմաց յահէ անաւրինին այսր-անդր գեգերեալ՝ ակն ունելով ողորմութեան և խնամոցն Աստուծոյ։*

*Արդ, յայսմ ի դառն և յանպրոյ խռովութեանս և յանփարատելի տրտմութեանս, գրեցաւ երաժշտական տետրս Մանրուսման, ձեռամբ բազմամեղ քահանայի* Ստեփանոսի, *ի հռչակաւոր անապատս* Սկևռայ, *որ է մերձ դղեակս* Լամբրունի *և ի ստորոտ լերինս* Տաւրոսի, *ի խնդրոյ յառաջասացեալ սրբազան քահանայի* Յովաննիսի *եւ յիշատակ հոգւոյ իւրոյ, եւ ի վայելումն հոգևոր որդեկին իւրոյ* Կոստանդեա:

*Արդ, աղաչեմ զամենեսեան որք ուգտիք ի սմանէ ուսմամբ կամ տեսակաւ կամ գաղափար առնելով, [յ]իշեսջիք ի Քրիստոս զվերոյ ասացեալ պատուական քահանայ* զՅովհաննէս *եւ* զԿոստանդին *եւ զըծնաւղսն իւրեանց։ Յիշեսջիք աղաւթիւք եւ զպատուելի քահանան* Թորոս, *որոյ այժմ խնամ արկ զստացաւղ գրոյս, ընդ նմին եւ զանպիտան գրիչս եւ ծնաւղսն իմ, և որ ընդունողն է մաղթանաց՝ Տէր Յիսուս Քրիստոս, յիշելոցս և յիշողացդ ողորմեսցի, և ինքն եղիցի աւրհնեալ ընդ Հաւր և ընդ Հոգւոյն սրբոյ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

## 369

## ՍՄԲԱՏ ԳՈՒՆԴՍՏԱՊԼԻ ԱՎԵՏԱՐԱՆ

Երևան 7644

Գրիչ

ա

380բ Փառք եռակի և համագոյ երից և մի Տեառն Աստուծոյ, Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյ, յիմանալեաց վեհից վերնոյ, և ի սգալեաց արարածոյ, այժմ և յանզրաւ յաւիտենին, ամէն*։

բ

298բ ԶՍմբատ Գունդստապլ զսաացաւղ սուրբ տառիս յիշեսջիք ի Քրիստոս**։

գ

Ստացող՝ Սմբատ Գունդստապլ
Վայր՝ Կիլիկիա

124ա Զմեղաւոր հողըս Սըմբատ՝ որ ստացա զաստուածախաւս Ավետ[ար]անըս և ու[ո]գէցի ըզսա քէրթութեան արհեստիւն տասն ոռգոնութեամբն, յիշեսջիք բարի յիշմամբ ի Քրիստոս, ո՜վ որդիք մակացութեան և ծնունդ սրբոյն Սիոնի։ Եւ թէ ի կարդալն սորա հետ կարմիր աշաննոյն էրթայք և տանիք զեղանակ կարդալոյն, լաւ առնեք։ Բայց դըժվարագոյն է, վասն զի մոռացել են ազգս ի վաղուց հետէ և ատարացեալք ի հմ[տ]ութէնէ ս[ո]րին***։

դ

Ոռոգողիս Տէր ողորմեա՜,
Գաւնադաւ[ս]տա[պ]լին այս Սմբատա,
Որ յոռոգելս հալծէցա,
Քերականաւ ուղ[ղ]ել ըզսա,

---

* Ձնայած սյունակի համարյա ամբողջ ազատ մասին, հիշատակարանը այստեղ վերջանում է։

ԺԳ դարից կա այսպիսի հնգատող.

Աստուածար[ան Ա]վետարան,
Մեր Քրիստոսին տվել [ս]ահման,
Նա և յայտնեաց բան ի սման,
Զինքն Աստուծոյ Որդ[ի] և բան
'Ի Աստուծոյ առաջ քան զաւիտեան։

Սրանից հետո, հավանաբար ԺԶ դարի գրությամբ գրված է Երաշխավորի վանքին նվիրելու մասին հիշատակարան։

** Գրված է կարմիր թանաքով՝ ընդ որում անունը երկաթագրով։

*** Վերջում՝ ստորագրություն՝ նույն թանաքով։ Գլխավոր հիշատակարանը չի պահպանվել։ Ձեռագիրը նշանավոր է իր մանրանկարչությամբ՝ խորաններով, ավետարանիչներով, ավետարանառաջներով և լուսանցազարդերով։

Որ արվէստին հմուտ է նա,
Նա ճանաչել այն կարէնա։

## 370

## ԳՐԻԳՈՐ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ ՃԱՌՔ

Ն. Ջուղա 393, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 593

Գրիչ՝ Վարդան

ա

4բ Ի թուին Հայոց ՉԻԴ (1275) կատարեցաւ աստուածաբան մատեանս սրբոյն Գրիգորի Աստուածաբանի, ձեռամբ Վարդանայ անպիտան քահանայի և յետին գրչի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ագտիք ի սմանէ, մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ առաջին գրողի սորա եւ վերջին, եւ ծնողաց նոցա։ Յիշեցէք և զարդիւնական բարունին Վաճրամ, որ զառաջոյ գրեալսըն ի սմա շնորհեաց մեզ եւ մեք կատարեցաք։

բ

Գրիչ՝ Ղուկաս

72բ Քրիստոս, քո սուրբ հայրապետացն բարեխաւսութեամբ ողորմեայ Յոհաննէս վարդապետի՝ ստացողի սորա, եւ իւր ծնողացն, եւ Ղուկասու անարժան և փցում գրչի, եւ այլոցն ամենեցուն, որք երախտաւորք են, եւ Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

գ

Ղուկաս փցում գրիչն աղաչէ զընթերցողս թողութիւն խնդրել յանցանաց ի Քրիստոսէ*։

## 371

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սյուրմեյան, Ցուցակ Հալէպի Ա, էջ 77—78

Գրիչ՝ Ընճնաախոս

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն, Հաւր և Որդո և Հոգւոյն Սրբո, այժմ և միշտ յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Ընճնաախոսի ծառաի Աստուծոյ, ի թվիս ՉԻԴ (1275)։

բ

Լուսայբեր խրիցու Աւետաբանն է, յիշեցէք ի Տէր, և Տէր յիշէ զձեզ յիւր երկնից արքայութեանն, ամէն։ Ո՞վ քահանայք, [յ]որժամ զայս յի-

---

* Ձեռագիրն ավելի հին է և գրված է Անտիոքում,

շատակարան կարդաք, Աստուած ողորմի ասացէք Սարեամին՝ իր կողակցին։

գ

Աւետարան Լուսաբեր էրիցուն է։ Աստուած ողորմի աւղորմածաց։

դ

Տաղկող՝ Տիրացու

Տաղկազարդ՝ Տիրացուէ*:

ե

Տէր Աստուած ողորմեայ Տիրացու էրիցուն և Տիրուհէ, ամէն։

## 372

## ԼՈՒՍՄՈՒՆՔ ՀՆԳԱՄԱՏԵՆԻ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑԻՈՅ

Երևան 3932

ա

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Ղազարու վանք

127բ Փառք ողորմածին Հաւր և սիրալուր Որդոյն երևելու և բխողական Հոգոյ;

Փառք եռանձնեա երեքերևեան աստուածութեանն և միաւոր Երրորդութեանն և յիշխանութեանն, ամէն, որ արժանի արար զտկարս հասանել ի գիծ վերջին։

Արդ, յամենից վեր երանելն հայրն հաստրակաց՝ Ներսէս վարդապետն խնդրել ի նուաստ աշակ[երտէ]՝ Գրիգորէ սուտանուն վարդապետէ զգիծս Տննդոց Փ[իլոնի], ի մէջ ձմերանս, որ և ամենայն ազգայնաւքն
128ա յիշել լիցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ամէն։ Եւ զմեր վարդապետն Դաւիթ ընդ նմա արժանի արասցէ Քրիստոս յիւր արքայութեանն, ամէն, և մեզ մասնակցութիւն։

Արդ, ով կարդայք կամ ընթեռնոյք, կամ ընդաւրինակէք, աղաչեմ երեսս անկեալ յիշեաջիք զնուաստս Գրիգոր, զհայրն իմ զԹառսէղ քահանա, և զմայրն, և զայլ ազգաինսն, և դուք յիշողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և նմա փառք յաւիտեան, ամէն։

բ

329բ Յորժամ գծագրեցաւ մատեանս այս թուականն Հայոց ՋԻԴ (1275) էր, և թագատր Լևոն, և կաթողիկոս տէր Յակոբ, և բնակութիւն տեղի Ղազարու վանք, և տեղոյս առաջնորդ տեր Հայրապետ, և վարդապետ և ուսուցիչ Ներսէս՝ ստացաւղ գրոցս, և անուն գծողիս Բարսէղ**, և դուք լիջիք յիշել ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։

---

* Դրված է խազանիշ կարմիր չուանցազարդի մեջ։

** Բարսեղը գրել է սկսած 234 թերթից։

## 373

## ԳՈՐԾՔ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑԻՈՅ

Երևան 3935

Գրիչ՝ Բարսեղ

ա

120բ *Յայսմ վայրի յիշեցէք զասացող գրոցս զվարդապետն* Ներսէս *և զգծողս զ*Բարսեղ *և զ*Թումայն, *որ զԹուխտս կոկեաց։*

բ

181բ *Զ*Ներսէս *վարդապետն ստացող կտակիս և զ*Բարսեղ *գծողս յիշեսջիք ի Տէր Յիսուս, ո՛վ սրբութեամբ սնեալ մանկունք Սիոնի և ցանկացողք բանից մտաց կտակիս։*

գ

277ա *Այն որ լսէ և ուգտի, յիշելոյ արժանի արարէք, ընդ նմին և զանպիտան գծողս զ*Բարսեղ:

դ

15բ *Ո՛,* Փիլոն, *չես հասել ստուգութեան բանիդ։*

## 374

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 2591

Գրիչ՝ Թորոս

ա

Վայր Դրազարկ

338ա *...Բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի լուսալրական ժամանակի. սկզբանց արարչութեանն մինչև առ մեզ վեցհազար ութն հարիւր քսան և չորս, իսկ ի կենարարի գալստենէն ՌՅԱ, իսկ ի խոսրովային Պարսից սկսեալ մերս թիւ ՉԻԴ (1275)։*

*Եւ գրեցաւ սա յանապատի* Դրազարկ *կոչեցեալ, ձեռամբ յոգնամեղ անիմաստ գրչի* Թորոսի, *ըղձմամբ սրտի իմոյ գրեցի զսա յաղագս փափագանաց ծարաւի ամենայն արդարութեան և յոյժ ի մթութենէ մեղաց խաւարեալ հոգւոյ իմոյ, ի հայրապետութեան տեառն* Յակովբայ *կաթողիկոսի, և ի թագաւորութեանն* Լևոնի, *յիշատակ բարի և մեզ բարեխաւս առ Քրիստոս հանգուցեալ սուրբ առաջնորդի սուրբ անապատիս տեառն* Բարսեղի *արհիեպիսկոպոսի, որ յայսմ ամի [հանգեաւ] ի Քրիստոս։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք այսմ սրբոյ Աւետարանիս, կամ աւրինակեք, կամ աւգտիք լուսաւորելով ինչ ի սմանէ, յիշեսջիք զմեղապարտ և զախմար գրիչ սորա զ*Թորոս, *և հանգուցեալ ծերունի հայրն իմ զպարոն* Կոստընդին, *և զնախնի ծնաւղսն, որ հանգուցեալ են ի Քրիստոս ի սուրբ և յարժանաւոր յաղաւթս ձեր...*

Բ

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

Ո՜հ զմեղաւք դատապարտեալ կազմողս զԱռաքել Հնազանդենց, և զծնաւղսն իմ, և զհարազատսն իմ, և զծնումդս նոցա, և զուսցիչն իմ զՍարգիս քահանայ՝ զհանգուցեալն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր։
Ի թվիս ՉԻԵ (1276) կազմեցաւ։

## 375

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 234 (1297 թ.)*

15բ Իմ հոգոյ որդի /// ժառանկ է Տէառն կարողութեամբ եւ տեսայ զաստուածայշունչ կենսատու Կարմիր սուրբ Աւետարանս, յաւթեցաք ընդ հովան զաւրութեան շնորհի սորա, եւ զովացաք աստուածայձիր ամենայլի բարեաւք սեղանոյս, տեսաք զյիշատակարան սորա, հաստատուն պայազատ հայրապետաւք, կրկնակի եւ եռակի կատարեալ արամբք վկայեալ զվաղուց ստոյգայբանութիւնն ի սուրբ Աւետարանս գրել էին։ Եւ
16ա մեք ստոյգ բանիցս, որ ի թագաւորաց||հաստատեալ կայր՝ հաւատով ընկալաք /// հայրենական /// ով զՍուրբ Աւետարանս /// թվին ՉԻԴ* (1275) /// ի Ժ (10) գրեցաւ։

* Տպագրված է «ՀԻԴ»։

## 376

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 95, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 426

Գրիչ՝ Ռամանոս
Վայր՝ Ընծայեաց վանք

Փառք ձեզ ըստ հաճութեան ձերում, որպէս վայելէ ի տեղոջ[է] ձերմէ աննախանձելի և աննուազելի և անանջրպետեալք ի միմեանց Աստուած կատարեալք և մի բնութիւն համաբնաբար, յաւիտեան յաւիտենից յաւիտեանս, ամէն։

Արդ, մելինագիծ շաղաշար յարմարեցաւ Աւետարանս, խոշորատաղմամբ ձեռակերտեալ փանաք և ունայն վարդապետի Ռամանոսի, ստոյգ մեղաւորի ծերացելոյ, և ի լուսոյ դադարելոյ, և անձամբ դանդաչելոյ, յաղագս աղքատութեան մերում, զի մուրանալ ամաչեմ։ Կամիմ Աստուծով ձեռամբ կերակրիլ ես, և որ ընդ իս իցեն։ Թէպէտ և զամենայն զպատուիրանս Աստուծոյ թողի, կամիմ զի այսու զմարդիկ խալբալեցից՝ զի զբազմութիւն մեղացն ծածկեցից, մանաւանդ զարկղն ագահութեան։

Այլ աւարտեալ սա ի թուիս Հայոց ՉԻԵ (1276), յամսեանն մեհեկի Ը (8), ի տիեզերակալութեանն Ղուպիլա ղանին, և յոստանիութեան Ապաղա ղանին՝ որդոյ եղբա[ւ]ր նորին, եւ ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի որդի Զապէլ թագուհոյ, դստեր Լեւոն թագաւորի, եւ ի կաթողիկոսութեան տեառն Ստեփանոսի, եւ մեր ընդ հովանեաւ լեալ՝ Ընծայեաց Աստուածածնիս՝ ի գաւառիս Վասպուրականիս: Արդ, որք ընթեռնոյք կամ աւրինակէք՝ խոշորութեանս և սղալանացս մի մեղադրէք, այլ յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զվերոյգրեալսդ, մանաւանդ զգեաղստն զՊովրոս Մելիքն, և զստընտու որդի նորա զԹագվորն, նաև զերկու եղբայրն նորա՝ զՅեճանա և զԵլիա, զի պարագայց ամաւք պահեսցէ Աստուած ի յամա(յ)ր ամս։ Նաև որ զմեզ և զծնողսն մեր յիշէ ի բարիսն, ինքն և իւրքն յիշեալ եղիցին ի բարիսն ի Քրիստոս՝ յաւուր ահեղ ատենին, ամէն։

Դարձեալ պատմեցից ձեզ աղէտս աղեխարշեալ, քանզի ի թուիս [Չ]ԻԴ (1275) եկն Մսրա սուլտանն ի Սիս, և աւերեաց բաղում գեաւղս, և սրոյ ճարակ ետ զյոլովս։ Եւ թագաւորն Լեւոն ոչ վստահացեալ զանձն ղաւրաց իւրոց, գիտելով զխարդախութիւն նոցա՝ ոչ էլ ի պատերազմն ընդդէմ անաւրինացն. և նոքա վստահացեալ յանզգամութիւնսն կամե-

ցան յափշտակել զամուրն Սիսոյ՝ զբերդն, և եղ երէց մի ընդդէմ նոցա ի ճակատու, և զմի ի սուլտանեացն սատակեաց, և ինքն անդէն նահատակեցաւ, և այլքն պերճանդամ գնացին յաշխարհն իւրեանց։ Եւ ի նոյն ամի դարձեալ դարձան ի Սիս, և Տէր ոչ յաջողեաց նոցա, այլ փակեաց զնոսա ընդ ձեռամբ Լևոն թագաւորի. և ի սուր մաշեաց զնոսա, և մնացեալքն փախստեա անկան ի խորշս իւրեանց։ Իսկ սպարապետն Հայոց մեծաւ քաջութեամբ կացեալ ի մէջ նոցա, և յորժամ ելեալ ի պատերազմէն, երիվարն հարեալ գնա ընդ ծառոյ միոջ՝ ոչ կարաց տանել ցաւոյն, քանզի ծերացեալ էր, գնաց ի Սիս և սակաւ ինչ ապրեալ՝ բարի խոստովանութեամբ ննջեաց ընդ հարսն իւր ի Քրիստոս Յիսուս. և մի յիշեսցի մեղք նորա առաջի Աստուծոյ, այլ ընդ Աբրահամու և ընդ Սահակայ կարդեսցի յարքայութեանն Աստուծոյ։ Եւ ի սոյն ամի երիցս անգամ Հոռոմոց տաճիկն եկն երկիրն Հայոց, և Աստուած յաջողեաց թագաւորին Լևոնի և զնոսա սրով մաշեաց։

Դարձեալ տրտմալի աղէտս, որ ի յԱստուծոյ եղև վասն մեղաց իմոց, քանզի ի սոյն ամի շարժեաց Աստուած մասն ինչ ի յերկրէ, և անդընդասույզ արար զԽլաթ, զԱրճէշ, և ոչ գիտեմք որչափ մարդոց վախճան եղև։ Եւ բաւանդակ ամ մի շարժի երկիր և զկատ[ար]ածն Աստուած գիտէ, որքան։ Քանզի այր մի էր բարիսէր և երկիւղած յԱրճէշ քաղաք, անուն Խաչիկ, ինքն և որդին իւր Կոստանդին տարաժամ մնացին մահուամբ ընդ շաժեալ վիմացն, որով և յանցանք նոցա ջնջեսցին և նահատակութիւն նոցա ընդ Սուրբ Ստեփանոսի խառնեսցի; Այլ և կին մի բարեհոգի, անուն Տաւճաւթի՝ ընդ Մարթայի և ընդ Մարիամու մասն բարի առցէ ի Քրիստոսէ, և Սանփանոս աշակերտ իմ հանգիտապատուեալ Յուսեփա և Նիկոդիմոսի՝ աշակերտացն Քրիստոսի. և որով յիշմամբ յիշէք՝ է դուք յիշեալ եղերուք առաջի Աստուծոյ։ Նաև զԱբրաճամ երեց և զՏիրացու զեղբայրաւրէնս մեր, Քրիստոսիւ յիշեսցուք առ աւրին և յապա յաւիտեան ի Քրիստոս Յիսուս յԱստուած մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 377

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Մուրատյան, Ցուցակ Մշո Առաքելոց վանքի, էջ 11

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Փոս անապատ

ա

Փառք քեզ միայնոյ սկզբանդ եւ անսկզբանդ... ի ՉԻԴ (1275) թւաբերութեան Հայկազնեան տումարիս, աւարտեցաւ աստուածախաւս մատեանս, որ ունի աւարտեալ յինքեան զկիրս ամենայն մեղանաց խոստովանողականաց զղջացելոց սրտի մտաւք, զի թէ ոք որպէս արժանն է պաղատեսցի սովաւ առ ողորմած անոխակալ Տէրն, հաւատամ ստուգապէս թեթևանալոյ ի ծանրաբեռն կրիցն մեղանացն...։

Յիշեսջիք զնախասացեալ տառապեալս Բարսեղս ի սրբամաքուր աղաւթս ձեր, յորժամ ոռոգանէք քաղցրաբուղխ արտասուանք զանդ մտաց

ձերոց... յահեզ աւուրն սոսկալի, արդար դատաւորին ուր բանք սպառին եւ գործք Թագաւորենի։

Բայց եղեւ գրաւ սորա ի գաւառիս Ցախուտ կոչեցեալ, յաշխարհիս Կիլիկեցւոց, յանապատի որ կոչի Փոս, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Տիրամաւրն, ի հայրապետութեան տեառն Յակոբա, եւ ի թագաւորութեան Լեւոնի, զորս տացէ զսոսա մեզ Տէրն ընդ երկայն ընդ աւուրս։

Բ

Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ ամենայն Սուրբ Հոգւոյն, ամէնւ Ի թւիս հայոց ՉԻԵ (1276) յամսեանն յունուարի ԻԸ (28), աւարտեցաւ գիրս ոտանաւորս ասացեալ սրբազան կաթողիկոսացն տեառն Ներսէսի եւ եղբաւրորդւոյ իւրոյ տեառն Գրիգորիսի, ի գաւառիս Ցախուտ կոչեցեալ, յաշխարհիս Կիլիկեցւոց, յանապատիս որ կոչի Փոս, ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնիս եւ Սրբոյն Գրիգորի եւ Յովհաննու Մկրտչի, եւ սրբոց առաքելոց Պետրոսի եւ Պաւղոսի, եւ այլ բազմահաւաք սուրբ նշանացս եւ աստուածընկալ սուրբ նշխարացս, ձեռամբ անարժան եւ բազմամեղ վանականիս եւ անպիտան քահանայ Բարսեղի գրեցաւ խոշորագիծ եւ ախմար, տառապեալ եւ անարհեստ գրչիս, ի վայելումն անձին իմոյ եւ յիշատակ եղկելի հոգւոյս, եւ ծնողաց, եւ սնուցողաց, եւ ուսուցողաց իմոց։

Արդ, աղաչեմ եւ յերեսս անկեալ պաղատիմ առ ձեզ, ո՛վ մանկունք Նոր Սիոնի, որ հանդիպիք այսմ դրոյս եւ ընթեռնոյք եւ զուարճանայք ի սմա, սրտի մտաւք թողութիւն մեղաց հայցեցէք եղկելի անձինս Բարսեղի, զի յաղագս այդր պատճառի եմ գրել զսա, եւ ոչ վասն մարմնաւոր շահի։ Եւ այժմ դարձեալ մաղթեմ, մի՛ անտես առնէք տալ զփշրանսդ ի սեղանոյ մանկանց առագաստին շան սովեցելոյս, նաեւ պապակելոյս ի տապ տապակի գեհեննոյս, ծագիւ մատին զովացուցէք զլեզու իմ, զի մի լուիցեմ ի դատաւորէն եթէ Այդր պապակիս եւ զայլն։

Եւ որ․սրտի մտաւք եւ յաւժար կամաւք եւ արտաւսահոս աչաւք մեզ թողութիւն հայցէ ի Տեառնէ, թողցին եւ իւր յանցանքն, եւ որ երախտաւորաց մերոց եւ հոգեւոր եղբարց մերոց, նաեւ մարմնաւորաց արժանի արասցէ յիշման ի մեղաց թողութիւն, թողցէ Քրիստոս Աստուած եւ զիւրոցն ամենեցուն զմեղսն, եւ ջնջէ զյանցանս նոցա եւ զայլնոցիկ, որ զամէնն ասեն։ Եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

378

ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

Կյուլեսերյան, Ցուցակ Անկյուրիո, էջ 760—764

Գրիչ՝ Յակովբ
Վայր՝ Սիս

ա

444 Փառք Հաւր միականի, Որդոյ միածնի, և ազատիչ Սուրբ Հոգոյն՝ վաել է փառք, իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս։ [Գրե-

ցաւ] սուրբ պատուիրանքս եւ պատմութեններս ձեռամբ Յակովբայ, ի մայրաքաղաքս Սիս, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի՝ բացող արքայութեանն։

Հրամանաւ և [ծախի՞ւք] աստուածասէր կրաւնաւորին Սարգիս-Թորոսի, զոր երետ գրել պատուական գանձս փափագ սրտիւ, յիշատակ իւր և ի[ւ]ր հանգուցեալ ննջեցելոցն, յիշեսջիք ի Քրիստոս։ Գրեցաւ ի թվին Հայոց ՉԻԵ (1276), ի թագաւորութեան Հայոց Լեւոնի, ի հայրապետութեանն Հայոց Յակովբայ:

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք և լուսաւորիք, և որք յաէք և աւգտիք ի սմանէ, մեղաց թողութիւն հայցեցէք ի Տեառնէ Սարգիս-Թորոսի. և ծնողաց իւրոց, և ինձ՝ նուաստ քահանայ Յակոբ գրչի։ Ընդ նմին և ինձ՝ Կոստանց սարկաւագի, որ աշխատեցաւ ի տէրունական ցանկս, և ծնողին՝ Գրիգոր նուաստ քահանայի, և ինքն աւրհնեալ։

Բ

396 Ո՜վ սրբասնեալ քահանայք և կարգաւորք, մեղաց թողութիւն հայեցէք ի Քրիստոսէ։

Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին՝ Տիրամաւրն և Սրբոյն Ստեփանոսի Նախավըկային, և սրբոց առաքելոցն և հայրապետացն և մարգարէիցն և մարտիրոսացն, ողորմեա Սարգիս-Թորոսի միակ[եց]ին հոգոյն, որ ստացաւ զսա յիշատակ իւր և ի[ւ]ր հանգուցեալ ննջեցելոցն՝ հաւր և մաւր իւր, զի յոյժ փափաքմամբ սրբտիւ ստացաւ զսայ, և ինձ մեղապարտ գրչի Յակովբ նուաստ քահանայ[ի], և յիշողացս և յիշելեացս ողորմեսցի Քրիստոս Աստուած յիւրում միւսանգամ գալըստեանդ, և ինքն աւրհնեալ է յաւիտեանս յաւիտենից, ամէն, եղիցի, եղիցի։

Գ

Գրիչ՝ Կոստանց

228 Քրիստոս Աստուած, բարեխօսութեամբ ամենաւրհնեալ սուրբ մաւր քո և միշտ կուսի, և ամենայն սրոց քոց ողորմեայ Սարգիս-Թորոս միակեցին հոգոյն, որ ստացաւ զսա իւր յիշատակ, և ի[ւ]ր ննջեցելոցն, և կարդացողացդ և լսողացդ, ամէն, ամէն։

Ընդ նմին և զմեղապարտ ոգի գրիչ Կոստանց սարկաւագս, և զհանգուցեալ զհայրն իմ նու[աստ] քահանայ Գրիգոր, եւ որ յիշէ, յիշեալ եղիցի ի Քրիստոս Աստուած, և ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեան, ամէն։

Դ

82 Քրիստոս Աստուած, բարէխօսութեամբ սուրբ նահատակիս, ջնջեա զմեղս Սարգիս միակեցի, և զանպիտան քահանայի Կոստանց՝ գրողի գրոցս, և կարդացողացդ, և լսողացդ, և Քրիստոսի փառք յաւիտեանս։

Ե

198 Քրիստոս Աստուած, և այս սուրբ բանքս որ գրած է յայս տետրերս,

*իրենց բարեխօսութեամբ ողորմեա* **Սարգիս** *որ է* **Թորոս** *միայնակեցին Հոգոյն և որ կարդացողացդ։*

## 379

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1716*

*Գրիչ՝* **Ստեփանոս**
*Վայր՝* **Կիլիկիա**

**ա**

**Յիշատակարան գրոցս**

*Մշտապայծառ, եռաշահեան համաբնութեան և եղական լուսոյն, անսկիզբն և անկատարած գերաբնաբար բարոյն, այն որ ի բնաւից եղելութեանց առ յինքենէ յանմարմին իմանալեաց հոգեղինացն և նիւթական մահկանացու հողեղինաց միշտ և յարաժամ նոր աւրհնութիւն վեր առաքի, փառք և պատիւ եւ գոհութիւն և երկրպագութիւն այժմ և [յաւիտեանս, ամէն]։*

*Արդ, ես* **Ստեփանոս** *սուտանուն քահանա, ըստ մանկական անհաստատ յածման խորհրդոց ըմբռնեցա ի սէր այսմ անպէտ և պիտանի գրոցս, ապա թէ ըստ տեսութեանց իւրոց անաւգուտ թւի, այլ յաստուածայ[ին]սն աւգտակա[ր]։ Այլ աղաչեմ զձեզ սուրբ հարք եւ եղբարք, որք աւգտիք ինչ ի սմանէ կարդալով կամ յաւրինակ[ելով], մի ի դերև համարել զբազում աշխատութիւնս իմ ի սմայ, այլ ըստ ընդաբոյս բարի բարուց ձերոց՝ յիշատակի առնել արժանի զբիւր պարտուց պարտականս տէրունի։*

**բ**

277բ **ԶՍտեփանոս** *որդի յա[ստ]նվորին,*
*Որ կորուսի զհայրենին,*
*Ոչ ոք ի նոյն փառս տային,*
*Հայցեմ ժտել թաղծեալս անծին,*
*/// մաքրել զմեղաց սպին,*
*Դառնալ եդեմ մեզ վերստին,*
*/// ընդ ձեզ երեակ անձին*
*Զփառս յանվախճան յաւիտենին։*
*Թվին ՉԻԵ (1276)։*

**գ**

276ա *Յայսմ աւուր զփախուստ առեալ դողա երկիրս* **Կիլիկեցոց** *յանաւրէն բռնակալէն Իսմաելոց։ Թվին ի ՉԻԵ (1276)։*

**դ**

**Ընթերցող**

158բ *Բնական կարգն արտաքին գրենացս այս է. նախ՝ Քերականն, ապա Սահմանքը և Ամենայն չարտանչելին, ապա Պորփիւրն և զկնի Ստորոգու-*

թիւնքն, և ապա Պերիարմէնիասն, և ապա Աշխարհացն, և զկնի Առաքինութեանցն։ Իսկ ատտ, որ զհետ Պորփիւրիս Աշխարհացս է և Առաքինութեանցս, կամ ի տգիտութենէ է կամ յաւրինակէն, և կամ երկուցն։

## 380

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԲԱՆԻՑ ՆԵՐՍԵՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 579

Գրիչ՝ Յովհաննէս

ա

Շնորհիւ տեառն սկսա և ողորմութեամբ նորին կատարեցի զտառս
72բ աստուածարեալ և սուրբ կաթողիկոսին Հայոց տեառն Ներս[իսի]||յազգս ընդդէմ չարափառ և մարդախողող հերձուածողաց յոմնաց և ասորւոց, որք զարիոսկանն և զնեստորականն ասեն ի մի բնութիւնն Քրիստոսի, և զայլոց ևս անաւրինականացն, և զհաւատս հայհոյեն առասպել բանիւք, զոր ի Սրբոյ Լուսաւորչէն և ի սրբոց հարցն հաստատեալ է, և զուղիղ միտս թիւրեն զոմանց աղքատմտաց։ Իսկ որ ոք ընթերցցի զսա հանապազ և փոյթ յանձին ունիցի, բազում աւգտութիւնս գտցէ ի սմա և շահս, ըստ այնմ որ հանիցէ յոսկիանոսէ քարինս պատուականս և մարգարիտս գեղեցիկս, եւ ով ոք պանձասցի պատասխանի առնել գրելեացս կամ թիւրել, վասն որոյ և ոչ մի։

Գրեցաւ ի թւիս Հայոց ՋԻԵ (1276), ձեռամբ Յովաննիսի անպիտանի և փցուն գրչի։ Արդ, աղաչեմ զձեզ մանկունք եկեղեցւոյ, յիշեսջիք զցանգացող գրոյս զՆորոգէս, և ծնաւղսն իւր ի Քրիստոս, և զՅովանէս, և Աստուած որ կարողն է յամենայն յողորմութեանց և գթութեանց, ձեզ և մեզ առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս։

Ով եղբայրք, սղալանացս մի մեղադրեք։

բ

Զբարեհամբաւեալ ճգնաւոր եղբայր մեր զՆորոգէս կրաւնաւոր քահանայ՝ ըզստացող գրոցս, և զբազմամեղ գրչող նամակիս՝ Յովանէս սուտանուն քահանայ աղաչեմք յիշել ի Տէր։

գ

265 Աստանաւոր յա[ն]կ ելեալ աւարտեցաւ Ողբս Հոգևոր, զոր երգեալ է սուրբ հոգին՝ ի ձեռն տեառն Ներսիսի, և գրեցաւ սայ ձեռամբ մեղապարտի Յովաննիսի անարժանի, ի վայելումն Նորոգէսի քահանայի։ Արդ, երեսս անկեալ արտասագոչ ձայնիւ աղաչեմ զամենեսան, թողութիւն խնդրել բազում և չարաչար մեղաց իմոց, և ծնաւղաց իմոց, և Աստուած, որ առատն է ողորմութեան, ձեզ և մեզ առհասարակ ողորմեսցի։

Սայ կրաւնաւորի միշտ վայելէ,
Որ կարդայ և զմա(յ)լի,
Յառատաքուխ հոգւոյն ձրի,

Երնեկ որ անտ ինքն յիշուի,
Կամ լուր յիւր միտն անկանի,
Ամառ կարդայ Հայրիկ բարի,
Զգծողս յիշեա անլռելի,
Եւ փառք մատոյ իմ Յիսուսի, ամէն։

Դ

289բ Տէր Յիսուս, յորժամ գաս փառաւք Հաւր ի միւս անգամ գալստեանդ, ողորմեայ ստացաւղի սորա Նորոգէս քահանայի և ծնաւղաց իւրոց, ընդ նմին և ինձ գծողիս Յովհաննիսի։ Աղաչանաց գրոցս մի մեղադրէք։

381

ԱԻԵՏԱՐԱՆ

7534 (1275 թ.)

Կազմող՝ Նորոգէս

277ա Զկազմաւղ սորա զՆորոգէս վանական քահանայ և զեղբայրն իմ զՆերսէս քահանա՝ զփոխեցեալն առ Տէր, և ծնաւղսն մեր յիշեցէք ի Տէր։ Ընդ նմին և զստացաւղ սորայ զտէր Դաւիթ սրբազան եպիսկոպոս և ծնաւղսն նորա յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր։
Ի թուին ՉԻԵ (1276) կազմեցաւ սայ։

382

ՔԱՂՈՒԱԾՔ ԺԱՄԱԳՐՈՑ

Ն. Ջուղա 264, Տէր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 471

Գրիչ՝ Վասիլ

ա

183բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Արդ, գրեցաւ եղանակաւեսս տառիկ, ձեռամբ սուտանուն գրչաւորի Վասիլի, յամի ՉԻԵ (1276) ի յանապատս...

բ

Գրիչ՝ Արիստակէս

184բ Ո՛վ սուրբ եղբարք, յորժամ քաղցր եղանակէք, Արիստակէս սուտանուն յիշեցէք, զի տարիս խոշոր է եւ ժամանակս դառն, եւ վաղէց մանր գիր չեաք գրել, թողութիւն արարէք խոշորութեանս։

383

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑ ՊԱՏԱՐԱԳԻ

Սմբատյան, Երնջակ, էջ 140

Գրեալ յամի Տեառն ՌՄՀԶ, (1276), թվին Հայոց ՉԻԷ (1278), ի վանս Կաւֆուայ։

## 384

### ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

*Երևան 208*

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ Ախթամար

**ա**

*Փառք եռակի անճառելոյ, անքակ և անբաժին, եռաՀիւսակ դաւանութեանն, Հաւր և Որդւոյն և Հոգւոյն Սրբոյ, այժմ և Հանապազ յաւիտենից յաւիտեանս, ամէն։*

153ա *Յամի ՉԻԶ (1277) թուականութեանս Հայկազնէն սեռի և յամս աստուածապատիւ տեառն մերոյ* Տղայ Ստեփաննոսի *Հայոց վերադիտողի գրեցաւ ծաղկազարդ և տիեզերալոյս Գործք սրբոց առաքելոցն, ձեռամբ յոգնամեղ ոգւոյ* Սիմէոնի*, ի խնդրոյ* Խաչատուր *քահանայի, ի կղզիս* Ախթամար*, ընդ Հովանեաւ Սուրբ Խաչիս։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան, որք Հանդիպողք||սմա,*
153բ *յիշեսջիք աղաւթիւք ի Տէր զստացող սորա և զծնողսն իւր, և զմեղապարտ գրիչ և զծնողսն իմ, և Քրիստոս Աստուած յիշողացդ ողորմեսցի և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

**բ**

221բ *Փառք անսկիզբն և անժամանակ, աներբ և անուստեք, անորակ և անքանակ, եռակի և եզականի տէրութեանն և միոյ աստուածութեանն երկրպագութիւն և գովասանութիւն յիմանալեացս և զգալեացս և Համանգամայն ի բոլորից սեռական կենդանեացս, սկզբանց և առյապս, անդր քան զյաւիտեանս և յաւիտենից յաւիտեանս, ամէն։*

*Աստանաւր յանգ ելեալ աւարտեցաւ լուսեղծ և շնորՀակիր տառս, որ է սա Հաւաստապէս լրումն և պատճառ աստուածային բանիցն սքանչելի նշանա||ցն և*
222ա *աստուածաՀրաման վարդապետութեանն, զոր ճշմարիտ և Աստուածն բան կատարեաց ի մեզ զամենայնն ստուգապէս, զի ծանիցեն ճշմարիտ զՔրիստոս որդի Աստուծոյ, Հաւասար և փառակից Հաւր և Սուրբ Հոգւոյն։*

*Որոյ փափագեալ սրբասէր և շնորՀազարդ և երիցս երանեալ քաՀանայ Աստուծոյ* Խաչատուր*, գրել ետ և ստացաւ սա յընտիր աւրինակէ, ի վայելումն կենաց իւրոց և զաւակաց յաստիս, և ետ ելից իւրոյ յաստեացս, յիշատակ բարի Հոգւոյ իւրոյ, որոյ Տէր Յիսուս վայելեալ տացէ ընդ երկա՛ն աւուրս։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, ո՛վ դասք լուսերամից, որք հանդիպիք
տեսութեամբ կամ զաղաքար դնելով, և տարազաւ իւիք ինչ աւգտութիւն
223ա աւգտիք ի սմանէ, յիշել սրտի մտ||աւք ի բաղդատական և երկնաբացիկ
աղաւթս ձեր զխաչատուր քահանայ և զծնողսն իւր։ Նաև զապիկար և
զախմար գրիչ զՍիմէոն և ծնողսն իմ աղաչեմ յիշել ի Տէր, և Քրիս-
տոս Աստուած յիշողացդ և յիշելոցդ ողորմեսցի կրկին կենաւք և երկու
աշխարհաւք ի փառս աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։*

*Յամի ՉԻԶ (1277) գրեցաւ։*

## 385

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Տեր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, I, 248—249*

Գրիչ՝ Պաւղոս
Վայր՝ Սիմոնկլայի վանք

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ փառաւորեալ տէրութեանն... Բարւո ամենայն ոք ցանկայ, ոմանք մասանց եւ այլք բոլորին։ Աստուածայնոյն աստուածասէրքն եւ գերագունին բարեբարուքն, զորոց Տէր բանայ զուշս՝ ներքին մարդւոյն՝ գիտել եւ ճանաչել զտիրակործան եւ զապականելի կենցաղոյս վայելս, թէ Ընդգտանելն արագ ունի և զեղծումն. իսկ որոց բաց եւ յստակ են մտաց աչք եւ լուսատեսակ հոգւոյն տեսաբան, գանձեն անձանց իւրեանց անճողոպրելի շահս, որ միշտ եւ անզրաւ ունի զկա ընդ Աստուծոյ եւ ոչ ական հատանի ի վնասակար դողոց, որով փարթամացեալ ճոխութեամբ ընդ Աստուծոյ միացեալ գտանին։ Ուստի եւ շառաւեղն աւրհնութեան եւ սեռն բարենշան քրիստոսասէր եւ բարեպաշտ իշխանաց իշխանն պարոն Հեթում, որդի ի Քրիստոս հանգուցեալ պարոն Լեւոնի Աստուծով տէր Սիմոնկլային, պետական գահոյիւք պատուեալ ըստ բարետոհմ եւ քաջակորով ազգին իւրոյ, արի եւ յաղթող օրով ի վերայ հակառակորդաց եւ թշնամեաց խաչին Քրիստոսի։ Ունելով վահան ամրութեան եւ սաղաւարտ փրկութեան զհաւատ, զյոյս եւ զսէրն որ առ Աստուած, որով զաւրաւոր զաւրութեամբ վերափայլի արփիապէս ի մէջ համագումար բարձակցաց տանս Թորգմայ։ Գոլով հեզ ըստ Դաւթի եւ իմաստուն ըստ Սողոմոնի, որով վերընկալեալ զշնորհս առատաձիրս ի հանուրց շնորհաւզէն, զսէր նորա առ Աստուած եւ զգութս որ առ նորա տար սուրբ եկեղեցիս, այլ եւ ցանկացող բարեաց եւ միշտ փափագող պատուական մարգարտաց, որ ոչ զմարմին շքեղացուցանէ, այլ միշտ յարազուարճ զհոգին փայլեցուցանէ; Յորոյ համբաւ բարեաց դիմեալ սրբասնունդ քահանա Քերովբէ, ունելով նիւթս պատրաստ առ ի ստանալ սուրբ Աւետարանս, եւ մատուցեալ առաջի նորա, խնդրեաց նկարել Աւետարան եւ աւանդել սուրբ միայնարանին, որ յանուն սուրբ Աստուածածնին, զի լիցի եւ նորին մասն յիշատակի եւ ծնաւղաց իւրոց։*

Իսկ ամենաբարի պարոնն, ըստ ընտրութեան հոգոյ իւրոյ ընկալաւ մեծաւ բաղձանաւք եւ խոստացաւ լնուլ զփափագ սրտի նորին։

Եւ ապա հրամայեալ իմոյ անարժանիս ամենամեղ հոգւոյս Պաւղոսի շարադրել ոսկէնկար անկուածովք զհրաման տնաւրէնութեան կենարար բանին Աստուծոյ։ Եւ իմ թէպէտ եւ անարժան գոլով այսմ ձեռնարկութեան, քանզի ի վեր էր քան զկար մեր եւ զարժան, սակայն հարկեալ ի հրամանէ նորին, ըստ կարի իմում գրեալ աւարտեցի մեծաւ դողութեամբ սկսմամբ եւ աւարտմամբ ի սուրբ քառասնորդսն, որ լիացեալ կատարի թիւ Հայկազեան տոմարիս ՉԻԶ (1277), ի հայրապետութեան տեառն Յակոբայ եւ ի թագաւորութեան Քրիստոսապսակեալ արքային Հայոց Լեւոնի որդոյ ի Քրիստոս հանգուցեալոյն Մակարայ (Հեթմոյ), եւ ի վերադիտողութեան այսմ անապատի սուրբ եւ երանաշնորհ քահանաին Յովհաննէսի, ի սուրբ եւ յերկնանման միայնարանս որ յանուն սուրբ Աստուածածնին, որոյ հովանեաւ պարփակիմք։ Ի յիշատակ քրիստոսասէր պարոն Հեթմոյ եւ գեղապաճոյճ լուսանկար եւ ծաղկեաց արժանի գտանել, որով եւ դուք ընկալջիք մասն ողորմութեան ի Քրիստոսի Յիսուսի ի Տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Եւս առաւել աղաչեմ կրկին անգամ Յիշեսջիք զբարեպաշտ իշխանն զպարոն Հեթում եւ զհարազատ նորին զսիր Լեւոն, խաղաղական կենաւք անցուսցէ ընդ վրդովումն կենցաղոյս մինչեւ ի խորին ծերութիւն, եւ յետ ատեացս եւանելո անանց պարգեւին արժանի արասցէ; եւ ինքն աւրհնեալ եղիցի, ամէն, ամէն*։

Բ

Զստացող Սուրբ Աւետարանիս զքրիստոսասէր եւ զբարեպաշտ իշխանն զպարոն Հեթում՝ հանդերձ ծնաւղաւք իւրովք եւ ծնընդովք, ընկա՛լ Քրիստոս Աստուած ընդ Մովսէսի եւ ընդ Յեսուայ եւ ընդ ընտրելոցն զհոգիս նոցին անտրտում խնդութեամբ ի յարկսդ յաւիտենականսդ, եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։ Եւ զքրիստոսասէր պարոն զԹորոս յիշեա Քրիստոս Աստուած աստ եւ ի հանդերձեալն։

Գ

Ստացաւղի սուրբ եւ կենսաբեր Աւետաբանիս քրիստոսասէր եւ բարեպաշտ իշխանին պարոն Հեթմոյ, տեառն Սիմոնկլային եւ ծնողաց իւրոց, ողորմեա Քրիստոս Աստուած ի քում սոսկալի եւ յահաւոր գալըստեանն, ամէն։ Այլ եւ աշխատողին ի սմա Պաւղոսի:

* Սրան հաջորդում է հետագա ստացողի ստորև բերվող հիշատակագրությունը. «Փառք ամենասուրբ Երրորդութեանն։ Արդ ցանկացող եղեւ սուրբ Աւետարանիս պարոն Աղաւեխ եւ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց։ Յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զպարոն Աղաւեխ եւ զամենայն արեան մերձաւորսն իւրս»։

## 386

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10687*

*Գրիչ՝* Յուսէփ
*Վայր՝* Կեսարիա

233բ *Գրեցաւ սուրբ տէրունեան բանիցն չտեմարանս, ձեռամբ անարժան և սուտանուն քահանայի* Յուսեփա, *ի վաելումն մանկանց առագաստի։ Որք ընթեռնոյք զսա կամ աւրինակէք, թողութիւն հայցեցէք յԱստուծոյ մեղաց մերոց, և ծնողաց մերոց, արեամբ նահատակելո հաւր իմո* Նաճապետի, *և եղբաւր իմոյ* Յակոբի՝ *փոխեցելոյն առ Քրիստոս, և երկուց*
234ա *հայրաղատացն իմոց՝* Գրէրի *և* Սեթի, *և մա||ւր մերո առաքինո, և որ առատն է յամենայնի առհասարակ <ամէն> ամէնեցուն ողորմեսցի՝ յիշելեացն և յիշողացն, և նմա փառք ընդ Հաւր և Հոգոյն Սրբո, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտեանն, ամէն։*

*Արդ, գրեցաւ սա ի մայրաքաղաքիս* Կեսարիո. *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ի դառն ժամանակի, յորում եկն երկրորդն փարաւոն խորոխտալով ի քաղաքս* Կեսարիա, *և ահիւ մեծաւ ըմբռնեցան քրիստոն[ե]այք ամենայն, և նկուն դարձեալ գնաց յաշխարհ իւր, և ի ճանապարհին սատակեցաւ ի թուաբերութեանս Հաոց ՉԻԶ (1277)-ն։*

*Աղաչեմ անմեղադիր լինել սխալանացն և խոշորութեանս, զի աւրըստաւրէ փախչեալք վասն հալածանաց անաւրինաց ի ծերպս վիմաց մտանէաք, յաղաՏս ծովացեալ մեղաց իմոց։ Եւ մեծ նշան երկինս եղեալ, զի խաւարեցաւ լուսին, որ ոչ էր այնպիսի խաւարեալ և երեք ժամ խաւար եկաց՝ ամենևին մութն**։

## 387

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա Տեր-Ավետիսյան. Ցուցակ, էջ 48*

*Գրիչ՝* Հիպայի ճոգեորդի

ա

334բ *Թուականութեանս Հայոց ՉԻԶ (1277) կատարեցաւ սուրբ Աւետարանս ի յունուարի ամսոյ ԻԶ (26), ի թագաւորութեանն Հայոց* Լեւոնի *որդի* Հեթում *թագաւորի, որ եւ Աստուած զաւրացուցանէ զթագաւորն մեր* Լեոն *և զաստուածատուր որդի իւր* Հեթում:

բ

256բ *Զաստուածասէր և զբարեպաշտ և զամէնաւրհնեալն ի կանայս* բզ-Հիպայն *և զաստուածատուր որդի իւր* Գրիգոր *եւ զեղբայր իւր* Սարգիս,

---

* *Գրիչը «էշ» է գործածում թե՛ «էշ»-ի և թե՛ «եշ»-ի փոխարեն։ Գրչի նահատակության մասին իր հորեղբորորդի Կոստանդնի շարադրած հիշատակարանը, որ անմիջապես հաջորդում է սրան, տե՛ս 1282 թվականում։*

որ ստացաւ զսուրբ Աւետարանս յարդար վաստակոց ի յիշատակ անուան իւրոյ, և ի հանգուցեալ ծառային Աստուծոյ Գրիգորի, որոյ Տէր Աստուած իւր սուրբ ծնաւզին բարեխաւսութեամբ թողցէ զմեղս նորա՝ զկամայն եւ զակամայն։ Ընդ նմին և զՀիպային՝ զԱւետարանի գրողին հոգևոր մայր, որ ստացաւ զսա ի վայելումն Միխայիլի քահանայի։

Գ

103ա Աւրհնեալ Տէր Աստուած իմ, որ ետուր ժուժկալութիւն անարժան ծառայիս Աստուծոյ կատարել զաստուածախաւս գլուխս սուրբ Աւետարանիս Մատթէի։

Զստացաւղ սուրբ Աւետարանիս զՀիպայն և որդի իւր Գրիգոր, և զեղբայր իւր Սարգիս աղաչեմ յիշել ի Տէր, և որ յիշէք, յիշեալ լիջիք ի Տէր մեր։

388

ԺԱՄԱԳԻՐՔ

Երևան 4515, Փիրղալեմյան, Նշխարք, Ա, էջ 42

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Սիս

Փառք ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Զստացող գրոյս զպատուական կրօնաւորն Պետրոս, և ծնողն իւր, և զուսուցողսն իւր՝ զսրբազան կրօնաւորին զծերունին Կարապետ և զԿոստանդին յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր, ո՞վ դասք լուսերամից, և մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ։ Նաև զթարմատար և զբիւր մեղաց պարտական գծողիկս Յակոբ, և զուսուցողսն մեր զԳորգ աբեղայն և զԳրիգոր փիլիսոփայ յիշելոյ արժանի արարէք, և մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ։ Եւ որ յիշեքդ լի սրտիւ, նաև զձեզ Տէր յիշեսցէ իւր միւս անգամ գալուստն, և ի փառս, ամէն։

Արդ, եղև գրաւ սորա ի մայրաքաղաքս ի Սիս, ընդ հովանեաւ Սբբոյն Յակոբայ. ի լաւ օրինակէ, զի և շնորհողին ողորմեսցի ի Քրիստոս։

Գրեցաւ ի թուին ՉԻԶ (1277)։

389

ԱՌ ՈՐՍ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

Երևան 6213, Փիրղալեմյան, էջ 69—70

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Ծառատակոյ անապատ

Գրեցաւ հոգիախոս մատեանս այս Առ որս, ասացեալ ի Գրիգորէ Աստուածաբանէ, ի թուականութեանս Հայոց ՉԻԶ (1277), ձեռամբ ամենամեղ Բարսղի, ի վարժումն և ի օգտութիւն աստուածասիրաց և ուսումնասիրաց անձանց...

*Այլև գրեցաւ սա ի յաստուածաբնակ սուրբ ուխտս և ի գեղեցիկ իմն անապատս* Մառատակոյ:

## 390

### ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑԻՈՅ

*Վիեննա 273, Տաշյան, Ցուցակ, էջ 694*

*Գրիչ՝* Եփրեմ

ա

*Յամենայնի զաւրացուցիչն իմո Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։ Գրեցաւ ի թվին ՉԻԶ (1277)։ Ո՜վ սրբասնեալ քահանայք եւ սրբասնեալ ժողովուրդք, որք կարդացողքդ էք եւ լսողքդ, անմեղադիր լերուք, թէ սղալ գտանէք, զի իմ կարս այդչափ էր, եւ զոք աւգնական չունէի այսմ նիւթիս, զի էի խիստ տրտում եւ մարմն մեր /// իկ էի, հոգւով աղքատ, եւ էի մարմնով։ Ով աւրհնէ զիս՝ աւրհնեալ լիցի, եւ որ զմեզ այլ բանն ասէ՝ զայն ժառ[անդեսցէ]։*

բ

*Ո՜վ պատուական եղբայրք, որք ընթեռնուք զվարդապետութիւն սըրբոյն* Կիւրղի *հայրապետի, ասացէք լի բերանով. Տէր Աստուած ողորմեա* Աւագէր *աղախնո, որ կիսաւրեա փոխեցաւ ի Քրիստոս, զի վասն նորա յիշատակի գրեցի, եւ* Եփրեմի՝ *մեղաւոր եւ ախմար գրչի, եւ ծնողաց իմոց։*





# 391

## ՏԱԻՆԱԿԱՆ

*Երևան 995*

*Գրիչ'* Սիմէոն
*Վայր'* Արարատյան
գավառի Մողնո Սուրբ Գէորգ

ա

561բ *Փառք, փառք ամենակալ մեծանուն Տէր, անհաս բարձրութիւն, ան-*
*չափ խորութիւն, անոլորտ լայնութիւն, անքննելի, անպատմելի, անիմա-*
*նալի, անհասանելի, միայն սուրբ, միայն ողորմած, միայն բարերար,*
*միայն գըթած, միայն մարդասեր, միայն իշխան, միայն թագաւոր,*
*միայն հզաւր, միայն առատ, միայն բաշխող բարեաց, միայն տուող*
*ողորմութեան, միայն բժիշկ հիվանդաց, աուհնութիւն և գովութիւն և*
*փառք քեզ, ի* Սիմեոնե* *ետին գրչե, որ արժանի արարեր զիս հասանել*
*ի գիծ վերջին մելակիս և տառիս, ամեն։*

562ա *Արդ, ի յայս հասեալ ժամանակիս, յորում զաւրացեալ լիներ ազգն*
*Նետողաց եւ տիրել ամենայն աշխարհիս, և մեք յահե սոցա սարսու-*
*ցեալ, որպես փրկիչն ասէ. Թե ի բազմանալ անաւրինութեան ցամաքես-*
*ցի սեր բազմաց, եւ Դաւիթ ասե. Մաշեցաւ երկիր և ամենայն բնակիչք*
*նորայ, եւ Պաւղոս ասե, թե Անցեալ վայելչութիւն աշխարհիս։ Յայս*
*հասեալ եւ ի ծերացեալ ժամանակիս կատարեցաւ աստուածահրաշ մա-*
*տեանս, յամի յորում լցեալ լինեին թիւն ամաց ելանելոյ նախահաւրն*
*մերոյ ի դրախտեն ըստ եւթանեսնիցն թարգմանութեան ամք ՑՅՀԱ*
562բ *(6371), եւ ըստ այլում համարոյ ՑՇՂԶ (6596), իսկ ի կուսական հայտ-*
*նութենե Աստուածն բանի ՌՄՀԷ (1277) ամք, և աստուծայծանաւթու-*
*թենե եւ ի լուսաւորչեն մեր ի ձեռն* Սրբոյն Գրիգորի *ՋՀ (970), յորում*
*էր թուական մերոյ տաւմարիս ՋԻԷ (1278)։*

*Քահան ոմն* Սարկոս *անուն, զարդարեալ առաքինութեամբ, զմտաւ*
*ածելով զբան մարգարեին, որ ասէ, Պատուիրանք Տեառն լոյս են, եւ*
*լոյս տան աչաց իմոց, եւ միւս մարգարէն ասէ. Երանի որ ունիցի զաւակ*
*ի Սիոն եւ ընդանի ի Վերինն Երուսաղեմ, սոյն աւրինակաւ եւ սայ ստա-*
*ցաւ զտառս աստուածային իւր հալալ արդեանց, յիշատակ իւր եւ ծնո-*
562ա *ղած իւր* Յովանես Մարագ *երիցոյ||եւ* Աւագանիկնայ, *եւ* Պապին, *եւ* Ելթե*։*

---

* *Շատ հաճախ «է»-ի փոխարեն «ե» է գործածում։*

Ջի. թեպետ եւ փոքր տեսանի առ աչս մարդկան, սակայն բազում ճառս պատմե սայ։

Եւ արդ, իմ անսեալ զփոյթ յաւժարութեան Մարկոս, քահանայի, նուաստս եւ անպիտանս քահանայ եւ ոչ ըստ արժանոյն Սիմեոն անուն, սկսա դրել զսայ յուսով աներկույթ զաւրութեան Աստուծոյ. ոչ վասն վարձոյն, այլ ակն ունելով ի վերնատուողէն բարեացն և վարձուցն։ Եւ եհաս ողորմութիւն նորա ի վերուստ յաւգնականութեան ինձ, և կատարեցաւ ի լայնատարած դաշտիս յԱյրայրատեան գաւառի ընդ [հովանեաւ] Սուրբ Գ[եորդ]այ զաւրավարիս և տղայ Մարտիրոսիս,‖ի հայ-
562բ րապետութեան տեառն Յակոբայ Հայոց վերադիտողի, որ եհաս ի կատար ամենայն աստուածահայճոյ վարուցւ Եւ եպիսկոպոսութեան տեր Գրիգորոյ և տէր Համազասպայ՝ սուրբքն ի մեջ սրբոց, շահք պայծառք ի դրան կաթողիկէ եկեղեցոյ։

Արդ, աղերսիւ հայցմամ[բ] աղաչեմ զամենեսեն, որք հանդիպիք [հ]ոգեշահ կտակիս վերծանելով զյիշատակս սրբոցն, եւ որք աւգտիք ի սորա լրութենե, մանաւանդ որք գաղափար առնոյք, զստացող գրոցս զՄարկոս քահանա [յիշեսջիք], որ ետ գրել զսայ ի հալալ արդեանց յիշատակ իւր;

Ինձ մեղաւորիս և անարժանիս Սիմեոնիս առ որս և զանարժանագրիչս Սիմեոն եւ զհայրն իմ զԵփրեմիանոս ///

Բ

424ա Յաւրինակին այսչափ կայր, եւ մեք բազում խնդիր արարաք և ոչ գտաք, աղաչեմ զձեզ թողութիւն առնել։ Եւ յորժամ ընթեռնոյք զպատմութիւն սուրբ հայրապետին Յակոբայ, ասացէք. Քրիստոս Աստուած, աղաւթիւք սուրբ հայրապետիս Յակովբայ ողորմեայ ստացողաց գրոցս Մարկոս քահանայի, և ծնողաց իւրոց Յովանես Մարազ իրիցոյ, եւ եղբաւրն Պապին, և Աւագաիկնայ, և Ելթե, եւ ինձ մեղաւոր գրիչս Սիմեոնիս, եւ Քրիստոս Աստուած յիշելոցդ ողորմե[ս]ցի, ամեն։

Գ

147բ Փառք անպատում և անորակ եակին, և անճառ և անմահ վեհի, անհաս և անքանակ փրկողի, անձև եւ անսահման հաստչի, Հաւր անպատճառի և գոյացուցչի զբնաւս, և Որդոյ անճառ ծնելութեամբ փառակցաբար գործակցի ի կազմուածս գոյից, այլ և Հոգոյն Սրբոյ ելողի, անթերի և լրայպատիւ ընդ Հաւր և ընդ յՈրդոյ յանճառ փառսն, և յանպայման բարձրութիւնս, այժմ և անզրաւ յաւիտեանս։

Դ

218ա Քրիստոս Աստուած, քո սուրբ առաքելոյս Յակոբայ բարեխաւսութեամբ ողորմեայ ստացողաց գրոցս Մարկոս քահանաի, եւ Յովանես

իրիցոյ, Պապին, Եղբե, եւ Ավաքտիկնայ, և ինձ մեղաւոր գրչիս Սիմեոնի ամեն"։

Ե

277ա Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ քո սուրբ և ընտրեալ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի և Յոհաննու, ողորմեա ստացողի գրոցս Մարկոսի և Յովանեսի իրիցու, և ինձ մեղաւորիս Մողնոյ իրիցոյս։

Զ

320ա Մեծդ ի մարտիրոսաց, դասս նահատակ Քրիստոսի Գէորգիէ, բարեխաւսեայ վասն ստացողաց գրոցս Մարկոս քահանայի, եւ Յովանէս Մարագ իրիցոյ, եւ Պապին, եւ Եղբե, եւ Աւսաքաիկնայ: Ընդ նոսին եւ ինձ ողորմեսցի՝ մեղաւոր գրչիս Սիմեոնիս, եւ Քրիստոս յիշողացդ ողորմեսցի բարեխաւսութեամբ Սուրբ Գէորգայ, ամէն եւ հազար ամէն։

Է

361 Քրիստոս Աստուած, քո սուրբ թաղմանտ և յարութեանդ բարեխաւսութեամբ ողորմեա Մարկոս քահանայի և Յովանեսի, որ կոչի Մարագ երեց, և Եղբե, և Աւագաիկնա, ընդ սոցայ և ինձ մեղաւոր գրչիս Սիմեոնի: Ողորմածն առատ է մեզ և ձեզ ողորմեսցի։

Ալ կարդացող, ասայ բարձր ձայնիւ, յորժամ կարդայս, և Քրիստոս քեզ այլ ողորմի և մեզ**։

Ը

50բ Աւաղ տղայոցս բարբաջմանս և իմոյ մտացս սխալելոյս։

Թ

99ա Տէր Աստուած աւգնե եղբաւր մերոյ որ ասի Թիրֆիշ Հաբեղայ, որ աւգնեց մեզ ի գիրս ղտյս չափս ըստ կարիւ իւր***։

Ժ

133ա Երանի Ե գրկացն, որ դիեցին, եւ եղուկ Ե ձեռինն, որ տանի առ մայրն։

ԺԱ

243բ
Աւաղ կայծուկ փշիս,
Որ եկաւ ի մատն գրագրիս,
Յաւուր շաբաթիս,
Ի տաւնի Վարդավառիս։

---

* Այս կարգի մանր հիշատակագրություններ կան 13բ, 44բ, 62ա, 95բ, 119ա, 190ա, 253ա, 295բ, 328բ, 351ա, 391ա, 456ա, 469ա, 480ա, 492ա, 504բ. 530բ, 555բ էջերում։

** Այս և մյուս հիշատակարաններում գրիչը չի պահպանել ե-է, ք-գ, գ-տ տառերի գրության միօրինակությունը։

*** Թիրքիշ աբեղան միայն մի էջ է գրել կիլիկյան բոլորգրով, որը խիստ տարբերվում է Սիմեոնի բոլորգրից։

ժբ

.308բ Աւաղ Գ անձիս կորուսելոց, զոր արարաք բազում խնդիր և ոչ ուրեք գտաք, և յաւրինակին այս չափ կայր, թողութիւն արարէք աղաչեմ*։

ժգ

399ա Քումս նեղեաց, և թող այն մարդն մեղադրէ, որ քում չունի։

ժդ

.461ա Որդակն իմ Գէորգ առաք ի գրկակս մեր, և ձգեց զձեռն իւր տղայաբար։ Տէր արա զինքն ընդ երկայն աւուրս, ամէն։
Գէորգ վկային է տղայս։

ժե

.501բ Տէր յիշեա զկենակիցն իմ, որ երեր փոխինդ է (7) ցեղ և վերարկուքն մինն գործ անարիմի։

ժզ

.517բ Դադարեաց գրկոյկս ի գրելոյ ի Սուրբ Ջաւրաւարիս առաջի, ի Սուրբ խաչիս բարեկենդանիս։ Եւ յայսմ աւուր Մարկոս մեզ ձուկն էբեր ժռով և բաժակ՝ Հայրերիմ և մանկտւաքին Հանդերձ։
Տէր տուր նմայ զքո անմահ բաժակդ, ամէն։

ժէ

.540բ [/// մ]եզ սեխ և բաժակ անուշ ի պարտիզի իւր յայգոջն։ Քրիստոս Աստուած պարգևեա նմայ և իւրոցն զքո արքայութեանտ, ամէն, և յայսմ աւուր բարեկենդան էր Սուրբ խաչին։

ժը

.548 Տէր յիշեայ զՏերտէր երկրցին մեր, որ ած եբեր փոխանակ ճաշի, և վերարկուն՝ ընկոյզ՝ փոխան եղի։ Բայց ի ձեռին նորա այն կայր։

ժթ

Նկարող

.218բ Յի[շ]եա զ[մ]եզո[ւ]ցեալ[ս]ս ով [ը]նթե[ր]ցաս[է]ր**։

ի

Յետինս և անարժանս և զարժանիս յիշման, նկարող ծաղկիս և յաւրինողս աղաչեմ յիշել, ո՞վ սուրբ վերծանողք։

---

* Գրված է Գէորգ զորավարի վարքի առթիվ։
** Տաղկողը տառերը, հաջորդաբար գրել է սև, կարմիր, կանաչ, իսկ չորրորդը (փակագծերինը) բաց է թողել։ Բաց թողած տառերից ստացվում է «շմ(ո)վ ըրէ»։ Բառախա՞ղ է։

## 392

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1328

Գրիչ՝ Մկրտիչ
Վայր՝ Կարփի

ա

176ա Եւ արդ, գրեցաւ գիրքս հրամանաւ և արդեամբ սուրբ և ընտրեալ
երջանկի, հեզի և սիրեցելոյ Աստուծոյ Տիրատրոյ, վերակացուի, իշխողի
և իշխեցելոյ վանաց, որ և Սաղմոսի կոչի։ Վասն զի սուրբ սիրոյն որ
առ Աստուած, փափագեալ սմա ըղձալի սրտիւ և գորովալի գթով, ետ
գրել իմում անարհեստ և անարժան գրչի, քահանայ և ոչ ըստ արժանոյն
Մկրտիչ կոչեցեալ, ի թվականութեանս Հայոց ՉԻԷ (1278), ի գեղաքա-
ղաքիս Կարփի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, և սուրբ վկայա-
րանիս Կիւրակոսի և Յուղիտեա։

176բ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք ի սորա լուսալրութե-
նէս կամ աւրինակէք, յիշեսջիք զստացող սորա զՏիրատուր և զհոգևոր
հայրն իմ զԳրիգոր փակակալ, նաև զվարդապետքն իմ զՓիլիպպոս և
զԽաչատուր, ընդ նմին և զծնողսն իմ ըստ մարմնոյ զԹադէոս և զՏիրու-
մայրն, և զորդիացեալն իմ տղայ գոլով Սիոն կոչեցեալ, յիշեսջիք ի սուրբ
և ի մաքրափայլ յաղաւթս ձեր, լի բերանով ողորմութիւն հայցելով յամե-
նառատ և յամենապարգև արարչէն Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։ Արդ, ես
յետինս և անարժանս, թափուրս ի գործոց բարեաց, գծող գրոցս, յերեսս
անկեալ աղաչեմ զընթերցողսդ և զլսողսդ, յիշատակի արժանի առնել զիս,
և զկողածինն իմ, ողորմալի և գորովալի գթով ասելով, Քրիստոս Աս-
տուած՝ որդի Աստուծոյ, յիշեա զաշխատողք սորա ի քո մեծի երևման և
177ա վարձատր||եա նոցա ի վարձուց սուրբ մշակացն քոց, համաւրեն ստացո-
ղաց և գծողաց, կենդանեաց և ննջեցելոց, ամէն, և դուք յիշեցողքդ և մեք
յիշեալքս յիշեալ լիցուք ի Քրիստոսէ յանմահ կեանսն, ամէն, ամէն։

Զառատաբաշխ աղբիւրն և զամենայն առաքինութեամբ զարդարեալն,
զվարդապետն Մխիթար յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որ եղև
յաւժարութիւն աստուածախաւսութեան գրոցս։

Քրիստոս աստուած յիշեա զծնողսն մեր զՅովանէս և զԵղբայրիկ
քո աներեակ ծագմանն, և հան մասն և բաժին նոցա ընդ սուրբսն քո,
ամէն։

Ո՜վ ընթերցող մի զանց առնէր ի գրելոցս, զի և դու յիշատակիս ի
գիրն կենաց, ամէն։

բ

7ա Յայսմ վայր(ի) յիշեա զհնացեալս մեղաւք։

գ

31բ Աւաղ մտացս և սխալման գրոյս։ Ցրուեցաւ միտս։

Դ

49բ Ի բազմութիւն խաւսից սխալեցաւ միտս, ‖ և կրկնեցի զգրելսն, աւա՜ղ մթացեալ մտացս։

Ե

77բ Թաժակ ուստի ըմպենք, վասն զի‖զխաղողն ալափեցին։ Եղո՜ւկ զկեբողսն։

Զ

102ա Աստանաւր յիշեսջիք զստացող գրոցս զսրբասնեալն զՏիրատուր, զի սիրով և փափագմամբ ետ գրել զսայ։ Նա և զհոգևոր և զարդիւնաւոր վարդապետն զՄխիթար, զյառաջաբան դրոցս, ընդ նմին և զմեղուցեալ անձն իմ։

Է

338բ Արդ, գրեցաւ պատմութիւնս Տարանոյ հրամանաւ և արդեամբ երջանիկ և պատուական իշխողի և վերադիտողի վանից Սաղմոսի, ձեռամբ անարժան քահանայի, ի վայելումն և յիշատակ յաւիտեան, ստացողի գրոցս
339ա Տիրատրոյ, և յիւրայնոցն ամեն‖այն։ Զի որք կարդայք և գաղափարիք, յիշեցէք առաջի Աստուծոյ անմահին և երկնաւորին, Տէր Յիսուս ողորմեսցի Տիրատուր կրաւնաւորի, և տուր նմայ և իւր ամենայն ազգայնոցն ի քո լուսեղէն յարկացն և յանթառամ պսակացն ընդ սրբոց կրաւնաւորացն և միանձանցն, զի որք հաւատով խնդրեն, լսող է Աստուած, վասն զի խոստացաւ հաւատացելոց իւրոց և ասաց. Խնդրեցէք և տացի ձեզ...

Արդ, ես յետինս և անարժան, փցուն և աղմար գրիչս, յոտս անկեալ ձեր ամենեցուն, ո՜վ սուրբ և երջանիկ դասք պաշտաւնէիցդ, և ինձ՝ խնդրել յԱստուծոյ զերծանիլ յաններելի տան[չ]անցան։

Ը

308ա Աստանաւր յիշեսջիք զերջանիկ և զհոգևոր ստացող գրոցս զՏիրատուր, ո՜վ վերծանաւղք, ասելով՝ Յիշեա Քրիստոս Աստուած ի քո աներեկ ծագմանդ և հան նմա մասն և բաժին ընդ սուրբ կրաւնաւորացն, որք նահատակեցան, ամէն, ընդ նմին և ինձ գծողի գրոցս։

Թ

492բ Յայսմ աւուր, որ աւր Իէ (25) էր սահմի ամսոյ, խիստ մեծամեծ ձիւն եբեկ, որ կարծեմ թե այլ մարդ չէր այսպիսի տեսել, և այլ շուտ վերացոյց Աստուած։ Վասն մեղաց էր այս։

Ժ

224ա Մի մեղադրէք, շատահաչ մարդ կէր մաւտ յիս*։

* Տողը կոկին է արտագրել, այդ կապակցությամբ է գրել հիշատակագրությունը։

ժա

264ա Կծիկս զինչ շում, ով Արձան պիղծ*։

302ա Եղուկ մահու պատիւ է Միհրանայ, արժան է պատվոյն։

303ա Անոշ քնէ Միհրան, քո քունգ նմա, որ չար խորհի քրիստոննից, ամէն։

304ա Ազեկ պատիւ է չինել Վահան Միհրանա և իւր զաւրացն, նմա այսպիսի պահիւ, որ հերձուածող է։

## 393

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 751

Գրիչ՝ Յոհան
Վայր՝ Բաբյբերդ դղեակ

185ա Փառք... եռակի եզակի և եռափափաք փառաւորեալ Սուրբ Երրորդութեանն, [որ] զաւրացոյց զիս զանարժանս, հասանել ի վերջին գիծս յամի եւթնհարիւրերորդի քսան[ե]ւթներորդի (1278) տարբերութեան Թ[վ]ականիս Հա[յ]ոց գրեցաւ Երգարանս [մանր]ուսման, [ձ]եռամբ Յոհանա անար[ժա]ն [վա]նաց իրիցու, ի գաւառիս Խաղտեաց, ի դղ[եա]կըս որ կոչի Բա[յ]բերդ, ընդ հ[ո]վանեաւ Սուրբ Աստուածածնիս, ի Թաղս որ կոչի Ջկրաշէն, ի նեղ և ի դառն ժամանակիս, յորում ոչ կարեմ ընդ Թւով արկանել զնեղութիւն և զ[տար]աբեկութիւն ազգիս Հաոց ի չարասէր ազգէն Իսմ[ա]էլի [ղի] բազում վանորայք[ս] [ա]ւէրեց[ին]///ցուցին ///չաց զարև ի մտես...

Բ

110բ Քրիստոս Աստուած քո սուրբ և մեղսաքաւիչ մարմնոյ [և] արեանդ բարէխաւսութեամբ ողորմեա մեղաւք մեռեալ գծողիս Յոհան անարժան կրաւնաւորի։ Ընդ նմին և ստացողի այսմ տառի։

## 394

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5563

Գրիչ՝ Պաւղոս
Վայր՝ Յոհնանց անապատ

315բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն և մի աստուածութեանն Հաւր և Որդւոյ և ամենասուրբ Հոգւոյն, այժմ և միշտ յաւիտեանս յաւիտենից,

* Ջննոր Դլակին վերագրված «Պատմութիւն Տարօնոյ» անվավեր գրվածքի մեջ հիշատակված Արձան քրմապետի։ Միհրանի և Վահանի մասին են գրչի գրած այս և հաջորդ լուսանցագրությունները։

ամէն։ Զշնորհս բարերար ողորմութեանն Աստուծոյ, որ առ իւր արա-
րածս, անհաս իմանամք ի բանականացս սեռից, մանաւանդ զանցելոյ
հրաշիցն ներգործութիւնս որ առ հարսն մեր կատարեցաւ։ Եւ զներկայիս
հիանշմար զեղումն նախախնամող գթութեանց Հոգւոյն Սրբոյ առ ի քա-
ջասնութիւն միանգամայն արարածականս սեռից, մանաւանդ զոր առ
իմանալի հոգիս արգասաւորաբար համանգամայն ցանկալ տայր բար-
316ա ւոյ, ոմանց ըստ ընդ‖ու[նո]ղութեանն մասանց և այլոց՝ բոլորին աս-
տուածայնոյն՝ աստուածասիրացն և գերագունին՝ բարեբարոյիցն, զորոց
գթութեամբ Տէր բանայ զաչս ներքին մարդոյն գիտել և ճանաչել զդիւ-
րակործան և զապականելի կենցաղոյս վայելս, թէ ընդ գտանելն արագ
ունի և զեղծումն։
Իսկ որոյ բաց է յստակ ունիցեն զմտացն աչս և լուսատեսակ զհոգ-
ւոյն տեսարանս, գանձ են անձանց իւրեանց անճողոպրելի շահս, որ
միշտ և անզրաւ ունի զկա ընդ Աստուծոյ և ոչ ական հատանի ի վնասա-
կար գողոց։
Ուստի և աստուածահաճոյիցն ցանկացաւղն և ամենայն բարէկար-
գութեամբ զարդարեալ միայնաւորն Ստեփանոս հմտաբար վարժիւք և
316բ ընտրողական‖հոգւով քաջապինդ փոյով յամենայն տեսակս բարէկար-
գութեան, մանավանդ առ ընդանիս հաւատոյ, և ի գութ, և ի սէր սուրբ
եկեղեցւոյ, յորս արգասաւորաբար ըստ չափոյ գոյից անճշդելի մատա-
կարարէր, որ և այժմ երանաւէտ է կենսաշնորհ տառի մեծապէս բաղձա-
նաւք ցանկացեալ ընձեռել և նուիրել ի տունս Տեառն ի տրապիզի///ս*
գահաւորակի լուսընկալ լուսարանի մաւր մերո Սիովնի։
Իսկ իմ ամենամեղ հոգոյ և անիմաստ գրչաւորի Պաւղոսի, դեգերե-
լով ի դրունս դժոխաքակ և մեծապէս ապաստանիս փախուցելոց երեսաց
բանսարկուին, ձայն ի բանին և գաւետիս հնչաւղին, ի յունկն համայն
317ա մարդկայինս սեռի Սրբոյ‖Կարապետին, ակն ունելով սովաւ և ի ձեռն
սորա ողորմութիւն գտանել, և տեսլեան անմահ բանին արժանի գտա-
նիլ։ Իսկ նախասացեալ կրաւնաւորն և ամենաբարեացապարտն Ստե-
փաննոս, ըստ յառաջադիմութեանն իւրոյ ի բարիսն, կամեցաւ ստանալ
իւր գանձ անկողոպտելի, լնուլ բաղձանաւք այնմ որ ասացն, թէ Երանի
որ ունեցի զաւակ ի Սիովն, և ընդանեակք իցեն նորա յԵրուսաղէմ, զար-
ձանացեալ խորհուրդս իւր նախ ծանուցեալ բարէմիտ և հրեշտակերամ
եղբայրութեանս և գերագոյն գլխոյն, և ամենաբարի պարոն Կոստան-
դեա, և նա քրիստոսասէր կամաւք ըստ եռափափաք սիրոյն յանձն արար
317բ մերում ապիկարութեանս,‖և իմ հարկեաւ ի հրամանէ նոցին և յաղթեալ ի
սիրոյ, յանձն առի քաջապինդ յուսով, ակն ունելով և ինձ գտանել մասն
ողորմութեան յարդարապէս չափաւղէն և ըստ արժանեացն հատուցա-
նողէն։
Եւ գրեալ աւարտեցի զսա, որ լիացեալ կատարի թիւ համարի Հայ-
կազեան տոմարիս ՉԻԷ (1278), ընդ հովանեաւ ամենազաւր աջոյն Յի-
սուսի, ի սուրբ երկնանման անապատիս, որ կոչի Յոհնանց, ի խնամս

* Մի քանի տառ ջնջված է։

ողորմութեան Սրբոյ Կարապետիս և կենսակիր Սրբոյ Նշանիս, ի Հայրապետութեան տեառն Յակովբայ և ի թագաւորութեանն քրիստոսապսակ արքային Հայոց Լևոնի, և ի վերադիտողութեան այսմ անապատիս, քրիս-
318ա տոսասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին պարոն Կոստանդեա՝ տեառն Սարվանդոքարին, որ ինքնակամ յաւժարութեամբ յինք առբերելով ի մասինս յայսմիկ զտիպ և զաւրինակ ամենատեառն Յիսուսի, լինելով հեզ ըստ խրատուն, գթած և ողորմած ըստ պատուիրանին, մանաւանդ անփակ ունել զգութ և զողորմութիւն առ չարսն և առ բարիս, առ մեծամեծս և առ փոքունս, խրատելով ըստ հոգւոյ և մեծապէս ծախիւք դարմանս տանելով ըստ մարմնոյ, վշտանալով ընդ վտանկեալսն և բերկրելով ընդ խրախացեալսն։ Մինչ գոհ տալով ի բազում գաւառաց, լինել տեսաւղ և բնակել հանգստեամբ, մինչ գրեթէ լի իսկ լինել ճգնաւորական հանդեսիւ, որոց աղաւթիւք և բարեխաւսութեամբ ամենայն սրբոց շնորհեսցէ
318բ զսա‖մեզ Տէր ընդ երկայն աւուրս՝ հանդերձ պայծառացեալ հարազատաւքն իւրովք պարոն Սմբատիւ և պարոն Աւշնիւ փթթեալ մանկամբք և ծաղկեալ արգասիւք, փառաւորեալ փառաւք, գնալով զաւրութէնէն ի զաւրութիւն և փառաց ի փառս, պարագայց ամաւք պատուեալ մեծութեամբ ի փառս Քրիստոսի և ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ։

Եւ արդ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք և լուսաւորիք, յիշեսջիք աղաւթիւք զստացաւղ սուրբ Աւետարանիս զնախասացեալ միայնաւորն զՍտեփաննոս՝ ծնաւղաւք իւրովք և զարմիւք և ամենայն ազգայնաւք։ Յիշեսցի աղաչեմ և զհոգևոր դաստիարակ սորա ղըոցափա///*

## 395

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2629

Գրիչ՝
Վայր՝ Կիլիկիա

139ա Շնորհեա զմեզ, Տէր, ընդ երկայն աւուրս զԿոստանդին բարեպաշտ իշխան թագադիր Հայոց Կիլիկեցւոց նահանգիս և տէր Սարուանդի քար[ո]///

## 396

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 759

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Սկեռա

Գրեցաւ առաջաբանս և տետրակս Մանրուսման ի թուիս Հայոց ՉԻԷ (1278), ի հայրապետութեան տեառն Յակովբայ, և ի թագաւորութեան

* Հաջորդ թերթն ընկած է։ 127ա-ում ունի այսպիսի հիշատակություն. «Յիշեսջիք զՄխիթարայն ի յաղաւթս ձեր, որ գնեցի զԱւետարանս ի գէղն Կապճեցին»:

Աւոնի, որդւոյ Հեթմոյ, ի հուշակատր անապատս Սկեռայ, ընդ հովա-
181ա նեաւ Սուրբ Փրկչի և մաւր լուսոյ Աստուածածնի և կենսա||կիր Սուրբ
Նշանի, մերձ յանմատոյց դղեակս Լամբրունի, որ է ի գլուխ Տարսոնի,
և ի ստորոտ մեծ լերին Տաւրոսի, ի լաւ և յընտիր աւրինակաց, ձեռամբ
բազմ[ամ]եղ քահանայի և անպիտան գրչի Ստեփանոսի, ի խնդրոյ
պատուական հոգևոր եղբաւր մերոյ և ամենախմաստուն քահանայի Ստե-
փանոսի, որ ստացաւ զսա ի վայելս սրբասէր անձին իւրոյ և ի յիշատակ
հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ
տեսակաւ, կամ գաղափար առնելով, յիշեսջիք ի Քրիստոս զյառաջասա-
ցեալ պատուական քահանայ Ստեփաննոս՝ ստացաւղ տառիս և զաս-
տուածասէր ծնաւղսն իւր, և զհարազատ եղբարսն իւր զԿոստանդին, և
զսրբասէր նորընծայ քահանա Կիւրակոս և զՅովսեփ սարկաւագս հան-
181բ դերձ ազգատոհմիւ||իւրեանց։ Եւս առաւել աղաչեմ յիշել ի տէր զխնա-
մաւղ՝ զուսուցիչ սոցա զպատկառելի քահանայն և զպատուելի ծերու-
նին Դաւիթ:

Ընդ նմին և զամենամեղ գրիչս Ստեփանոս և զծնաւղսն աղաչեմ յիշել [ի] Տէր, և խոշորութեան և սղխալանացս չլինել մեղադիր, զի այսչափ էր կար մեր։ Եւ որ ընդունաւղսն է մաղթանաց և տուաւղն բարեաց Տէր Յիսուս Քրիստոս յիշողացդ և յիշելոյս ողորմեսցի, և ինքն եղիցի աւրհնեալ ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

397

## ՏՕՄԱՐ

Երուսաղեմ 2341, Պողարյան, Ցուցակ է, էջ 466

Գրիչ՝ Հայրապետ
Վայր՝ Ականց անապատ

ա

Փառք քեզ անսահման անոււն, անզուգական անձնաւորութիւն, Հայր և Որդի և Հոգի Սուրբ յամենայն արարածոցս եւ ի յիմաստայեղծ բանիցս, այժմ եւ յանսպառ յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ սա ձեռամբ Հայրապետի քահանայի,
Բարեաց գործող տառապելի,
Ջձեզ աղաչեմ, ով հանդիպի
Յիշման առնեք զիս արժանի,
Որպէս և դուք յիշել լիշիք յայնմ ատենի։

* Սահակ Ամատունին սույն ձեռագիրը համեմատելով Մատենադարանի № 630 Մանրուսմունքի հետ գրում է.
«Ժամամուտներից այս չափ էլ պակասում է 680 (այժմ 759) Մանրուսման խազագրքի մեջ։ Գիրքը գրուած է ՉԻԷ (1279) Հայոց թուին և որովհետև սույն խազգիրքը (630) թուական չունի և գրութեամբս մանաւանդ ժամամուտների դասաւորութեամբ և այլ երգերի խորագրերի միօրինակութեամբ բոլորովին նման է հիշեալ խազգրքին, ուստի հաւանական է, որ նույն թուականին գրուած լինի։ 1895. 28 ապրիլի Ս. Էջմիածին»։

Գրեցա այս իմաստայեծ մատեանս ի Հայկական տումարի ՉԻԷ (1278), ի կաթողիկոսութեանն Յակոբայ, և ի բարեպաշտութիւնն Լեւոնի թագաւորին ի գաւառիս Կիլիկեայ, ի վանս Ակնեց անապատի, և ի յառաջնորդութեանն հաւր Ստեփանոսի և Վարդան փակակալի։ Որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ աւրինակաւք կամ գաղափարաւ, յիշեսջիք ի Տէր ղառածեալս մեղաւք լի զՀայրապետ, և զհաւրեղբայրն իմ քահանայ զՄովսէս, որ և ղիս ուսուցեալ է, և զհայրն իմ զԱռաքել, և զեղբայրն իմ զՍտեփանոս, և զմայրն իմ, և զամենայն ազգականս իմ։ Ու որ սրտի մտաւք յիշէ, Աստուած զինք յիշէ յիւր արքայութիւն, և որ ղԱստուած ողորմին [սաէ], և նմա պարգևէսցէ ըստ այնմ, թէ՝ Ես առատ եմ։

Յիշեսջիք զՄանուել փիլիսոփայն, որ զաւրինակն երետ։

Յիշեսջիք և ծերունի սրբասէր կրաւնաւոր զԴաւիթ, որ զտումարս աշխատութեամբ ուսոյց մեզ, և բանիւ և արդեամբ ընկալաք ի նմանէ, և որ յիշէ, ինքն յիշեալ լիցի ի Տեառնէ։

Բ

Ո՜վ եղբարք, որք աւգտիք ի սամնէ, յիշեսջիք զՄանուէլ փիլիսոփայ, որ զաւրինակս շնորհեաց; և որ զամէն ասէ՝ Աստուած իր պարգևեսցէ շատ և առատ։

Ով դասք լուսերամից, որք աւգտիք յայս յիմաստայեղծ տառիս ուսմա[մ]բ կամ աւրինակաւ, յիշեսջիք զՀայրապետ գծող և զհայրն իմ զԱռաքեալ, և զհաւեղբայրն իմ զՄովսէս քահանա, և զեղբայրն իմ զՍտեփանոս սարկաւագ, և Աստուած զձեզ յիշէ ի բարին, և ձեզ և մեզ ողորմեսցի, և ամենայն հաւ[ատացելոց], և Քրիստոսի փառք։

Գ

Ու զՀայրապետ յիշեա, և որ զաւրինակս շնորհեաց։

## 398

### ԼՈՒՍՄՈՒՆՔ ԳՐՈՑՆ ԵՒԱԳՐԻ ՊՈՆՏԱՑԻՈՅ

Երևան 4515, Փիրղալեմյան, Նշխարք, Ա, էջ 44—46

Գրիչ՝ Յոհաննէս Արքաեղբայր
Վայր՝ Գռներ

Բազմամեղ ծառայս Աստուծոյ և նուաստ ձեր պաշտօնակից՝ հողացեալ և մոռացեալ կրսերս Յոհան, անիմաստ բաբոն և ախտադրուժ այցելու, շնորհիւ ողորմութեան Քրիստոսի Աստուծոյն՝ իմոյ յուսոյ և Սուրբ Հոգոյ նորին ձեռնտըւութեամբ, ի փառս բարեգութն Աստուծոյ Հօր՝ գրել ետու զաստուածազգեաց սուրբ հօրն Եւագրեայ զբանս լուծման, զոր արարեալ է երջանիկ վարդապետին Գրիգորի Սկեռացւոյ, ի բանից քաջ մենամարտին և արի ըմբշին Աստուծոյ ճգնաւորի, որք երկուս տեսակս

էին բարգաւաճ ի տեսականաւն և գործնականաւն, զոր Տէր ի փառս իւր հանգստեամբ ընկալցի և մեզ ի նոյն՝ զսոյնս բարեխօս կալցի, ամէն։

[Գրեալ եղաւ գիրս] ձեռնասուն աշակերտի իմոյ քահանայի Յոհաննիսի, ի թուականիս հայոց ՉԻԷ (1278), ի լեառն Կարմիր, ի սուրբ հրեշտակաբնակ անապատն Գռներ, յորում իմս իսկ զետեղի դատապարտ անձն, ի կաթողիկոսութեան տեառն Յակոբայ և ի թագաւորութեան քրիստոսազաւր և իմաստախոհ, հեզանազ և բարեմիտ, քաջ և արի, աստուածասէր արքային Լևոնի՝ որդւոյ տեառն իմոյ և եղբաւր, ի Քրիստոս հանգուցեալ արքային մերոյ Հեթմոյ՝ որդոյ Կոստանդեայ՝ որդոյ Վասակա; քաջ, բարձր և կարող յաստուածազարդից ցեղիցն Ռուբինեանց, որք հանգիստ և ողորմութիւն և ես տասն քաղաքաց իմանալեաց ի Քրիստոսէ իշխանաւորիւն կալցին, այժմ և յապագայ աներեկ աւուրն, ամէն, եղիցի։

Վասն որոյ և ես եղկելի և թարմատար յոռի կրսերս ձեր Յոհաննէս եպիսկոպոս արքաեղբայր Հայոց, անկեալ յոտս ձեր երկնաքաղաքացի ապագայ եղբարցդ արտասուօք հայցեմ յարդիւնագործ և ժիր մշակացդ այսմ այգւոյ, յիշել զսորին պատրաստող ձեզ և որք զկնի ընդ սոյն ուղի եկողիդ՝ թողութիւն և հանգիստ և ողորմութիւն ի Քրիստոսէ՝ ծնողօք մեր կրկին և ընտանեօք ձեօք գտանել, և Տէր ողորմեա ասել մեզ մինչ ձանձրանայք և ողորմածն Աստուած յիշողացդ և յիշեցելոցս, նաև գրողին և կազմողին և խնամող պահողին բիւր բարիս տացէ բնաւիցդ Աստուած, ամէն։

## 399

## ԱՒԵՏԱՐԱՆ

Գալեմքյարյան, Ցուցակ Մյունխենի, էջ 7—8

Գրիչ՝ Յովհաննէս Արքաեղբայր
Վայր՝ Գռներ

ա

9բ Երջանկայդ պարու հայցեմ յիշել զեղկելի ոգիս ի բարին Քրիստոս զՅոհաննէս եպիսկոպոս եւ ղծնաւղսն իմ, և Աստուած զձեզ յիշէ։

բ

100բ Բազմամեղ եւ դատապարտ ոգւոյ գրողիս սորա եւ ստացողիս Յոհաննէս եպիսկոպոսի թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ տեսողք սորա։

գ

152ա Զեղկելի ոգիս զՅոհաննէս եպիսկոպոս՝ զԱրքաեղբայր Հայոց, զգրող սորա եւ զստացող՝ որք ժառանգէք զսա կամ գաղափարէք՝ յիշեցէք զծընողսն մեր եւ զընաւ զարմսն միաւք հանդերձ. զի յոյժ տաժանիմ յուղղողն գիւտ եւ զձեզ տէր յիշեսցէ, ամէն։

Դ

Ծաղկող՝ Վասիլ

295ա Շնորհիւ Տեառն եւ ողորմութեամբ կատարեցաւ սուրբ Աւետարանս, ի յընտիր աւրինակէ, ի վայելումն աստուածասէր իշխանին պարոն Սմբատ, որդոյ հանգուցեալ եւ բարէպաշտ իշխանին պարոն Կոստանդեայ, եւ հանգուցեալ մաւրն իւրոյ տիկին Շահանդըխտին, եւ հանգուցեալ եղբարցն պարոն Բակուրան, եւ պարոն Կոստանդեայ:

Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ սուրբ եւ ընտրեալ աստուածահաճոյ արքեպիսկոպոսին սուրբ ուխտին Գռներոյն տէր Յոհաննէսի, որդի աստուածասէր եւ բարեպաշտ իշխանաց իշխանին՝ հանգուցեալ ի Քրիստոս պարոն Կոստանդեայ թագաւորահաւրն։

Գրեցաւ սայ ի հայրապետութիւնն տեառն Յակոբայ, եւ ի թագաւորութիւնն Հայոց աստուածասէր եւ բարեպաշտ թագաւորին Լեւոնի: Գրեցաւ ի մեծ թուականին Հայոց ՉԻԷ (1278)։

Արդ, որ ընթեռնոյք կամ աւրինակէք, յիշեսջիք զմեզ, եւ զծնողսն, եւ զեղբարսն մեր, որում Քրիստոս միոյն հարիւրապատիկ ձեզ ողորմեսցի, որում աւրհնեալ յաւիտեանս, ամէն, եւ զիս զբազմամեղս Վասիլ զյետին գրիչս, որ ծաղկեցի զսուրբ Աւետարանս, յիշեսջիք ի Քրիստոս, ամէն։

Ե

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

299բ Ո՜հ, զմեղաւք զղատապարտեալ կազմող սորա զԱռաքել Հնազանդենց, եւ զծնաւղսն իմ, եւ զհարազատն իմ, հանդերձ ծննդովք՝ եւ ամենայն զարմիւք, եւ զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ, զհանգուցեալն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր։ Ի Թվին ՉԻԷ (1278) կազմեցաւ սայ։

## 400

## ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷՈՍԻ

Երուսաղէմ 332, Պողարյան, Ցուցակ, Բ, էջ 207—208

Գրիչ՝ Ստեփանոս

Ա

ԶՍտեփանոս նուաստ գրիչ, յաղաւթս յիշեսջիք աղաչեմ։

Բ

Ստացող՝ Սիմեոն

Զվարդապետն իմ սրբազան զԳաւիթ, եւ զիս զՍիմեոն ստացող տառիս յիշեսջի Քրիստոս աղաչեմ, եւ զԿոստանդ եւ զԽաչատուր ընկերակիցս և ուսումնակիցս իմ անմոռաց յիշեսջիք։

գ

Զվարդապետն Սիմեոն եւ զԳոգ, եւ զՄխիթար յիշեա Քրիստոս, եւ զԽաչատուր, սիրելի եղբայր մեր։

դ

408 Ես նուաստս Սիմէոն յիշատակեցի ի գիրս իմ զամենայն ընկերակիցս... յընկերաց աստի իմոց, այլ ընկեր է սատանի. զի չխնայեաց նա ի մանկութիւնս իմ... արգարագատգ։

ե

Հետագա ստացող՝ Գէորգ
Վայր՝ Բագնայր

604 Նուաստ վարդապետս Գէորգ, յետին ստացիչ աստուածայխաւս աւետաւոր բանից աստուածայնոց ի Հոգոյն Սրբոյ ազդեղ մեկնողաւրէն ի միտս աստուածազան արանց, զոր ժողովեալ տեառն Ներսիսի Հայոց կաթողիկոսի, ի վարժումն հետեւողաց բանասիրաց, յաւգուտ անձանց եւ եկեղեցոյ. աղաչեմ երկրամերձ գիմաւք, որք յետ մեր ժառանգէք, յիշել զմեզ անմոռաց. եւ որք յիշէք՝ յիշել լիշիք յանսպառ բարիսն; թվին ՋԻԷ (1278) ի հր[եշտ]ակաբնակ ուխտիս Բգնայրս գրեցի, ուր էր հանգիստ մեր, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, զոր հաստ[ատ]ուն պահեսցէ միածինն իւր, մինչ ի գալուստն իւր միւս անգամ։

## 401

### ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 389

Գրեալ ի թվին Հայոց ՋԻէ (1278), ի հայրապետութեան տեառն Յակոբայ հեզի և սրբասիրի, և ի թագաւորութեան քրիստոսապսակ արքային Հայոց Լեւոնի:

## 402

### ՃԱՇՈՑ

*Ակինյան, Ցուցակ Հռոմի, էջ 54 (1230 թ.)*

*Նվիրող՝* Լեւոն թագաւոր Հայոց

**ա**

257բ *Լեւոն՝ շնորհաւք Աստուծոյ եւ աւգնականութեամբ նորին թագաւոր Հայոց, որդի հանգուցեալ արքային* Հեթմոյ, *վասն խնդրոյ* Յոհանիսի *քահանայի, պարգեւեցաք զժամագիրքս զայս իւր եկեղեցւոյն Սուրբ Մատթեոսի աւետարանչի, որ է ի* Փեռուժ *քաղաք, ի յիշատակ մեր եւ նախնեացն մերոց, ի թուականութեանս Հայոց ԷՃԻԸ (1279)։*

**բ**

*Գրիչ՝* Հեթում

*Յիշեսջիք եւ զիս զ*Հեթում *նուաստ սարկաւագ, ո՜վ սուրբ ընթերցողք, եւ զեղբայրն իմ զ*Ղուկաս *քահանայ եւ զ*Աւշին *սարկաւագ, եւ որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն*։*

## 403

### ՃԱՌՔ ԲԱՐՍԵՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՅ

*Երևան 5595*

*Գրիչ՝* Եսայի Նչեցի

**գ**

400ա *Կատա[րեցաւ] ///ման գրոցս այսոցիկ։ Ճառք երեսուն և մի ասացուածք սրբոյն* Բար[ս]ղի *եպիսկոպոսի* Կեսարեայ Կապ[ադ]ո[վ]կա-

---

** Դնում ենք հետագա հիշատակարանը, գրված Փեռուժում։*

*«Աղաչեմ յիշել ի Տէր եւ զվերջին ստացողք գրույս զարբասնեալ զքահանայքս զ*Յակոբ *ծերունին եւ զ*Թաթիլ *զհոգեւոր որդին իւր՝ զվերատեսուչք* Տանս Փեռուժի *եւ սպասաւորք Սուրբ Առաքելոյն եւ աւետարանչին Մաթէոսի։*

*Յիշեցէք եւ զհգնազգեաց կրաւնաւորն Յրանկ՝ զկազմող եւ զնորոգող գրոցս։*

*Յիշեցէք եւ զգրող սակաւ յիշատակիս և զամենայն եղբայրութիւնս ի բարին Քրիստոս, եւ յիշելոցս եւ յիշողացդ առհասարակ ողորմեսցի» (էջ 258 բ)։*

ցոյ։ Զմեղապարտ գրիչս Եսայի յիշել յաղաւթս աղ[աչեմ], ես զստա-
ցօղ սորին ըզՆերսէս վարդապետ և զծնողսն։

400բ [Զ]երջանիկ րաբունն, զուսուցիչ և զվ[ար]ժապետ[ն], զմաք[ու]ր անձն և զպայծառ հոգի, զուղղապա[տու]մ և զճ[շ]մարտախաւսն բանին կենաց, զստա[ցո]ղ գրոցս զվարդապետն Ներսէս, և ծնաւ[ղսն] իւր [և] զամենայն զարմն յիշեսջիք յաղ[աւ]թս ձեր սրտի մտաւք, որք աւգ[տ]իք ի սմանէ, Աստուած [առ] հասարակ ամենեցուն ողորմեսցի՝ յիշ[ելոց]դ և յ[իշե]ցելոցս, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

Բ

Գրիչ՝ Ներսէս վարդապետ
Վայր՝ Եղիայզարու վանք

228բ Ի ՋԻԸ (1279) գրեցաւ կանոնական սահմանադրութիւն ուղղութեանցս յուսումն խրատու կարգաւորութեան վանականաց, յարմարեալ և շարա-կարգեալ ի հոգիպայծառ և ի տիեզերալոյս վարդապետէ, եւ ի մեծէ եպիսկոպոսապետէն Կեսարու Կապադովկացոյ սրբոյն Բարսղի, ի հռչա-կաւոր և յականաւոր սուրբ ուխտս Եղիսյզարու, ընդ հովանե[ա]ւ սըր-բոց առաքելոցն Պաւղոսի և Պետրոսի և Անդրէի, կ[ամ]աւք և յանժարու-թեամբ և մեծաւ հոգաբարձութեամբ իմոյ անպիտանութեանս՝ Ներսիսի վարդապետի, զոր ետու գրել ի խրատ ուղղութեան վարուց իմոյ անուղ-ղա կենացս, և ամենեցուն որ պատահեն և շահեսցին ի հոգեշահ բանից աստի, և վարժեալ կրթեսցէն զանձինս դիտելով թէ որպէս արժան Ե կեալ ի միաբանական եղբայրանոցս ըստ այսմ եդելոյ սահմանիս, որ ի հոգոյն սրբոյ ազդեցաւ հոդիացելոյն Բարսղի, դի մի ոք սխալեալ անգիտու-թեամբ վնասեսցէ զանձն փոխանակաւ գտելոյ։ Եւ իմոյ մեղսաշատ և յոգ-նասխալ և ծոյլ անձին սրտի մտաւք թողութիւն խնդրեսցէ ի Քրիստոսէ, որ քաւութիւն է յոլովապատիկ յացմանն մերոյ։ Զի վասն այսպիսի յու-սոյ ձեռնամուխ եղաք ի սա, եւ ակն ունիմք ի ձեռն սորա թողութիւն մեղաց գտանել հանդերձ ծնաւղաք, եղբարբք և քերբք և ամենայն մեր-ձաւորաւք հաւատոյ և արեան, ասելով. Զերանի որում թողութիւն բարի յիշատակաւն Քրիստոսի։ Եւ կատարողքդ այսմ հայցուածի բարոյ մասին արժանաշիք ի Քրիստոսէ Յիսուսէ ի Տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Գ

Գրիչ՝ Ստեփանոս

107բ Սկիզբն ողորմութեամբ Տեառն արարի
Եւ կամաւ նորին կատարեցի,
Զյոգնախումբ և զկորովիմաստս սրբոյն Բարսղի:
Զոր խաւսեցաւ յասդման հոգոյն հանճարեղաց, որ չծուլանան
Վասն բոպէից քառորդ տարեաց, որք տարրացան,

---

* Անմիջապես հաջորդում է կարմիր վարժ բոլորգրով գրված հետևյալ հիշատակագրու-թյունը. «Աստուած աւգնէ վարդապետին Ես[այեայ], որ զգիրքս հրամեաց, որ կարդցար և ոչ առնենք»։

Սիրելիք և հակառակք որք միացան։
Եւ որք ժամուց մերոց ունողք յինքեանս որք ընթանան,
Եւ եւթնեակ մոլորակաց որք կարգեցան,
Եւ վերինք, որ անմոլարք ղարդ կառուցան,
Կենդանիք երկոտասանք անուանեցան։
Այլև բոլոր սեռից տեսակ, որք գոյացան,
Բացի մարդոյն, որ աւր մահուն եղև խափան։
Ի սրբոյն խրատ բարի վերծանուցան
Վասն արարչին, որք փառս տան միշտ անխափան
Որ և Ներս[էս] հռետոր կորովաբան,
Յիսուսական տեսարանացն խոհեմ տեսաւղ անվրիպական,
Ետ ինձ գրել վասն մանկանց նոր Սի[ոն]ի, որ հմտանան,
Եւ վասն իւր հոգոյն և իւրոցն, որ յիշէք միշտ յամեն ժամ
ընթերցման,
Զվարդապետ Ներսէս և որ իւրքն են ամենայն
Եւ ընդ [ն]մին զաղկաղկ գրիչ Ստեփան,
Թափուր յամենայն բարի գործոց լըման,
Եւ զեղբայրն իմ և ծնաւ[ղս]ն ||| քէն ամենայն,
Եւ Տէր հատուցէ ձեզ փոխարեն յայտմ յամենայն։

## 404

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 579

Գրիչ՝ Ներսէս

ա

290բ Փառք համագոյ Երրորդութեան,
Որ է զով|||
Աւուր վերջումըն զաւրութեամբ
[Ու]նի աթոռ իւր հրամանաւ դատողական,
Ի նմայ բազմի Քրիստոս ահեղ լուսոյ նման,
Փողն գոչեա առհասարակ գաբրիելեան,
Յառնեն մեռեալք փութանակի ի դատաստան,
Ի յայնմ ահեղ հրապարակին [ը]նկեալ և զմեզ յաջայկողմեան,
Եւ զննջեցեալս իմ զամենայն
Խառնեայ ի դասս արդարութեան։
Եւ Ներոզէս սուրբ քահանայ, որ ետ գրել ինձ զայս բան,
Զոր տէր Ներսէս է յարմարել ի իւր վաղչանն,
Տուր վայելել նմայ ըզսայ քոյով ողորմութեան,
Որ ես աւրհնեալ յարարածոց Տէր յաւիտեան։

Արդ, գրեցաւ ձեռամբ Ներսիսի անարժան և մեղապարտ սարկաւագի
201ա ||ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին՝ [ծն]աւղին Տեառն, և Սրբոյն Սարդսի զաւրավայրի և Սրբոյն Ստեփաննոսի Նախավկայի, ի վայե-

*լումն սուրբ և պատուական քահանային* Նռոզիսին, *ի թվիս Հայոց ՉԻԸ (1279) յունիսի Ա (1), և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

*Ո՛վ եղբայրք ո[րք կարդայ]ք կամ ինչ ընդաւրինակէք, զմեղայ-պարտ գծողս յիշես[ջիք ի Քրիստոս] և զծնողս իմ զ*Յռանկ *չուխակարն, և զեղբայրն իմ զ*Պառոնշա[*ն ընդ*]*նմին և զքեռն իմ զ*Պարգև *աբեղայն, և զեղբայր նորայ զ*Նուերf *նաւտարն, և զայլ նախնիսն իմ, և որ յիշէ յի-շեալ եղից[ի] առաջի ահեղ ատենին Աստուծոյ։ Եւ ախմարութեան գրոյս մի մեղադրէք, զի տկարացայ, և Յիսուս ողորմեսցի յամենայն ննջեցե-լոց, ծանաւթից և անծանաւթից**։*

## 405

## ՏՕՆԱՑՈՅՑ ԳԷՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Երուսաղեմ, 1692, Պողարյան, Ցուցակ Ե, էջ 560—561*

*Գրիչ՝* Յոհաննէս
*Վայր՝* Սիս

219 *Փառք Յիսուսի փրկչին իմոյ, որ զաւրացոյց զիս ի լրումն ածել զտետր եւ զառաշաբանս, ի լաւ եւ յընտիր աւրինակէ։*

*Եւ արդ, գրեցաւ սայ ձեռմամբ մեղապարտի եւ անապաշաւի* Յոհան-նիսի, *ի խնդրոյ եղբաւր մերոյ* Մարաիրոսի *վանական քահանայի, ի թուականիս Հայոց ՉԺԻԸ (1279), ի հայրապետութեանն տեառն* Յակով-բայ, *եւ ի թագաւորութեանն Հայ[ոց]* Լէոնի:

*Արդ, աղաչեմ զամենեսեան, յիշելոյ արժանի արարէք զաշխատողս եւ զստացողս, զի եւ դուք յիշեսջիք ի Տեառնէ մերմէ, որ է աւրհնեալ յա-ւիտեանս։*

*Գրեցաւ սա ի մայրաքաղաքս* Սիս, *ընդ հովանեաւ Սրբոց Հրեշտա-կապետացն։*

## 406

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*էջմիածին 476*

ա

43բ *Ջաստուածապատիւ և զառաքելաշնորհ զսրբազան հայրապետս մեր զտէր* Յովաննէս** *պահեսցէ Քրիստոս Աստուած երկար ժամանակաւ հո-*

---

* *Թերթերը սխալ են դրել կազմելիս, և հիշատակարանը կիսվել է։ Բ հիշատակարանը գրված է՝ ավելի մանր տառերով։*

** *Ջնջված է «Գրիգոր» (Անավարզեցի) անունը, որն այն ժամանակ կաթողիկոս էր Հա-յոց, և գրված է ջնջողի ժամանակակից կաթողիկոսի անունը։ Անավարզեցուց հետո եկած կաթողիկոսների մեջ Հովհաննես անունով վեց կաթողիկոս միայն Կիլիկիայում է եղել։*

*վուել զբանաւոր հաւ<ա>տս Քրիստոսի, և յանվախճան յաւիտեանս աթոռակից արասցէ զսա Քրիստոս Աստուած Լուսաւորչին մերոյ* Գրիգորի, *ամմէն։*

ռ

101բ *Զաստուածապատուեալ այրն առաքելական՝ զտուրբ հեղինակն Հայաստանեայց, ստացող ոգիակեցոյց տառիս* Գրիգոր *եպիսկոպոսն և ծնողսն իւր յիշեսջիք ի Քրիստոս, ո՛վ աստուածարեալք։*

*Ի թու[ին] ՉԻԸ (1279)*

## 407

## *ՋԵՐՄԱՆՑ ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ ՄԽԻԹԱՐԱՅ ՀԵՐԱՑԻՈ*

***Երևան 416***

*Գրիչ՝* Կոստանդին

119ա *Փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտենից յաւիտեանս, ամէն։ Ի յեւթնհարիւրերորդի քսաներորդի ութերորդի (1279) թուականի Հայոց գրեցաւ գիրքս այս, որ է Ջերմանց բժշկարան, հրամանաւ աստուածազարդեալ եպիսկոպոսին* Սիմէոնի, *ի վայելումն անձին իւր, և ի պէտս եղբայրական միաբանեալ անձանց, եւ յետ ելից իւր յիշատակ հոգւոյ։ Եւ գրեցաւ սա ձեռամբ մեղապարտ ծառայի Աստուծոյ* Կոստանդեայ, *եւ կատարեցաւ սա ի թու. ՉԻԸ (1279), յամսեան աւգոստոս, որ աւր Թ (9) է։*

*Արդ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմայ, թողութիւն մեղաց հայցեցէք յԱստուծոյ՝ մեզ և ծնողաց մերոց և զարմից, և Աստուած յ[ի]շողացդ և յիշեցելոցս ողորմեսցի, որում փառք յաւիտեանս։*

*Գրեցաւ հաստատութեամբ ի կամս Աստուծոյ։*

## 408

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք էջ 76—77***

*Գրիչ՝* Շմաւոն
*Վայր՝* Մաշկաւոր

*Փառք եռանձնեայ տէրութեան։ Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի... զլուսաւոր, զմաքրափայլ Աւետարանս, ի* Փոսանանանց *գաւառս* Կիլիկեցւոց, *ի կաթողիկոսանիստ միաբանիս, ի վանս* Մաշկաւոր *կոչեցեալ, մերձ առ գերամաքուր սուրբ ուխտ[ս] որ* Դրազարկ *յորջորջի, ի հայրապետութեան տեառն* Յակոբայ, *և ի թագաւորութեան* Լեւոնի, *ի թուականութեանս Հայկազեանս ՉԻԸ (1279)։*

*Ես մեղուցեալ անձն* Շմաւոն *գրեցի զսա բազում փափագանօք, տաժանակիրտն երկօք, և ըստ կարի իմում զարդարեցի ոսկով և արծաթով իւրո պատրոն* Վաղտանգին, *ի փառս Քրիստոսի Աստուծոյ աւրհնելոյ իմոց։*

## 409

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5669

Գրիչ՝ Վարդան

206բ Շնորհիւն Աստուծոյ աւարտագծեցաւ եդեմարուխ, աստուածային և
անմահական աղբիւրս Մաթէոսեան Աւետարանս, ի թվի ՉԻԸ (1279),
յամսեանս արեգ ԻԸ (29), հրամանաւ բարիարմատ և քաղցրամիտ պատ-
րոնին [Վաղ]տանգտ* որդո աստուածասէր մեծ պատրոնին Օւմեկին**,
207ա և թոռին իշխանաց իշխանին Ջ||ալալին***, ի վաելումն և ի պահպա-
նութիւն անձին իւրո, և ի խրատ և ի վարժումն մանկական տիոց իւրոց,
որո տացէ Տէր Աստուած կեանք խաղաղական և պարագայց ամք երկա-
րեալ յայսմ աշխարհի, մինչև ի խորին ծերութիւն, աններհակի փորձո-
207բ ղէն աւըստաւրէ յառ||աջացեալ ի մեծութենէ ի մեծութիւն, ի փառաց ի
փառս, ի պատուէ ի պատիւ, ի պարծանս քրիստոնէից, և զամենաւրհնեալ
սուրբ ծնողն իւր զպատրոն Ջուլուխաթունն**** պահեսցէ անսասանելի
208ա կենաւք անբիծ և անարատ, և խաղաղական ժամանակաւք վաելել զ||աւ-
տիսս, տեսանելով զորդիս որդոց աստուածասէր և քաղցրաշառաւեղին
իւրո պատրոն Վաղտանգին, ի փառս Քրիստոսի Աստուծոյ՝ աւրհնելոյ
յաւիտեանս։

Եւ զգծողս զՎարդան յիշման արժանի արարէք*****։

## 410

## ԱՒԵՏԱՐԱՆ

Տեր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, էջ 251

Գրիչ՝ Խաչատուր

Ի ՉԻԸ (1279) թուին Հայոց... ես Պետրոս տառապեալ եւ յոգնամեղ կարգաւոր. տարփող եղեալ ստացայ զսա... ընդ նմին եւ զծնողսն իմ Ստեփանոս քահանայն... եւ զԽաչատուր գրիչս յիշեցէք։

---

* Առաջին տառերը քերված են, նորից գրված։

** Քերված և հետագայում վերականգնված է։

*** Քերված է անունը և վերականգնված։

**** Անունը քերված է և լուսանցքում այլ գրով ավելացված «Ջուլուխաթունն»։

***** Փոքրագիր (8×6), մագաղաթյա, հին բոլորագրով, միասյուն գրությամբ Աւետարան է, սկզբում Մաթէոսի խունացած նկարով. պարունակում է միայն Մաթեոսի Աւետարանը։

## 411

## ՏԱՒՆԱՊԱՏՃԱՌ

Երևան 5197

Ստացող՝ Սարգիս
Վայր՝ [Դեղձուտի վանք]*

211ա Փառք Հաւր և Որդո և Հո[գո]յն Սրբո եռանձնեա տէրութեն անտար[որ]ոշ աստուածութեն, անբաժանելի բնութեն ի մասանց արարածոցս և յամենայն եղելոցս, ի ծայրածաւալ լուսոյն Հօր ծագումն անճառելի և բանն անքննելի, խկութիւնն անհետազատելի և մշտաբուխ հոգին անսպառելի, ելեալն ի Հօրէ և երևելն յՈրդո, որք միակամ կամօք և արարչական զօրութեամբ, և միաբուն բնութեամբ ոչ միայն վայելեալ ի բարիսն իւրեանց անեզրական, այլ շարժեալ բարերար կամօքն յանգոից գոացոյց, և յանէից էացոյց զբնաւ մասունս արարածոցս։ Ի սկիզբն ամենայնի զերկինս վերին, զոր և եթեր անուանեցին, և զերկիր ի խոնարհ գոլով, և զմիջնատարերքս ի սոցանէ և ի չորից նիւթոց՝ ի հողո և ի ջրո, յօդո և ի հրո, արար զամենայն կարգօ, որպէս ցուցանեն աստուածաշունչ քնարք հոգոյն։ Իսկ ի բանական բնութիւնս նախ յառաջ իմանայր զհրեշտակ զօրութիւնս անթիւ բազմութիւնն, որք են աննիւթք և անմարմինք, որ ասի հողմ անվայրափակ, լոյս թափանցիկ և հուր անկիզանող, վաելողք վերին արփոյն, մերձ առ դուրս անմահ թագօրբքն կարգեալ իններ դաս ըստ սահմանին կացեալ մնացեալ յիւրեանց տեղիսն, թեպետ և մին շեղեալ հպարտութեամբ և ընկեալ ի փառացն, զոր այլքն ունին։

Իսկ զերկրորդս բանական,
Դրախտին արար վաելչական,
Պատուեր երետ հայրական
Թէ կացէք ի յիմ հրաման
Եւ վայելեցէք անվախճան։
Նոքա զբանիւն այնու անցան,
Եւ անբանից նմանեցան,
Երկիր մահու պարտօրեցան
Անասնաբար աճումն ընկալան

---

* Տե՛ս հաջորդ Հիշատակարանը (ձեռ. 5254), որտեղից իմանում ենք, որ Առաքել վարդապետի դպրոցը Դեղձուտի վանքում էր, ուր սովորում էր նաև ստացող Սարգիսը։

Եւ բազում ժամանակս մոլորեցան,
Եւ զարարիչն մոռացան,
Հինգ հազար իննսուն ինն ամ թիւրեցան,
Ապա գթութեանց անդունդ բացան,
Եւ ողորմութեան լոյս ծագեցան,
Լոյսն իջեալ այն Հայրական
Զկոյսն արար իւր բնակարան,
Մարմին եառ ադամական,
211բ Աշակերտք ընտրեաց երկոտասան,
Տիեզերաց քարոզք եղան
Եւ հօտառ վէմ կոչեցան,
Սուրբ հոգով նոքա լցան
Եւ բազմաց պատճառք եղան,

Եւ լցուցին յիմաստայեղց գիտութեամբն լինել շահ եկեղեցոյ և պայծառութիւն ուղղափառութեանս, առնել յայտնի զբան կանոնաց և սահմանաց ի ձեռն գրոց և բանից ի լոյս, որ և զայս գիրք Տօնապատճառ հօաքեց ի բազմաց ի մի և ետուն մանկանց Սիոնի ի լոյսաւորութիւն հօտոց և ի պարծանս ուղղափառութեան։

211բ Վասն որո և ես՝ կրտսերս և յետին սպասօորս բանին Սարգիս, ըղձացեալ այս մատենի, և անձնատատան աշխատութեամբ և քրտնաջան ջանիւք և բազում տառապանօք դժ[ո]ւար ի գիւտ գրչաց, ետու գծագրեալ զսա ի նեղ և ի դառն ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց տիրել ունէին ազգն Նետողաց, ձիակթաց կաթնակերաց, և սրփռեալ էին ամենայն ուրեք՝ արկեալ հարկապահանջութիւն ի վերայ ամենեցուն առհասարակ, առաւել քան զկար։ Եւ Ապաղանն ունէր զբռնակալութիւն և արհօիրք էին ամենայն ուստեք, և ելն աղետիս Աստուծոյ է գիտելի։

Արդ ես Սարգիս յորժամ էի դեգերել առ ոտս կենդանի վիմիս Առաքել վարդապետի, ի գօառիս Մաճկանաբերդս, ի պարոնութեան աթապակ Սադունին, ետու գրել զգիրքս զայս այլևայլ գրչաց, զի օրինակ չգտանէի. զԿարգ ասացուածոցն՝ յիմ սնեալ միայնարանին, ի Գեաիկ, ի թվին Հայոց ՉԻԳ (1274) և զՊատճառն տօնից ի Թառակին, ձեռամբ կուսակրօն Գրիգոր քահանայի, թվին ՉԻԹ (1280)*, որ և նմա և ծնողաց իւր ողորմեսցի Տէր Յիսուս։

Եւ ես Սարգիս երեսս անկեալ աղաչեմ զպատահեալսդ, յիշեսջիք
սրտի մտօք զիս և զազգաինսն իմ՝ զաստուածահաճո զհայրն իմ զփո-
խեցեալն առ Քրիստոս զԱլեքսիոս, և զբարեաց յիշատակաց արժանի
զմայրն իմ զԳոհարն, զհամշիրակ հարազատսն իմ՝ զԱճարոն և զԳառ-
212ա նիկն, և զփոխեցեալն ի Քրիստոս Մխիթարիչն,||և զծնողագութ հարսն
իմ զԹամթիխաթուն, որ յօտարութեան գոլով մեր ի ժամ աշակերտութեան, բազում մխիթար եղև և ձեռնտու մեզ, եւ զայս գիրք ետ գրել ի վայելումն ան<ն>ձին իմո, և յիշատակ իւր, և բարէգութ մաւր իւրո,

* Թվականը գրված է լուսանցքում։

փոխեցելո առ Քրիստոս՝ տիկին Շամէրին, որ և նմա ողորմեսցի Քրիստոս ի յաւուրն աներեկի, և յաջմէ դասեսցէ, յարքայութիւն հանգուսցէ, եւ զաւակաց իւրոց Յակոբո և Մխիթարշին տացէ Քրիստոս երկար կենդանութիւն՝ լինել յիշատակ ծնողաց իւրեանց, ամէն։ Եւ զմիւս հարսն Թութմամ՝ իւրովք զաւակաւքն Գրիգորիւ և Ալեքսիոսիւ, պահեսցէ Աստուած մեր։

Յիշեսջիք զհայրն մեր հոգևոր և սնուցող զ[յ]ոքնահանճար ծերունին զԳաւիթ, և զիս սուտանուն Սարգիս վարդապետ յիշման, և Աստուած ողորմէի արժանացուց, և ձրի տուք, զի և դուք առնուցուք ի նմանէ, որ անսուտն խոստացաւ։

Գրեց[աւ] Տանապատճառս ի թվին ՉԻԹ (1280) և կազմեցաւ յաւուր վճարման, մարերի ԻԸ (28)ն և Հոռ[ոմոց] Նոեմբեր Դ (4)ն՝ յաշնան եղանակիս, որ ահագին շարժ եղև ի մէջ գիշերիս, ի մի շաբաթն Բ (2) դիր։ Զոր Տէր խնամեսցէ զսասանեալքս, զահաբեկեալքս, և Տէր Յիսուս աւրհնեալ, որ ժողովեաց ի մի տեղի զցրուած թխթ<տ>երս, և նմա փառք յարարածոցս, ամէն*։

Բ

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Թառական

10ա Բարեխաւսութեամբ սոցա Քրիստոս ողորմեսցի Ալեքսիոսին և իւր որդեացն Սարգսի և Հարոնին և Գառնկանն, երկար կենդանութիւն տացէ ստացողի գրոցս, ամէն։

Գ

149ա Ո ոք աւգտեսցի ի սմանէ, յիշեսցէ զստաց[ող] սորա զՍարգիս և զանարժան գծողս զԳրիգոր:

Դ

169ա ԶԳրիգորի գծողի մեղապարտի և Սարգսի սուրբ քահանայի և ծնողաց ողորմեսցի Քրիստոս։

Ե

Այլ գրիչ

156ա Զլաւագոյն սպասաւոր բանի Սարգիս և ստացող մատենիս**։

* Անմիջապէս այլ գրով հետևում է «Ի ւթնհարիւր ծԸ (1309) թուին փոխեցաւ ի Քրիստոս վարդապետն Սարգիս, յիշատակն աւրհնութեամբ» (Տասնավորը գրված է եղել «ծ», ապա դարձրել են «ժ»)։

** ԻԴ պրակի գրիչն է։

## 412

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1097*

*Գրիչ՝* Լուսեր
*Վայր՝* [Եղիազարու վանք]

ա

145ա *Շնորհաւք և ողորմութեամբն Աստուծոյ, կատարեցի զտառս աստուածաշունչ, ես փցուն և ապիկար գրող* Լուսեր, *ի վայելումն սուրբ և ամենագով վարդապետին* Ներսէսի: *Աղաչեմ զդասս լուսերամից յիշել բազմամեղ գրողի* <*ի*>*կս և ժառանկորդ գրիս զհռետոր զվարդապետն, և Աստուած յիշողացտ ողորմեսցի։*

*Ի թուիս Հայոց ՋԻԹ (1280) գրեցաւ*`*`:

Բ

*Սրբագրող՝* Եսայի [Նչեցի]

6բ *Ջպատահեալսդ այսմ մատենի, աղաչեմ յիշել յաղաւթս զստացաւղ սորին զմեծ հռետորն* Ներսէս, *նոյնպէս և զնուաստ ոգիս* Եսայի՝ *հետևող և աշակերտ սուրբ առնն Աստուծոյ* Ներսէսի *վարդապետի։*

Գ

320բ *Ջսակաւ աշխատողս յիշեա ի Տէր, աղաչեմ*`**`:

Դ

*Կազմող՝* Գրիգոր

315ա *Ո՞վ երամք սողանեաց, ընթերցողք սրբոյ տառիս, յիշեսջիք զկազմողս* զԳրիգոր:

## 413

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4096*

*Գրիչ՝* Պօղոս
*Վայր՝* Վանդիր անապատ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն և մի աստուածութեան, և Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

---

* *Անմիջապես հետո երկու տողով՝ մանր գրությամբ գրված է. «Աստուած ողորմի* Ներսէս *վարժապետին և ինձ* Թովմա *վարդապետիս, որ զանարուեստ գիրս յաւարտ ածի. Քրիստոս Աստուած այն աշակերտին ողորմեսցի, որ սակաւ ինքն ընդ մեզ տանջի, ամէն»։ Գրողը* Թովմա *Մեծոփեցին է, ինչպես թույլ է տալիս կարծելու գրչությունը։ Նույն գրչությամբ 107բ էջի ստորին լուսանցքում կարդում ենք. «Աւաղ և եղուկ է անգէտ գրագրին։ Աւրհնած հոգի, ի՞նչ կառնես. գիտեմ բանական ես. զգիրս տողել ես և մէկ ի մէկ յինչ ես կցել»։*

** *315ա էջից Եսայի Նչեցին գրել է «Ի Դատաստաց մեկնութենէ» մի հատված և վերջում թողել սույն հիշատակարությունը։ Տեղը նշանակում ենք Եղիազարու կամ Առաքելոց վանքը,*

Ջանհատահոս բղխումն ․ամենառատ իջման կենեղուտ շնորհին, որ առ
մերս բնութիւն անհասական իմանի ի բանականացս սեռից, մանաւանդ
333ա զներկայիս առատ[ած]աւալ փափագումն, որ///*ութիւն մանգանց առա-
գաստի եւ արդ եղև զրաւ սորա ի Թվականութեանս Հայոց եւթնհարիւրե-
րորդի քսաներորդ իններորդի (1280), ի հայրապետութեան տեառն Յա-
կովբայ և ի Թագաւորութեանն Հայոց Լեւոնի, ի նահանգիս Կիլիկեցւոց,
ընդ հովանեաւ ամենազաւր աջոյն Յիսուսի, և սուրբ խորանիս Սուրբ
Սիովնի, և կենսապարգև Սրբոյ Նշանիս, ի դառն և ի դժնեայ ժամանա-
կիս, զի ըստ նախապատում առաջին սուրբ հարցն, զոր առ Երեմիայիւ
տեսանիւր, զի եբարձ Տէր զհաճոյացեալսն իւր յաշխարհէ վասն անչափ
ծովացեալ մեղաց մերոց, սկիզբն ի սրբութիւնսն իւր արարեալ մատ-
նեաց ի հուր և ի սուր, և ներելով անարժանիցս և հառաչել չնախագոր-
ծեալ յանցանս մեր, որ և ոչ այսու զնգաստանամք, այլ Թմբրեալք ի յա-
333բ մաւթս [յա]ւել‖ումն չարեաց մերոց առնելով ի նոյն ծնկեալ գտանիմք։
Այլ վայ է ինձ, եղուկ եմ ես, զի և ոչ զմի ոք ի սդաստութեան տեսանեմք,
այլ միահաղոյն չապականութիւն վարեալք յոտից մինչև ցգլուխ, որ և
զառհաւատչեայ անտի տանջանացն աստէն ընդունիմք յարդարապէս
չափաւղէն և յանքարկանալի աստուածութենէն։

Եւ արդ, աղաչեմք զամենեսեան, ո՛վ լուսակիր երամացեալ [դ]ասք
քահանայից, յիշեսջիք մաքուր աղաւթիւք զգերապատուեալ արքեպիսկո-
պոս զտէր Տիրատուր, և զաստուածապատուեալ սուրբ եպիսկոպոս զտէր
Բարթուղիմէոս, և ղստացաւղ սուրբ Աւետարանիս զսրովբեանման եպիս-
կոպոս զտէր Դաւիթ, և զաստուածազարդ քահանա զՊետրոս սրբազան,
334ա երկնամուտ‖նորատուր մանկունս Նորոյ Սիովնի, վասն զի արհա-
մարհանս առնել տայ աղցաւոր վայելից ի տարատրոհ կայանիս և միայն-
ւոյ այնմ փափագել, որ միշտ և հանապազ զկա ունի ընդ Աստուծոյ, և
ոչ ական հատանի ի վնասակար գողոց, որով այժմ բաղձանաւք լիապէս
լցեալ ամէնիմաստ և ամենայն խոհեմութեամբ զարդարեալ սուրբ և երա-
նաշնորհ եպիսկոպոսն տէր Դաւիթ, ի խնդիր ելեալ իբր զիմաստուն վա-
ճառական ի գիւտ պատուական մարգարտի, ոչ ի յանձին փարթամու-
թիւն, այլ խրախացեալ ի յԱստուած, որ տայ սերմն սերմանողի, և լնու
զբաղձանս ճշմարտիցն ցանկացողաց, ունելով և ապաստան յուսոյ զաս-
տուածապատուեալ սուրբ և առաքելանման արքեպիսկոպոս զտէր Տիրա-
334բ տուր զպարագրեալն ի գլուխս լրման սուրբ և‖երկնանման անապատին
Արքայկաղնոյն։

Իսկ ըստ նախախնամութեան ամենասուրբ հոգւոյն հանդիպել իմոյ
մեղաւորիս և անարհեստ գրչիս Պաւղոսի, շարադրելով իմ զաստուածա-
յին պարգևս զայս զքառավտակ աղբիւրս և զչորեքծագեան արեգակունս՝
յաշխատութենէ մատին իմոյ, ըստ սրտիս իմոյ կապակցեալ, և յեռանդ-
նահոս փափագմանէ նախադրեալ տեառն Դաւթայ, հարկեալ իմ ի շքե-

---

արովհետև Ներսես Մշեցին՝ (իր դպրոցով) և Եսայի աշակերտը այդ Թվականին այնտեղ էին և հաջորդ տարվա կեսերին միայն Թողեցին այդ վանքը։

* Թերթ է ընկած։

ղաշուք հրամանէ նորին, ետու զօս ի ձեռն նորա, ի վայելումն անձին իւրոյ և ի յիշատակ հոգւոյ իւրոյ, և առ ի Քրիստոս հանգուցեալ նախնեաց նորին, զի անփոխանորդելի հաստատեսցի ի տրապիզիտս գահաւորակի լրապէս լուսարանի մաւր մերոյ Սիովնի, սուրբ և գերագրական անապատին Վանդիր, ի խրախ կոչեցեալ։

## 414

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1418

Ստացող՝ Մովսէս
Վայր՝ Խորին անապատ

ա

126բ Եւ ես՝ վերջացեալս յամենայն բարեաց Մովսէս սուտանուն կրաւնաւոր, որ փափագանաւք ստացայ զսա ի վայելումն անձին և ի յիշատակ ինձ և ծընողաց իմոց, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա ընթեռնլով կամ լսելով կամ աւրինակ առնելով, յիշման արժանի արարէք զմեզ միով Տէր ողորմայիւ, նաև զԹասիլ քահանա՝ զգծաւղ սորին, և զՊաւղոս փակակալ, որ զաւրինակն ետ, և ըզսիրելի եղբայրն իմ զՍտեփաննոս, այլ և զԱլէքսիանոս և զհարազատն իւր յիշեսջիք, որ աւգնական եղև մեզ, և որ առատն է ի տուրս պարգևաց՝ ձեզ յիշողացդ և մեզ յիշելեացս ողորմեսցի։

Եւ արդ գրեցաւ սա
Ի թուաբերութեան Հայոց ազգի,
Քառասուներորդ [ըն]դքտիոնի
Եւ յութեկի իններակ թվի (1280)*։
Ի գաւառիս Կիլիկէի վատաշուքի,
Հուպ յանապատս հռչակելի,
Որոյ Խորին անուն կոչի,
Ի դառնութեան ժամանակի,
Միշտ նեղելով Իսմայելի,
Որ զսովաւ շրջապատի։
Այլ և ազգին միշտ նետողի,
Անկեալեալ թե հասանի
Բազմաթշուառն և կատաղի,
Որ կաշառաւք յոլով պատրի,
Յառաջնորդացն Իսմաէլի
Խափան լինի։
Այլ և մեղաց մերոց չարի
Գոլով արգել յամենայնի,

* Հայց թիվը (551)+48 ընդիքտիոն (48+15=720)+իններակ (9)=1280։ Այս նույն թվականին է Մովսեսը գրել նաև ձեռագրի երրորդ նյութը՝ «Եւագրեա նշանակ յեզեկիելի» (էջ 222ա 319բ, տես հաջորդ հիշատակարանը)։ Երկրորդ նյութը տե՛ս 1286 թվականի տակ։

Ի գլխոյն սկսեալ լինի
Եւ յարքայէն մերոյս ազգի։
127ա Պատահեալ անձն իմ եղ||կելի
Նմա յաւուրս տէրունի,
Յայլակերպման աւուրն մեծի
Ջանհաստատ վարս նորա տեսի
Եվ անդ վայր մի ես ողբացի,
Զի որ նմա հոգք պիտանի,
Անփոյթ առնէր յամենայնի,
Եւ որ չէր նմա յարգի,
Միշտ յայն փութայր, զի հպեսցի,
Եկեղեցի հրկէզ լինի,
Եվ քրիստոնեայ գերի վարի՝
Նմա ոչ ցաւ ոչ հոգ լինի,
Ոչ ի փրկելն փոյթ ունի։
Աղքատաց անգութ լինի,
Վտանգելոց ոչ ողորմի,
Շահավաճառ յաւէտ լինի,
Եւ ընդ այլոյ բարիս՝ չարի,
Է զոր աչաւք իմաւք տեսի
Եւ զոր ունկամբ ես լսեցի։
Այղ հայրապետըն թէ յիշի,
Որ է յաթոռ հաւրն մեծի,
Ամաչեմ յամենայնի
Եւ պառակտեմ թէ պատմեցի.
Վարանիմ երկուց միջի,
Տարակուսիմ յելըս բանի։
Իմ է նորայն թէ պատմեցի,
Զի գլխովն անձըն պարսաւի,
Եւ բամբասանք թէ աստ յիշի՝
Դարձեալ անձին իմոյ լինի։
Երանի թէ լռէի
Եւ ի բազմացն ոչ պատմէի,
Այղ փութացեալ բանս լինի,
Եւ յաւժարի զի ասասցի։
Զի հայրապետն, որ յիշեցի,
Անփոյթ առնէ զեկեղեցի,
Հաւատոյ խնամ չտանի,
Ո՛չ, չար կարգաց թէ խլել պիտի,
Գայթագղութեան պատճառ լինի։
Զթագաւորին կամս հաճի,
Յանդիմանել բնաւ չյաւժարի,
Զի ի փառաց մի ղըկեսցի,
Սուտակասպասք գոլ արքայի,

Եւ հացկատակք յամենայնի։
127բ Առաջնորդ և վարդապետ՝
Թագաւորին կամաւք վարի,
Յանդիմանել ոք չյաւժարի,
Եւ ոչ ի յեղս բանի հայի;
Եւ նա նոցին հետևեցի,
Որ կարծեցեալ սիւնըն կոչի,
Հայրապետական գահիւ պատուի,
Եւ այլ հոգոց բնաւ փոյթ չտանի;
Եւ որ իւրն են ընտանի,
Լիրբք և լկտիք յամենայն[ի]։
Ի բազմաց սուղ զոր յիշեցի,
Փոքր ի վեհիցն աստ գրեցի,
Բանիս ընթացըս կրնքեսցի,
Եւ լռութեամբ եզր կալցի,
Զի մի յանբաւս յառաջի
Կամ սասկագինըն յիշեսցի,
Այդ զոր աստ դըրեալ լինի,
Զկնի եկելոցըդ խըրատ լինի;
Զի թէ չեաք մեք արժանի
Զեաք հանդիպեալ այսմ արքայի,
Ոչ փառամոլ առաջնորդի,
Կամ հացկատակ վարդապետի;
Այդ ըստ գործոց մերոց չարի,
Զհանդիպեցաք արանց բարի,
Այդ դուք որք կաք ըզմեր կնի,
Կացէք ըզգոյշ ձերում գործի,
Զի ձեզ լինի արքայ բարի,
Եւ հայրապետ մաքուր ոգի;
Տացէ ձեզ Տէր միտս բարի,
Վարել զընթացս ըստ աւրինի,
Յիշման առնել զմեզ արժանի
Միշտ ասելով Տէր ողորմի։
Այդ և զաղէտս իմոյ անձնի,
Պատմեմ ձերումըդ հրամանի,
Զի հոգւովս եմ եղկելի,
Մարմինս ցաւաւք միշտ վարակի։
Փափագեմ ամէն տառի,
Աղքատութիւնս ոչ հասանի.
128ա Վերծանութեան||հետևեի՝
Նա գըրչութեան սէրն ստիպի,
Քանքար չգոյր, զի վարձէի,
Մատամբս քանի՜ ես գրեի,
Ընթերցման հոգքն աւելի,

Որ դեգերումն առնէ մտի,
Զժամանակս իմ անբարի
Զայս տարակոյսս ես ծախեցի.
Էր զոր անձամբ ես գրէի,
Էր զոր այլոց գրել տայի։
Յայս միջոցի անձն իմ կոծի.
Եվ վարանի յամենայնի.
Թէ զինչ աւգուտ ինձ յայս ջանի,
Թէ ընթեռնուլ ինձ ոչ լինի։
Մի յոյս միայն գերոյս թողի.
Թէ եկելոյ վայել լինի,
Զի թէ այս ոչ գոյր առաջի՝
Կարծեմ սակաւ գոյր գիր յերկրի,
Որպէս և ես վարանէի.
Աւա՜ղ թէ ընդվայր ջանս իմ լինի։
Եւ ամենայն որ զայս խորհի,
Սակաւ տանի հոգ այս գործի;
Այղ ըստ յուսոյն, որ կայ առաջի,
Միշտ յաւժարեալ գիրս ոք ստացի,
Զի տէրունի բանն լցցի.
Այլոց վաստակ այլում լինի։
Եւ արդ, ի յայս յոյսըս յէցեալ
Անձն իմ գերի և եղկելի,
Իւրաքանչիւր ոք վարձ կալցի.
Ըստ հաւատոյ իւր և յուսի..
Թողի զտառսս ցանկալի,
Զկնի եկելոցդ վայելս բարի,
Ով աւգտեսցի յիշել պարտի,
Զտառապեալս այրի հոգի,
Ծնողաց իմոց և այլ զարմի,
Վերաձայնէլ տէր ողորմի.
Եւ մարդասէրն յամենայնի
Առհասարակ ողորմեսցի,
Որ է աւրհնեալ այժմուս ժամի
Եւ յապագայն աներեկի,
Ամէն, ամէն և եղիցի։

Բ

319բ Աւրհնեալ Սուրբ Երրորդութիւնն անբաժանելի յամենայն արարածոց, ամէն։ Թվ[ին] ՉԻԹ (1280)։

Ով գանձ աստուածային
Սէր իմ ի քեզ բորբոքեցին,
Որպէս փեսայ, որ առ հարսին,
Իմս առաւել քան ըզնոցին;

Ստացայ ըղքեզ և ցնծացայ՝
    Աւշ թէ գործով ընդ քեզ միացայ,
    Ապա թէ այն ոչ լինէ նա՝
    Կարծեմ ընդ վայր աշխատեցայ։
Կաց դու ընդ իս ի յարակայ,
    Զի ես ի սէր քո կապեցայ,
    Մի թէ լինի ինձ յապագայ,
    Հանգչել ընդ քեզ, որպէս փեսայ,
Ի գալստեան բանին անմահ
    Քրիստոս քէն և ի յիս գթա,
    *Որ մեզ ասէ Տէր ողորմեա,
    Ստուգիւ և նա մասն ունենայ;
    Փառք փրկչին, ամէն։

Գ

320ա Մեծապատիւ սուրբ հայրն ընտրեալ՝
    Եւագրիոս անուն կոչեալ,
    Սա ի Յունաց ազգէն ծնեալ
    Իմաստական բանիւ վարժեալ։
Որ ի սրբոյն Բարսղէ խրատեալ
    Յեկեղեցի նորին սընեալ,
    Զկնի մահու նորին տրտմեալ,
    Եւ առ Գրիգոր փութով դիմեալ։
Վասն սիրոյն, զոր էր ստացեալ
    Առ պատուիրանս աստուածարեալ,
    Ի ճանապարհ ընդ նա անգեալ
    Ի Բիւզանդիոն քաղաք հասեալ։
Սա դէմ չարին ախոյանեալ
    Եւ ըզնորին գումղըս վանեալ,
    Յուղղափառաց դասուն պատուեալ
    Եւ գովելի անուն ստացեալ։
Էդեալ նմա ջանըս պատրեալ
    Ջար թշնամին խորամանգեալ,
    Զառնակինն եպարքոսեալ,
    Զի որսասցէ զնա թակարգեալ։
Սըմա և անդ Տէրն յաջողեալ,
    Զուարթնոյն յանուրջ ըզնա խրատեալ
    Տէր սարկաւագ ասէ կոչեալ,
    Զի կաս կապեալ և կաշկանդեալ։
Ի յոչ գիտելն ապաւինեալ
    Վնասու անպարտ զինքն ցուցեալ,
    Ի մանրախոյզ զուարթնոյն լինել,
    Նա զեպարքոսըն պատճառեալ։

Առ նա երդման խնդիր կոչեալ,
Ջուարթնոյն, որ զնա կամէր փրկեալ,
ԶԱւետարանն յառաջ բերեալ
Նովաւ զերթալըն հաստատեալ։
Շտապ տագնապի ըզնա կալեալ,
Նաւարկութեան ի խնդիր ելեալ,
ՅԵրուսաղէմ քաղաք հասեալ,
Անդ դադարումն ի մտի եդեալ։
Անգ հանդերձիւք|||
Եւ զառաջին|||
Բարեբարին նախ|||
Զնա երկար ցաւօք տանջ[եալ]։
Կին մի բարի առ՝[ն]ա հասեալ,
Խրատիւք զնա հանդիմանեալ,
Ըզթէքայիտ նըմա ցուցեալ
Եւ աղաւթիւք նմա աւգնեալ։
Երանելին ստրրջացեալ,
Եւ. զ[կա]րասին իւր բաժանեալ,
320բ Զանձն յԱստուած ապաստանեալ.
Նորին յուսովն յուղի անկեալ։
Րաստոն մեղուի յոյժ նմանեալ,
Ըզթեքայիտ մեծն ողջունեալ,
Անգրաքով վարըս ցուցեալ,
Զարմանալի բազմաց եղեալ։
Տեսեալ երիս արս կացեալ,
Նմա առաջի կարգաւորեալ,
Կլերիկոսք զինքեան ցուցեալ,
Դեւքն որ կամին ըզնա պատրեալ։
Ի Սուրբ Հոգոյն նա զաւրացեալ,
Զչարսն բանիւ յանդիմանեալ,
Զանուն փրկչին նա կարդացեալ,
Զչար ոգիսըն հալածեալ։
Պնդից վարուց զինքն տուեալ,
Բազմաց հրաշից ստացաւղ եղեալ,
Ի ծերութիւն խորին հասեալ,
Եւ աւրինակ բազմաց կացեալ։
Աս* ի բազում գիրս անդ գրեալ,
Խրթնատեսակ շահաւետեալ,
Է զոր յայտնի խրատիւք վարեալ,
Վասն ախմարաց, որ չեն վարժեալ։

---

* Նախագիծ տառերը կարմիր երկաթագիր են։ «Սա» բառի «ա» տառն է պետք եղել ծայրակապ նախադասության համար, ուստի Մովսեսը Ա-ն գրել է մյուսների նման կարմիր երկաթառեր, իսկ «ս»-ն սև բոլորգիր և տեղադրել նրա մեջ, որպեսզի կարդացվի սա։

Տոփմամբ սիրով հոգոյն լցեալ
Երիւք ամաւք յախտէ կացեալ,
Ի ստորնայնոցս հրաժարեալ
Եւ անմարմնոցն պարակցեալ։
Մեծապայծառ վայելչացեալ
Անանց փառացն արժանացեալ,
Բարեխաւս մեզ անդ գտեալ.
Առ արարիչն որ.է աւրհնեալ։
Այլ և Գրիգոր անուն կոչեալ.
Մեծ բարունին և հոչակեալ
Մտաւք յաւետ ի սա նաեալ
Ջերանելոյն գիրս ընթերցեալ։
Գտեալ բղձեր ումն զընտրեալ,
Որոյ Ատոմ անուն կոչեալ,
Շատ փորձանաց էր համբերեալ,
Սա ի նմանէ տեղեկացեալ։
Բաբունաւրէն սմա ասացեալ,
Վասն անճառիցն որ էր ծածկեալ։
Սա դիւրալուր հասու եղեալ,
[Խ]րատով նորին փարթամացեալ։
321ա Այլ և վարուց խստից տուեալ,
Ջանձն իւր ճգանց և աշխատեալ,
Ի յԱստուծոյ վերահայցեալ
Յերկըս բանի նմա աւգնեալ։
Բարձրազընաց թեւակոխեալ
Ջերանելոյն գիրս լուծեալ.
Համառաւտիւ կարգաւորեալ
Եւանթերի բովանդակեալ։
Այլ և ճառիւ ըզսա չափեալ
Թուով մեծաւ գլխաւորեալ,
Քան և չորիւք գլխովք եդեալ,
Որ մեծ խորհուրդ ունի ծածկեալ։
Բաստոք թէ ոք կամի լինել
Մտաւք ի տիպ սորին յառեալ,
Ըստ փիլոնեան կարգին եդեալ
Ունի և սայ ինքն ամբարեալ։
Վասն ճառիցն, որ է եդեալ,
Աոցուք ի ձեռն բացայայտյեալ,
Որ քսան և չորքն է կողեցեալ,
Իյուք մասունս գոյ բաժանեալ։
Այլ դու կալ զմիտս քո հաւաքեալ.
Ջի իմասցիս, զոր կա աստ գրեալ,
Ջի չորք վեցիւք է սա չափեալ.
Եւ վեց չորիւք բովանդակեալ։

Սա դաշխարհիս կարգըս ցուցեալ,
Ի վեց աւուր ստեղծագործեալ,
Ի վեց գարուն Քրիստոս ծնեալ,
Ջծնունդս Ադամայ դոլ ազատեալ։
Նա և չորից թիւն հայեցեալ,
Ի չորք տարերքըս նիւթ ելեալ
Այլ և չորք գետքն բաժանեալ
Յադենական դրախտէն եղեալ։
Եւ ութերիւք գոյ բաժանեալ
Երեք ութիւք լիալցեալ,
Որ սա քըւեա ասի եղեալ.
Զհանդերձելոյն խորհուրդ ունել,
Իխսեալ ի մեզ երիցն ընտրալ.
Հաւատ և յոյս, սէր հաստատեալ,
Երեք անձինք փառաբանեալ,
Երեք սրբիւ մի տէր կնքեալ։
Այլ և երկուք թուովք լցեալ
[Եր]կոտասան թիւն երկրորդեալ,
321բ Երկուց մարդոց նախըստեղծեալ
Երկուց կենաց ժառանդ եղեալ։
Գոլ և փրկչին մերոյ ընտրեալ,
Երկոտասան թիւ առաքեալ,
Եւ նահապետք ի հինն եղեալ
Երկոտասան ականք պատուեալ։
Րոպէից բովանդակեալ
Քսան և չորից միակ եղեալ,
Մի բնութիւն խոստովանեալ,
Ըզբանն Աստուած մարմնով ծնեալ։
Ի երիցունսըն գոյ հայեալ.
Քսան ու չորից թիւըն լցեալ
Զորս որոտման որդին տեսեալ
Որք աթոռով էին բազմեալ։
Եւ մարգարէք սմին նըմանեալ,
Որք տեսանաւղ են անուանեալ։
Տես թէ քանի մըտաւք լցեալ։
Համար ճառիցս, որ է եդեալ։
Ով եղբայրըդ սիրեցեալ,
Որ հանդիպիս տաղիս չափեալ,
Յիշեա զանձն իմ տառապեալ,
Յաւարտ բանիս, որ է շարեալ։
Փրկչին փառս վերառաքեալ,
Եւ մեզ ասել Տէր ողորմեալ,
Եւ դու ունմաս լիով լցեալ
Ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ,

Աչժմ և յաւուրն աներեկեալ,
Յապագային անվախճանեալ,
Այս ամէն բարեբանեալ,
Մի տէրութիւնն երեքանձեալ,
Յաւիտեանից յաւէտ եղեալ,
Աւրհնաբանեալ, փառաւորեալ
Գովեալ, աւրհնեալ և բարձրացեալ,
Անլըռ[ե]լի բ]անիւ աւրհնեալ, ամէն*։

415

ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 3392

Գրիչ՝ Յովհաննէս քահանայ
Վայր՝ Երզնկա

496 Արդ գրեցաւ սա ի մայրաքաղաքն յԵզնկայն, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչին կաթողիկէ եկեղեցւոյն, զոր շինեաց տէրն Սարգիս արհիական եպիսկոպոսն և բարեպաշտն որդի իւր Յոհաննէս։ Գրեցաւ ի թուականիս Հայոց ի ՋԻԹ (1280), ի թագաւորութեանն Լևոնի բարեպաշտի, որդոյ Հեթմոյ, և ի հայրապետութեանն տեառն Յակովբայ, և յարհիական եպիսկոպոսութեան տեառն Ներսէսի՝ թոռին տեառն Սարգսի, և աստուածասէր եղբայր նորին պարոնին Գրիգորիսի, և յաշխարհակալութեանն Ապղա խանին՝ որդւոյ Հուլայուին...

416

ՍԱՀՄԱՆ ԵՒ ԿԱՆՈՆՔ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԵՂԲԱՐՑ, ՈՐՔ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՍԻՐՈՎՆ ՄԻԱԲԱՆԵՑԱՆ ՅԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ ՄԻՄԵԱՆՑ, Ի ՄԱՅՐԱՔԱՂԱՔՍ ՄԵԾ ՅԵԶՆԿԱՅՍ Ի ԹՎԻՆ ՋԻԹ (1280)։

Երևան 2329 (1291 թ.)

Հեղինակ՝ Յովաննէս Եզնկացի
Վայր՝ Եզնկա

Աստ հանդիպելով և ծերունի վարդապետն Գրիգոր Սանահնեցի, որ և գրեցաւ ի գլուխ եղբարութեանս, և ես նուաստ վարդապետ Յովհաննէս Եզնկեցի, գրեցի զՍահման և զկրատ եղբայրութեանս, և զշահաւէտ աւգուտն որ ի սմանէ, առաջնորդութեամբն Սուրբ Հոգւոյն։

* Բ հիշատակարանի տնագլուխ տառերը հոդում են «Ոսկի» բառը, իսկ Գ-ինը, որ գրված են կարմիրով՝ «Մովսէսի աշակերտի՝ պատմագրաբար վասն Եւագրի» (էջ 222ա), էջի լուսանցագարդի շրջանակի մեջ գրված է. «Մովսէսի տէր ողորմի»։

### 417

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 5254

Գրիչ՝ ԳԷորգ
Վայր՝ Դեղձուտի վանք

ա

54բ Որք ազտիք ի սմանէ ղհոգևոր եղբարքս իմ՝ զՎահրամ և ԶՍտեփանոս յաղաւթս յիշեցէք, քանզի մինչ ցայսր վայր զաւրինակն սոքայ շնորհեցին, և ոչ միայն այս, այլև պանդխտութեանս իմոյ մխիթարիչք էին հոգևոր և մարմնաւոր, քանզի ի միում խցի պանդխտանեաք, որ և Քրիստոս հատուցէ զվարձս։ Եւ յայսմ աւուր գնալով սոցա յերկիրն իւրեանց, յԱյրարատեան գաւառն, տրտմութիւն հասուցին ինձ՝ զիս միայն թողլով։ Այլ աչողեսցի սոցա խնամիչն ամենայնի ամենայն ուրեք, ուր և երթայցեն։ Եւ զիս, ԳԷորգ որդի Պաքուտաթոռին, հղա[ւ]րայ յերկրէն Խաչինոյ, ի մեծահռչակ քաւարանէն Գանձասարայ, որ մակացու էի յերկիրս Մահկանաբերդոյ, ի վանս Դեղձուտի, առ ոտս Առաքել վարդապետի, յաղաւթս յիշեսջիք։
Ի թվիս ՉԻԹ (1280) ագոստոսի Ժ (10) գրեցաւ։

բ

125ա ԶԳԷորգ փցուն գրիչ յիշեայ եղբայր աղա[չեմ]ք։

գ

222բ Աւրինակս այսչափ էր, և բանս ոչ աւարտեցաւ, և գիշերի գրեցաւ, զի ըշտապէի։

դ

Գրիչ՝ Աւետիս

47բ ԶԳեորգ ընդրեալ քահանայ, զտէր գրոցս յիշեցի [ի] Քրիստոս, ընդ նմին և զանարժանս զԱւետիսս*:

### 418

### ԱԻԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա, 33, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 49

Գրիչ՝ Պետրէ
Վայր՝ Կիպրոս

ա

335ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն և մի աստուածութեանն Հաւր և Որդւոյ և ամենասուրբ Հոգոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից,

* Հիշյալ էջի գրիչն է։

ամէն։ Ես մեղաւոր հողս Պետրէ նուաստ երէցուկ, Այստուի* որդին, եկեղեցւոյն սպասաւորս, ցանկացա սուրբ Աւետարանիս և կատարեաց Աստուած զփափաքն իմ եւ գրեցի, զի էի ես կարի յոյժ տկարացեալ յաչաց եւ տագնապ մեծ ի մահմետականաց, զի եկին զաւրաւք և հանին զմեզ ի բերդէն պարոնայքն եւ տվին ի մահմեդականքն, եւ զինչ Մսագետան կտրէ՝ առին եւ զբերդերն աւերեցին։ Զի վասն մեղաց մերոց այս ամենայն գործեցաւ, եւ եկաք ի Կիպրոս կղզին, ի դուռն Սրբուհոյ Աստուածածանին, եւ աւարտեցաւ սուրբ Աւետարանս ըստ կարի մերում, զի ոչ էաք ծառայել վարպէտ եւ արուեստի, այլ շնորհաց Աստուծոյ աւարտեցաւ սա։ Աղաչեմ ներել սղալանացս եւ խոշոր ձաքոտանացս, զի յոյժ ցաւաւք եւ տառապանաւք գրեցի, եւ աղաչեմ ներել և թողութիւն խնդրել յանցանաց իմոց, եւ ծնաւղաց իմոց, եւ որդւոց իմոց, եւ մաւր իւրոյ Սառենի, եւ դստեր իւրոյ Ալիծի, եւ որդւոց իւրոց, եւ թողութիւն խնդրել ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, եւ ինք ձեզ թողցէ, եւ որ զամենն ասէ, նմա Տէր ողորմեսցի։

Գրեցաւ ի թվին ՉԻԹ (1280) ի դառն ժամանակիս, զի ազգն Հայոց վարին ոմն այսպէս, ոմն այնպէս, զոր Տէր Յիսուս Քրիստոս առաջնորդեսցէ եւ ուղղեսցէ զգնացս մեր ի ճանապարհս ուղեղս, զի բարերար է Աստուած և ողորմած, և նմա փառք յաւիտեանս։

Զբանն Աստուծոյ զսոսկալիք
Պարտ է յիշել զամէնն ի միտք,
Թէ մի դատիք որ չդատիցիք,
Պոմանս ահեղ եւ արհաւիրք
Տէրունական է սպառնալիք։
Եւ իմ գիտելով զայս սպառնալիք,
Կամաւ նիւթեմ ես ինձ չարիք։
Գրեալ է. Մի՛ դատիք, զի մի դատիցիք։
Վայ տուք ինձ եւ ողորմեցէք,
Եւ Աստուած ձեզ։

Բ

Ստացող՝ Հռոմխաքուն

Ընդ նմին եւ զիս՝ զբազմամեղս Հռոմխաքունս, որ ստացայ զայս, վասն Սուրբ Աստուածածնին ի յիշատակ։

* «Ցուցակում» գրել են «այս տուի||եկեղեցւոյն» ձեւով. այնինչ «Այստու» Պետրեի հայրանունն է, թերեւս՝ Աստուածատուր-Աստատուր-Աստուր-Այստու հապավմամբ։

## 419

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10773

Գրիչ՝ Յովհաննէս Արքեպիսկոպոս
Վայր՝ Գոներ

ա

264բ [Փառք///միա]րուն աստուածութեանն, այժմ և յաւիտեանս, ամէն։
Անմահին՝ մահու մահակիցք՝ և փառաց նորին թագակիցք, հարք մեր
և եղբարք ի Քրիստոս, ժառանգողք սորայ և տեսողք և գաղափարողք,
նուաստս ձեր Յոհաննէս եպիսկոպոս, որդի մեծին և քրիստոսասիրին
Կոստանդեայ արքայհաւր Հայոց՝ ձեռամբ իմով գրեցի զսա յիշատակ
բարեաց՝ ինձ և իմոցն յիշել զհամայնս ի Քրիստոս աղաչեմ, և զձեզ Տէր
յիշեսցէ ի բարի։

265ա Փառք* ամենատուր Երրորդութեանն և մի աստուածաբանութեանն,
ամէն։ Յամին ՉԻԹ (1280) թուականիս Հայոց, ես Յովհաննէս եպիսկոպոս
նուաստ ծառայ Աստուծոյն իմոյ Յիսուսի Քրիստոսի և կրսեր ձեր ծառա-
յակից, որդի քրիստոսասէրեալ և բարեպաշտ իշխանաց իշխողին Կոստան-
դեայ թագապահի և արքայահաւր Հայոց, և եղբայր քրիստոսապսակ քաջ
արքային Հեթմոյ, շնորհիւ ողորմածին Աստուծոյ, և աւրհնութեամբ և
ջանիւ ամենաւրհնեալ հոգի հաւրն իմոյ Կոստանդեայ, եղէ աչցելու սուրբ
անապատին Գոներ կոչեցեալ ի գահս Կիլիկիոյ, ի գաւառն Բերդին Բարձր-
աասցելոյ, յորժամ տիրէր հայրն իմ՝ դղեկին, և կրսերս՝ անապատին,
յորում տաւաղեալ բնակէի իբր անխռով և անքոյթ նաւահանգստի, բերկ-
րեալ միշտ աստուածաշուք տեսլեամբ մեծ նահապետին հաւրն մեր, և
կրթեալ սուրբ տառիւք, տեսի զնորին շինեալ գիւղաքաղաքն յանունն իւր
Կոստընդնոց կոչեցեալ, լի ի Քրիստոս հաւատացելովք բազմաւք՝ առա-
քինի երիցամբք և սարկաւագաւք, ընդ որս խրախուցեալ յանձին կալա
իմովս իսկ մեղսամակարթ ձեռամբքս գրել նոցին զսուրբ Աւետարանս,
յոր և յանկ ելեալ Տերամբ, ի մէջ ամբոխից և պատաղմանց, զի թէպէտ
ոչ էի հմուտ գրչութեան, այլ վասն Տեառն իմոյ Քրիստոսի սիրոյն, նաև
265բ հարն իմոյ և եղբարց ի Քրիստոս‖փոխեցելոց, որոց Տէր ողորմեսցի,
ամէն։

Եւ ես վասն հողացելոցս և մոռացելոցս յիշմանց, գրեցի զսա լաւ և
ընտիր կազմեալ, որպէս տեսանի, և ետու զսոյն ի գեաւղն Կոստընդնոց,
որ էին նախ կարմիր գտակնի կոչեցեալք, յիշատակ մեզ և վայելս ապա-
գայիցդ։ Վասն որոյ աղաչեմ Տերամբ զվայելողսդ, յիշել ի բարին Քրիս-
տոս մերայովք անմոռաց յիշմամբ, և թողութիւն և հանգիստ գտանել
համայն թագաւորեցն մեր, և որք յիշեքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աս-
տուծոյ մերմէ։ Մի ոք յիշխեսցէ իւր առնել հայրենիք կամ յափշտակել,

---

* Այստեղից սկսած մինչև վերջ, 1587 թվականին արտագրել է կազմող Ստեփանոս քահանան, Ատանայում, հավանաբար քայքայված լինելու պատճառով։ Թերևս այդ է պատճառը, որ թվականը «ՉԻԹ» (1280) գրելու փոխարեն գրել է ՈԻԹ (1180), մեկդարյա սխալ գործելով։

կամ գողանալ կամ ծախել, կամ աղաւաղել բան յիշատակի մեր, այլ թէ որ յանդգնի մասն զ[Յո]ւդային առցէ, և որ մեզ լսէ և յիշէ՝ բիւր բարիս ի Քրիստոսէ գտցէ։

Բայց գրեցաւ ի յոյժ տրտմութեան ժամ, զի այս երիցս անգամ քրիստոսատեաց տաճիկքն Եգիպտոսի հրձիգ զամենայն Կիլիկայ արարին, զորս հուրն անշէջ կիզեսցէ զնոսա։

Եւ քրիստոսասէր տէրն իմ և եղբարորդի արքայն Լևոն, իբրև զգթած հայր ժողովէ և մխիթարէ զմնացեալսն, և ես բարիոք պատուաստէ, զոր աջն ամենակալին Աստուծոյ որդւովք իւրովք պահեսցէ միշտ ի չարէ, ի Երկին կեանս թագաւորել։

Այլ և զերջանիկ կաթողիկոսն Հայոց տէր Յակոբ համայն լրութեամբ
266ա եկեղեցւոյ||Քրիստոս Աստուած միշտ պահեսցէ մեր[ձ] իւր, և զամենայն գնեալքս սուրբ արեանն իւրոյ, յինքն միայցուսցէ ողորմութեամբ իւր Քրիստոս՝ աւրհնել զնա ընդ Հաւր և Սուրբ Հոգւոյն յաւիտեանս, ամէն։

Բ

72ա Զգերամաքուր և աստուածարեալ ապագա եղբարսդ մեր, որք վայելէք զսա և ժառանգէք, դատապարտ ծառայս Աստուծոյ և հողացեալ ձեր ծառայակիցս Յոհաննէս եպիսկոպոս՝ արքաեղբայրս Հայոց, աղաչեմ զընաւսդ յիշել զիս ծնողաւքն իմովք և համայն ընտանեաւք և բարին Քրիստոս, թողութիւն, ողորմութիւն և հանգիստ գտանել այժմ և յապագայն, զի ի մէջ յոլով հոգւոց մատամբք իմով գրեցի, և Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

Գ

120բ Մշտածարաւք աստուածահոսք և յորդաբուխ վտակացս որք արբէք ի սմանէ և զմայլիք զծարաւիս փրկութեանն Աստուծոյ, և ձերդ բարի յիշման, զստացող սորա և գրող զՅոհաննէս եպիսկոպոս արքաեղբայր Հայոց ծնողաւք մեր և ծննդաւք նոցին և համայն ընտանեաւք և ուսուցչաւք յիշել հայցեմ զսրբազանիցդ դաս զմեզ ի բարին Քրիստոս, փրկութիւն, թողութիւն և ողորմութիւն և հանգիստ գտանել այժմ և յապագայն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ...

Դ

199ա Զաստուածարեալ հարսդ մեր և զեղբարսդ ի Քրիստոս ծառայակից կրսերս ձեր Յոհաննէս եպիսկոպոս արքաեղբայրս Հայոց՝ գրող սորա և ստացողս, աղաչեմ յիշել զմեզ՝ ծնողաւք մեր և ընտանեաւք ի բարին Քրիստոս...

420

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երեւան 355*

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ (Մուղնու) ս. Գէորգ

ա

*Փառք սուրբ և կենդանարար Երրորդութեանն, մի աստուածութեան, Հաւրն և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

308ա *Սուրբ Աւետարանս յաղագս իմոյ՝* Յակոբոսիս *նուաստի հոգւոյ և մարմնո փրկութեան, և ծնողաց իմոց* Մելքիսէդեկ *քահանայի և* ըՌիճա-նայ, *և եղբարց իմոց միշտ յիշատակ սա եղ[ի]ցի ի դրան Սուրբ Գէոր-գա զաւրավարի, տղա Մարտիրոսի, զոր և ես նուաստ ծառայս Աստուծոյ* Յակոբոսս *աւանդեցի զսայ իմ հայրենի էկեղեցոյս Սուրբ Գէորգա։*

*Արդ, գրեցաւ այս սուրբ Աւետարանս ձեռամբ* Սիմէոնի *մեղաւորի, ի յընտիր աւրի[նակէ], առ դրան Սուրբ զաւ[ր]ավարիս Գէորգայ, ի թուաբերութեան Հայոց ՉԻԹ (1280), ի հայրապետութեան տեառն* Յա-կոբայ *եւ եպիսկոպոսութեան տէր Համազասպայ՝ առաջնորդի մեծա-փառ տանն* Յովհաննու:

բ

86բ *Աւաղ մտացս սխալելոյ, և թողութեան ձեզ մեղ առնելոյ։*

գ

123ա *Եւ զմեղաւո[ր]* Սիմէոն *[յիշ]է աղաւթ[ս]*։*

դ

132բ *Զտառապեալս ի բարեաց, աղաչեմ յիշել ի Տէր. ո՞վ մանկունք եկե-ղեցոյ։*

ե

148ա *Աւաղ տղացս բարբաջմանս և իմ մտաց սխալելոյս։ Եւ այսաւր տաւն էր Բարսղի Հայրապետին /// տանէին։*

զ

307բ *Տաւրինակն հայնց էր գրած, թէ այս սքանչելի գթութեան շնորհ ի Քրիստոսէ՝ ի հեբրայեցի Աւետարանէն աստ եդաւ, որպէս ասէ* Եւսէբի**։

* *Գրված է լուսանցաղարդի մեջ։*
** *Գրված է «Իբր կնոջ շնացելոյ» հատվածի առթիվ։*

է

Ծաղկող

212ա Ձնկարող սուրբ Աւետարանիս յիշեա, ասելով՝ Տէր Աստուած, ողորմեա ծաղկողի սորա, ամէն*։

421

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2746

Գրիչ՝ Եղբայրիկ
Վայր՝ Քարայատակ

ա

248ա Փառք քեզ [եղ]ակի, անեղի, եռայհիւսկ [ե]ւ մշտապայծառ դաւանութենն յամենայն արարածոց եւ ի բնաւից եղականաց, ամէն, որ արժանի արար զմեռեալս մեղաւք հասանել ի վերջին դիծ սրբոյ Աւետարանիս։

Բայց դրեց[ա]ւ յամի եւթն հարիւրորդի քսաներորդի իններորդի (1280) ամ[ի] տումարիս Հայոց, ի ձեռն դառնացելոյ ումեմն սուտանուն [գ]րչ[ի] Եղբայրիկ կոչեցելոյ, ի Քարայյատակ տեղւոջ, ուրեք որոյ
248բ հանդէպ կայ մայրաքաղաքն Կարս, ուր ես միայնացեալ նստեի ամենայն չարեաւք եւ դառնութեամբ լի, ըստ խնդրոյ պա[տու]ական եղբաւր միոյ Խիկար քահանայի։ Եւ աւրինակ սորայ գրեցաւ ձեռաւք իմովք յերկուց ընտրոց աւրինակաց։ Եւ այս տ[ա]ռն եւ վեց Աւետարան, որ [գ]րեցի շնորհաւքն Քրիստոսի։

Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սուրբ մաւր քո, եւ սրբոց քոց առաքելոցդ եւ աւետարանչացդ, գթայ ի Խիկար ստացաւղ եւ իւրսն ամենայն, և Եղբայրիկ եւ ի նախնիս նորին, և յայնոսիկ որք Աւ[ետ]արանիս ըն[ձ]այաբեր լին[ին], եւ տուր նոցայ զկեանսդ քո յաւիտենից, ամէն։

բ

247ա Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սիրելի առաքելոյ եւ աւետարանչիդ քո Յովհաննու, գթայ ի պատուական եղբայրն իմ Թադէոս քահանայ, եւ տուր նմայ զարքայութիւնդ յերկնից, ամէն։

գ

72բ Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սուրբ մաւր քո եւ սրբոյ աւետարանչիդ քո Մաթէոսի, գթայ յԵղբայրիկ մեղաւք մեռեալ աշխատողս, և յիւրսն ամենայն, եւ ի Խիկար ճգնազգեց քահանայ՝ ստացող սորայ, և ի նախնիսն նորայ, եւ տուր նոցայ զկեանսդ քո յաւիտենից և ամենայն քրիստոնէից երկրպագուաց սուրբ անուան քո, ամէն։

---

* Դժբախտաբար ծաղկողը անունը չի տալիս, և անհայտ է մնում ուշադրության արժանի նկարների հեղինակը։

## 422

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6333, Բարղամյան, Ցուցակ, էջ 26ր

Գրիչ՝ [Յովհաննէս]
Վայր՝ Քարատնիս

Այլ եղև գիծ սորա ի տունս Սիւնեաց, ի սուրբ մենաստանս, որ կոչի Քարատնիս, ի դուռն Սուրբ Աստուածածնիս, ձեռամբ մեղապարտ և թարմատար գրչի, զոր առեալ զնոյն ինքն զծնաւղս բարեխաւս առ ծնեալն տանել իմում տկարութեանս։ Եւ մի իսպառ տալ զանձն պատուահասական հրամանաց, և նովին երաշխաւորութեամբ աւարտեալ եղև ի թուականութեանս Հայկազեան տումարի յեւթն հարիւրերորդի քսաներորդի իններորդի (1280) ամին, ի բռնակալութեան ազգին Նետողաց, որոյ կայսրականին Ապաղա խաճ անուն ճանաչիւր, և ի դիտապետութեան Հայոց տեառն Յակոբայ, և յառաջնորդութեան տանս Սիսականի տէր Հայրապետայ և տէր Յոհաննէսի, մականորդ սուրբ տաճարացս, և յիշխանութեան Տարսայճին:

Արդ, ես յոգնամեղ և ամենաթշուառ և յետինս ի գծողս անկեալ ի յերկիր սրտահառաչ կականալուր ձայնիւ պաղատեմ [մի զ]տառապեալս և զեղկելիս հարազատական բերանով գորովադատ պատժել, քանզի ի հարկէ և ի ժամ տագնապի բաժանվեցաւ ի մէնչ։ Եւ արդ, մեք զայս կրկին հայցեմք, զի զնախաճառեալ եղբայրն զՅոհաննէս, զստացող սորա, և զհամաշահոս յաղաւթս ձեր մասնաւորել, վարկանեսջիք ընդ նախ և զմեզ մերայնովքն։ Եւ զի մարդասիրութիւնն Աստուծոյ ոչ տարամերժէ զմեզ, հայեցեալ ի ձեր խնդրուածս և ի մեր յոյսն ապաստանի, այլ ի միասին փառաւորեսցէ զմեզ իւրովք պաղատանաւք, և դուք և մեք ի միասին գոհանալով փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգի այժմ և միշտ... ամէն։ Զհոգևոր և զպատուական եղբարսն զՍարգիս և զՎարդան, որք երախտաւորեցան մեզ և եղեն աւգնական և կամակից ի գիծ տառիս և զայլ համաւրէն եղբարսն յիշատակի և բարեաց մասին արժանի արասցէ Տէրն մեր Յիսուս Քրիստոս, և նմա փառք յաւիտեան*.

## 423

### ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ, ԹՈՒՂԹՔ ԿԱԹՈՂԻԿԵԱՑՑ

Երևան 6333, Բարղամյան, Ցուցակ Վասպուրականի, էջ 54բ—55ա

Գրիչ՝ Դանիէլ
Վայր՝ Ձեւաղի գեաղ

ա

Ի թուին ՉԺԹ (1270) գրեցաւ պրակք Առաքելոց, ձեռամբ Դանիէլի անարժանի, ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց, և ի վայելումն որդոց իմոց

* Հիշատակարանի վերջում Բարղամյանը գրում է. «Եկեղեցոյն կոնդակին նայելով՝ Լենկ Թիմուր տասներկու բեռ հայ գրեանք բարձած՝ սոյն Ամուկ քաղաքի Հայոց տէր Փիլիպպոս

Գրիգորին և Քահանայապետին, զորս փրկեսցէ Քրիստոս յամենայն փորձութենէ, ամէն։ Որ ոք հանդիպեսցի սմա անմոռաց յիշեսցէ զգրող սորա, և զծնողսն իմ, և զեղբարսն. և Քրիստոս Աստուած, որ առատն է ողորմութեամբ մեզ և ձեզ ողորմեսցի, ամէն։

Բ

Փառք ամենասուրբ երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ի յեւթնհիւր որդի. քսաներորդի և իններորդի (1280) թուաբերութեանս Հայոց, ի թագաւորութեանն մեծին Լևոնի՝ որդոյ թագաւորին Հեթմոյ, ի հայրապետութեանն Յակոբայ րաբունոյ, գրեցաւ սայ ձեռամբ Դանիէլի նուաստս ի քահանայս, ի զեաւղս Գեւաւղի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին։ Եւ արդ, երեսս անկեալ աղաչեմ զամենեսեան թողութիւն մեղաց հայցել ի Քրիստոսէ ինձ և ծնողաց իմոց և ամենայն արեանառուաց և յիշողացդ ե յիշել[ոցս]///

424

ԱՒԵՏԱՐԱՆ

Կոնիբեր, Ցուցակ Լոնդոնի, էջ 12—13

Գրիչ՝ Ստեփանոս Վանկայցի
Վայր՝ Սիս

ա

312 Փառք ամենասուրբ Երրորդութեանն։ Գրեցաւ ի թուիս Հայոց ՉԻԹ՝ իաւթն հարիւր և քսան և ինն (1280), ի մայրաքաղաքս Սիս, ընդ հովանեաւ Սուրբ Հոգւոյն, որ յայսմ ամի վերստին նորոգեցաւ պատուական քարամբք՝ քերեալ ի ճարտարաց, ձեռամբ Ստեփանոսի Վանկայցւոյ, և ծախիւք և հրամանաւ Սոսթենէս րաբունոյ, որ էր վարժ և կիրթ ամենայն դիրս աստուածային՝ հնոցն և նորոցս և արտաքին փիլիսոփայիցն գեր ի վերոյ՝ որ և ի ժամանակիս մեր՝ և ի թագաւորութեանն Լևոնի և ի հայրապետութեանս Յակոբայ՝ Ոչ ոք է կատարեալ իբրև զսա յամենայն իմաստս, բայց ի մեծ րաբունեաց րաբունոյն, որոյ անունն ցաւղէ քաղցր, որ և Վահրամ կոչի...

Բ

252 Որդի Աւշնի տեառն Կոռիկոսոյ, և եղբաւր թագաւորի Հայոց Հեթմոյ, առաջնոյ ստացաւղ յիշեսջիք ի Քրիստոս։

---

անուն քահանաին տան իջեանելով՝ և անոր սուրբ վարք ու բարքը տեսնելով՝ այս Աւետարանը ընծայ կտայ անորն։ Աւետարանը կոչվում է «Կարմիր թագաւոր հրաշագործ Աւետարանս» Գրիչը, ըստ ավանդության Հովհաննես Ոսպնակեր վարդապետն է։

Լանկ-Թեմուրի կողմից գերեվարված ձեռագրերի այս առասպելախառն պատմության մասին ժամանակակից հիշատակարաններում որևէ տեղեկություն չի պահպանված։

## 425

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Ա, էջ 215*

*Գրիչ՝* Գրիգոր.

*Արդ, ես նուաստ հողս* Գրիգոր *աբեղայս, ծոյլս և անարժանս ի կրանաւորս, և շնորհիւն Աստուծոյ և ողորմութեամբ նորին դրեցի զսուրբ և զկենսունակ Աւետարանս ի պայծառութիւն մանկանց նորին։ Գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՉԻԹ (1280), ի առաջնորդութեան* Պաւղոս *եպիսկոպոսի, ի սուրբ և ի գերահռչակ անապատիս որ* Փրկչի վանք *կոչի, ի դուռս Սուրբ Փրկչիս և Սուրբ* Երեւմանս *և Շամունեայ և աստուածընկալ Սուրբ Նշանիս, որ աստ կայ։ Արդ, աղաչեմ զձեզ մանկունք Նորոյ Սիովնի, որք հանդիպիք այս սուրբ և աւետաքարոզ Աւետարանիս, կարդայք, աւգտիք, և կամ աւրինակէք, յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփծուն և զխոշոր գրչակս* զԳրիգոր *աբեղաս, և զծնաւղսն՝* զԳրիգոր *Ներկրար, և զմայրն իմ զ*Շուշան խաթուն, *և զմղտեսի* Մելիք *մայրն իմ, որ բազում աշխատութեամբ սնոյց զիս...*





## 426

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԽՍԱԽԱՑ ԴԱՒԹԻ ՔՈԲԱՅՐԵՑՒՈՅ

*Երուսաղեմ 1758, Պողարյան, Ցուցակ Զ, էջ 89—93*

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Մշակավանք

ա

419 *Փառք փառաց փրկողին տիեզերաց Քրիստոս յուսոյն մերոյ, ընդ*
*Հաւր իւրում բարերարի եւ Սուրբ Հոգոյն ճշմարտի, յաւիտեանս յաւիտե-*
*նից, ամէն։ Յանկ ելեալ կատարեցաւ հոգելից մատեանս այս Մեկնու-*
*թիւն համարձակախաւս եւ աստուածաբան մարգարէին Եսայեայ, ի*
*թուականութեանս հնոյ ըստ Հայոց ՁԼ (1281), եւ նորոյս շրջանի միոյ*
*հարիւրոյ և ՂԷ-ից (197+1084=1281), ի տանս* Արևելեան, *ի վիճակիս*
*գերապանծ և բարձրապատիւ սուրբ ուխտին* Հաղբատա, *ի գաւառս* Գու-
գարացւոց, *ի սուրբ և ի հրաշազարդ մենաստանս* Մշակավանք *կոչե-*
*ցեալ, ի խնդրոյ երիցս երանեալ առն Աստուծոյ՝ աստուածազարդ րա-*
*բունւոյն եւ անյաղթ վարժապետին* Ներսիսի, *որ է ի* Տարաւն *գաւառի*
*Վասնզի ի ձեռն նամակի ի վերագրեալ նահանգէն խնդրեաց զսա, և զայլ*
*բազումս գծագրել իմոյ եղկելի անձինս, որ կոչիմս* Բարսեղ: *Եւ մեր ի*
*նորին խնդրոյ գծեցաք զսա փանաքի և անյարմար տառիւ, զոր Տէր Աս-*
492 *տուած վայելեալ տացէ նմա զսա, ի յաւուրսն ան||թիւս և յամս հազա-*
*րաւորս՝ ի շահ և ի յաւգուտ իւրո անձինն եւ նորին աշակերտելոցն, ի*
*փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։*

*Բայց գրեցաւ սա ի յաւրինակէ մեծիմաստ և կորովաբան վարդա-պետին* Դաւթա, *որ է հանգիստ նորա ի գերահռչակ սուրբ ուխտին* Հաղ-բատ, *և մականուն* Քոփերեցի *կոչեն, վասն ծնաւղացն անտի լինելոյ և նոյն ինքն անտի ծննդեամբ։ Եւ զի ժողովեալ է սորա զբանս երից մեկըն-չացն սրբոց, որպէս ցուցանէ իւրն յիշատակարան, եւ անուանէ զինքն քահանայ միայն՝ զբարձրագոյն պատիւն ծածկելով՝ զվարդապետականն անուն, և այն վասն յոյժ խոնարհութեան և անանպարտաւան մտացն, զոր կալեալ է սուրբն այն այր։*

*Բայց զի երկուցն սրբոց բանքն* Կիւրղի *և* Յոհաննու *ոչ գա ի յաւարտ գրոցս, որպէս ցուցանէ յիւրաքանչիւրսն զկայն առեալ, զոր մեք նշա-նագրեցաք զտեղիսն, անգիտանամք զպատճառն։ Եւ զայս զի յիշեցաք այսու պատճառաւ, զի մի կարծիք լիցի թէ այլ ոք գծելով զսա, ոչ է գրել զերկուցն բանս զինչ և իցէ պատճառ. զի այս գիրք այլ ոչ է աւրինակել*

անդից և այսր, որ մեք գծեցաք, բայց ի նորին աշակերտէ և արեան հարազատէ Մխիթար վարդապետէ, որ նորին հրամանաւ սրբագրել է զնորին երկն աշխատութեան։ Բայց ոմանք ասեն ի նոյն սուրբ ուխտն, և այն թերևս կարծեաւք, թէ ի Դաւթայ սկզբնաւորել և ոչ ժամանել ի յաւարտն, փոխի մահուամբ ի սրբոցն կայանս, և աւանդէ զթերին ի լրութենէ վերագրել աշակերտին իւրոյ, յանձն արարել զի յաւարտ հասուցէ, և նորա միայն զԵփրեմին սրբոյ բաւական համարել գրէ, և զայլ ոչ ևս։ Բայց ոչ սա իրաւունս այսմ այսպէս լինել յիշատակարանդ նորուն Դաւթա, որ ի կատարած գրոցդ եդեալ է, ապա թէ ոչ յիշատակարանդ ոչ է գրած նորուն Դաւթա, այլ Մխիթարա և վասն երկիւղածութեան իւրոյ անձինն, վարդապետին տա զիւր աշխատութիւն, ի նորայն խառնելով և ի նորա յանուն և զյիշատակարանն գրէ։

Արդ, եթէ այդպէս է թէ այսպէս՝ անդիտելի է, բայց յիշատակ նոցա աւրհնութեամբ, եւ աղաւթք նոցա ի վերա ամենայն քրիստոնէից, ամէն։

Արդ աղաչեմք զամենեսեան ճաշակողացդ յայսմ սեղանոյ յոքնաւրեն և ախորժահամ հանդերձելոյ, յիշեսջիք ի Տէր նախ զերանեալն այն և ցանկալին հրեշտակաց, զպետն բաբունեաց զՆերսէս՝ ստացող գրոցս, ընդ նմին և զարքեպիսկոպոսն զտէր Յովաննէս՝ զաթոռակալն գերահըռչակ սուրբ ուխտին Հաղբատա, որ զաւրինակս շնորհեաց, ընդ նմին և զՅոհաննէս րաբունի՝ աշակերտ նորուն Ներսէսի, որ առ մեզս է, և գնաց ի մէնջ, եբեր զաւրինակս առ մեզ աւուր միոյ ճանապարհ բարձեալ ի վերայ թիկանց ողինն իւրոյ, ընդ նմին և զհամաւրէն բնակիչք սուրբ ուխտիս Մշակավանից, որք են հանգիստ և հոգաբարձու եղկելի անձին իմոյ, որ իբր զգազան կատաղի արգելեալ կամ ի խցի աստ՝ մերձ ի սուրբ ուխտս։

Եւս առաւել յիշեսջիք ի նոյն եղբարցս զերկուսն զայն, զԽաչատուր և զԱւետիսն, որ են ըստ հոգւոյ հարազատք, միաշաւիղք և զուգակցորդք, հաւասարք և համապատիւք, որ ըստ իւրեանց ծնաւղագութ բարուցն և սիրայեղձ կամացն այնքան հոգացան առ մեզ զգործ սիրոյն, որ անցանէ զանցանէ զբնութիւն ամենայն համացեղիս հողածնելոցս, և միայն աստուածազգեստից անձանց համեմատի սոցայն գութ և սէր։ Զի զամենայն տրպիսութիւն պիտոյից մերոց, զգեստուց և զկերակրոց լի և պատարուն հոգաին զմեր, և այն ոչ ատարաբար և կամ ի հարկէ, այլ այնքան զուարթ եւ ուրախ կամաւք, որ այնպէս համարէին, թէ ի յառնուլ են ի մէնջ և ոչ թէ տալ։

Յիշեսջիք և զնոցայն սրբասնունդ պատանիսն, նախ զՍարգիս, քահանայն և ապա զնուիրեալ աշակերտսն զՅակոբոս, զՄարաիրոս, զՅովաննէս, զՀայրապետն, զՄխիթար:

Յիշեսջիք և ի յաւարտ յիշատակիս զՄխիթար քահանայ, որ զթուղթս կոկեաց այսու յուսով, զի յիշատակեսցի անուն իւր ի զգիրս յայս։ Ընդ նմին եւ զբազմասխալ եւ զմեղսաներկ զիմս անձն, զկարաւտս ողորմութեանն Աստուծոյ զգծաւղ սորա, որ կոչիմս Բարսեղ, զի գծեցի զսա յոյժ աշխատութեամբ, խաւարեալ ակամբ և մթացեալ լուսով, զոր և զկեր-

պարան ներքին մարդոյն երեւելիս ցուցանէ։ Եւ որք յիշէք զոր ասա զծալ են, յիշեալ լիջիք և դուք ի Քրիստոսէ Աստուած ուրհնելոյն յաւիտեանս, ամէն։

Յիշեսջիք և զհայր վանիցս զԲարթուղիմէոս, զի այց արասցէ նմա Տէր եւ դարձուսցէ ի չար բնութենէ իւրմէ ատ, և ի հանդերձեալն քաղցր դատաստան արասցէ նմա, թողլով նմա զոր մեղ յանցանէ, ամէն։

Այլ դու, ո՜վ աստուածարեալ և հոգիանորոգ սուրբդ Աստուծոյ, ընկալ ի քոյոյ նուաստ ոգի ծառայէ զսակաւ տարազս աշխատանաց և վաեւլեա բերկրալի սրտիւ ի համադամս դորա, թողութիւն շնորհելով խոշորութեան գրիդ, եւ տղալանաց բանի, թէ հանդիպիս՝ ծնողաբար ուղղեա ըստ քում քաղցր բարուցդ։ Բայց զփոխարէն մերոյ աշխատանացդ աղաչեմ ի ձեռն յորդահոսան արտասուացդ և ընդունական աղաւթիցդ ի հանդերձեալն ինձ ջահաւորեա, զի ի ձեռն աղաւթից ձերոց գտայց ողորմութիւն բազմադիմի յանցանաց իմոց ի Քրիստոսէ Աստուծոյ աւրհնելոյն յաւիտեանս, ամէն, եւ անդր քան զյաւիտեանս, ամէն։

Նաև ընդ վերահամբաւեալդ առն յիշեսջիք զհետևողս սորին, զտհաս և զպարզամիտ պատանի Եսայի, զի Աստուած տացէ նմա արթուն հոգի։

Բ

Ի մարգաց ԺԳ (13) սկիզբն եղև, ի նաւասարդի ԻԱ (21) կատարեցաւ*։

Գ

Սկզբնեղագունին ամենայն սկսմանց, անսկզբանն Աստուծոյ Հաւր, եւ որ ի նմանէ է անժամանակաբար ծնեալն Որդւոյ համգունակցի նորին ամենայնիւ, ելողին ի Հաւրէ Սրբոյ Հոգւոյն համազոյգ Երրորդութեանն ամենայն փառք, պաշտաւն և երկրպագութիւն ամենեցունց, և ի յերջանիկ ծառայէն Աստուծոյ Ներսիսէ, եւ ի նորին զաւակէ Բարսղէ, յամենայն յաւիտեանս, և յանկէտն յաւիտեան, ամէն։

Դ

191 Ի յասմն վայրի յիշեսցի ի Տէր ցանկալին հրեշտակաց և ճշմարիտ պատկերն Աստուծոյ և Հաւր, իմաստալեղձ րաբունին Ներսէս, ընդ նմին և ընդունակս խելագարութեան անպիտան գծողս Բարսեղ։

Ե

495 Գրեցաւ աղիւսակս այս ի զաւրութիւնն Քրիստոս և քառամասունս, էժ-ան տառիւք։ Եթէ զմուտն կամիցիս գիտել, ունի աղիւսակս ԺԴՌՌՃ մասն ի բազմապատկացն համարոյ։ Դրունք բազում են, նոյն եւ աստիճանք, թուով ԿՐ։ Բայց ակն ունիմ թէ դժւարաւ մտանես, եւ կամ բնաւ ոչ։

* Գրված է էջի ստորին լուսանցքում։

Բայց սեւադեղն եւ կարմրադեղն ոչ միապէս վարի, այլ որպէս կարասցես հասու լինել, եւ զտառապեալս հոգով յիշել ի Տէր զԲարսեղ գրիչ*։

427

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1324

Ստացող՝ Բարսեղ վարդապետ
Վայր՝ Հաղբատ

ա

356բ ԶԲարսեղ սպասաւոր բանի, որ և զգիրքս գրեցի խոշոր և անյարմար, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր։

Ի ծաղկերանգ մարդս և յամենավայելուչ դարաստանս բուրաստանաց, և կամ թէ ի դրախտս յոքնազանս յորժամ մտանէ ոք ախորժելի է նմա յորժամ մնալ անդէն, և վայելեալ տեսանելեաւքն, հոտոտելեաւքն, և ճաշակելեաւքն, ի զունոցն, ի հոտոցն, և ի համոցն, սակայն չէ հնար յարամնալ անդէն, և վայելեալ միշտ ի նոյն, վասն զի գոն և այլ յոլովակի հոգք խափանիչք, նայ և ի գալ ձմերայնի խամրի ամենայն և ոչ բնաւին երևի տենչողացն։ Բայց աստուածատունկ բուրաս[տ]անք և դրախտ հոգելիցք և իմաստութեան տունկք, հանապազ կանաչեալք և յաւետ ծաղկալիցք և բարեպտուղք են, և որ ախորժէ ոք վաելեալ ի նոցունց՝ չիք ինչ արգել։ Ուստի վաելեալ կամելով նուաստ և ապիկար ոմն Բարսեղ կոչեցեալ, նմանել տկար մեղուի՝ անժոյժ թեւաւք ընթացաւ ի մարդս աստուածային և յոքնազան բուրաստանս հոգէկեցոյց բանից հարցն սըրբոց առնլով ի նոցունց բանից որքան կարացի, լինել ձեռնտու և նպաստ աւգնականութեան տկարութեանս իմոյ, նայ և վստահ եղեալ յաղաւթս
357ա և ի բարէխաւսութիւն նոցունց որք յիշատակել են ի սմա,‖զի նոցին մաղթանաւք ողորմի Քրիստոս մեղուցեալ հոգո իմո։ Վասն որո աղաչեմ և առ ոտս անկեալ պաղատիմ, որոց լիցի սայ առիթ աւգտութեան և կամ յետ մեր ժառանգէ ոք զսայ, յիշել զանարժանութիւնս մեր միով այսու

---

* Գրված է շեղանկյուն քառակուսի աղյուսակի չորս կողմը, որի մեջ բոլոր ուղղություններով կարդացվում է պատվիրատուի անունը՝ «Ներսէս վարդապետ»։ Աղյուսակից ներքև գրված է այլ գրչությամբ՝ «Սև և անհարթ. «Սովորութիւն է մարդկայինս բնութեան յանաւգուտն առաւել աշխատել քան թէ յաւգտակարն, մանաւանդ որք կամիցին կարծրագոյն ոսկր ձգել ի միջի, որ բազմաց անգծելի լիցի, որպէս եւ յառաջիկայէս է տեսանել։

Եւ արդ, այսպէս իմա զմուտ սորա ի Դ Նուէն սկսիր. որ ի մէջն է, չոր եւ կամիս, Նու առ եւ գնա ի յԵշն. յոր եւ կամիս, եւ յեզրէն ի ներքո եկ դէպ ի մէջն։ Կարմիր գիրն նոյնն է զինչ դրած է, ու զսեաւն զմին տասն կալ ու զտասն մի, զհարիւրն հազար կալ ու զհազարն հարիւր, ու զկարգին զդրերն փոխէ՝ անսխալ է։

Ապա թէ դիւրին խնդրես այսպես տես. յԵշն ի ներս Զայն Րէ է, ու Հռն է է, Զին Վով է, ու Ժէն՝ Այր. Ծայն Եչ է, ու Բենն Ինի է. Տոյնն բոլոր եղերին ամէնն Նու է, Հօն որ ի մէջն է՝ յետի գիրն է, որ երբ յամենայն կողմանց ի ներս դայ մէջն է աւէ, որ աւէ թէ «Ներսէս վարդապետին է»։

Հաջորդ էջում նոտրգրված է «Աղիւսակիս ի միւ․ դիմին զինչ սև կայ համարքն է, եւ կարմիրն բնագիրն է, եւ իւր անունն, որ է, Ներսէս Վարդապետին է գիրքս»։

*աղերսիւ. Տէր Յիսուս ողորմեա մեղուցեալ ծառայի քո* Բարսղի *ստացողի գրոցս, և Հազարդեղի նորին հարազատի, յառաջագոյն ի Քրիստոս գնացելո, և այլոց ևս եղբարց և ազգականաց, միանգամայն և ծնողաց իւրոց՝ ի գալստեանն քում, և որ յիշէ զմեզ սրտի մտաւք, յիշեսցի և ինքն ի Քրիստոս, ամէն։*

*Եւ է որ գրեցաւ իմով ձեռամբ խոշոր և անյարմար, և է որ ի ձեռս այլոց՝ ի հալոյ արդեանց իմոց, ի գերահռչակ ուխտս* Հաղբատայ, *յորում եղէ արժանի կոչիլ սպասաւոր բանի. յաղագս որոյ ծաղկաքաղ արարի սագս իմո պիտոյից, նայև զաւակ հոգևոր զկնի ելից մեր ի կենաց աստի։*

*Եւ եղև աւարտ սորին ի մերումս թուականի ևթնհարիւրորդի երեսներորդի (1281), շնորհաւք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յուսոյն մերոյն, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտեան, ամէն։*

Բ

54բ—55ա *Աւաղ, զի խառնակ և անաւգուտ գրեցին զգիրքս և ես խիստ եմ փոշիման, զի զայս պատճառ էր գրաւղն՝ թէ քարտեսս անաւգուտ է, այլ գրաւղն էր անաւգուտ և թանաքն։*

Գ

325բ *Որք հանդիպիք այսմ աստուածաշունչ երգարանի, զանպիտանս* Բարսեղ *սպասաւոր բանի և զեղբայրն իմ* Գոզիկ *և զամենայն ազգաինսն յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեան։*

Դ

Գրիչ՝ Յոհանէս

96բ *Աստանաւր յիշեսցի ի բարի ամենագով եղբայրս* Բարսեղ, *որ ետ գրել հալալ արդեամբք իւրով։ Ընդ նմին յիշեսջիք և զմեղապարտ գրիչս և մի մեղադիր լինիք, զի ծեր և տկար և պակասել ի լուսոյ։*

Ե

202բ *Ողորմեսցի Քրիստոս Աստուած սպասաւորի բանիս* Բարսղի *և մեղաւոր և յետին գրիչս* Յոհանիսի, *ամէն։ Զի և յոյժ նեղիմ յաւրինակէս, և այն, զի պակասել ի լուսոյ և տկար մարմնով և անցեալ զաւուրբք**։

Զ

47ա *Աւաղ վատ նիւթիս։*

---

* *Անմիջապես հետո, այլ գրով գրված է. «Սուրբ Բարսեղի հայրապետին տոնին Ա ւր պատարագ* Բար[ս]եղ *վարդապետին առնեն անխաբան, և յիշէն զամենայն ազգ նորայ; Յիշեսջիք և զմեղուցեալ* Դաւիթս»:

Է

65ա Վայ նիւթիս արնաւղն։

Ը

Գրիչ՝ Աբրահամ

442բ Սուրբ Աստուածածին բարեխաւսեա առ քո Որդին միածին ազնեւ Բարսեղ վարդապետին, և ողորմել ծնողաց նորին, որ ստացաւ զգիրքս զայս ի հալար արդե[ան]ցն, և բարեխաւս Աստուածածին, և վասն մեղապարտ և փծուն ծրողի Աբրահամա, և ծնողաց իմոց, և Վարդան հոգեւոր եղբաւր, որ շատ սպասաւորութիւն արար մեզ։

Թ

359ա Բարսեղ եղբայր իմ սիրելի,
Եւ արժանաւոր սուրբ բաբունի,
Ընդրեալ և սուրբ և գովելի,
Եւ առիւծոյ հոգուն ի լի,
Արթուն հովիւ ընդրեալ հաւտի...
Դու հրեշտակ ես իմ մարմնի,
Եւ սերոբէ տաղաւարի,
Ընկալ զսակաւ գիծս ի քարտի,
Եւ զմեզ յիշեա ի ժամ պատեհի,
Եւ դու կարող ես յամենայնի
Քրիստոս առ քեզ միշտ էաւց[ի]
Ինքն աւրհնեալ յամենայնի։

Ժ

471բ Ո՜վ սուրբ հարք և եղբարք [աստուածա]սէրք, աղաչեմ վասն Քրիստոսի՝ խոշորութեանս և ծռութեանս թողութիւն ա[ր]արէք, զի կարի փծուն և տխմար եմ և անմի[տ]։ Քրիստոս Աստուած քո մաւրա անարատ կուսիւ և պ[ա]տուական խաչիւ և Յովաննու կարապետին և Սրբոյ Ստեփանոսի նախ և ամենայն սրբոց բարէխաւսութեամբ ազնեաւ Բարսեղ վարդապետին և ողորմէ ննջե[ցե]լոց սորա, որ ստացաւ զգիրքս և ինձ բազմամեղ ծրողի Աբրամա թողութիւն հայցեցէք մեր ննջեցելոցն, և որ զմեզ յիշէ, եղիցի յայնմ յիշմանն [արժանի]։

## 428

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՅՆ ԵՒ ԴԱՆԻԷԼ ՄԱՐԳԱՐԷԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 3213

Գրիչ՝ Բարսեղ

Ա

5ա ԶԴաւիթ վարդապետ և զԲարսեղ աշակե[ր]տ աղաչեմ յիշել ի Քրիստոս։

բ

59ա Օրինակս՝ շտապս և աչքս վատ։

գ

80ա Ո՞վ սրբասնեալ պատահող, մի մեղադրեր վասն շտապս դրելոյս.

429

ՇԱՐԱԿՆՈՑ

Գրիչ՝ Կիրակոս եպիսկոպոս
Վայր՝ Կնզի

ա

285բ Զգրող տառիս զԿիրակոս եպիսկոպոս Կեղս և զծնողսն իմ զՍտեփանոս եւ զմայրն իմ զՅազիզ եւ զեղբայրն իմ զՓիլիպոս եւ զհարեզբայրսն, զառաքելաշնորհ եպիսկոպոսունքն զտէր Փիլիպոս և զտէր Սաճակ եւ զտէր Գրիգոր և զերախտաւորն զտէր Կոստանդին եւ զհարաքոյրն իմ զխաթուն Տալիթն, որ սնոյց զիս անհայր եւ անմայր, եւ Տէր Յիսուս ողորմեսցի յիշողացդ եւ յիշեցելոյս եւ նմա փառք*։

430

ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ԵՒ ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ ԵՒ ԿԱԹՈՒՂԻԿԵԱՅՔ

Վիեննա 247, Տաշյան; Ցուցակ, էջ 636

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Ժանի անապատ

ա

72ա Արդ, եղեւ զրաւ գրչութեան ի Հայկազան տոմարիս ՉԻԹ (1280), ի հայրապետութեան տեառն Յակովբայ մեծ դիտողի, եւ ի թագաւորութեանն Հայոց Լեւոնի բարեպաշտի եւ աստուածասիրի, եղեւ զուգահաւասարութիւն անաւրէն Իսմայելացւոց ի վերա քրիստոնէից. ըմբռնեցին զաշխարհս ամենայն, ի սուր եւ ի գերութիւն մատնեցաւ ազգս մեր, վասն բազում եւ անաւրէն մեղաց մերոց, ի դառն եւ նուրբ ժամանակիս։

Արդ, գրեցաւ անուշահոտ եւ աստուածային Տեառն քնարն Պաւղոսի եւ սքանչելիք եւ գործք սուրբ առաքելոցն եւ երգն Եսայայ մարգարէի՝ հաւաքեցի զսա ի մէկ տեղի։ Արդ, գրեցաւ սա ձեռամբ մեղապարտ և անարժան ծառայիս Աստուծոյ սուտանուն կրաւնաւորի Յոհաննիսի, որ միայն զձեւս ունիմ քահանայութեան, այլ մեղաւք լի եմ... Գրեցի զսա ի

* Ձեռագիրն հետագայում նորոգվել և կազմվել է Սսեցի Կիրակոս դպիրի ձեռքով, հավանաբար Սեբաստիա քաղաքի Ս. Նշան վանքում։

վայելումն անձին իմոյ եւ ի յիշատակ հոգւոյ՝ ինձ, եւ ծնողաց իմոց, և հարեղբարց, եւ ամենայն ազգատոհմի, եւ փոխելոցն առ Քրիստոս... ոչ գիտելով զգրչութիւն, այլ միայն ցանկացեալ հոգէլից տառիս. աղաչեմ անմեղադիր լինել խոշորութեան եւ սխալանացս որ ի սմայ է...: Գրեցաւ սա ի յանապատիս որ կոչի Ժանի, ընդ հովանեաւ սուրբ և հոչակաւոր ուխտիս Քրիստափորի եւ սուրբ Նշանացն եւ Սրբուհոյ Աստուածածնին:

Տէր Յիսուս Քրիստոս ողորմեաց սուրբ գրոցս թե շատ և եթէ սակաւ, եւ քո աշխարհակեցոյց տնաւրէնութեամբ թողութիւն մեղաց շնորհեա:

Բ

182բ Ի թուաբերութեանս Հայոց Հայկազեան տումարիս ՉԻԸ (1279), յանկ ելեալ աւարտեցաւ դիրքս աստուածաւախս Պաւղոսի առաքելոյն զփողն Տարսովնացի, զճպուռն ճշմարտութեան ի դառն և ի նուրբ ժամանակի, շարժեալ կամք արարչին խեթիւ հայելով յարարածս, յարուցեալ զեգիպտական իսմայելեան ազգին, յերեսս բերելով զհարուածոց հոսանս, առնուլ զվրէժս յանուանեալ ազգէն քրիստոնէից, որ եւ զբաժակն անապական առեալ ի ձեռն արբուցանէ նոցա. զերբակալ արար զաշխարհս ամենայն, զռմանց արիւնն յերկիր եհեղ եւ բազումս գերի տարեալ, յաղագս ծովացեալ մեղաց մերոց: Գրեցաւ սա ձեռամբ Յոհաննիսի անպիտակաբար կոչեցեալ քահանայ, անձամբ առեալ զպատիւ եւ ոչ յԱստուծոյ...: Վասն բազում մեղաց իմոց ստացա զսա յիշատակ ինձ, եւ ծնողաց իմոց, և ամենայն զարմից, թէ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանի յԵրուսաղէմ:

Գ

355բ Զստացող մատենիս եւ զգրողս սուտանուն քահանայ զՅովաննէս մեղսա[ս]էր յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր...

Ի թուականիս Հայոցն տումարի
Եւթնհարիւր եւ երեսնի (1281),
Կատարեցաւ գիրքս*
Աստուածաշունչ եւ մեծ տառի
Առաքելին եւ Պաւղոսի
Եւ Եսայիա մարգ[ար]էի,
Աւետարանն Քրիստոսի,
Յամսեան հոկտեմբերի,
Որ աւր տասն եւ հնկեկի,
Ի ժամանակս բարեպաշտի՝
Լեւոն և մեծ թագաւորի,
Եւ որդւոյ իւրում Հեթմի,
Եւ հայրապետին մեր Յակովբի,
Հայոց եւ Տեառն կաթողիկոսի:
Աստուած եւ Տէրն յամենայնի,

* Մի բառ պակասում է:

Ժամանակ տացէ նոցա բարի,
Ի յապագայսն աներեկի։
Յեւթնհարիւր ամին եւ երեսնի (1281)
Շարժեցաւ ազգն Թաթարի,
Անհամար եւ անթուի,
Ջուեաց յաշխարհն Եգիպտոսի
. . . . . . . . վրացի
Գեր ...Իսմայէլի,
Աստուած ահրհնի յամէն տեղի։
Ո՛վ սուրբ եղբայր առաքինի,
Որ դու սիրող ես Քրիստոսի...
Յիշման արա դու արժանի,
Ի սուրբ աղաւթս արտասուալի,
Զի թողութիւն ինձ պարգևի...

Դ

Յիշեսջիք///եւ* զհոգևոր էւ զեղբայրն եմ զՍտեփանոս՝ կազմող գրոցս, որ աշխատեցաւ ի սմայ**։

## 431

### ԱՒԵՏԱՐԱՆ

Կոնիբիր, Ցուցակ Լոնդոնի, էջ 8

Վայր՝ Ասպիսընկա վանք

Փառք... արդ գրեցաւ... սուրբ Աւետարանս, ի թուիս ՉԼ (1281) ի գաւառիս յԱրճիշոյ, ի վանս յԱսպիսընկա ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածինս, յառաջնորդութիւն հաւր Աբրահամու, զոր Տէր պահեսցէ անարատ իմ կամս իւր։

Արդ, գրեցաւ ձեռամբ անարհեստ գրչի սուտանուն քահանաի, որ զանունս միայն ունիմ և զվարս՝ ոչ իսկ չեմ արժանի յիշելոյ։

## 432

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5915

Գրիչ՝ Ներսէս
Վայր՝ Յոհանց վանք

404ա Արդ [աղ]աչեմ յիշել զհայր սուրբ ուխտիս Յոհանցիս զսրբասնեալք քահանա զՆերսէս յաղաւթս ձեր, ամէն։

---

* Մի տառ քերված է։

** Երեք տարբեր նյութերից կազմված սույն ձեռագիրը Հովհաննես գրիչը գրել է երեք տարբեր տարիներում և կազմել միասին «ի մեկ տեղի»։ Դնում ենք վերջին (1281) թվականի

404բ Յամի ՉԼ երորդի (1281) Թուականիս, աստանաւր յանգ ելեալ աւարտեցաւ Աւետարանս այս ի սուրբ ուխտիս՝ ի հռչակաւոր վանս Յոհանց, ընդ հովանեաւ Սուրբ Կարապետիս և Սուրբ Նշանի խաչիս, ի յառաջնորդութեան սրբասնեալ հայրապետին տեառն Յակոբայ, ի թագաւորութեանն Հայոց Լևոնի, և ւիշխանութեան Սմբատայ, միշտ խնդրելով ի Տեառնէ, ղի տացէ զսոսայ ուղղութեամբ և արդարութեամբ հով[ու]ել զժողովուրդս Քրիստոսի և առնուլ ի Տեառնէ զվարձս ըստ վաստակոց։

---

տակ, երր հավանաբար, նաև կազմվել է։

Վերջին կազմի աստառի վրա, որ թուղթ է, գրված է. «Յայտարարութիւն, Ի ՌՄԼԷ (1788) թուին, որ յայնմ ամի արեգակն խաւարեցաւ բոլորովին եւ աստեղք երեւեցան, եւ Մարտիրոս անվարժ վարժապետս Կիւտրացի զայս գիրքս վասն սիրոյն տիրացու Գէորգին, որ է աւագ սարկաւագ եւ ղարգ Քառասուն մանուկ եկեղեցւոյ, աշխատասիրութեամբ զկնչեալ տառսն գրեցի, քանզի ի բազում տեղիս տառքն աւրեալ եւ եղծեալ էին, որոյ վասն յայլ ընտիր օրինակն հայելով՝ գրեցի...»։

## 433

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 10687 (1277 թ.)*

Գրիչ՝ Կոստանդին
Վայր՝ [Կեսարիա]

134բ *Փառք հաւասարապատիւ և համաբուն, պաշտելի և երկրպագելի Երրորդութեանն Հաւր և [Որդւ]ոյ և Հոգոյն Սրբոյ։*

*Բարի արարածս բնութեամբ ստեղծեալ բարի ի բարւոյ արարչէն, ըստ աստուածեղէն վկաութեան գրոց, և զնոյն երևեցուցանէ միշտ փափագմամբ ի նոյն։ Ըստ որում բազումք ղընդերկրաւս ամենայն անտեսեալ ղուրվականս և ղառաւրեայս, վասն հոսանուտ և անցաւոր գոլոյն և միոյն միայնոյ իսկապէս բարոյն հետևեալ փափագմամբ, այս է Աստուծոյ և աստուածայնոցն։ Եւ յաղագս նորին արեամբ չափ պատերազմեալ, հակառակ կալով մարմնոյ և մեղաց, ոմանք զանձինս ի մահ եդին, որպէս զվկայսն երանելիս, որք ընդ հուր և ընդ սուր խաղացին, վերագոյն գտեալ հնարիցն սատանայի և գործակցաց նորին։ Եւ այլք ճգնողական խստակեաւն վարուք արեամբ և մարմնով ընդ իշխանքն աշխարհի և այսոցն չարութեան մարտեան և սպառազինեալ քաջապէս խաչին Քրիստոսի պարծանաւք յաղթեցին։ Եւ կէսք ընդ անձին և զստացուածս և զինչս բազմածախս նվիրեցին Աստուծոյ մատակա[րա]րելով բաշխմամբ աղքատաց և կարաւտելոց, ակն ունելով հատուցման փոխարինաց յամենառատ Տեառնէն։ Եւ զայս առնեն ոմանք վասն սիրոյն Աստուծոյ, և կէսք սակս երկեղի տանջանաց, և այլք վասն պսակաց հանդերձելոց փառացն, փոխարինացն ակն ունելով և վարձուցն ընդունելութեան։ Յորոց էր մի սրբակրաւն և պարկեշտ վարուք առաքինի քահանա Յովսեփ, որ մատոյց զանձնուէր ի պաշտաւնն Աստուծոյ, և ընդ անձին կամեցաւ տալ երախայրիս ի տաճար Տեառն ի Նոր Սիոն զաւակ զշունչ և զբան բանին Աստուծոյ մարմնացելոյն Քրիստոսի Յիսուսի վասն մեր՝ իւրոցն մատանց վաստակաւք և ձեռացն երկամբք, և զնոյն յոլով աշխատութեամբ և բազում քրտամբք, ի դառն և [illegible] ժաման[ակ]իս, և ըստ սրտին իւրոյ տենչման աւարտեաց զսա ի թվին Հայոց ՉԻԶ (1277), ի հայրապետութեան տեառն Յակոբայ և ի թագաւորութեանն Լևոնի բարեպաշտ արքաի։*

*Եւ յետոյ, ի թվին Հայոց ՉԼԱ (1282) ելեալ ինքն պատուելի քահանայ* Յովսէփ *ի* Կեսարւոյ Կապադովկացոց, *ճանապ[արհ]որդել ի գաւառն* Կի–

235ա յիկոյ; Եւ հասեալ ի քաղաքն Եգիոյ, որ է Այաս,||եւ եղև յանգարծակի
շրջաբնակաց ոմանց Իսմաէլացոց, որ յայսմ ժամանակի զզուէին զեր-
կիրն, արշաւեցին ի քաղաքն Այաս և որ շուրջ զնովաւ գեաղք և աւանք.
ղրաղումս գերեցին, և զայլս սրախողխող արարին, ընդ որս և պատահեաց
քահանայ Յովսեփ, և կատարեցաւ սրով, յամսեանն դեկտեմբերի ԻԲ (22),
և ընգալաւ ի պսակողէն սրբոց ի Քրիստոսի զանթառամ պսակն, սուգ մեծ
և վիշտ և աղէտ կսկծալի թողեալ ծերունի և բազմահառաչ մաւր իւրոյ,
և հարազատ եղբարց Գրերին և Սեթին, և ամենայն ազգատոհմի իւրոյ։

Վասն որոյ և ես Կոստանդին՝ նուաստ և յետինս յորդիս եկեղեցոյ, անմխիթար սգով լցայ ընդ մահն իմոյ արեանառու սիրելի և համազգի եղբաւրն, զի ըստ մարմնոյ եղբաւր հաւր իմոյ որդի էր Յովսեփ, և ի տղայական տիոց միասին սնեալ և վարժեալ մեր յաստուածաւանդ աւրէնս Տեառն, երես անգեալ աղաչեմ զքրիստոսասէրսդ, զի յիշեսջիք սրտի մտաւք զգրող տառիս զՅուսէփ աղաւթիւք ի Տէր, և նա ինքն, որ զամենեսեան դիտէ և ճանաչէ յանուանէ կոչելով, զձեզ զամենեսեան յիշեսցէ, և ինքն աւրհ[ն]եալ եղիցի յաւիտեանս, ամէն*։

## 434

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ԴԻՈՆԻՍԻՈՍԻ ԱՐԻՈՊԱԳԱՑՒՈՅ

*Երևան 49*

Գիրչ՝ Ստեփանոս

ա

338բ Փառք էից անբաւից Սուրբ երրորդութեանն և մի տէրութեան և ղաւրու-
թեանն Հաւր և Որդու և Հոգոյն Սրբոյ, այժմ և յաւիտենից յաւիտեանս,
ամէն, որ ետ զաւրութիւն իմո տկարութեանս նաւել ընդ այսպիսի յորդե-
ռանդ և գերահոս անբաւ խորոցս, ղեկաւ եղեգնեաւ և թոյլ և տարտամ
դաստակաւ։ Բայց զաւրացուցիչ և խնամիչ Հոգին ճշմարտութեան և ղաւ-
րութեան, որ ածգէ ի կենդանիս և յանկենդանիս, որ և զիս հասոյց ի յաւարտ
339ա ձեռնարկութեանս այս, ի թւիս ՉԼԱ (1282) Հակազեն տումարիս,||և յոր
ամ սկսեալ՝ ի նոյն կատարեալ։

Բայց գրեցաւ հրամանաւ գիտնական և արդիւնական հեռետորի Ներսիսի ի ծնունդ և ի սնունդ** մաքրափայլ որդոյ մաւր մերո Սիոնի, որ և զյաւժարամիտսն ծնանի երկաւք բանին ճշմարտութեան, այլև յիշատակ իւր և իւրոցն ամենայնի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ կենսապարգև կտակիս, յիշեսջիք ղառաջ ասացեալ երջանիկ վարդապետն Ներսէս, և զծնաւղըսն իւր։ Ընդ նմին և զՄովսէս բեմբական, որ ամենայն մարմնաւոր հանգստեամբ սպասաւորեաց մեզ, որ և փոխարէն տացէ նմա Տէր զիւր

---

* Կոստանդնի հիշատակարան-վկայությունը գրված է Հովսեփի արտագրած ձեռագրի վերջում։

** Գրված էր «Ի սնունդ և ի ծնունդ»։ Սրբագրիչ նսայի Նչեցին «սնունդ» բառի վրա «բ» է գրել, մյուսի վրա՝ «ա», որպեսզի կարդացվի «ի ծնունդ և ի սնունդ»։

Հանգիստն։ Իսկ հուսկ յետոյ քան զամենեսեան, յիշեցէք զաղաղուն և փցուն գրիչս՝ Ստեփանոս սոսկ անուամբ կրաւնաւոր, և զեղբայրն իմ Պետրոս, զհանգուցեալն ի Քրիստոս, և զայլ աշխատեալքս ի սմա, և տացէ Տէր յիշողացդ և յիշելոցս զիւր անճառ հանգիստն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բ

165ա Յայսմ հետէ յայլ աւրինակէ գրեցաւ մինչև ի Ե (5) տետրակ։

Գ

Ուղղող՝ Եսայի

296ա Զամենամեղ ոգի Եսայի, որ յուղղելս աշխատեցայ, յիշեսջիք հանդերձ վարժողաւք ողորմութիւնն Աստուծոյ։

## 435

## ԱՒԵՏԱՐԱՆ

Կոնիբեր, Ցուցակ Լոնդոնի, էջ 18

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Դրազարկ

ա

Յորժամ մեծ թուական Հայոց Չ[ԼԱ]* էր, ի թագաւորութեանն Հայոց Լևոնի, որ ԲԺ (12) ամ էր թագաւորութեանն նորա, և ի հինգետասան ամ ի հայրապետութեանն Հայոց տէր Յակոբա, գրեցաւ սուրբ Աւետարանս ի հռչակաւոր մենաստանիս ի Դրազարկս, ընդ հովանեաւ մաւր լուսոյ Աստուածածնիս, յիշատակ Թորոս վարդապետի։

Բ

...Որում ցանկացեալ... վարդապետն Թորոս և ետ գրել զսա... վասն որոյ աղաչեմ... յիշել ի մաքրամատոյց յաղաւթս ձեր զԹորոս վարդապետն և զծնողսն իւր, և զեղբարս նորին զՌոբէն, զՅակովբ և զՅովճաննէս և զքոյր նոցա զԱզիզն...

Աղաչեմ յիշել զփցուն գրիչս Բարսեղ և զծնողս իմ։

---

* Թվականը ցույց տվող հաջորդ տառերը ջնջված են, բայց քանի որ ձեռագիրը ավարտվել է Լևոնի թագավորության տասներկուերորդ և Հակոբ Կլայեցու կաթողիկոսության տասնհինգերորդ տարում, նշանակում է գրության թվականը ՉԼԱ—1282 է, ինչպես ընդունում է Ֆ. Կոնիբերը։



ՉԼԲ 1283

## 436

### ՃԱՌԸՆՏԻՐ ՄԽԻԹԱՐԱ ԱՅՐԻՎԱՆԵՑԻՈՅ

*Երևան 1500, «Ակոս», Բեյրութ, 1946 թ, էջ 124—126*

*Գրիչ՝* Մխիթար Այրիվանեցի
*Վայր՝* Այրիվանք

ա

7բ *Աւգնեա Յիսուս և ողորմեա*
*Տէր* Մխիթար *վարդապետիս,*
*Գրչողիս և ստացողիս*
*Աստուածաշունչ սուրբ կտակիս,*
*Յառաջին ստիճանիս։*

բ

15ա *Ողորմեա Քրիստոս տէր* Մխիթար *վարդապետին**։

գ

40ա *Որոց աղաւթաւքն ողորմեսցի Քրիստոս Աստուած տէր* Մխիթար *վարդապետիս, գծողի և ստացչի։*

դ

67բ *Գթա Քրիստոս Աստուած քո սուրբ առաքելոցն բարեխաւսութեամբ ի տէր* Մխիթար *վարդապետն։*

ե

76ա *Վասն Հայրապետին մերո տեառն* Յակոբայ *կենաց և փրկութեան զՏէր։*

զ

79բ *Եկեղեցո իւրում սրբո և ամենայն ուղղափառ եպիսկոպոս Հայրապետին Հայոց տէառն* Յակոբայ *եւ մերո արհի եպիսկոպոսի տէր* Մխիթարա, *որ զպատիւ և վասն զաւրութեան և յաղթութեան թագաւորաց*

---

* *Այսպիսի հիշատակությւններ կան 20ա, 44բ, 74բ, 230բ, 262ա, 285բ, 298բ, 312բ, 346ա, 507բ, 576ա, 685ա, 696ա էջերում։*

*քրիստոնէից և իշխանաց բարեպաշտից, քրիստոսաղաւր արքային* Լեւոնին *և* Դեմետրէի, *և ամենայն զօրագլխաց և զաւրաց նոցին, ազատութիւն եղբարց*։*

է

230բ *ՋՉորրորդ Մակարաէցիոն ոչ գտի, եւ ոչ դՅովսէպոսն, որ գրել էի ի գիրսս որ է Կաիափա։*

ը

369բ *Յիշեա ի բարի, բարերար Յիսուս զտէր* Մխիթար *վարդապետն։*

թ

763ա *Աւրհնեալ է Աստուած, որ աւրհնէ զտէր* Մխիթար *վարդապետ ծորպտիչ գրոցս։*

ժ

879ա *Աստուած բան, ողորմեա բազմամեղ տէր* Մխիթար *վարդապետի գրչի։*

ժա

976ա *Վեցօրեայ գիրքս երկու թարգմանչաց է յաւրինած, վասն որո ուրոյն ուրոյն են։ Քրիստոս Աստուած քավեա զմեղս տէր* Մխիթար *վարդապետին։*

ժբ

*Զայսոսիկ** ժողովեցի ի միասին եւ գրեցի յաւուրս Ճ եւ Հ (170), ես տէր* Մխիթար *վարդապետս։*

*Թվ[ին] ՉԼԲ (1283) գրեցի յ*Այրիվանս, *յաւուրս Ճ եւ Հ (170)։*

ժգ

*Տէր* Մխիթար *վարդապետի*
Այրիվանայ *մեծի ուխտի,*
*Ծռափափաք տենչմամբ սրտի*
*Յօժարեցեալ ի գործ գրչի,*
*ԶԱստուածաշունչս ի մի տըփի*
*Եւ սուրբ գրեանս, որ ի կարգի,*
*Յուսով յԱստուած վստահալի*
*Գրել սկսայ կարդ ըստ կարգի։*
*Բայց ես տըկար եւ հեղգ հոգի,*

---

* *Գրված է «Գոհութիւն և փառաբանութիւն» քարոզի մեջ։*

** *Ձեռագրի գլխավոր հիշատակարանը չի պահպանվել, որովհետև վերջից թերթեր են պակաս։ Բարեբախտաբար ժամանակին այն արտագրվել է մի ձեռագիր ժողովածուի մեջ, ինչպես հաճախ անում էին միջնադարյան գրիչները, և պահպանվել։ Ն. Ակինյանը այն տեսել է Բեյրութում, գրված մոտավորապես 1309—1387 թթ.։*

*Այրիվանեցին Հիշատակարանում բերել է նաև «Կարգաւորութիւն գրոց սրբոց» ցանկը, որը կա նաև իր ժամանակագրութեան մեջ (էջ 35—36)։ (*Ն. Ակինյան *«Մխիթար Այրիվանեցւոյ Ճառընտիր Նորագիւտ Յիշատակարանը» «Ակոս» ԺԳ, 1946, Բեյրութ, էջ 123—124)։*

Մարմնով տարտամ եւ ցաւալի,
Զոմիմ նիւթ յիս [ես] հաճելի
Յորում Հոգին Աստուած հանգչի։
Արդ պաղատիմ արտասուալի,
Որք հանդիպիք այս մատենի
Զիս յիշեցէք Տեառն առաջի,
Միթէ բազում մեղք իմ քաւի։

ժգ

Գրիչ՝ Սարգիս

230բ ԶՍարգիս յիշէ։

ժե

270բ ԶՍարգիս Տէր յիշէ։

ժզ

Ո տէր Մխիթար վարդապետ յիշե ի Տէր։

ժէ

Գրիչ՝ Ստեփանոս

ԶՍտեփաննոս սարկաւագ յիշէ*։

437

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑՆ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երևան 1216

Ստացող՝ Գրիգոր Բջնեցի
Վայր՝ Բջնի

ա

Փառք Սուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ, այժմ և միշտ եւ յամենայն յաւիտեանս, ամէն։

216ա Ի թուիս ՉԼԲ (1283) գրեցաւ Մեկնութիւն երկոտ[ասա]ան մարգար[է] իցս։

Շնորհաւք ամենախնամ Սուրբ Հոգւոյն, ես Գրիգոր սպասաւոր բանի և Տեառն Յիսուսի Քրիստոսի ծառայ, ազգաւ Տամբատեցի, որ և մականուամբ կոչեցայ Բջնեցի, սնեալ և վարժեալ առ ոտս տիեզերալոյս սուրբ և երանաշնորհ րաբունապետին Վարդանայ, մեծաւ բաղձանաւք ետու գրել զՄեկնութիւնս. երկոտասան մարգարէիցն, զոր արարեալ է տեառն Ներսիսի եպիսկոպոսի և վերադիտողի Թագաւորական քաղաքին Տարսոնի լուսաւոր մտաւք և աստուածիմաստ հանճարով, ի լուսաւորութիւն մանգանց Սիովնի, և զՄեկնութիւնս մարգարէութեանն Երեմիայի, զոր արարեալ է երից երանեալ րաբունոյն Մխիթարայ, որ մականուեալ կոչեցաւ Գոշ:

* ժԴ—ժէ հիշատակագրությունները գրված են ձեռագրի լուսանցքներում կարմիր գույնով գծված զարդի բոլորակների մեջ։ Հավանաբար Սարգիսը ծաղկողն է և Ստեփանոսի հետ օգնել է Մխիթարին։

Արդ, Հոգեզուարճ փափաքանաւք ստացայ զսա ի վայելումն և ի
զբաւստնս անձին իմոյ և զկնի ելանելոյն իմոյ յաստեացս, յիշատակ
Հոգւոյ իմոյ, և ծնաւղացն իմոց և ամենայն արեան մերձաւորաց։ Արդ,
որք աւգտիք ի սմանէ ընթերցմամբ կամ ընդաւրինակէք, յիշեսջիք աղաւ-
թիւք զիս՝ զԳրիգոր վարդապետս մականուն Բջնեցի, և ծնաւղսն իմ, և
զամենայն ազգայինս ի մեղաց թողութիւն, որպէս ղի աղաւթիւքն ձե-
րովք ողորմութիւն գտայց յապագա յաւուրն. առաջի ահաւոր ատէնին
Քրիստոսի, զարմիւք մերովք և ամենայն նախնեաւք, որովք յիշողքդ
հանդերձ յիշատակելովքս ողորմութեան և գթութեանցն Աստուծոյ հան-
դիպեսցուք առաջի դատաւորին Քրիստոսի, և երկնաւոր բարութեանցն
հասցուք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս,
ամէն։

Բ

Գրիչ

217բ Զարի, եռչանիկ, զսուրբ և տիեզերալոյս րաբունապետն զԳրիգոր
Բջնեցի՝ ծնաւղաւք իւրովք և հարազատովք յիշել աղաչեմ արժանաւոր
աղաւթիւք, և տէր Աստուած զձեզ յիշեսցէ ողորմութեամբ և գթութեամբ։

Գ

Փառք փառաւորեալ, համազաւր, համագոյ, համարնակ տէրու-
թեանն Հաւր և Որդոյ և ամենասուրբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից,
ամէն։

424ա Յամենախնամ ողորմութենէն, յամենասուրբ Երրորդութենէն և ի
կամաց զաւրութենէ նորա, սիրող եղեալ ամենայն Հին և Նոր Կտակա-
րանաց աստուածային հրամանաց, րաբունի վարդապետն Գրիգոր մա-
կանուն Բջնեցի բարի անուն, լեալ աշակերտ մեծ վարդապետին Վար-
դանա; Այսմ իրի ցանկացող եղեալ աստուածասէր և ճգնազգեց ընդրեալ
վարդապետ Գրիգոր կոչեցեալ, այր հեզ և խոնարհ և պատուիրանաց
Տեառն պահող և քաղցր առ ամէնեսին, և ուսուցիչ, և ուղղիչ բազմաց,
և դարձուցիչ մեղաւորաց, որպէս հայր գթած, որ և ոչ կնտընտոցս լե-
զուաւ բաւեմ պատմել զպէս պէս զառաքինութիւն սորայ, քանզի ան-
ցանէր զամենեքումք։ Սայ բազում աշխատութեամբ և մեծաւ ջանիւ ժո-
ղովել զսայ ի տեղւոջէ ի տեղիս ընթանալով և յաշխարհէ յաշխարհ, որ-
պէս գործաւէր մեղու, որ զթևսն արձակէ և ի մարգսն թռչի, և կապտէ
պտուղ զանազան և գեղեցիկ, և աշխատի առնելով ի մաղսն զվեցան-
կիւնիսն և զընդդիմադրել բջիջսն անկանելով։ Նոյնպէս և սայ զոտս
արձակել և յաստուածային բուրաստանսն ընթացեալ, և զգեղեցիկ, և զըն-
դիր-ընտիր և զքաղցրահամ ծաղիկս հաւաքելով զպտուղս հոգևորս ի
424բ միասին և ըշտեմարանս մտաց ամբարել զաստուածային և զճշմար‼իտ
գանձս պատուական, որպէս և է այս Հաւատեաւ գանձարան կամ Իմաս-
տութեան ժողովարան, բերեալ մատուցանէ աստուածասէր և ճշմարիտ
գիտնականաց։ Որպէս մեղուն զքաղցր ճաշակ, նոնյպէս և զսա հոգևոր
խրատս և ղանուշահոտ կերակուր ջամբէ ուս[ու]մնասիրաց և երկիւղա-

ծաց անձանց։ Տէր Յիսուս յիշեսցէ զհոգի սորա և դասեսցէ ընդ սուրբս իւր, ընդ նմին և ղծնողս իւր յանծերանալի կեանսն, ամէն։

Արդ, ով որդիք լուսոյ ամենայն յամենայնի, Գրիգոր վարդապետ ցանկացող եղեալ այսմ պատուական մարգարտի, բաղում փափականաւք և մեծաւ ըղձմամբ, որ փափագէք կենդանի ջրոյն և լնոյք զփափագ տենչման ձերոյ ի սուրբ կտակէս, յիշման բարիոյ արժանի արարէք զպատուեալն յԱստուծոյ և ի մարդկանէ զտէր Վարգան, և բաբունի վարդապետն Գրիգոր, և զամենայն ընդանիս իւր՝ զմիջինսն և զվերջինսն և զառաջինսն, և զարեանառու մերձաւորսն իւր, և զգնացեալսն առ Քրիստոս, յորում յարութիւն կենաց շնորհեսցի ի Տեառնէ Յիսուսէ, ամէն։

Սնորհիւ բարերերին Աստուծոյ և ողորմութեամբ Որդւոյ և աւժընդակութեամբ Հոգւոյն Սրբոյ խնամողին և ձեռնատուողին և հաստողին, որ ամենեցուն առաջն է ի բանս և ի գործս բարիս առաջնորդել, տէր Վարդանա և րաբունի վարդապետին Գրիգորոյ և զաւրէնս առն իմաստնոյ, որ խնդրիգէ մարգարիտս գեղեցիկս և բազում աշխ[ատութեամբ]///

438

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 150, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 643—645

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Կան գիւղ

ա

102բ Ի թուականութեան Հայոց ՉԼԲ (1283) գրեցաւ տիեզերաքարոզ և գերահռչակ աւետաբեր սուրբ Աւետարանս, ձեռամբ անարհեստ և անարժանի Յոհաննէս իրիցու, որ ապաւինեալ ի ներողութիւնն Աստուծոյ և ի բարերարութիւն նորին, իշխեցի մերձենալ ի հրակէզս և ի բոցաճաճանն փայլուածս, որ պատմէ զանքննիս, զխորս խորոցն Աստուծոյ, որում փառք ի յաւիտեանս, ամէն։

բ

Իբրև իժի և քարբի խցել զականսն ոչ ուրեք լուել զբանն Տեառն թէ Ամենայն որ հարցի ի վէմս յայս՝ փշրեսցի և յորոյ վերա անկցի՝ հոսեսցէ զնա, որ և հոսեցաւ ի մանր փոշիս և տուաւ մրրկի մեծի, քանզի յանձնէ եւ դահիճ անձինն զմարմինս բազկացն կերեալ, ըստ ձայնի սըրբոյ հայրապետին, եւ այս իբրև այլուստ ուստեք ներգործեցաւ ի Տեառնէ, զի մի իշխեսցուք համարձակիլ յասել եթե ամբծութիւն մեր և հպարտութիւն ի գլուխ ելանիցէ, այլ թէ այցելումն Աստուծոյ այցարար։ Եւ արդ բազում զգուշութեամբ զանձինս հոգասցուք, զի մի նախատինք դըրացեաց լիցուք։ Առ մեզ բազում բան կատարեցաւ և այդ ձեզ յիշումն փոքր ի շատէ։

Ի յայսմ ժամանակի քահանայ ոմն Երեմիաս իմաստուն վաճառական և ակն առատ տեսանող՝ ի մտի եդել զամենայն ինչս իւր վաճառել և սկիզբն արեալ յառաջ զստացաւ զտիեզերալուր քարոզս զաստուածա-

բարբառ մատեանս, զհոգիախաղաց տառս, զհնչումս աւետեաց երկրնաւորաց և երկրաւորաց, զլոյսս ամենայն աշխարհի։ Եւս առաւել մեծաւ յուսով ստացող սորա Երեմիաս ստացաւ զսա յիշատակ իւր և ծնողաց իւրոց և ազգականաց, և ոչ այսքան, այլ և սա շինեաց վկայարան և կատարեաց ի յայսմ ամի, և բազում ընչիւք ծախաւորեցաւ ի նմա, մինչև արկ գոյիւ չափ զկեանս իւր, զոր ունէր զամենայն, յիշելով զբան սորին սուրբ Աւետարանիս, եթէ Մի հոգծայցէք զվաղիւն, քանզի այսու յայտնի սէր կատարման, եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահէսջիք։

Եւ արդ, աղաչեմ զամենայն աստուածազան ընթերցողաց և զլսողսդ, զի զայս ամենայն յանձն առ վասն կարի փափագանաց ի պէտ աղաւթից ձերոց, յիշելոյ արժանի առնէք ի սուրբ և մաքրափայլ յամբիծ աղաւթս ձեր զԵրեմիա քահանայ, և զհայր իւր զՏիրատուր՝ բարեսէր և ողորմած ի պէտս և բարի հասակաւ ծերացեալ, և զմայր իւր զՄայրափկին՝ զփոխեալն ի Քրիստոս, և զմիւս սնուցանող մայր սորա զՏիրանցն, որ աշխատեցաւ ի վերա սորա մինչև ի հասակ մեծութեան, և ապա երկուցեալ յարդար դատաւորէն, ղի թողեալ զընակութիւն աշխարհիս և զսէր, տարագրեցաւ ի տար աշխարհ՝ բազում ճգնութիւն յանձն առեալ վասն փրրկութեան անձինն։ Ընդ նմին յիշեսջիք և զկենակից սորա զԹագուհի և զծնաւզսն իւր զՅովաննէս քահանայ, և զմայրն իւր զՄարեմ: Յիշեսջիք աղաչեմ դարձեալ զԵրեմիա քահանայ, և զեղբարսն իւր՝ զՍարգիս և զՍատուրն, և զքոյրն սոցին զՄարգրիտ, և զԳրիգոր երէց։

Եւ արդ, քանզի Աստուած հասարակաց է պարգևատու և ձրի ի շնորհըս, և դուք մի ձանձրանայք, այլ ախորժելով մտադիրեցէք և ցաւակցաբար խնդրեցէք, յիշեցէք և զՅովաննէս, որ ի մէջ երկոցունց շնորհեալ է կնիք լուսաւորութեան սուրբ աւազանին, և զկենակիցն զՏիկնացն, և զքուրն իւր զԹուրերն, որ յայսմ ամի փոխեցաւ, և սուգ մեծ թողեց ծնողացն, որոց ողորմեսցի Տէր Աստուած առ հասարակ ամենեցուն, ամէն, քանզի և սոքա ի հալալ արդեանց իւրեանց ընծայեցին ի յիշատակութիւն սուրբ աւետարանիս_ի փրկութիւն հոգոց իւրեանց։

Եւս առաւել Յովաննէս քահանայ:ի՝ ուսուցանողի և վարդապետի սորա հաւատարիմ, և ստացեալ ունի զզարդ կատարմանն զեղբայրսիրութիւն առ ամենիսեան, և եղև սմա առիթ ի հոգևորն և ի մարմնաւորս, որոյ հատուցանէ սմա Տէր Աստուած վարձս բարիս, և սա կազմեաց զսուրբ Աւետարանս շնորհելով միայն ի ձիրս։

Եւ զԸնձեր՝ նկարիչ սորա յիշեսջիք, աղաչեմ։

Եւ զիս, զանարհեստ և զանարժան գրողս զՅոհաննէս երէց, որ առաւել կարաւտիմ ձերոց աղաւթից, յիշելոյ արժանի արարէք զիս և զծնողսն իմ, զհայրն իմ Վարդապետ անուն, և զմայրն իմ զՄամատիկին, և զերեսին եղբարս իմ և զքորսն, և ինքն որ տուիչն է ամենայն բարեաց՝ Յիսուս Քրիստոս, առ հասարակ, ողորմեսցի յիշողացդ և յիշելեացս, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառիս Կարնո, որ կոչի Թեոդեպաւլիս, ի Կան դեղ, ընդ հովանեաւ սրբոյ ղաւրաւորիս [Սարգսի] և Սրբոյն Գրիգորի և Սրբոյն Սիոնի և սրբոյն Գէորգա։

## 439

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4066

Գրիչ՝ Կոստանդին
Վայր՝ Անավարզա

ա

349բ Փառք պաշտելի Երրորդութեանն և միոյ աստուածութեանն, այժմ և միշտ և յաւիտեանս, ամէն։ Զերջանիկ հայրապետին Հիպողիտա զՀամառատ մեկնութիւն Երդոյ երգոցս ես բազմամեղ հոգի Կոստանդին գտի գրեալ յոյժ գեղեցիկ սրբոյ հայրն մերոյ տեառն Ներսիսի Տարսոնի եպիսկոպոսի, և ի միջոյն ի վեր իւր իսկ մեկնեալ, և յոյժ փափագմամբ և ցաւագին մարմնով դրեցի ի վայելումն աստուածասէր ընթերցողաց։

Գրեցաւ ի յաստուածապահ՝ դղեակս Անարզաբա, ընդ հովանեաւ ամենասուրբ Աստուածամայրն պատկերի, յառաջնորդութեան սուրբ և աստուածապատիւ տիեզերալոյր տեառնս Գրիգորի, ընդ որոյ թևաւք խնամոց յաւուրս դառնութեան մերոյ 'տառապիմք յընթերցումն աստուածախաւս տառից, զոր ղաստուածատունկ, զամենափարթամ և զյոքնապտուղ կերակրիչս ոգոց բանականաց զտէրս մեր ընդ երկայն աւուրս շնորհեցէ Տէրն Քրիստոս և ի հանդերձեալսն ծնողաւք իւրովք արքայութեանն երկնից արժանաւորեսցէ։

Ընդ նմին և զմեղապարտ գրողս Կոստանդին, և զիմ ըստ հոգոյն զհամաշունչ և զսիրելի եղբայրս զԿոստանդին, որ ի միասին վաղ ժամանակաւ և բազում վշտաւք ներքնաւք և արտաքնաւք, հոգեկանաւք և մարմնականաւք տառապիմք յընթերցումն աստուածախաւս տառից ու յումեքէ, բայց միայն յամենատուր Տեառնէն ակն ունելով վարձուց և մխիթարութիւն, մերովքն ծնողովք։ Յիշեսջիք և զիմ ըստ հոգոյ հայրն զՄխիթար քահանայ, և զեղբայրն զՊետրոս քահանայ, և ծնողս նոցին։ Եւ զեղբարքս մեր, որ ի միասին կամք ի վարժս տառիցն Աստուծոյ, և որ առատն է յամենայնի, ամենեցուն առհասարակ ողորմեսցի, և նմա փառք։

Գրեցաւ ի թվին Հայոց ՉԼԲ (1283), ի յԱնավարզայ:

բ

115ա Առաքելի ստացողի գրոցս ողորմեայ, Տէ՛ր։

գ

192բ Ընկալ, ո՛ պատուական վարդապետ Առաքել, զսակաւ գիծս յոլով աշխատանաւք ի մենջ։ Սակայն թեպէտ զկամս ձեր ոչ ունի լնուլ վասն աղալին և խոջորութեանն, այլ ի մենջ յոյժ տաժանելի կրիւք այս չափ յառաջացաւ։ Այլ և աղաչեմ սիրով տեսանել և յաղաւթս յիշել զմեզ և յողորմութիւնն Քրիստոսի, և զսիրելի եղբայ[ր]ս մեր զՍտեփանոս. մերայնաւքն հանդերձ, և յիշել լիջիս դու ի յարքայութեանն Աստուծոյ, յորժամ պսակէ զսուրբս իւր աւրհնելն, յաւիտեանս, ամէն։

## 440

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6764

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Սկեռա։

262բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն՝ Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Որոց փափագ ըղձիցն յաստուածայինսն բերին, նոցին և հուրն սիրոյ միշտ և հանապազ բորբոքի աւրըստաւրէ աճմամբ, և այսոցիկ պատրաստեալ կամայաւձար մտաց ընծայելոց զինքեանս Աստուծոյ։ Որպէս և գերապատուեալսն ծայրագոյն իշխանութեամբ ի բարի արմատոց մեծափառ թագուհին Հայոց Կեռան, դուստր իշխանաց իշխան Հեթում սեբաստաւսի, որոյ զերկիւղն աստուածային յինքն ամփոփեալ զգլուխ և զսկիզբն ամենայն իմաստութեան, և ըստ ամենայն բարեգործութեան իւրոյ, խորհուրդ բարի ի միտ արկեալ, ետ գրել զքառավտակ սուրբ Աւետարանս ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց, և բնաւ զարմից՝ կենդանեաց և ննջեցելոց, ի լուսաւորութիւն մանկանց նորածընելոց Նոր Սիովնի։

263ա Արդ, ո՜վ սուրբ հարք և առաջելադումար դասք քահանայից, յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ եդեմատունկ աստուածառոյգ վտակաց քառառաջեա հոսանաց կենդանական աստուածային աւետարանական բանիցս, մանաւանդ յորժամ բառնայք ի վերայ ուսոց ի ժամ սոսկալի պատարագին, յորժամ խաղան ի վերուստ յողջոյն ձեր զաւրք հրեշտակաց, և սքողեալ ահիւ խառնին ընդ ձեզ, յայն ժամ նովին սուրբ Աւետարանաւդ և միջնորդական հրաշիւք կենդանարար սուրբ պատարագին, յիշեսջիք զստացաւղ սորին զբարեպաշտ թագուհին Կեռան, հանդերձ սուրբ թագաւորաւն Լևոնիւ, և զծնաւղս իւրեանց, և զգեղաբոյս ծիրանածին մանկունս նոցա, զի կենդանիքն պարագայց ամաւք և երկար խաղաղութեամբ անփորձ պահեսցին, և հանգուցելոցն հանգիստ և ողորմութիւն շնորհեսցի յամենառատ բարերարէն Աստուծոյ։

263բ Արդ, գրեցաւ գիրս‖ձեռամբ ամենամեղ քահանայի Ստեփաննոսի, ի թուականիս Հայոց ՉԼԲ (1283), ի հայրապետութեան տեառն Յակովբայ, և ի թագաւորութեան Լևոնի, որդւոյ Հեթմոյ, ի մեծանուն սուրբ ուխտս Սկեռայ, ընդ հովանեաւ Սուրբ Փրկիչս և մաւր լուսոյ Աստուածածնիս և կենսակիր Սուրբ Նշանիս, մերձ յանմատոյց դղեակս Լամբրունի, որ է ի գլուխ Տարսոնի, և ի ստորոտ մեծի լերինս Տարսոնի: Յորում ամի բարենշան և բարեպաշտ անդրանիկ որդին արքային մերոյ պարոն Հեթում զձիաւորութեան աշտիճան ընկալաւ, և այժմ տիրէ աստուածապահ դղեկիս և այլ շուրշակայ գաւառացս, զոր յուսամբ և մաղթեմք ի բարերարէն Աստուծոյ, անփորձ մնալ սորա ի յարդիսս բազում ամաւք՝ ընդ երկայն աւուրս՝ անուանի և յաղթաւղ լինել ի վերայ երկրի։

Եւս առաւել աղաչեմ յիշել ի Քրիստոս զնախայիշատակեալ ստա-ցաւղ տառիս, և զընաւ զարմն իւր՝ զկենդանիս և զհանգու‖ցեալս*։ Եւ ով ոք որ կարդայք, և կամ տեսանէք, լիակատար և միամիտ սրտիւ ողորմի ասացէք սոցա հոգւոյն, և ձեզ տայ Տէրն իւր բարի ողորմութիւնն, ամէն։

## 441

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 5555**

Գրիչ

ա

256բ Գրեցաւ ի թվին ՉԼԲ (1283)։

Աղաչեմ յիշել ի Տէր զՎարդան, որ առիթ եղև սմայ, և զստացող սորա զՍտեփաննոս քահանա**։

բ

Ծաղկող՝ Սուքիաս

124բ զՄակաւ աշխատողս սորայ, որ ի ծաղիկ, և ի գլխագիր և ի կազմել աշխատեցայ, զՍուքիաս աղաչեմ յիշել ի Տէր, և մի մեղադրեր, զի մեր կարս այս չափ էր։

## 442

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

**Երևան 1563**

Գրիչ՝ Մարտիրոս
Վայր՝ Վանական վարդա-
պետի վանք

336բ Ի ՉԼԲ (1283) թվիս գրեցաւ գիրքս Գրիգորի Նարիկեցի, աղաւթք, հառաչանք, և պաղատանք [ո]ղորմագին, ի վանս Վանական վարդա-պետ[ի] առաջ[նորդ] գ[ոլ]ով Պետրոս վարդապետի, ձեռամբ [Մ]ար[տի]րոսի բազմամեղ ծառայի,

Ի ծերութիւն ժամանակի։
Ահա յարտասուաբուխ աղաւթանի,
Ով որ ունի խոցուած հո[գի],

* Հաջորդ թերթը ընկել է դեռևս 1357 թվականից առաջ, ինչպես երևում է Անիում լրացրած մագաղաթյա թերթերի վրա այդ թվականին գրված հիշատակարանից։ Մատենադարանի № 8509 ձեռագրում (ԺԷ դար) պահպանվել է գլխավոր հիշատակարանը ամբողջությամբ։ Թերին լրացնում ենք հիշյալ ձեռագրից (էջ 98բ)։

** Ձեռագիրը հետագայում վերանորոգելիս ՌՃԿԲ=1713 թվին լուսանցազարդերը, զարդագրերը և խորանները գույներով թարմացրել, կամ բոլորովին նոր է նկարել հնի վրա, ծածկելով նուրբ և գեղեցիկ զարդերը, որոնք երևում են ներկով անհաջող ծածկված տեղերում։ Ավետարանիչները և տերունական նկարները նույնպես, նորոգելիս ավելացված թղթերի վրա են նկարված։

Կամ մարմին մեռեալ մեղաւք իլի,
[Սա դ]եղս [ե]ղե վասն իւր հոգոյ;
Աստ գտանէ զիւր պիտանի,
[Ո]վ կարգա կամ ում պիտի,
Աստուած ողորմի թող ինձ ասի,
Նմա փառք յամենայնի*։

## 443

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Հովակիմյան, Ցուցակ Նիկոմեդիո, էջ 13 (1574 թ.)*

Գրիչ՝ Թորոս Վահկայցի

ա

512ա Յամենայն մտաց խոստովանեալ է ահա բարեաց ամենից մասանց սկիզբն յԱստուծոյ գոլ, նմանապէս եւ կատարումն ի նոյն, ըստ աւրինի բոլորակին ձեւոց, յորմէ ղաւրացեալ ի յոլով տեսակս բարեաց աստուածարեալ րաբունն Սոսթենէս, եւ ի վերայ բազմացն եւ զայս եւս կամեցաւ յաւելուլ իմաստունս բարեացն, զի ղսրբոյ աստուածազան գնդի առաքելսյն ստասցի զճշմարտապատում վիպադրութիւնս գործոյ նոցին եւ զընդհանրական նոցին Կաթողիկեաց թղթոցն աստուածախաւս վարդապետութիւնս ի պարծանս եւ ի բարեխաւսութիւն իւր եւ իւրայոցն, եւ ի բերկրումն աստուածասէր լսողաց եւ ի պայծառութիւն սրբուհոյ մերոյ Ազատին դստեր Վերնոյ Երուսաղէմի, զոր եւ կամաւքն Աստուծոյ ելից զբարուոք փափաքն իւր, եւ ստացաւ զաստուածային մատեանս նպաստաւորութեամբ Թորոս Վահկայցոյ տրուպ գրչի, ի թուիս ՉԼԲ (1283), ի հայրապետութեան տեառն Յակոբայ եւ յարքայութեան աստուածապաշտըն Լեւոնի. զորոց կեանս ընդ երկայն աւուրն շնորհեսցէ Տէր, բարգաւաճեալ խաղաղութեամբ։

Արդ, որք հանդիպիք մատենիս, զստացաւղ սորին զՍոսթենէս վարդապետն եւ զծնողսն նորին յիշեսջիք աղաւթիւք ի Տէր։ Եւս եւ զողորմելի գրիչս զԹորոս, եւ զծնողս իմ, եւ Տէր հասարակ բնաւիցս ողորմեսցի, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

բ

590բ ԶՍոսթենէս րաբուն, եւ զծնողսն նորա եւ զամենայն զզարմն իւր՝ զանցեալ եւ զայժմուս, եւ զիս զԹորոս քահանայ, եւ ծնողսն իմ, եւ զհաւրեղբայրն իմ Ստեփանոս, որ շատ աշխ[ատ]եցաւ հետ ինձ, յիշեցէք ի Տէր Քրիստոս, ամէն, ՌՌ. ամէն։

---

* Ցեցակեր է, լավ չի կարդացվում։

Գ

629բ ԶՍոսթենէս բաբուն յիշեցէք ի Տէր, և ղտրուպ գրիչս Թորոս Վաճ-
կայցին, ո՜վ սպասաւորք բանին Աստուծոյ*։

## 444

## ԱՄՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երուսաղեմ 304, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 151

Գրիչ՝ Թորոս դպիր

191բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։ Զստացող սորա զՍոսթենէս բաբունի և զծնողս իւր աղաչեմ յիշել ի Տէր։ Ընդ նմին եւ զեղկելի գծող սորա զԹորոս դպիր եւ զծնաւղս իմ, և հաւրողբայրն աղաչեմ յիշել ի Տէր, եւ շնորհել մեղաց թողութիւն, եւ դուք յիշողքդ յի-շեալ լիջիք։

## 445

## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՅՈՀԱՆՆՈՒ

Երեւան 1978

Գրիչ՝ Թորոս Վաճկայցի

ա

139բ Քրիստոս Աստուած, որ վասն փրկութեան մերոյ եղեր գառն և մա-տեար պատարագ Հաւր վասն հաշտութեան մերոյ, և այժմ աղաչեմք զքեզ քոին փրկագործ խորհրդովն, և սուրբ առաքելոյն Յոհանու, և Սըր-բոյ Աստուածածնին, եւ ամենայն ժառանգաւորաց սրբոց քաղաքին բարեխաւսութեամբ, փրկեա եաւթն հարուածոցն և ի թիւնից վիշապին զԹորոս գրիչ Վահկայցի, և իմովք սեռիւք և ծնընդովք, և զուսուցիչս, և զամենայն լսաւղսդ, և զընթերցողս, և զամենայն հաւատացեալս, և զփա-փագող սուրբ գրոցս զԱստուածաառոր վարդապետ յիշեցէք ի Քրիստոս Աստուած մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բ

143ա Աւրհնութիւն, որ կարդայ
Գովութիւն, որ լսէ,
Փառք տուողին
Եւ յիշատակ գրչիս· ամէն, ·ամէն**։

---

* Այսպիսի հիշատակագրություններ կան նաև 596ր, 645ա, 661ա, 670բ էջերում։

** Թորոս Վահկացու գրած մասը (թերթ 118—143) հետագայում կցվել է սույն ձեռագրին՝ գրված 17-րդ դարում։

## 446

### ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

*Կեմբրիջ, Ցուցակ Լոնդոնի, էջ 10*

Գրիչ՝ Թորոս Վաճկացի

ա

*...Յիշեցէք զպատուական քահանայ* Կոստանդին *և զամենայն զարմն իւր, զայժմուս և զանցեալն, առաջի զենլոյն Յիսուսի Քրիստոսի։ Եւ զիս ղանպիտան գրիչս զ*Թորոս *և զամենայն հաւատացեալս, ամէն։*

բ

*Զ*Թորոս Վաճկայցի *նուաստ քահանայ աղաչեմ յիշել ի Տէր։*

գ

*Ով, հարք իմ եւ եղբարք... յիշելո արարէք արժանի զիս* Թորոս Վաճկայցի:

## 447

### ԳՈՐԾՔ ԵՒ ԹՈՒՂԹՔ ԱՌԱՔԵԼՈՑ

*Երևան 5147*

Գրիչ՝ Թորոս Վաճկայցի

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն|| յորում մենք վիճակիմք հաւատով յուսով և սիրով, ամէն։*

316ա *Արդ, ո՞վ երկասէր ընթերցողի**
*Վարդապետիս եռամեծի.*
*Եւ մեր նախնեաց հոիտորի,*
*Առաքելոյս մեր Քրիստոսի։*
*Սա ի ցեղէն Բենիամի*
*Վերաձայնեալ Փող Տարսոնի,*
*Գամաղելին աշակերտի,*
*Որում Պաւղոս անուն կոչի։*
*Որոյ հայցեմ միշտ բաղձալի,*
*Յիշել ստ[աց]աւղ այսմն տառի.*
*Որոյ անուն* Գրիգոր *կոչի,*
*Որ գաւառաւ է* Մլուճցի:
*Վասն սիրոյն մեր Յիսուսի,*
*Խնդրել թողութիւն իմո անձնի,*
*Եւ հաւրն իմո* Յոճաննէսի,
*Եւ ընթհանուր իմո ազգի։*

---

* *Վերջում ավելացված են «այսմ տառի» բառերը, այլ գրչով։*

Նաև հարազատիցն իմ երկուակի,
Ստեփանոսի և Կոստանդնի,
Եւ մաւրն իմո մեծատոհմի,
Որում անուն Յաւղեր կոչի։
Եւ ամենայն մերձակայի,
Արեանառու իմո զարմի,
Փոխեցելոյն ի մէջն յաստի,
Եւ որ ծըփին յայսմըն ծովի։
Ընդ նմին և զգրիչս Վանկայցի
Որում անուն Թորոս կոչի,
Անտես չառնել յիշատակի,
Զի ուղղութեան ես փոյթ արի,
Որ յիմ ջանուց իսկի չթողի,
Ապա թէ ոք յիշէ զմեզ ի բարի,
Հարիւրապատիկ նա ընկալցի, ամէն*։

Բ

10ա Արդ, աղաչեմ զամէնեսեան զորդիս Սիոնի, որք կարդայք կամ աւ-
րինակէք զաստուածախաւսութիւնս համատարած հաւրն սուրբ առաքե-
լոյն Պաւղոսի, զԹորոս գրիչ յիշեցէք ի Տէր Քրիստոս, և զծնաւղսն և
զազգն իմ, և զուսուցիչսն իմ և զամենայն հաւատեալս, ամէն։

Գ

48բ Սուրբ Պաւղէ նախ հալածիչ,
Եւ ի յետոյ քարոզ բանին,
Յիշեա առ քոյդ Տէր երկնաւոր,
Զիս զԹորոս յոյժ մեղաւոր**։

448

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Վենետիկ 5, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 49

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Սկևռա

ա

Տէր Յիսուս Քրիստոս Աստուած, գթա, ողորմեա Գէորգ վարդապե-
տին, որ զնախադրութիւններս և զգլխիս ամէն Հին կտակարանացս շի-

* Հիշատակարանին շատ են միջամտել այլ թանաքով և գրչով։
** Ձեռագիրը հետագայում պատկանել է ԺԶ դարի հայտնի մատենագիր Սիմեոն Ապարանցուն։ Հիշատակարանից հետո խոշոր գրերով գրված է «Գիրքս յիշատակ է Սիմէոն վարդապետին», ուրիշ, մանր և գեղեցիկ գրությամբ ավելացված է «Գիրքս այս յիշատակ է Ապարանցի Սիմէոն քաջ բաբունապետին, որ ի դաս յասելն, նման Յոհաննու աւետարանչին, յանկարծակի վախճանեցաւ»։

նել է, և զՄարտիրոս վարդապետն, որ ղաւրինակն ետ, և զԳրիգոր և զամուսին իւր, որ զնիւթս շնորհեցին, և զողորմելի գերիս՝ ծնաւղ[աւ]ք և եղբարբք և քեռ և զարմիւք, և զայնոսիկ, որ յիշեն զմեզ Աստուած ողորմայիւ Եւ քեզ ընդ Հաւր և ընդ Հոգւոյդ Սրբոյ աւրհնութիւն և գոհութիւն և փառք և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտ[ենից], ամէն։

Ր

Փառք քեզ, Քրիստոս Աստուած մեր, վասն ամենայնի, որ զաւրացուցէր զտառապեալ քո Թորոս ի մեծ ծանրութեան մեղացս հոգոց, զայս ձեռամբս տառս տալ քեզ պատարագ յինքնավաստակ երկոց...

Գ

Փառք ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս, ամէն...

Արդ գրեցաւ ի ձեռն բազմամեղ Թորոսի և Բարսղի՝ ի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց և եղբարց իմոց և քեռ իմոյ։ Արդ, որք ընթերցմամբ մխիթարիք ի սուրբ պատուիրանէս, լուսաւորեսցէ Աստուած զհոգիս ձեր և ի շնորհաց աղաթից ձեր հանգուսցէ զվերոգրեալքս ի սմա ընդ վերին մշակացն, ըստ մեծի ողորմութեան իւրոյ։

Դ

Ո՜վ Տէր Աստուած, հասարակաց յոյս ամենեցուն, որ յուսան ի քեզ, ողորմեայ մեղաւոր ծառայիցս Թորոսի և ծնաւղաց իմոց և եղբարց, և մաւրեղբօր Վասլի և Ստեփաննոս քահանայի, և ծնաւղաց իւրոց, վասն զի զգիծս ուսուցանէ, և որ զմեզ յիշեն։

Ո՜վ Տէր Աստուած, հասարակաց յոյս, որ ղամենայն, որք յիշեցին զքեզ յիւրաքանչիւր նեղութիւնս ոչ դարձուցէր ամաչեցեալս... այց արա և մեզ, որ կամք ի ներքոյ պատուհասի մեղաց մերոց՝ Թորոսի և ծնաւղաց մերոց և եղբարց և քեռ և ուսուցչի մերոյ Թորոսի և որ մեզ յիշեն և փառք այժմ ///

Ե

Ո՜վ Սուրբ Դաւիթ, բարեխաւսեա առ Տէր Աստուած վասն բազմամեղիս Թորոսի և ծնաւղաց իմոց, և եղբարց և քեռ, և Մարեմաիկնի և Վասլի և յանոցիկ, որ յիշեն զմեզ։

Զ

Ո՜վ Սուրբ առաքեալք Պետրոս և Պաւղոս, եւ ամենայն խումբք սուրբ առաքելոցդ, բարեխաւսեցէք առ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր վասն Գէորգեա վարդապետի, որ զԳործքս գրեաց, և վասն բազմամեղիս Թորոսի, և ծնողաց իմոց, և զարմից, այնոցիկ, որ յիշեն զմեզ ի մեղաց թողութիւն։

Է

Աւրհնութիւն քեզ գովութեամբ, և փառք երգըպագութեամբ, Տէր իմ Յիսուս Քրիստոս... որ ի ձեռն առաքելոց քոց յանարգութենէ յառաշ կոչեցեալ և քո աւծութեամբ շնորհի արժանի եղեալ տառապեալս Թորոս՝ վերջինս ի բարեաց և վերջինս և անբարի աւուրցս ծնունդ, վասն առաւել դառնութեանց աւուրցս ընտրեցի զլռութեամբ նստել ի տան և սպասել անըսպառ քո ողորմութեանդ, որ բաժին իմ ես յամենայն էիցս, և նուիրեցի քեզ, որ անկարաւտդ ես, զայս ձեռահիւս լրութեամբ կրող զնախաճառութիւն սրբոց քոց մարգարէիցն։ Ընկալ, ով որ քաղցր է քեզ մարդկան տուրեւառութիւն, և տուր զաւրութիւն շարամանել և յեռուլ ի սա զլրումն ելից աւետեաց սոցա ի Նոր քո Աւետարանս, որ նորոգութիւնդ ես մեզ, Տէր մեր և Աստուած, և քեզ փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ը

Ով Սուրբ Երեմիա, բարեխաւսեա առ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած վասն Թորոսի և Դաւթի և ծնաւղաց մերոց*։

449

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻ

Երևան, 2609

Գրիչ՝ Գրիգոր վարդապետ

319ա Արարչա[գո]րծ Աստուած, որ յոչ էից գոյացուցէր դեղեց[իկսն] ամենայն որո[շող] Աստուած զլուխ արարեր զնախնի[ն] մեր [Ա]դամ, տալով նմա տեղի բարձր քան զարեգակն, որ և հաւ[ատ]ամ թէ ընդ բարձրութեան տեղոյն նմանապէս և փառաց բարձրագունի զնա արժանացուցէր, իսկ նաւյ այնքան ճոխութենէ [արտ]աքո անգեալ մախանաւք այնմ, որ պայծառութեանն արաւեալ լեալ և խաւար վասն ամբառնալոյն եղեալ գնայ ևս խաւարեցոյց ի ճշմարիտ լուսոյ կենաց դրախտին, վիրաւորելով ի ձեռն նախնոյն զբաւանդակ սերելքս հիմանէ, և ոչ ոք էր որ ի թիկունս հասանէր նւաստագունիցս, իսկ արարչական գթութիւնդ շարժեալ յարարածս քո առաքելով զ[Ն]ա կից բանդ ճշմարտի փրկութիւն բանական հաւտիս, որ եղև հովիւ և բժիշկ բնածին, [հաւ]ատացելոցս փրկելով ի զանազան հարուածոց խաշիս և արեամբ աւարտեալ զմեր փրկութիւն ուղղելով զգնացս ի ճանապարհս Վերնոյն Երուսաղէմի մաւրն ամենեցուն գնալով ի զաւրութենէ ի զաւրութիւն, մինչև գայցէ միւս

---

* Բ. Սարգիսյանը գրում է. «Ժամանակ անյայտ, զի գլխաւոր յիշատակարանն ինկած է, միւսներն ալ առանց թուականի են, բայց ձեռագրիս ներքին եւ արտաքին պարագաներէն դատելով, յամի տեառն 1220—1282 գրուած է հաւանօրէն»։ Իսկ տեղը նույնպես հավանորեն համարում է Գթազարկը։ Բայց քանի որ Գևորգ Սկևռացին ևս գրիչներից մեկն է, ուստի տեղը Սկևռան կարելի է համարել, իսկ ժամանակը ԺԳ դարի վերջերը, երբ ավարտել էր ցանկերի և նախադասությունների մուծումը Աստվածաշնչի մեջ։



35—487

անգամ հատուցանել ըստ իւրաքանչիւր գործոց յաւուրն ան[երեկի յ]որ-
ժամ դողան և սարսափին ամենայն արա[րա]ծք։ Յայնմ աւուր յահեղին
ողորմա նւաստագունիս, որ անուամբ եւեթ ունիմ զաստիճան քահանա-
յական, պարտական գտել բիւր քանքարոյ, որ և վարդապետ[ա]կան ըն-
կալա աշտիճան՝ Գրիգորս անուամբ և մակ[անուանեալ] վարդապետ, որ
319բ և անունս բաւական է ինձ‖կշտամբութիւն անուղա և սողոսկեր անձինս,
այլոցաց ուսուցիչ և ինձ կորուսիչ, զայլս ժրացուցանեմ բանիւ տեառն.
հեղգ գտանիմ գործով, յաղագս որո անունս բաւական է ինձ ի յանդի-
մանութիւն։

Եւ արդ Տէր բարեր[ա]ր ես ինձէն բողոքեմ և հրապարակաւ գո-
չեմ յականջս ամենեցուն, ոչ թաքուցանեմ զխխայթեալ վէրս հոգոյս, ոչ
կարեմ վիրաւորս կեղծաւորել առաջի ծածկագէտ բժշկիդ, պատմեմ զա-
նաւր[էն]ութիւնս իմ զի արդարացայց։ Ո Տէր բարերար, զոր ստեղծեր
արարչութեամբ, մի անտես առներ ողորմութեամբդ, զոր ազատեցէր խա-
չիւդ, մի թողուր ի ծառայութեան մեղաց և դժոխոց, զոր գնեցեր արեամբ,
մի մերժեր ի տիրական իշխանութենէդ ասելով ի բաց կացէք ամէնայն
մշակդ, տնաւր[ենաթեան], այլ ներեա, գթայ, ողորմայ թշուառացեալ
և եղկելի անձինս յառաջ յիշեցեալ անուանս տառապելս և տկարս, Գրի-
գոր վարդապետս աղաչեմ, պաղատիմ, [հայ]ցեմ ի բարերար կամացդ,
միջնորդութեամբ և բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնիդ և ամե-
նայն սրբոց, և թող պարտիս յանցանաց իմոց և զծնողացն իմ Թագուհէ
և Աստուածատուր հաշտարար կամաւք նայել և ողորմած աչաւք թողու-
թիւն առնել և ներումն ամէնայն սխալանաց մերոց, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան, ովք ընթեռնույք, մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ, զի և ձեզ նոյն եղիցի յամենառատ ողորմութենէն Աստուծոյ, ամէն*։

## 450

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Գալեմքյարյան, Ցուցակ Միմխենի, էջ 10—11

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Սալյեոճ

283ա Փառք եռանձնեա տէրութեան... Գրեցաւ աստուածայհարց, սուրբ
հարց մեր, սուրբ կրաւնաւորացն, խոշորատեսակ եւ անյարմար գծիւ,
ձեռամբ ամենամեղ եւ անպիտան գրողի Գրիգորի, յաշխարհիս Ցռաճ-
կաց, ի Սալյեոճ, ընդ հովանեաւ Սուրբ Մաթէոսի առաքելոցս, ի Տունս
Հայոց, առ դրանս Սրբոյ Կղմնի, յամի յորում էր թուականս Հայոց ՉԼԲ
(1283)։ Արդ, աղաչեմ չլինել մեղադիր խոշորութեան եւ անյարմարու-

* Հիշատակարանի թանաքը տեղ-տեղ թափվել է և շատ աղոտ նշմարվում են տառերի հետքերը թղթերի վրա, ուստի դժվարությամբ վերծանվեց։ Թվական չունի, բայց Գ. Հովսեփյանը գրում է. «Հետագայ հիշատակարանը տեսնել. 1283 (2) թվականի մեջ» (Յիշատակարանք, էջ 502)։ Հանգամանքները հայտնի չեն, սակայն ԺԳ դարի գրություն է, ուստի թողնում ենք ենթադրաբար նշանակված թվաշարքում։

թեան գրիս, ղի արուեստաւոր ոչ էի, բայց կարի խիստ բանիւ գրեցի յըն-տիր եւ ի լաւ աւրինակէ։

Արդ, գրեցաւ սա ի խոնարհ հոգի, որ եւ վասն սիրոյն Քրիստոսի յանձն առեալ ղաւտարութիւն զպանդխտութիւն, որ եւ ընդ այլ բազում բարէգործութիւնսն ստացաւ եւ զայս գեղեցիկ կտակ, ի յիշատակ հոգ-ւոյ իւրոյ և ամենայն ընտանեաց իւրոց՝ կենդանեաց եւ մեռելոց, որ պահեսցէ յամենայն փորձութենէ յերեւելեաց եւ յաներեւութից, բարէ-խաւսութեամբ եւ սուրբ առաքելոցն և ամենայն սրբոց։

Արդ, ես անարժան ծառայս Քրիստոսի Գրիգոր միակեցի, ստացա ղհոգէկեցոյց հարցն սրբոց եւ յիշատակ հոգւոյն իմոյ եւ ննջեցելոց իմոց, եւ ետու դրել ղսա ի հալալ արդեանց իմոց։ Արդ, յերկիր անկեալ աղաչեմ զամենեսեան ոգէհեծ պաղատանաւք, որք կարդայք եւ աւգտիք ի սմանէ կամ գաղափար առնուք, յիշեսջիք ի սուրբ եւ ի մաքրափայլ յաղաւթս ձեր զբազմամեղս Գրիգոր, եւ զհայրն իմ Վարդ, եւ զմայրն իմ, եւ զեղբարսն իմ, եւ զքորս՝ զկենդանիս եւ զհանգուցեալս ի Քրիստոս, եւ զամենայն ընտանիս իմ եւ զսիրելիս, զի ի ձեռն արժանաւոր աղաւթից ձերոց ըն-կալցուք մասն եւ բաժին ընդ սուրբս ամենայն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ յահեղ աւուրն յապագայի, յորժամ բանք սպառին եւ գործք թա-գաւորէն։

Յիշման արժանի արարէք եւ զանարժան գրողս սորայ եւ որ զմեզ յիշեն սրտի մտաւք, յիշեսցէ Քրիստոս զնոսա իւր առատ ողորմութեամբ եւ երկնից արքայութիւն արժանի լինի, եւ ինքն աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 451

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղէմ 1350, Պողարյան, Ցուցակ Դ, էջ 621

Գրիչ՝ Սիոն Սեւաստացի

ա

[Փ]առք Հաւրն անեղի, անհասի, անբաւի, եւ էացուցչին ամենայ-նի, փառք Որդւոյ երեւելոյ եւ ծնելոյ, եւ ընգ իւր յարուցանելոյ զիւրա-յինսն ամենայն։ Փառք եւ պատիւ եղողի, եւ ազատարար, աննիազ, անու-շաբուրիչ Սուրբ Հոգւոյն։ Փառք երեքերեւեան երրորդական Աստուածու-թեանն եւ անբաժանելի միութեանն, այժմ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Որ արժանացոյց զտկարս, գրել զգիրքս Հայոց առաջնորդացն Սրբոյն Սահակայ եւ Մեսրոբա ասացեալ վասն աւգտի մանկանց*։

բ

Զգծող սորին զՍիոն Սեւաստացի սպասաւոր բանի, եւ զՎարդան վարդապետ համառաւտօղ սորին, աղաչեմ յիշել ի Տէր։

* Թվականը Ցուցակում նշված է 1283։

## 452

### ՍՏԵՓԱՆՈՍԻ ՏԱՐՈՆԵՑՒՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Գրիչ՝ Կարապետ

98բ Յաղագս գրչի յիշատակ:

*Ընդ նմին եւ ես յետինս յամենեսեան եւ քան զբանս յանցաւորս եւ անթիւ մեղօք ծանրաբեռնեալս, եւ արժանիս բազում մահաց. եւ ոչ մի կենաց, խաւարամածս հոգով* Կարապետ *գրիչ որ չեմ յիշելոց, աղաչեմ յիշել յաղօթս առաջի Քրիստոսի զիս եւ եւ զծնողսն իմ զտեր* Յոհաննէս *քահանայն եւ* Վաթ նաթունն, *որպէսզի աղօթիւք ձեր գտցուք զողորմութիւն ի Քրիստոսէ եէ տէր տացէ զ*Գրիգոր *ձեզ բազումս, ամէն։*

## 453

### ԴՐՈՒԱՏ Ի ՍՈՒՐԲՆ ՅՈՀԱՆՆԷՍ

*Երուսաղեմ 97, Պողարյան Ցուցակ Ա, էջ 306*

730ա *Դ[րուատ ի Սուրբ առաքեալն և աւետարանիչն Յոհա]նէս, ի պատկառե[լի խնդրոյ]* Յոհաննու *եպիսկոպո[սի եղբաւր] բարեպաշտ արքային Հայոց* Հեթմոյ, *ի թուականին ՋԼԲ (1283),* Գէորգեայ *մեծի և յոքնալոյս վարդապետի ասացեալ* Սկեւռացոյ:

## 454

### ՍԱՂՄՈՍԱՐԱՆ ԼԵՒՈՆ Գ ԹԱԳԱՒՈՐԻ

*«Հանդէս ամսօրեայ», 1922 թ., էջ 148—151*

Գրիչ՝ Յոհան
Վայր՝ Սիս

ա

*Զմեղապարտ* Յոհանս *յիշեա, ով ընթերցողք։*

բ

*Աստուածատունկս այս հոգէզուարճ*
*դրախտ ցանկալի,*
*Եւ բուրաստան բազմաբեղուն*
*բարեաց բաղձալի,*
*Յոքնազան տնկովք տենչալի,*

*Քաղցրաճաշակ պըտղովք ըղձալի,*
*Ծաղկովք բազմափայլ և անծորելի,*
*Գեղով գեղահրաշ և յոյժ անձկալի,*
*Դեղ բըժշկարար հոգւոց խաթուածի,*
*Անկեալ բարբառով բանի*
*մարգարէին Դաւթի*
*Աստուածային այգոյն արթուն*
*եւ աննիրհելի տնկագործի։*
*Այս Սաղմոս յոգնանկար երանգովք գունազարդ դեղոյ*
*Տիրական պատկերին*
*Եւ մեզ կերպարագրող զոր Հոգւոյն Սրբոյ ամէնիմաստ կոչի,*
*Թացեալ զլեզու գործարան բանի մարգարէին Դաւթի,*
*Գրեալ ձեռինն արագաշարժ դպրի,*
*Զգեղեցկին քան զամենայն որդւոյս Ադամա*
*Գործ սքանչելեաց և զարմանալի։*
*Այս բարբառ մարգարէական բանի,*
*Երգեալ եւթնաղեաւ ձայնիւք քնարի,*
*Եւ տասնաղեաւ Սաղմոսարանի.*
*Զեւթնարփեան շնորհս Հոգւոյն ի զգայականս մեր*
*Տասանց մասունս խորհրդածողի,*
*Յորոց յարմարական ձայնից հնչողի,*
*Ստեղծողն էից ի բանականացս բարեբանի։*

*Այս ամենունակ բարեաց գանձարանի սիրեցող եղեալ բարեպաշտ և աստուածասէր արքայն Հայոց, թագաւորն* Լէոն*, պայազատ և ժառանգաւոր թագի թագաւորութեանս Հայկազեան զարմի, սերեալ ծննդեամ[բ] յ*Ռոբինեա *իշխանէ, որ յազգականութենէ* Բագրատունի*, ի տանէ և ի տոհմէ* Արծրունի: *Որոյ հրամանաւ գրեցաւ Երգ Սաղմոսացս Դաւթի, ի զարդ եկեղեցւոյ և ի վարժ ուսման մանկանց Նորոյս Սիովնի, և իւր իսկ բաղձանս ունելով երգել սովաւ և սաղմոսել և՛ խաւսել ընդ Աստուծոյ անզբաղապէս, և մնալ նմա յիշատակ բարեաց յապագայս ժամանակի։*

*Գրեցաւ սայ ի թուականիս Հայոց ՉԼԲ (1283**. *ի թագաւորանիստ* *260ա մայրաքաղաքն ի* Սիս: *Արդ, որք աւգտիք ի սմանէ յիշեսջիք զ*Ամենայն *բարեաց արժանաւոր թագաւորն Հայոց զ*Լեոն *և զնախնիսն իւր, և յիշողացդ և յիշեցելոցն ողորմեսցի Քրիստոս Աստուած մեր, յոյսն արա-*

---

** 260ա էջի գրչությունը ամբողջությամբ այլ ձեռքի գործ է, ոչ թե միայն այստեղից, որ նկարագրողը գրում է «տարբեր գրչով» («Հանդէս ամսօրեայ», 1922, էջ 151)։ Բուն հիշատակարանի վերջին թերթը անջատել են Լևոն Դ-ի թագավորության ժամանակ (1305—1307 թթ.) և նոր թերթ միացրել, որի վրա արտագրել են նախորդ հիշատակարանի մնացած մասը և շարադրել նորը՝ նշված տեղից, նախորդի նման, արձակ և չափածո շարադրանքով։ Այս բանը կատարել է պարոն* Թորոսենց *պարոն* Աւշինը*, այսպէս. «Յիշեցէք և ընդ նմին զաստուածասէր և զբարեպաշտ պարոն* Աւշին *պարոն* Թորոսենց*, և զծնողսն իւր՝ զհայրն իւր* Ստեփանոս *և զմայրն իւր, և թողութիւն մեղաց հայցեցէք ի Քրիստոսէ՝ իւր և ծնողաց իւրոց, և որ յիշէ՝ ինքն յիշեալ լիցի առաջի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն» և այլն։*

*րածոց, որ է աւրհնեալ ընդ Հաւր և Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն*։*

---

** Սույն ձեռագրում գտնվող 1164 և 1307 թթ. հիշատակարանները Կ. Պոլսում արտագրելուց հետո (Մատենադարան, ձեռ. № 10653, էջ 163բ) Եփրեմ Վարդապետը գրում է. «Զայս Բ պատմութիւնս գրեցի ի մագաղաթեայ Սաղմոսարանէ Լէօն թագաւորին Հայոց, գրեալ ի թուին ՉԼԲ (1283) ի Սիս»։ Այնուհետև արտագրում է 1375 թ. Սսում արտագրված մի Դատաստանագրքի հիշատակարան և ավելացնում. «Եւ զայս գաղափարեցի ես նուաստ Եփրեմ վարդապետս ի մագաղաթեայ Դատաստանէ գրքէ, որ գրեալ էր ի Սիս» (Այս հիշատակարանը տե՛ս Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 516)։*

## 455

### ՀԱՒԱՔԱԾՈՒ

*Վիեննա 571, Տաշյան, Ցուցակ,՝ էջ 1039*

Գրիչ՝ Մատթէոս
Վայր՝ Աղբերց վանք

ա

*Արդ յորժամ գրեցաւ ահեղ և սքանչելի տեսութիւն աստուածային յայտնութիւնս սուրբ և աստուածաբան աւետարանչին Յովհաննու էր*
157ա *թիւ||Հայկազեան սեռի ՉԼԲ (1283), և թագաւոր* Լեւոն, *բայց իշխէր* Կիլիկո *նահանգին միայն, դիտապետ տէր* Յակոբ, *և վարժապետ և խրատիչ սուրբ վարդապետս* Ներսէս, *որոյ հրամանաւ գրեցի զսայ մեղապարտս* Մատթէոս, *որ դեգերեալ կայի առ ոտս սորա, զոր մաղթեմ յիշել յաղաւթս զստա[ցա]ւղ սորին՝ զառաջասացեալ բարունին, և զմեղաւոր գրիչս, որ և դուք յիշեալ լինիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։*

բ

485բ—486բ Գոցս յիշատակարան
Եւ տաղ չափաբերական

*Ի Հայկազեանըս տումարի,*
*Յեաւթն հարիւր մերոյս թուի*
*Երեսներրորդի և երրորդի (1284),*
*Որ և ամաւք շրջագայի։*
*Զմեր Հայկազեան տունս հայրենի,*
*Որ բռնացեալ զսա ունի*
*Ի բարբարոս և այլազգի,*
*Որոյ անունըն* Աճմատ *կոչի;*
*Յարքայութեանն* Լևոնի,
*Որդւոյ* Հեթմոյ *բարեպաշտի,*
*Բարերարոյ և հեզահոգի,*
*Որ և տիրէ* Կիլիկոյի;
Մատթէ *անուն և եղկելի,*
*Սուտ քահանայ տարտամ հոգի,*
*Ժահահոտեալ մեղաւք՝ իւի,*
*Զոր կամաւորն գործեցի։*

Զկուսաւորչին ի Գրիգորի,
Ի գրոյ մեղաց վեր ածողի
Զաղաս մեղաց իմ լուացողի,
Զաթոռն ունի տեառն Յակոբի,
Ի նահանգէ Կիլիկեցի,
Ուստի և փողն Տարսոնացի,
Յանապատէ հռչակելի,
Որ յորջորջի անուն Մլիճի:
Է ի ստորոտն Տաւրոսի
Լերին մեծի և անուանի,
Մերձ ի դղեակ Պապառաւնի
Առ սահմանաւքն Տարսոնի:
Որոյ եկեալ յայս գաւառի,
Որում անուն Վայձոր կոչի.
Հուպ ի չիրիմըն Սիւնեցի,
Ի Յաղբերց վանս մենաստանի։
Յերկրորդ Աթէնս պանծալի,
Առ ոտս հաւր մեր Ներսէսի,
Եւ րաբունեաց վարժապետի,
Հասեալ ի ծայրս իմաստ բանի։
Բարձեալ ղխաչն Քրիստոսի,
Եւ հետևյալ նորին շաւղի,
Ի գիշերի և ի տուընջենի,
Աստուածային բանիւ բերկրի։
Ըստ տէրունեանն հրամանի,
Քննէր զգիրս մատենի,
Զի առանց այսմ հանճարի,
Կեանս անհնարին ոք ընդունի։
Հրաման առի այսմ տառի,
Էր ընդ եղբարցս մեկնչի,
Եւ Յովհաննու Յայտնութիւնի,
Զսոսա դրոշմել ի քարտիսի՝
Մանկանց որդւոյ Նոր Սիովնի,
Որ ի յուսումն փափագի,
Աստուածային իմաստ բանի։
Ի յիշատակ անջնջելի,
Իւր եւ հոգւոյ սրբասիրի,
Այլ և ծնաւղաց իւր և ղարմի,
Որ վասն մեր յոյժ տաժանի,
Յաստուածաշունչ գիրս մատենի;
Վարձահատուց Քրիստոս լիցի,
Եւ ննջելոց իւր համազգի,
Այլ և ծնաւղաց իմ եղիցի
Յարքայութեանըն Յիսուսի։

*Այլ և իմոյ անարժանի*
*Հոգւոյ զաւակ ինձ եղիցի,*
*Որք ընթեռնում ընդ յատենի,*
*Յիշման առնեն զմեզ արժանի*
*Երեսս անկեալ արտասուելի,*
*Մերձակայիցդ Քրիստոսի,*
*Խոշորութեանս մի լիցի*
*Տրտունջ ի ձենջ աններելի։*
*Եւ սխալանաց ոք մի լիցի,*
*Եղբարք և հարք իմ սիրելի,*
*Այլ ուղղելով մեզ շնորհեսցի,*
*Զի և ձերում պարգևեսցի;*
*Դաստիարակին իմոյ* Բարսղի
*Յանուն և կարգ վարդապետի,*
*Եւ հոգևոր. իմ ուսուցչի,*
*Որ զմեզ վարժեաց այսմ արհեստի,*
*Հայցեմ ասել Տէր ողորմի,*
*Միով բանիւ, զի կարասցի*
*Որ հողեղէն զգեցեալ ունի*
*Մարմին և տուն քառանիւթի։*
*Այլ և* Ղուկաս *քահանայի,*
*Որ էր եղբայր մեր սիրելի,*
*Եւ առ Քրիստոս վերափոխի,*
*Որոյ Յիսուս ողորմեսցի։*
*Աւրհնեալ է հայր անճառելի*
*Որդւոյ պատճառ անզննելի,*
*Եւ յէութեանց նոցունց հոգի*
*Այժմ, յաւետ, անլըռելի։ Ամէն։*

Գ

*Գրեցաւ յառաջ քան զԸ (8) կաղանդին, յուլիս ամսոյ, ձեռամբ* Մատթէոս *անարժան քահանայի։*

Դ

*Գրիչ՝ Եսայի* [Նչեցի]

Եսայի *աշակերտ* մեծիմաստ վեհին* Ներսիսի *յիշեսցուք։*

Ե

*Նկարչ՝* Մոմիկ

23ա *Զ*Մոմիկ *նկարիչ խորանիս յիշեցէք, աղաչեմ։*

* *Գրված է «Եսայի աակերտ» ձևով։*

գ

Գրիչ՝ Սարգիս

312բ Եւ մեղուցեալ խուլս անմռռաց յիշեա յաղաւթս, ո՛վ սուրբ վարդապետ բաքումի և մեծայպատիւ։ Վարդապետին է Ներսիսի Եւագրայ ոգեշահ խրատս։ Անպիտան գրիչ Սարգիս ծրեաց և աւարտեաց։ Վարդապետ, աղաչեմ ղսովեալս ի հոգևոր կերակրոյն յիշեայ ի կենդանի յաղաւթքա։

456

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 437

Գրիչ՝ Եսայի [Նչեցի]
Վայր՝ [Աղբերց վանք]

ա

88ա Աստանաւր հանդիպեալք այսմ խրթանայայ[տիչ և մ]իդասուղիչ լուսարանիս, յիշեսջիք ղ[եր]ից երանեալ այրն Աստուծոյն՝ ղմեծ հռետորն Ներսէս վարժիչ իմ ամենավրդովս անձին, ընդ նմին և ղեղկելի գրիչ[ս] Եսայի, և դուք յիշեալ լիջիք։

բ

98բ Զմեղապարտ գրիչս և զվարդապետն իմ յիշել աղաչեմ յաղաւթս ձեր։

գ

107ա Զհամշիրակ եղբայր իմ Ստեփանոս, որ զօրինակս քարտիւ հանդերձ շնորհեաց, յիշեսջիք։ Ընդ նմին և զամենամեղ գրիչս Եսայի, աղաչեմ։

դ

127ա Ընդ որս և դու, ո՛վ ընթերցասէր և սպասօոր բանի։

ե

144ա Զվարդապետն իմ զՆերսէս և զամենամեղ գրողս աշակերտ նորին Եսայի յիշել աղաչեմ ի Տէր, ամէն և եղիցի։

զ

153բ Աղաչեմ յիշել զպէտս իմո վարժից և իմոց հոմասեռից Ներսէս։ Յիշեա ի Տէր, ո՛վ ընթերցող այսմ մատենի, ընդ նմին և զամենամեղս Եսաի գրիչ*։

---

* 103բ էջի լուսանցքում դրված է գրչի ձեռքով. «Զի՞նչ է սէր։ Սէր է բարեմտութիւն փոխադրութիւնսն անմռռաց (կտրված է լուսանցքը)։

Է

278բ Դժուար է խիստ, այսչափ կարացի բազում աշխատութեամբ, մի մեղադնէք։ Զեզ տացէ Աստուած զստոյգն իմանալ։

Ը

314ա Զամենաերջանիկ վարդապետն իմ Ներսէս և զմեղաւոր գրիչս Եսաի յիշել աղաչեմ։

Թ

340բ Զմեղապարտ գրիչս յիշել [աղաչեմ], եւ զհռետոր վարդապետն իմ Ներսէս՝ հանճարեղ դպիր այս իմաս[տութեան]*։

Ժ

Գրիչ՝ Սիմոն

117բ Զմեղուցեալ Սիմոն գծաւղ աղաչեմ յիշել։

ԺԱ

126բ Ո՜վ պատուական եղբայր Եսայի, դու արժանի ես թէ խ (40) տետր այստեղ քեզ օգնութիւն էի արարեալ, ապա դու գիտես զտկարութիւնս իմ ե զհարկիս, որ ի վերա կա։ Անմեղադիր լեր և յաղօթից մի մոռանար։ Թէ այլ կարեմ օգնել, յօժար եմ**։

ԺԲ

363բ Զվերի էջս անյարմար գրեցին այլք***։

ԺԳ

365 Գիրս հնանա,
Ձեռս հողանա,
Աստուած միայն է միշտ, և կա,
Եւ որ զայս տգեղ գիր**** կարդա
Յիսուս ողորմի ինձ և նմա։

ԺԴ

Գրիչ՝ Սարգիս

227բ ԶՍարգիս գրողս յիշե[ցէ]*****։

---

* Գրված է «Պատճառք պահոց Բարսղին» նյութի վերջում։

** Ինչպես երևում է, հետագայում էլ Սիմոնը օգնել է Եսայի գրչին։ Եսային նրանից խնդրել է մանր տառերով գրել, ինչպես ինքն էր գրում, և ահա, Սիմեոնը մանր է գրում. «Մանր կու ուզես, կարդա» (348ա)։

*** Էջի վերին մասը 12 տող գրված է նոտրգրով։ Սիմեոնը այն համարում է «անյարմար» գիր, ինչպես մի ժամանակ բոլորագիրն էին համարում «անյարմար» գիր։

**** Սիմեոնը գեղեցիկ ձեռագիր ունի, ինչպես ցույց է տալիս 116—126 էջերի գրությունը, բայց արագագրության պատճառով գրում է շղագիր հիշեցնող անկանոն բոլորագրով, ուստի և «տգեղ գիր» է անվանում այն։

***** Պրակի հինգերորդ թերթի երկրորդ էջում (383 բ) Սարգիս գրիչը գրել է «այս տետրս Ե թուխտ է», իսկ պրակի 1—5 թերթերի վրա համապատասխանաբար գրված է լա՝ ան է,

ԺԵ

293ա *Աւրհնեալ Տէր Աստուած, որ զաւրացոյց զտկարութիւնս իմ յանկ հանել զսակաւ աշխատութիւնս։ Զստացող գրոցս* զՆսաի *վարդապետ յիշեա առ Քրիստոս*։*

457

ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1422*

*Գրիչ՝* Եսայի [Նչեցի]

ա

190բ *[Փ]առք ի գոյից բնաւից տարր և անտարր արարածոց եզակի և եռակի աստուածութեանն, այժմ և միշտ և յանսպառ յաւիտեանս, ամէն։*

*Արագրեալ և ի ծայրս աւարտմամբ զկա ընկալեալ դպրութիւն տեսութեանս սարսափելի տեսլեան և աղաւթից, սրբազան և աստուածաբան աւետարանչին Յոհանու, հրամանաւ երիցս երանեալ առնն Աստուծոյ* Գրիգորի *արքեպիսկոպոսի* Սարարադեան *գաւառի, ի յիշատակ իւր յետ ատեացս և իւրոցն նախնեաց տէր* Վանականին *և այլոցն ամենեցուն, եւ ի վախճումն արիմառու մերձաւորաց և ժառանգորդաց իւրոց՝ տէր* Վարդանայ, *և* Դաւթի, *և* Գրիգոր *վարդապետի, որ եւ վասն հռչակելի դոլոյն մականուամբ յաշխարհէն հրատարարակի, այսինքն///**։ Եւ միւս այլ վարդապետի* Վաճրամայ, *որ ի սոցանէ սնեալ և կրթեալ ի մամուլս գրոց, և ի սոյն ամի եղև կոչումն սորա յաստիճան վարդապետութեան։ Որք են*
191ա *սոքա ժառանգորդ և աթոռապահք*** Սուրբ* Լուսաւորչին *մեր||*Գրիգորի, *ի հարանց յորդիս ընկալեալ զշնորհս աւրհնութեան և զաթոռս։ Որ է սա երրակի ակամբք զարդարեալ, յեռանձնեա յերորդութենէ պարգև ընձեռեալ տանս Թորգոմա. Ա՝ հատեալն մասն ի կենդանարարն փայտէ աստուածեանն խաչէ, նշանն Հացամեաց, մխեալն արեամբ Աստուծոյ հրախառն վտակաւք, եւ Բ՝ Վիրապն անդնդաին տեղի չարչարանաց սուրբ հաւրն մերո, լրմամբ, Գժ (13) ամաւք, որ է պատճառ և գործարան փրկական ծնընդեան և նորոգմանս մերոյ, վասն զի իջմամբ նորա ի խորս անդընդային վերադասեաց զմեզ ի յերկինս, և յանլոյս բանդին բնակել*

---

*լա բն է, լա՝ գն է, լա՝ դն է լա՝ են է։ Հաջորդ թերթի վրա գրված է լա՝ մեչն է (որից հետո երկու թերթ է պահպանվել, և պրականիշը չկա)։ Այսպես է գրված նաև նախորդ 8 պրակում, բայց այստեղ կա նաև «լզ-նէ», ապա նոր «մեչն է», այսինքն պրակի (12 թերթի) մեջտեղն է։*

** Ինչպես երևում է Սարգիս գրչին էլ է զգուշացրել Եսային, որ մանր գրի, և նա վերջին մասերը մանր գրով է գրել։ Սարգսի գիրը՝ շղագիր է։ Սարգսին հանդիպում ենք Եսայի Նչեցու մոտ առաջին անգամ 1283 թվականին, որպես նորուսում։*

*Եսային առաջին անգամ է հիշվում որպես վարդապետ, որին արժանացել է հավանաբար 1284 թվականին, Աղբերց վանքում։ Ձեռագիրը դնում ենք 1281 թ. տակ, որպես վերջին հնարավոր թվական. այդ թվականին մահանում է Ներսես բարոնապետը, իսկ ձեռագիրն ընդօրինակելու ժամանակ դեռևս ողջ էր։*

*** Հաջորդ բառը քերված է։ Անհասկանալի է մնում «հրատարակի»—բառի իմաստը։*

**** Գրված է «աթոռպպահք»։*

նմին, ի բանդէ մեղաց զմեզ աղատեաց նսեմական աղջամղջին. եւ Գ-ն տապանն Նոյեան՝ մայրն երկրորդի սեռի մարդկութեանս, հանգուցեալ ի բարձրաբլուր գագաթն Մասեաց, որ է լեառն Սարարադ գաւառի, որ է առակ աւրինակի, զի սկիզբն բարեպաշտութեանն, որ է ուղղափառ հաւատն, աստ է սիրով զաւրացեալ և արմատացեալ, զի բնակեալ յերկինս երկնից ի սմա բնակեցօ, զի հաճեցաւ ընդ սա։

Բայց գրեցաւ սա ի թիւ Հայկազինս տումարի ՉԼԳ (1284), ի հայրապետութիւն տեառն Յակոբա, եւ ի թագաւորութիւն [Հ]այոց Ղեոնի, բայց տիրէր միայն նահանգին Կիլիկո։‖Եւ յաշխարհա[կա]լութիւն Արղաւն
191բ խանին [որ է ա]զդէն Նետողաց, որ տիրէր սեռ ազգայնոց և ազանաց ամենայն։ Ահարկու ի վերա անաւրէն և ապստամբ ազգացն՝ մահ[մ]ետականաց, և յոյժ գոած և խնամած բարեպաշտ ազգաց քրիստոնէից ընտրեալ ի բանէն Աստուծոյ և աւծեալ շնորհաւք նորին, և զաւազան բազկաւն ամենազաւր ըմբռնեալ խորտակել և մանրել զխստացեալ պարանոց անհնազանդից աւրինաց իւրոց։

Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, ոյք հանդիպիք այսմ մատեանագըրութեան, յիշեսջիք զվերայհիշատակեալսդ, որք են սմա ստացողք և ժառանգողք, յաղաւթս ձեր, ընդ նոսին և զամենամեղ գրիչս Եսաի, և զսիրելի եղբայրս Ստեփանոս, սպասաւոր բանի, վասն զի շատ յորդորիչ և մխիթար գտաւ մեզ յամենայն պէտս հոգո և մարմնո, և որք յիշէքդ ի բարի և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

137ա Ձմեղա[պարտ] գրիչս Եսաի յիշել աղ[աչեմ]։

Գ

144ա յյ աա յմ րտ 22 նն 22 յմ բբ բա շմ բա 22 ճճ բա ճճ դա ժմ սռ 22 րտ 22 ցո դա ռռ*։

## 458

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 34, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 50—51

Ստացող՝ Վարդան
Վայր՝ Գեդէվանճ

ա

Փառք... Արդ, այսպիսի հրաշակերտ տէրունական հրամանացս եղէ ես անպէտս ի բնաւիցս անարժան ի յոքունց Վարդան՝ վարդապետ անուամբ և ձևով միայն, և ոչ արդամբք և ճշմարտութեամբ, վասնզի խաւար այսոյ զկենցաղս պատրէ զհիս հանապազ, սնեալ և վարժեալ ի սուրբ ուխտին, որ կոչի Առաքէս, առ ոտս աստուածազարդ բաքունոյ Հայրապետի, նորոգիչ եկեղեցոյ և սիրող սրբութեան։ Եւ ետ այնորիկ

* Սածկագիրը կարդացվում է. «Ձմեղապարտս Եսաի յիշել աղաչեմ»։

*եկեալ բնակեցայ ի մենաստանիս, որ կոչի* Գնդէվանս, *ընդ հովանեաւ Սուրբ Նախավկայիս և աստուածամուխ Նշանիս, որ յորջորջի Սուրբ Սարդիս և գծագրել ետու ի Թուականութեանն Հայոց, որ էր ՉԼԳ (1284), ի հայրապետութեան Հայոց տեառն* Յակոբայ *և յարհիեպիսկոպոսութեան այսմ նահանգի տէր* Սարգսի *գիտնականի և արդիւնականի, յիշխանութեան բարեպաշտ* Պասյաքին, *և ի տէրութեան այսմ||մենաստանիս պարոն* Դաւթի *և ամուսնոյն իւրոյ* Թամսերին, *ձեռամբ սրբասընեալ և պատուական* Յովանէսի՝ *ի սուրբ ուխտէն, որ կոչի* Թանատի *վանս, որ մեծաւ աշխատութեամբ գրեաց զսայ և նկարեաց ըստ իւրում կարողութեան։*

*Արդ, ըստացա զսա ինձ և ծնողաց իմոց և եղբարց իմոց գանձ անկողոպտելի յերկինս զաւրաւէգն և բարեխաւս յանեղծ աւուրն, մանաւանդ յիշատակ մաւրն իմոյ* Մամայխաթունին, *զի բան Հաւր ջնջեսցէ ձեռագիր յանցանաց նորա։ Եւ աղաչեմ զամենեսեն որք ընթեռնոյք կամ աւրինակ առնոյք, յիշեցէք ի Քրիստոս զիս՝ զեղկելիս, և զհայրն իմ* Ասլան *և զմայրն իմ, զոր վերագոյն յիշեցաք, և զհարազատ եղբարքն իմ* զՄխիթար *և* զՈվանէս, *և զամուսինսն և զաւակսն իւրեանց, ե* զՈհան *եղբայրն իմ, որ փոխեցաւ ի Քրիստոս, և զհաւրեղբայրն իմ* զՊտիկ, *և*
262ա *զքեռին իմ* զԳրիգոր, *և զգծող տառիս* զՅովանէս։||*Եւ առաւել աղաչեմ յիշեցէք առաջի Քրիստոսի զպատուականս ի կարգ քահանայից, զմաքրամիտ հոգևոր հայր իմ և խնամածու* զԱռաքելս, *որ է զարդ եկեղեցոյ և ի բարի արմատոց շառաւիղ բխեալ։*

*Ընդ նմին յիշեցէք ի Քրիստոս զհոգևոր հայրս մեր* զՍաճակ *փակակալ սուրբ եկեղեցոյս, և* զՊետրոս *անդրանիկ որդի սուրբ վկայիցս, և* զՄխիթար *ծերունի քահանայ, և* զՀամազասպն *նորընծայ, և* զՍարգիս *ճգնաւոր,* զՄխիթար *սարկաւագ, որ զքարտէզս կոկեաց, ևս առաւել զհոգևոր եղբայրն իմ* զՅուսիկ *րաբունի, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և զառաջագոյն յիշեցեալ պարոնայքն և զննջեցեալսն իւրեանց, և ինքն Տէրն բոլորից յիշողացդ և յիշեցելոցս առ հասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

*Թ=Ծ=Հ=Գ=Կ=*
*=Վ=Մ=Է=Ջ=Լ=Ց=*
*=Կ=Ս=Ծ=Շ=Ո=Է*
*Թէ դպիր ես՝ կարդայ, թէ չէ՝ լռեայ։*

Գ

262բ *Յիշեցէք ի Քրիստոս զպատուական և զսրբայսնեալ քահանայքն* զՍաճակ *և* զԴաւիթ, *որ զաւրինակս շնորհեցին։*

Դ

204ա *Ո՜վ սուրբ՜եղբարք, զստացող սուրբ* Աւետարանիս զՎարդան *վարդայպետս հեզ և խոնարհ յիշեցէք ի Քրիստոս։ Ընդ նմին և զմեղուցեալ գծողս* զՅովանէս, *աղաչեմ։*

Է

Կազմող՝ Տուրք

262ա Ցիշեսցի աղաւթիւք մասամբ Տուրք անուն կազմող։

459

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

*Երուսաղեմ 1280, Պողարյան, Ցուցակ Դ, էջ 469—470*

Գրիչ՝ Յովանէս

Վայր՝ Սիւնեաց նահանգ

ա

*Փառք անբաւից եռանձնեայ Սուրբ Երրորդութեանն... եւ աստուածութեանն Հաւր եւ Որդոյ եւ Սուրբ Հոգոյն, այժմ եւ միշտ եւ յամենայն յաւիտեան։*

*Աստանաւր յանգ ելեալ կատարեցաւ դպրութիւն երկոտասան աստուածախաւս սուրբ մարգարէիցն, ի նահանգիս* Սիւնեաց, *եւ ի տէրութիւն մեծաշուք իշխանի այսմ գաւառի* Տարսաիճին, *իսկ հանուրց ազգին նետողաց, ի թագաւորութիւնն Հայոց* Լեւոնի, *եւ ի հայրապետութիւն տեառն* Յակոբա, *եւ ի տումարի Հայկազանցս թուոյ ՉԼԳ (1284), հրամանաւ եւ արդեամբ ազնուազարմ եւ իշխանաշուք, վեհիմաստ եւ զուարթանում րաբունո* Ստեփանոսի, *որ տարփացաւ բանից սորին անբիծ, եւ հրամայեաց դրոշմել ի գիծ ինձ ամենամեղ անձինս* Յովանէս *քահանայի... հարազատ նորին եղբարց եւ արիմաստ մերձաւորաց, քաջ իշխանաց Հայոց Մեծաց գովելի եւ յաղթող զաւրավարաց...։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք արբիք եւ զմայլիք ղերիցս երանեալ բարունին, զպանծալի* Պաակն, *եւ զծընաւղս նորին զառաշաասցեալ ղաւրապետն* Տարսաիճն, *եւ զամենայն մերձաւորս եւ երախտաւորս ըստ հոգոյ եւ ըստ մարմնոյ, ի մաքրափայլ յաղաւթս ձեր, զի երկու կենաւքս ճոխասցին, եւ կրկին աշխարհաւք պայծառասցին, եւ երանեսցին ի փառս աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։*

Բ

*Ստացող՝* Ստեփանոս

/// ԶՍտեֆանոս *մեղապարտ յիշեցէք**։

---

* *Գրված է լուսանցքում, հունատառ, բացառությամբ ֆ և ց տառերի. Ն. Պողարյանի կարծիքով, Ստեփանոս Օրբելյանն է գրել։*

## 460

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 2654, Սյուրմեյան, Ցուցակ, էջ 359

Գրիչ՝ Աստուածատուր
Վայր՝ Հաւարծին

Փառք քեզ սուրբ եւ համագոյ Երրորդութիւն յամենայն արարածոց քոց, յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։

Ի թուականութեանս Հայոց ՉԼԳ (1284) գրեցաւ Աւետարանս Յոհաննու սիրելոյ Տեառն և այլոց աւետարանչացն սկիզբն և վերջն, ի վանս Հաւարծին կոչեցեալ, ընդ հովանեաւ Սուրբ Գրիգորին մեր Լուսաւորչի, ի ձեռն անարժան ծառայի Տեառն եւ անպիտան քահանայ Աստուածատրոյ՝ Յուսկայ որդոյ, եւ գրեցաւ հրամանաւ և արդեամբք սուրբ և պատուական քահանայի Գրիգոր անուն կոչեցեալ, զոր ետ գրեալ յիշատակ եւ բարեխաւս իւր եւ ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք ի կենսահրաւէր Աւետարանէս, յիշեցէք Աստուած ողորմեիւ զպատուական քահանայն Գրիգոր, և զամուսին իւր Տիրանց, եւ զմայր նորին Մարիամ. յիշեցէք եւ զծնողսն նորայ, եւ զեղբարսն, եւ զփոխեցեալսն ի Քրիստոս զարժանաւոր քահանայսն՝ զՄխիթար եւ զՆահապետն, և զայլ եղբարսն նորին՝ զկենդանիսն, եւ զմայր իւրեանց եւ զամենայն ընտանիսն, եւ որ բարի մտաւք յիշէք եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Տէր Աստուած ողորմի Փթուրին, որ աւժանդակ եղաւ ի գին գրոյս վասն յիշատակի հոգոյ իւրոյ, ի գիր կենդանի գրեսցի եւ նա, ամէն եւ եղիցի։

Ընդ նոսին և անպիտան գծողս աղաչեմ յիշել զիս և զիմսն ամենայն, զի Տէրն առատ է ի տուրս պարգևաց ամենեցուն առհասարակ ողորմեսցի վերագրելոցս եւ յիշողացդ։ Աղաչեմ զբարեգութդ Աստուած և բարեխաւս ունիմք առ քեզ զբանտ կենդանի եւ զմայր միածնի քո, և զամենայն սուրբս քո, որք հաճեցան քեզ զամենեցուն, որ յայսմ աւետագոչ տառիս գծագրել կան, զգիր յանցանաց նոցա ջնջեայ եւ գրեայ ի գիր կենդանի և դասեա ի դասս աջ ու ընդ սիրելիսն եւ ընդ կամարարսն քո, եւ քեզ փառք յամենայն շնչոց, ամէն, ամէն։

Խոշորութիւն գրոյս անմեղադիր լերուք, աղաչեմ, եւ թէ սխալանս ինչ գտանէք, ուղղէցեք աննախանձաբար, գիտէք զի ամենայն մսեղի տկարանայ ի գործս իւր։ Հասու մարդ որ տեսնուս, վասն նշանացն մի մեղադրել, զի ոչ ուսեալ էի, եւ ոչ այլ նկարել, այդ չափ կարացի։

Տէր Յիսուս Քրիստոս, Աստուած իմ, ընդ սուրբ եղաբերիցն յիշեայ զանարժան ծառայս քո, զմեղուցեալ գրիչս Աստուածատուր, եւ զքոյրն իմ հոգևոր զՄարիամ աղաչեմ զքեզ Տէր յիշեա ի գալստեան քում եւ ողորմեա վասն Սուրբ Աստուածածնիդ եւ ամենայն սրբոց քոց, ամէն։

## 461

### ՅԱՂԱԳՍ ԵՐԿՆԱՅԻՆ ՇԱՐԺՄԱՆՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ԵՐԶՆԿԱՑՒՈՅ

*Երևան 10337 (1339)*

*Հեղինակ՝* Յովաննէս Երզնկացի

Յաղագս երկնային շարժմանն նուաստ Յոհաննիսի Եզնկեցոյ շա-
րագրեալ իմաստնոյն բանից ի խնդրոյ բարեպաշտ և երկիղազարդ պա-
տանոյն պարոն Վադքանկայ

167ա *Ամենայն ոք որ զրան՝ որ է ծնունդ անմարմին մտաց՝ գրով ի քար-*
*տիսի կամիցի դրոշմել՝ պարտի և զնորին պատճառն յանդիման կացու-*
*ցանել, որպէս զի վերջին ժամանակին ծննդոց մարդկան յօժարութիւն ի*
167բ *սէր խնդրողի բանին՝ և աշխատանք տուողի‖խնդրոյն մի ծածկեսցի ի*
*բանասիրաց և յաշխատասէր անձանց, զի կարօտքն բանի իբրև զերկիր*
*ծարավուտ զցօղ քաղցրութեանն երկնի խնդրեսցեն, և ապա սպասաւորին*
*բանի իբրև զամբ ընդունակ ցօղոյ զառեալն յանսահման ծովէ իմաստից*
*և ի գետոց հոսմանէ՝ յաղագս ծուլութեան մի արգելցեն։*

*Ըստ որում և ես նուաստ* Յոհաննես Եզնկեցի, *աշակերտ հոգելից*
*հօրն և սուրբ վարդապետին* Վարդանայ, *սպասաւոր սուրբ գրոց բանից,*
*ի թվին ՉԼԳ (1284), պատահեաց գալ ի կողմանս աստուածապահ թագա-*
*ւորութեանս աշխարհիս Վրաց, ի հռչակաւոր և ի մեծ մայրաքաղաքս ի*
Տփխիս, Փայտակարան *կոչեցեալ ի գիրս պատմողաց, և հանդիպեցաւ*
*խօսել մեզ բանս քարոզութեան ի դուռն եկեղեցւոյն մեծապատիւ և խո-*
*հեմամիտ և մեծ իշխանին Հայոց պարոն* Քարիմատինին, *զոր շինեալ էր*
*աստուածասէր և բարեհոգի հայրն նորա պարոն* Ումեկն, *և էր խօսեցեալ*
*բանն՝ յաղագս երկնային շարժմանն։*

168ա *Վասն որոյ ախորժելի եղեւ զուարթամիտ պատանոյն* Վախթանկայ,
*որ էր որդի կրսեր հռչակաւոր անուանն պարոն* Ումեկին, *և մայրենի ազ-*
*գաւ թոռն մեծ իշխանին* Ջալալին, *տեառն* Խաչենոյ, *որդի մօր բարեպաշ-*
*տի, որ էր Քրիստոսի օրինօքն զարդարեալ յոգի, և ի խնդիր բանիս յոր-*
*դորող զորդի։ Սա խնդրեաց ի մենջ յաղագս երկնի և նորին շարժմանն,*
*յորս հարկեալ յորդորեաց զտկարութիւնս մեր՝ մեծազգ եպիսկոպոսն*
*տէր* Յոհաննէս *ազնուական զարմից և բարետոհմիկ հարց ծնունդ, որ և*
*շարժեալ ի սիրոյն և ի յուսոյ խնդրողաց, և ակն առեալ ի պատուոյ շնոր-*
*հաշուք տեառն և գերապատիւ եկեղեցւոյ գլխոյն ի Նրբաշաւիղ և ի կորո-*
*վամիտ բանից սուրբ հարցն, և վարդապետաց մերոց, և իմաստախոհ*
*արանց, պարզեալ գրեցի համառօտ բանիւ և աշխարհական խօսիւք, վասն*
*դիւրաւ հասկանալի լինել ընթերցողաց։*

*Արդ, որք գրէք յաղագս օգտի՝ զսակաւ աշխատութիւնս մեր, գրեսջիք*
*և զայս նախադրութիւնս, և զբան յիշատակի անուան խնդրողաց. և գրողի*
168բ *սորին‖գրեալ լիշիք և դուք ի գիրն կենաց, և որ ծուլանայ, թողու զսա, ոչ*
*լիցի առանց պատժոց, իբր յոլով աշխատութեանց՝ զիւր սակաւն գին տալ*
*ոչ կամեցաւղ այլոց։*



36—457

462

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4207

Գրիչ՝ Կոստանդին, մակա-
նուն՝ Թոտաք
Վայր՝ Ատանա

ա

127բ Փառք ամենայսուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։ Կարողու-
թեամբ տեառն սկսա և ողորմութեամբ||նորին կատարեցի, ըԹուղթ պատ-
գամաց, ի խնդրո աստուածասէր և հեռաքրքիր աստուածային արինացս
պարոն Աւշնի, եղբաւր պարոն Հեթմոյ, որ է տէր Կիտիկոռոյ, և որդիք
պարոն Աւշնի և թոռունք Աւագ պարոնի և ազն թագաւորին Հայոց Լևոնի,
ի վայելումն մարմնոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ և նախնեաց նորին։
Արդ, որք կարդայք և աւգտիք ի սմա, մեղաց թողութիւն խնդրեցէք
իւր և իւրոցն։ Գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ և անպիտան, սուտանուն
քահանայի Կոստանդնի, որ մականուն Թոտաք կոչի, ի թվին ՉԼԳ (1284),
ի մայրաքաղաքիս Ատանոյ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս։

Մշակքդ Քրիստոսի,
Յիշեցէք զիս զեղկելի,
Յորժամ գայցէ Տէր հայրենի,
Տացէ ձեզ վարձս անհատնելի։
Եւ Քրիստոսի փառ[ք] յաւիտեանս, ամէն։

բ

Փառք Հաւր և Որդւո և Սուրբ Հոգոյն այժմ և յաւիտեանս, ամէն։
363բ Գրեցաւ սա ձեռամբ անարժան քահանայի Կոստանդնի, մականուն
Թոտաք կոչի, ի վայելումն հոգէկիր և ուսումնասէր, և աստուածասէր և
բարեպաշտ իշխանի Աւշնի, որ է որդի իշխանին Աւշնի թագաւորազնի,
364ա որ է եղբայր Հեթմի և տէր Կիտիկոռի, ի վայելումն մարմնոյ և յիշատ||ակ
հոգւոյ և ծնողաց իւրոց, որ և փոխեալ ի Քրիստոս։
Արդ, որք ընթեռնույք կամ աւրինակէք, յիշեսջիք զբարեպաշտ իշ-
խանն զԱւշին, քանզի յոյժ փափականաւք ետ գրել զսայ, զի յոյժ սիրէր
զընթերցումն գրոց, և զի էր լցեալ սա աստուածային շնորհիւ։
Արդ, գրեցաւ սա ի թւին Հայոց ՉԼԳ (1284), ի քաղաքիս Ատանայ,
ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին, և որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիս-
տոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։

գ

385բ Փառք ամենայսուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։ Աղաչեմ
յիշել զԱւշին իշխանն, զի յոյժ աստուածասէր և ուսումնայսէր զորդին
պարոն Աւշին, զտէր Կիտիկոռու, որ և սայ ետ շարադրել զսա ձեռամբ

անարժան Կոստանդեա, մականուն Թուռաք կոչեցեալ։ Աղաչեմ չմեղադրել, զի ժամանակս ցաւագին և ի գրել սմա շատ հիւանդ և ունայն կեցա։

463

## ՄԱՇՈՑ ԵՎ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 195

Գրիչ՝ Կոստանդին

ա

118բ Զստացօղ սուրբ Աւետարանիս զՅոհաննէս արհեպիսկոպոս արքաեղբայր Հայոց, հանդերձ ծնողիւք իւր և համայն ընտանեաւք յիշեցեք ի բարին Քրիստոս։

Ի թուականիս ՉԼԳ (1284), ի ժամ սորին գրութեան փոխեցաւ առ Քրիստոս բարեպաշտ իշխանաց իշխանն արքաեղբայրն Հայոց և աւագնըս Վասակ տէր Ճաննոյն, ի մարտի ամսոյ ի ԺԳ (13), յաւուր երկշաբաթոջ ընդ էրեկս աւուրն, ի մայրաքաղաքին Սիս, և թաղեցաւ ի սուրբ ուխտն Ակներ, որոյ ողորմեսցի Տէր Յիսուս Քրիստոս, ամէն*։

բ

195բ Զստացօղ սորին աստուածաշունչ տառիս զՅոհաննէս արհեպիսկոպոս արքաեղբայր Հայոց, հանդերձ ծնողաւք և նոցին ծննդաւք և համայն զարմաւքն իւրն թաղաղնեաւք յիշեցէք ի բարին Քրիստոս՝ տեսողք սորին և վայելողք։

Ընդ որս և զիս, զանարհեստ գրիչս Կոստ[անդին], ծառայ և աշակերտ վերասացեալ տեառնն իմում յաստուածամեծար վեհիցդ հայցեմ յիշել և զմեզ սովաւ ի բարին Քրիստոս։

Եւ նա որ ամենառատն է և բազմարաշխ առ հասարակ յիշողացդ և յիշեցելոցս և ամենայն հաւատացելոց հանդիստ և ողորմութիւն շնորհեսցէ իւրոց անսպառ դթութեանցն, այժմ և յաւրն յաւիտենից, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

գ

273բ ԶԿոստ[անդին] սորին գծող յիշեցէք ի Տէր։

դ

Ստացող, սրբագրող և մի մասի գրիչ՝ Յոհաննէս Արքաեղբայր

363ա Դստապարտ և եղկելի ոգւոյս Յոհաննէսի եպիսկոպոսի արքաեղբաւր ստացողի սորա և աշխատողի, ողորմեսցի Քրիստոս Աստուած, և աշխատողացն ի սա, և զմեզ սրտի մտաւք ի բարին յիշողաց, ամէն։

* Մինչև այստեղ տե՛ս նաև № 4188 ձեռագրում (էջ 219)։

ե

*Փառք քեզ Աստուած իմ Յիսուս Քրիստոս։*

394ա *Թողութիւն, փրկութիւն և ողորմութիւն Յոհանէս եպիսկոպոսի աշխատողիս և իմոյն հայցեցէք ի Քրիստոսէ վայելողք սորա և ձեզ Տէր տացէ, որպէս դուք մեզ՝ աստ և անդ։*

գ

406ա *Զգրողս սորա և ստացող զՅոհաննէս եպիսկոպոս արքաեղբայր յիշեսցէք, որ յոյժ աշխատեցա յուղղոյն սորա գիստ։ Յիշեցէք ծնողաւք և ընտանեաւք մերովք ի բարին Քրիստոս և Աստուած զձեզ յիշեսցէ։*

*Ի թվականին Հայոց ՉԼԷ (1288) գրեցա*։*

## 464

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Սյուրմեյան, Ցուցակ Հալեպի, Ա, էջ 57*

*Գրիչ՝* Պաւղոս
*Վայր՝* Արքակաղնի վանք

ա

*Փառք ամենատուրբ Երրորդութեանն և միաստուածութեանն, Հաւր և Որդւոյ և ամենասուրբ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Արդ, ամենայն ոք ցանկայ՝ ոմանք մասանց, և այլք բոլորին, աստուածայնոյն աստուածասէրքն և գերագունին բարեբարուքն, զորոց Տէր բանայ զաչս ներքին մարդոյն գիտել և ճանաչել զդիւրակործան և զապականելի կենցաղոյս վայելն, թէ ընդ զտանելն արագ ունի և զեղծումն։ Իսկ որոյ բաց և յստակ ունիցին զմտացն աչս, և լուսատեսակ զհոգւոյն տեսարանս գանձեն անձանց իւրեանց անճողոպրելի շահս որ միշտ անզրաւ ունի զկայն ընդ Աստուծոյ և ոչ ական հատանի ի վնասակար գողոց։ Ուստի և շառաւիղն աւրհնութեան և տեռն բարէնշան սուրբ եւ երանաշնորհ կուսակրաւն քահանայն* Կոստանդին*, աստուածային սիրովն վառեալ միշտ ի վեր ունելով զաչս հոգւոյն, ցանկայր կարաւտ գտանել աւուրն պարենի, և զբաղձանս իւր յայժմ հաստատէր։ Զի թէ ուր ուրեք գտանիցէ զցանկալիս իւր և ապա եռափափագ սիրով հրամայեալ իմոյն նուաստիս յոգնամեղ և անարհեստ գրչիս* Պաւղոսի *գրել զսա զարդարուն երանգովք, զարդափայլեալ վտակս կենսապարգև սուրբ Աւետարանիս։*

---

** Ձեռագիրը գրել է Կոստանդին գրիչը, Հովհաննես արքաեղբոր համար։ Վերջինս հետագայում (1288 թ), լրացրել է այն մասամբ։ Որովհետև ձեռագրի մեծ մասը գրված է 128. թվականին, դրա համար այս հիշատակարանը ևս դնում ենք այդ թվաշարքում։*

*Եւ իմ հարկեալ յեղբայրական սիրոյ նորին, ըստ կարի իմում գրեալ աւարտեցի զսա ի թւին Հայոց ՉԼԳ (1284), ի հայրապետութեան* Յակովբայ *և ի թագաւորութեան Հայոց* Լևոնի, *եւ սուրբ գերադրական անապատիս* Արճայակաղնի, *ընդ հովանեաւ ամենազաւր աջոյն Յիսուսի, եւ Սրբոհոյ Աստուածածնին եւ սրբոց հրեշտակապետացն Միքայելի և Գաբրիելի եւ կենսագիր սրբոյ նշանիս Սուրբ Կոստանդեայ։*

*Եւ արդ, գրեցաւ սա հրամանաւ սրբասնունդ քահանայի* Կոստանդեա, *ի յիշատակ հոգւոյ իւրոյ և առ ի Քրիստոս հանգուցեալ նախնեացն իւրոց. հաւրն իւրոյ* Գրիգոր *քահանայի եւ մաւրն և հաւուն իւրոյ* Թադէոս *քահանաի, և ամենայն զարմիցն, եւս առաւել հարազատին իւրոյ տեառն* Ստեփաննոսի *արքեպիսկոպոսի եւ առաջնորդի* Արճայակաղնոյս, *զոր կացեալ յեպիսկոպոսութենն Ղուկասու ժամանակս, վարելով զկեանս իւր հեզութեամբ և խոնարհութեամբ, ըստ սրբոց առաքելոցն վերափոխի առ Քրիստոս ի թվին ՉԼԳ (1284), ի մայիս ԺԶ (16) և՝ վերադասի ըստ այլ սրբոց հարցն և հայրապետացն, որոյ Քրիստոս Աստուած հանգիստ և ողորմութիւն շնորհեսցէ։*

*Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որ խրախանայք և լուսաւորիք աստուածային գանձուցս, յիշեսջիք աղաւթիւք զստացաւղ գրոցս* զԿոստանդին *քահանա, ծնաւղաւք իւրովք եւ ամենայն զարմիւք։ Եւս առաւել երսս անգեալ աղաչեմ զձեզ յոգնամեղ և անարհեստ գրիչս* Պաւղոս *յիշեսջիք և զիմ ի մեղաց թողութիւն, զհայրն իմ և զմայրն, և զամենայն ազգայինս, և ինքն Քրիստոս յիշողացդ և յիշելեացս ողորմութիւն շնորհեսցէ, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Բ

*Ստացաւղ սուրբ Աւետարանիս զաստուածազարդ քահանա* զԿոստանդին *եւ զհայրազատ եղբայր նորին, զաստուածապատիւ եպիսկոպոսն զտէր* Ստեփաննոս՝ *զվերափոխեալն առ Քրիստոս, աղաչեմ յիշել աղաւթիւք ի Տէր։*

465

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 5547 (Բ. դ)*

*Նվիրող՝* Գորգ
*Վայր՝* Կոռ գեաւղ

ա

149բ *Ես՝* Գորգ *անարժան ծառայ Աստուծոյ, ետու կազմել զսուրբ Աւետարանս, զոր գնեալ էր իմ պապն* Գրիգորն, *եւ տուեալ ի Սուրբ Ստեփաննոսն, որ է ի գեաւղն, որ կոչի անուն* Կոռ, *յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց եւ զաւակաց իւրոց։ Եւ ըստ բերման ժամանակիս, հեռացուցեալ էին զԱւետարանս ի Սուրբ Նախավկաէն։ Ես* Գորգս *գտա եւ ետու ի Սուրբ Նախավկայն՝ յիշատակ ինձ, եւ ծնողաց իմոց, եւ զաւակաց, որք կար-*

*դայք, յիշեսջիք առ Քրիստոս՝ զիս եւ զծնողսն իմ, եւ Աստուածն բոլորից ողորմեսցի մեզ եւ ձեզ, ամէն։*

*Թու[ի] ՉԼԳ (1284)։*

*Նորոգեցաւ եւ կազմեցաւ ձեռամբ Յովաննէս քահանայի եւ յոգնամեղի՝ կրկին աղաչեմ յիջել զիս առ Քրիստոս, զի ողորմեսցի Քրիստոս յաւուրն անհրեկի, ամէն, ամէն։*

Բ

Կազմող՝ Յովաննէս

252բ *Տէր Աստուած ողորմեա Յովաննէս քահանաէ, ամէն։*

*Ո՜վ մանկունք Նոր Սիովնի, յորժամ ընթեռնուք զսուրբ Աւետարանս, յիշեսջիք ի Քրիստոս զբազմամեղս զՅովաննէս քահանա, որ բազում ջանիւ նորոգեցի* և կազմեցի զսուրբ Աւետարանս, եւ Քրիստոս աստուածս բոլորից համայնից ողորմեսցի մեզ և ձեզ, ամէն։*

Գ

324ա *Տէր Աստուած ողորմեա Յովաննէս քահանայի ամէն։*

* *Հովհաննեսը թանաքով անցել է խունացած տառերի վրայով։ Նա է գրել վերոբերյալ ամբողջ Հիշատակարանը։*

ՉԼԴ 1285

### 466

## ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ

*Երևան. 1526 (1294 Բ.)*

### Յիշատակարան թագաւորին Հայոց Լեւոնի բնծայաւղի զաւրինակ սուրբ փոցս Հաղբատա*

857բ *Ամենապատճառ և սկզբնական էութիւն երանական Երրորդութեանն*
*Սրբոյ, որ բոլոր գոյիցս է պատճառ, և հանուր էացելոց սկիզբն արմատ*
*և աղբիւր գոլով բարեաց, իբր ամենահարուստ և առաջին բարի, որպէս*
*աստուածաբանէ ծայրագոյնն աստուածաբանից որդին Որոտման յաս-*
*տուածաւանդ ասացեալսն, Ամենայն ինչ նովաւ եղև, և առանց նորա եղև*
*և ոչինչ որ ինչ եղեն։ Եւ յառաջ քան զայս նախաձայնէր ումն մարգարէ,*
*Որ ինչ բարին է՝ նորա է։ Եւ ի նոյն մտաց զաւրութիւն, համաձայն ի*
*միւսոյ սեանն կարծելոյ աստուածեղբաւրն մեծի՝ արտաճառ վարդապե-*
*տութիւն. Ամենայն աւէ՝տուրք բարիք և ամենայն պարգևք կատարեալք*
*ի վերուստ են իջեալ ի Հաւրէն լուսոյ, որով ուսեալ վարդապետեցաք, զի*
*որպէս ըստ բնութեանն էակութեան պատճառ է անպատճառապէս, և*
*սկիզբն անժամանակապէս, որ էն Հայր անսկզբնակից բանին իւր Որդւոյ,*
*և անհատաբար Հոգւոյն բղխելոյ ի նոյն պատկեր համեմատութեան՝ և*
*յայլ տարազ իմացման իմանամք, զի ըստ ստացման և արարչութեան*
*դարձեալ՝ նոյն համագոյ և միասնական կատարելութիւն, երրեակն*
*անձնաւորութիւն պատճառ է պատճառաւորապէս, յոչէից յանգոյից բո-*
*լոր էիցս ամենից, որով արժան և իրաւ պատշաճաւորութեամբ սկսմամբ*
*յինքենէ յառաջ եկեալսն էութեամբ, սկսաւ դարձեալ՝ և կարգաւորեաց*
*աւրինադրութեամբ, զբնակսն լոկ՝ բնական կարգաւոր շարժմամբք, և*
*զբանականսն՝ բանական բարի աւրինադրութեամբ, որով և որք առ ի*
*նմանէ ուսեալք և սկզբնաւորեալք՝ առաջինն յաշխարհի սկզբունք և*
*պատճառք եղեն բարեաց արժանապէս իբրու նորին ճշմարիտ բարեաց*
*պատճառին և սկզբան պատկերք. պատուեցան և մեծարեցան, և զան-*
858ա *մահութեան նորին աւրինակ, անմահ յիշատակաւն յերկրի յանձ||ինս*
*տպաւորեցին, որպէս գոչէ խաւսելով անվախճան, իբրու միշտ կենդանի*
*առաջին պատարագողին Աբելի արիւն, և երևի և մնայ անսպառ պտուղ*

---

* *Մատենադարանի № 6558 ձեռագրում (էջ 634) այսպիսի խորագիր ունի սույն հիշատա-կարանը։*

ողջախոհութեանն Նոյի՝ յաշխարհ ամենայն, և ի բնութիւն մարդկային,
որ նորին յադդի արդարանալոյն փոխանակ դարձեալ ծաղկեցան։ Նաև
Հայրն և սկզբան հաւատոցն արդարութեան, Աբրահամու ուխտ և ողոր-
մութիւն պահեցաւ մինչև ի հազար ազգ. նմանապէս և որ առաջին առաջ-
նորդ եղև աշխարհի գրաւոր աւրինաց և սահմանադրութեան, Մովսէս
մեծն, աստուած թագաւորաց կոչեցաւ, և նախապատիւ և մեծ մարգա-
րէից հանուրց պատուեցաւ, ըստ նմին և անուանի յառաջին աստուածա-
պաշտ թագաւորս Դաւիթ, որ նախ ի նոցանէ պատուեաց զԱստուած սե-
ղան կանգնելով։ Եւ մեծ ի ծնունդս կանանց Յովհաննէս, որ նախ չնաշ-
խարհիկ հրեշտակական սկսաւ ղանապատի կեանս, և մանաւանդ վասն
նախկին ղբարուքն դաւանելոյ կրաւնս, հիմն և փակակալ թագաւորու-
թեանն երկնից, յերանելի և միայն հղաւր բնութենէն երանեալն Պետ-
րոս, առաքելոցն գլուխ արժանապէս պատուեցաւ և մեծարեցաւ, որով
այսչափ նախապատվութիւն այնոցիկ որ զբարին սկզբնաւորեցին,
բազմաց յորդորումն եղև և նախանձ զանազան բարեաց պատճառ և
սկիզբն լինելոյ, որպէս և ըստ որում այլք այլոց, նմանաւրինակ և մերս
աշխարհի և ազգի հայր լուսաւորութեան և հաւատոց ծագեալ փայլեաց
առաքելաչափ մեծ Լուսաւորիչն Գրիգորիոս: Եւ ի նորին զարմէ լուսոյ
շառաւիղք ծագեալք զանազան նշոյլիւք ճառագայթից, զմերս լուսա-
փայլեալ շնորհազարդեցին զտոհմ և զեկեղեցի, որպէս յետ գովեալ որ-
դոցն նորին համանման թոռն նոցին մեծն Ներսէս, կարգաւք կրաւնաս-
տանեայց և բարեգործութեամբ տնանգաց, երկնի հաւասար առաքինու-
թեամբ զաշխարհս Հայաստանեաց նորոգեաց։
858բ Եւ սուրբ հայրապետն Սահակ գրաւք ե‖թարգմանութեամբք ի գնացս
գետոց Աստուծոյ ուրախ արար զեկեղեցւոյս քաղաք, յորոց վերայ իբր ի
բարուք հիման շինելով, ոմանք փիլիսոփայական գետս յաւելին և այլք
զմեկնութեան մտաց շաւիղ մաքրեցին. կէսք զեղանակաց երգս կարգե-
ցին, և այլք զկանոնաց չափ սահմանեցին յորոց յամենեցունց և յետ
յոլովից ի վախճան ժամանակաց և ի վերջինս գարւոյ, յանբարի և ի
նուազեալ ժամանակս իբր ի դրունս ձմերայնոյ ի լսնացեալ ճուռ կամ
ողկոյզ ինչ զարմանալի փայլեաց և երևեցաւ ի զարմէ և ի ցեղէ ընտրու-
թենէ մեծ լուսաւորչին համեմատ առաջնոյն երկրորդ գերամաքուրն
Ներսէս, որ զհայրենին յաջորդեաց գահ և աթոռ հայրապետութեան ի
Կլայն Հատամական, և զամենայն նորոգեաց ըստ նախնի հարցն բա-
րեզարդութեան զառ ի զանազան թշուառութեանցն աղաւաղեալ եկեղեց-
ւոյ կարգս, որում ի նորին արեան մերձաւորութենէ, մանաւանդ յաշա-
կերտութենէ, լուսափայլն բանի և մաքուրն վարուց յետ նորա ծագեաց
և փայլեաց նորին ձեռնասուն եղբօր ծննդոյ որդի, սուրբ և երջանիկ
հայրն մեր Ներսէս, որ ըստ եռանդոտ բորբոքման ի սրբագործ հարա-
զատի սէրն ըստ Ջնբեդայ որդոյ զսիրելին ունի յատկութիւն մանկակո-
չութեան, զի որպէս գործաւէր մեղու ի բազում ծաղկանց զբիւրապատիկ
և զանազան ժողովեաց զբարեաց նախանձ յամենայն նախնեաց սրբոցն
գերազարդից զհարցն և զհայրապետաց՝ զճգնաւորացն և զմիանձանց,
մանաւանդ թէ առաւել լրացեալ մարգարէական և առաքելական աստուա-

ծառանութեամբն, և ի նոյին հոգւոյ շնչմանէ զբաղմաճաշակս այս
խորհուխ՝ որ քաղցր է քան զմեղր բերանոյ, և քան զոսկի և զականս ըն-
տիրս պատուականս երկասիրութեամբ, գործեաց և եթող մեծամեծացն
հոգւով և տնանկաց ի ճշմարիտ բժշկութիւն հոգւոց, միանգամայն և ի
859ա նախանձ առաջինի գործոց, և յորգոր‖ումն և ի սէր ուսումնասիրու-
թեան՝ իբրու երկրորդք ի յետին ժամանակս ի յազգիս մերոյ սկիզբն և
յորդորիչ լինելով մեկնողական իմաստից և հոգևոր այլաբանութեանց,
որով բարդաւաճեալ և եկեղեցի, ղի վաստակով քրտնաջան հարցս փար-
թամացեալ, ոչինչ աղքատ գտանիմք քան զայլ եկեղեցիս, որ փայլեցին
նախնի մեկնողացն և հարցն սրբոց դասք։

Մանաւանդ առաւել սիրելով որպէս զայլ ամենայն դիրս և զսոյն
հոգեշահ տառ՝ արքայս Հայոց Լևոն, և բերկրելով ռովաւ պանծանաւք, և
զսոյն կամեցաւ ընծայ առաքել աշխարհին Արևելից, զոր և յիշատակեալն
ի նախնեաց իրաւացի է, ղի նախնական զարմ թագաւորիս մերոյ ի
վերջին ժամանակս աւուրց աստուածային աւրհնութեամբն ծաղկեալ
ղխափանեալ ի վաղուց թագաւորութիւնն Հայոց նորոգեցին, և զտար-
բերեալ ազգս ծառայութեամբ և գերութեամբ ի սորկութիւն այլա-
սեռից՝ զատեալ և ժողովեալ հանգուցին և բնակեցուցին ընդարձակապէս
իշխանութեամբ, ի ժամանակս յոլով աշխարհաց աւերմանց և մեծամեծ
թագաւորութեանց կործանման հաւասարեալք Նոյին նահապետութեանն՝
որ ի ջնջելն աշխարհի նշխար աճման և արծարծելոյ մնաց բնութեանս
մերոյ, որ և սոքին իսկ հարք և հաւք արքայիս մերոյ Լևոնի, ըստ հա-
ւաստի ազգաբանութեան յերկուց նախընտիր ցեղապետութեանց խառ-
նեալ ի հայկազանցն քաջաց և Աբրահամեան աստուածապաշտ բեղմնա-
ւորութենէն ի Քէտուրական ծննդոց, նաև յետոյ Արշակունի թագաւորու-
թեանն զարմ, և Պալհաւիկ ցեղն հայրապետական որ ի Լուսաւորչէն մեր-
մէ, միաւորեալ Քրիստոսիւ ի մի զբարեպտուղ արքայս մեր ծաղկեցու-
ցին, ղի ըստ Հեթմեանցն անուանեաց, եկն ի սա՝ ցեղն Պալհաւիկ, և
մերձաւորութիւն արեան հայրապետական տոհմին, և ըստ Ռուբինեանց
յաղթողաց՝ խառնեցաւ ցեղն Արշակունի հայկազն ի տոհմն թագաւորա-
կան։ Քանզի քաջ և արի իշխանն Ռուբէն նախնին սոցա, ազգական զո-
859բ լով մեծի թագ‖աւորին Հայոց Գագկայ, դիմեալ յԱրևելից՝ եկն ի սահ-
մանս Տաւրոսի ի գահ Կիլիկեցւոց, և բացեալ և ընդարձակեալ՝ տիրեաց
կողմանցն այնոցիկ; և յետ նորա տիրէ նորա Կոստանդին, և ապա քաջն
և բարին Թորոս, մեծ որդին Կոստանդեայ, որ առաւել ընդարձակեաց
զիշխանութիւն տէրութեանն։

Յետ Թորոսի տիրէ Լևոն որդովքն, յետ Լևոնի՝ որդի նորին Թորոս
երկրորդ։ Ապա յետ Թորոսի տիրեաց իշխանն Ստեփանէ, և յետ Ստե-
փանէի՝ տիրեաց Մլէհն և յետ Մլէհին տիրեաց իշխանն Ռուբէն՝ որդին
Ստեփանէի. և յետ Ռուբէնի բարեշնորհն և բարենշանն Լևոն՝ միւս
որդին Ստեփանէի և եղբայրն Ռուբէնի՝ տիրեաց մեծա[ւ] յաղթու-
թեամբ, որ ընդ բազումս նուաճեաց ազգս և աշխարհս զմերս ընդար-
ձակելով. և ըստ նախնի պսակաւորացն մերոց Հրաչէին և Պարոյրի,
կամաւք քաղցրութեանն Աստուծոյ բարձրացեալ, յերկուց կայսերացն

ընկալեալ թագ, նորոգեաց զխափանեալ աթոռ և արքունիս թագաւորու-
թեան մերոյ. յորմէ ծնեալ ամենագով թագուհին Զապէլ, այն որ զուգեալ
յամուսնութիւն բարի թագաւորին Հեթմոյ ծնաւ զյաղթող թագաւորս մեր
Լևոն. որ թէպէտ ըստ աւրինակին Տեառն իբրու քաջ հովիւ եդ զանձն ի
վերայ ոչխարաց և եկեղեցւոյ, և մատնեցաւ ընդ եղբաւրն իւրում Թորոսի
ի մահ և ի գերութիւն, սակայն շնորհն Աստուծոյ իբրև զսիրեցեալ անդ-
րանիկ որդին զԻսրայէլ վերստին յերկաթի հնոցէն և ի հալոցէն յԵգիպ-
տոսէ պարգևեալ մեզ շնորհեաց. որ թագաւորեալ տիրէ մեզ իմաստու-
թեամբ և բարեպաշտութեամբ, իբրու վէմ անդամանդ և անշարժելի բազ-
մագոյն հնարիւք իմաստից, և աշխատութեամբ ճանապարհաց և պատե-
րազմաց և ծախիւք գոյից, պարսպէ զմեզ շուրշանակի ի մրրկեալ ալեացն
անաստուած հեթանոսացն խռովութենէ։

Արդ, սոյն ամենաբարի և պայազատ թագաւորս մեր Լևոն, ի վերայ
յոքունց բարեաց տեսակաց և բարեսիրութեանց որպէս Դաւիթ մեծն, որ
860ա քան‖զամենայն փառսն թագաւորական՝ երանելի համարէր զվայելչու-
թիւն տանն Աստուծոյ սիրել և տեսանել, նոյն աւրինակ և սա սիրելով
զսրբոյ եկեղեցւոյ պայծառութիւն՝ և զվայլչական կարգս եկեղեցականս՝
առատանայր ի բազում վանորայս և յեկեղեցիս, լնող զպէտս սպասաւո-
րաց առատաձիր պարգևաւք ռոճկաց, միանգամայն և վայելչացուցանէր
փարթամութեամբն զտունս Աստուծոյ պէս պէս զգեստուք և անօթաւք
պատուականաւք և բազում կտակարանաւք Հին և Նոր պատուիրանաց,
նաև պէսպէս մեկնութեամբք նոցին՝ զոր հարքն երշանիկք ի ձեռն Հոգ-
ւոյն Սրբոյ պարզեալ բացայայտեցին։ Եւ մանաւանդ առաւել տենչմամբ
սրտի սիրելով զհայրենի և պարծելի բնիկ Հայկազանց աշխարհն՝ զՏունն
Արևելից՝ որ առաջին է մասն և գլուխ աւրինակ իմն բոլոր աշխարհի, զի
անտի սկսանին ի ձեռն լուսաւորացն՝ աշխարհի շարժմունք և կամ թէ
կոչել զնոյն աշխարհի իրաւ հայր և հաւ մարդկութեանս՝ յորում դադա-
րեալ տապանն Նոյի և բացեալ անտի դարձեալ սերեցաւ մարդկային
զարմ, յորմէ ի նոյն արևելեան կողմանէ, որպէս զգալի լոյս արևուն
տիեզերաց ծագէ, այսպէս և զհոգևոր լոյս աւետարանին փառաց անտի
ծագեալ ընկալաք ի մեծ Լուսաւորչէն մերմէ Գրիգորէ, որով թէպէտ այսր
և անդր վտարեալ հեռացաք ի նմանէ իբրև Հրէիցն ազգ յԵրուսաղէմէ գե-
րութեամբ, սակայն զԴաւթին գոչէ ամենից մեր սիրտ, թէ Մոռացայց
զքեզ Երուսաղէմ՝ մոռասցի զիս աջ իմ զոր ճշմարտապէս քան զբազումս
առաւել սիրելով և անմոռաց բաղձանաւք միշտ ի մտի ունելով արքայս
Լևոն, զվանորայս և զեկեղեցիս և զբարեձև կրաւնաւորս, և զկարգս
արևելեան կողմանցն որ ի Մեծ Հայք, որով հանապազ պարծէր առ
ամենայն ազգս և լեզուս քրիստոնէից, և միշտ գովէր և տենչէր իբրու
հարազատ ժառանգ, և մանաւանդ քան զբազում տեղիս զմեծ և զհռչա-
կաւոր երկնահաւասար սուրբ ուխտն զմայրավանքն զՀաղբատ, յորում
կամէր անմոռաց արձանացուցանել զինքեանն յիշատակ բարի ի Քրիս-
860բ տոս նուէր‖աւք և պատարագաւք, վասն որոյ և ընդ այլոց թագաւորա-
կան ընծայից, զոր միշտ առաքէր, և զգիրքս զայս Մեկնութեան Սաղմո-
սաց Դաւթի, որ ի նախասացեալ սուրբ հաւրէն Ներսէսէ յազգայնոյ ար-

քաւիս մերոյ յարմարեալ՝ տեսանելով զի չգոյր և ղեռ չէր բնաւ ուրեք
տարածեալ յաշխարհն Արեւելից, սա սկիզբն և պատճառ լինելով բա-
րեաց՝ նորոգընծայ առաքեալ՝ պարգեւեաց սուրբ ուխտին Հաղբատայ ի
վայելումն մանկանց նորա, և յիշատակ ինքեան անմոռաց և ամենայն
աշխարհին և վանուըէիցն արեւելից յաւրինակ գաղափարի և պատճառ
տարածման ի բոլորսն։

Վասն որոյ աղաչեմք զամենեսեան, որք կարդայք և վայելէք և կամ
լսէք և շահիք աւգտութեամբ, դարձեալ և որք աւրինակէք և գրէք, մանա-
ւանդ թէ սոյն բարեւոյս արքայս աղաչէ թախանձանաւք և ժտէ ղսրբազ-
նամաքրութիւն ձեր, յիշել զսոյն բազմաքիրտն զաշխատեալ ի վերայ
ազգիս մերոյ ղթագաւորս Լևոն, որ մնաց զաւակ արձանագրութեան
Հայկազանց տոհմիս։ Զոր թէ ոչ Տեառն զաւրութեանց թողեալ էր մեզ
զաւակը՝ իբրև զՍոդոմ լինէաք և Գոմորայ նմանէաք։ Նա և զբարեհոգի
նախնիսն՝ ղազգն Ռուբինեանց և Հեթմանց, և զմեծ արքայն զառաջին
պսակաւորն զթագաւորն Լևոն, և զամենապարկեշտ և զառաքինի դուստր
նորին, զմարդասէրն և զքրիստոսասէրն զթագուհին Զապէլ՝ զմայր ար-
քայիս։ Եւ և զերանելի հայր սորա զբարի թագաւորն Հեթում, զգովեալն
և զհռչակեալն յամենայն ազգաց և ի հանուրց բերանոց, որ ընդ ամենայն
բարէաց և աստուածասիրութեանց յաւել և զայս, զի յորժամ ել ի վերայ
աշխարհի գերբիչ և աւերիչ հեղեղ զաւրացն որ Մուղալ կոչի, սա ի սկիզբն
վաղվաղակի ընդ մէջ բազմութեան ազգացն թուրքաց, և երկայնաձիգ
հեռաւորութեան ճանապարհի և աշխարհաց ծառայական և ստրուկ գըձ-
861ա նութեամբ զառաջինն այլակերպեալ||ընդ դեսպանաց իւրոց եհաս առ
խանն մեծ, և զհաշտութիւն և զխաղաղութիւն աշխարհին և ազգի մերոյ
հնարեցաւ. որպէս Տէրն որ զծառայի առեալ կերպարան, և խոնարհեալ
յանճառ աստուածութեանն փառաց, արար զմեր փրկութիւն։ Որով իմաս-
տութեամբ նորին թագաւորին յորժամ աշխարհ ամենայն և մեծամեծ
թագաւորութիւնք ի սուր սուսերի մաշեցան, մեր փոքրագոյն գաւառս և
ազգ անվնաս այրեցաւ; և յաւիտեան առ նոսին հաւատարիմ պատուե-
ցաւ, որում արժանապէս յիշեալ լիցի ի Քրիստոս։

Յիշեցէք և զթագաւորահայրն զծնող նորին արքային Հեթմոյ՝ զպա-
րոն Կոստանդին, արեամբ նահատակեալ որդովք իւրով ի Տէր, և մանա-
ւանդ զորդի թագաւորին՝ զպարոն Թորոս, զկրտսեր եղբայր արքայիս
մերոյ, որ ընդդէմ զինեալ Եգիպտացի մահմետական զաւրացն վասն
քրիստոնական կրաւնիցն և եկեղեցւոյ սրբոյ և ազգիս մերոյ արեամբ
նահատակեցաւ։ Յիշեցէք և զամենարարեգործ և զքրիստոսասէր դշխոյ
արքայիս մերոյ զաւրհնեալն ի կանայս զթագուհին զԿիր Աննայ՝ որ մայ-
րաբար խնամաւք զբոլոր եկեղեցւոյ որդիս յանձանձէր, և զհայրական
այցառնութիւն ամենայն աղքատաց յառատաձիր տուրս զուարթամիտ
ողորմածութեամբ լնոյր. իբրև զնորատունկ ձիթենի ծաղկեալ, լուսաւոր
գործովք և բարեբոյս ծննդովք, կատարեալ ի սակաւուն զերկայն ժամա-
նակաց վաստակ և զարդիւնս ելից, և յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս*,

* Կիր Աննան մահացել է 1285 թ.։ Հիշատակարանը դնում ենք այդ թվականի տակ։

*յորժամ արքայ նորին տէրս մեր ճանապարհորդեալ էր յԱրևելս՝ ի դուռն*
*խանին* Աղղունի: *Յիշեցէք և զբարի յիշատակն աոցին ղարքայիս մեր և*
*զհանուրց, և զդշխոյին բարի, զթագաժառանգն բարեմիտ, և զշնորհալի*
*և զամենիմաստ անդրանիկն՝ զպարոն* Հեթում *զգուարթադէմն և զգուար-*
*թարարոյն, որ փոխանակորդն է և գաւազան մերոյս արքայի թագաւո-*
*րութեանն, եւ զառաքինի եղբայր նորին զպարոն* Թորոս, *որ հաւասարի ի*
*մանկական տիս ողջախոհութեան Յովսէփայ, նոյնպէս ե զայլ ևս եղ-*
861թ *բայրս սոցին՝ ղորդիս թագաւորիս մերոյ* Լևոնի, *զ*Սմբատ, *զ*Կոստանդին, *զնուիրեալն Աստուծոյ զ*Ներսէս, *զ*Աւշին, *զ*Ռուբէն՝ *հանդերձ քերբքն*
*իւրեանց։ Նաև բոլոր զարմք և տոհմք թագաւորիս մերոյ յիշեալք լիցին*
*շնորհացն և ողորմութեանն Աստուծոյ։*

*Եւ առաւել աղաչեմք զձեզ կրկին և պաղատիմք սիրովն ի մեղսաքաւիչ խորհուրդ պատարագելոյն Քրիստոսի, և յամենայն քահանայական նուիրագործութիւնս տէրունական տաւնից, և ի հանապազորդ աղաւթս միաբանականս և յառանձնականս ժտել յԱստուծոյ, զի պարգևեսցի արքայիս մերոյ* Լևոնի *և իւրոցն յետ երկայն և խաղաղական կենաց յաղթութեամբ և բարեպաշտութեամբ թագաւորելոյ յաստիս, ժառանգել զանանց թագաւորութիւնն՝ գտանելով ներումն և թողութիւն յանցանաց, և արձակել յերկինս և յերկրի ձերով միջնորդութեամբդ ի կապից մեղաց, յառնել ընդ արդարս և դասիլ յաշակողմեան դասուն, և ժառանգել զյաւիտենական կեանսն ի Քրիստոս ի Տէր մեր։*

*Դարձեալ աղաչեմք զաւրինակողսդ աստի, զի գրեսջիք և զյիշատակս արքայիս ի Քրիստոս։*

## 467

## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱ ՎԱՐԴԱՊԵՏԻ*

*Երուսաղեմ 3098 (1623 թ.), Պողարյան, Ցուցակ Թ, էջ 309—311*

*Գրիչ՝* Ստեփանոս
Վանեկացի

*Փառք միայնոյ, անբաժանելոյ, անհասանելոյ, եռանձնեան եւ անեզրական Սուրբ Երրորդութեանն եւ մի աստուածութեանն, ի վերնայնոց հրաբունից դումարտակացն, եւ ի ստորաբնակ եղանականացս յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Շնորհիւ Տեառն եւ ամէնառատ ողորմութեամբն, ամենակարող եւ անճառ զօրութեամբ նորա, սկսա եւ գերագոյակ անեզրական իմաստութեանն արգահատութեամբ Հոգոյն Սրբոյ աւժանդակեալ կատարեցի՝ զաստուածամաղթան եւ տիրապատում տառս մարգարէից եւ զքրիստոսայայտ տնաւրէնութեան բացայայտութիւն, առաքելական եւ աւետարանական թղթովք, որ է գանձ ծածկեալ, բազմայբեղուն եւ չքնաղատիպ մարգարիտ, եւ ակն լուսատու, եւ սոփերայեան ոսկի, որ եւ ի դէպ է ըստ տեսողին, իբրեւ ոսկի ընդ սարդիոն յեռեալ, եւ կինամոմոն տաշխիւք կնդրկաց խընկեալ անմահարար հոտիւք, զոր նուաստս յորդիս եկեղեցոյ եւ փցուն գրիչս,* Ստեփաննոս Վանեկայցի, *յանգ ելեալ կատարեցի,*

*հրամանաւ եւ ծախիւք քրիստոսապսակ բարեպաշտին եւ աստուածունակ արքային Հայոց* Լեւոնի, *որդոյ* Հեթմոյ, *որդւոյ* Կոստանդեա, *եւ մայրենի ազգաւ որդի* Զապել *թագուհոյն, որդոյ* Լեւոնի *թագաւորին Հայոց առաջնոյ* յՌոբինանց:

*Որ ի յարմատոց բարեաց գտաւ գերազանց բարունակ՝ ստեղնեալ անուշահոտ եւ քաղցրաճաշակ պտղովք, աստուածայնոցն առլցեալ կտակարանացն ըղձիւք, եւ մեծատենչ եւս որ առ Տէր հրով սիրոյն փափաքմամբ միշտ վառեալ, որ եւ յաղագս անբաղդ[ատ]ելի սիրոյն առ Աստուած եւ առ ամենայն ուղղափառ քրիստոնեայս, բազում անգամ զանձն ի մահ եդ, աւրինակ եղեալ Փրկչին Յիսուսի, ընթացմամբ առ ազգն Նետողաց պէս պէս ընծայիւք, եւ ամենակարողին Աստուծոյ միայնոյ ակնկալեալ ձեռնատութեանն՝ սակս ի խաղաղութիւն մնալոյ բնակչաց աշխարհին իւրոյ։*

*Իսկ որ ի սկզբանէ մարդասպանն է եւ ամենաչար բանսարկուն, հակառակն ամենայն բարութեան, բազմադէմ մեքենայիւք, համախոհ գտեալ իւրում անաւրէնութեանն, ղարբանեակն ամենաթշուառ, զայրն ամբարիշտ, զզատեալն յԱստուծոյ, որ ի կողմանէ Արիոսի եւս էր, եւ աւրինակ Բելիարա, խորհուրդ չար ի միտ արկեալ ընդդէմ ամենաբարեպաշտ թագաւորին* Լեւոնի, *զորս ոչ կարացաք զբովանդակն որ այն ամենայն անիրաւութեան ընդ գրով արկանել, զորս Տէր Աստուած ամենախնամն զներհակս նորին ընդ ոտիւք իւրովք նուաճեաց խորհրդակցաւքն իւրովք։*

*Իսկ ի վերայ այսր ամենայնի յարեան ոմանց յամենայն կողմանց յիւրայոցն եւ յաւ[տ]արաց, եւ յայլազգաց անաւրինաց ազգի ազգիք ի յարկածից Արուսակին անկելոյ, խորհուրդ չար ի մտի եդին, եւ ընթացան առ թագաւոր ազգինն նետողաց, ի բարէպաշտ խանն* Ապաղա, *որդի մեծի խանին* Հուլայունի, *եւ բազում նենգաբանութեամբ մատնեալ զարքայն ամենայն Հայոց՝ չարաչար սուտ եւ բասիր բանիւք։*

*Վասն որոյ եւ ամենասուրբ արքայն Հայոց թէպէտ եւ բազում անգամ ընթացեալ եւս էր առ մեծ խանն վասն քրիստոնէից, եւս առաւել սակս այս պատճառի, զանազան եւ անբաւ բազմութեամբ ընծայից ամենայն արեւելայնոցն իշխանաց արքայազանց, նա եւս առաւել խանին եւ ամենայն բազմութեան զաւրաց իւրոց մատուցեալ, մինչեւ ղվաղընչուց բանսարկուեալ նենգաբանութիւնսն ի թշնամեաց իւրոց կարողութեամբ անեղին Աստուծոյ սուտ արարեալ, եւ զիւրն ամենայնճշմարիտ հաւատս եւ զգործս անարատ ընդդէմ Աստուծոյ եւ խանին յայտնի կացուցեալ, որ եւ բազում գովութիւնս ընկալեալ ի նմանէն, եւ պարգեւաւք թագաւորականնաւք դարձուցեալ յաշխարհ իւր, եւ զամենայն թշնամիսն իւր եդեալ ի ներքոյ ոտից նորա՝ առնել ընդ նոսա զոր ինչ եւ կամեսցի, եւ այս այսպէս պատահեցաւ ըստ ժամանակին բերմանց եւ տարբերութեան։*

*Բայց եւ սայ քաջայպէս եւ արիաբար վառեալ ի սէր աստուածայնոցն տաւնախմբութեանց եւ տէրունական տաւնիցն՝ հսկմամբ զամենայն գիշերսն յաւարտ ածեալ պէս պէս եւ զանազան եկեղեցականաւք, եպիսկոպոսաւք, վարդապետաւք, դպրաւք եւ համաւրէն պաշտաւնէիւք,*

ըստ կարգագրութեանց վերնայնոցն լուսափայլութեանց, յաղագս հաշտեցուցանելոյ զՀայր ընդ արարածս, եւ ընդ Որդոյ նորա արեամբ գնեալ հաւաքս։ Եւ ի վերայ ամենայն այսց բարութեանց զամենայն գիրս աստուածային՝ վերստին տայր նորոգել, եւ յաւրէնս Տեառն խորհել ըստ մարգարէին միշտ եւ հանապազ։

Ընդ որս եւ զայս գիր աստուածային, որ ունի յինքեան զկարգ եկեղեցոյ լիապէս՝ զաղաւթականս եւ զսաղմոսսն, որով եւ զարգարի ամենայն բանականաց հոգի եւ մարմին. ընդ նմին եւ աւետարանական եւ առաքելական եւ մարգարէական աստուածախօսութիւնքս հրամայեաց իմումս անկարութեան գրել անյապաղ, ի պատճառս առանձնական աղաւթելոյ յամենայն ժամու առ Տէր, ըստ Տեառն հրամանի՝ եթէ արթուն կացէք եւ յամենայն ժամու աղաւթս արարէք, եւ այլն որ զկնի սորա է։

Իսկ ես անարժան եւ տրուպ ծառայ նորին, ի բազում եւ ազգի ազգի հով[ւ]ոց աշխարհայնոցս, քաղցոյ եւ ծարաւոյ եւ ամենայն դառնաբեր վշտաց, եւ չքաւորութեան իմոյ, որ ըստ մարգարէին ասացելոյ՝ եթէ Ի խաւարի եւ ի ըստուերս մահու նստէին կապեալքն յաղքատութեան որպէս յերկաթս. որք եւ դառնացուցին զբանն Աստուծոյ, եւ զխորհուրդս բարձրելոյն բարկացուցին. նոյնպէս եւ ես զհրամանս տեառն իմոյ սուրբ արքային ոչ կարացեալ փութով կատարել. զորս աղաչեմ՝ աստուածաբար ներել իմումս սղալանաց. քանզի ոչ յայլմէ իմէքէ եղեւ այս, բայց ի յասացելոցս պատճառաց, որով եւ հայցեմ եւս մարդասիրաբար յիմս ամենայնի կարաւտեալ անձն քաղցրութեամբ եւ ողորմութեամբ ակնարկել յիմս աղքատութիւն, զի յորս առեւծուց բազում ազուեսք կերակրին։

Եւ արարիչն ամենայն արարածոց, երեւելեաց եւ աներեւութից, բարէխօսութեամբ ամենայն սրբոց, երկնաւորաց եւ երկրաւորաց, պահեսցէ ընդ ամէնահզաւր աջովն իւրով անպարտելի յամենայն կողմանց զաստուածասէր եւ զբարեպաշտ թագաւորս մեր Լեւոն, իւրովք ծննդովք, ուստերաւք եւ դստերովք, եւ երիցս երանեալ երջանիկ եւ ամէնաւրհնեալ թագուհեաւն իւրով Կեռանիւ, եւ ամենայն ճշմարիտ հաւատացեալ ժողովրդովք իւրովք, յայժմ յաւիտենիս, եւ ի հանդերձեալ կեանսն զանըսպառ եւ զանպատում բարիսն պարգեւեսցէ, եւ հանգուսցէ ի կայեանս անկելոց հրեշտակացն, ի վերինն Երուսաղէմ, յանդրանկաց սրբոց դասն, երգել եւ պարել ընդ հրեշտակս՝ անլռելի աւրհնաբանութիւն ամենասուրբ Երրորդութեանն այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։

Արդ եղբարք սուրբք եւ ծառայակիցք ի Քրիստոս, որք զանցօոր կենացս մեր հոլովումն ի սուրբ եւ յայս մատեանս լսէք, եւ յերկս աշխատութեան տառապեալ մատինս վայելէք, եւ յաստուածային սուրբ գրոցս զանդս մտաց ձերոց պարարէք, զմեզ, որ ընդ ճանապարհ կենցաղոյս ընթացից զայս արձան յիշատակ հանդէպ ձեր կառուցաք, եւ փութացեալ ի ծոց հասարակ մաւրս ծրարեալ պահեցաք, եւ ի սրտից եղբարց իբրեւ զանաւթ կորուսեալ մեռելութեամբ մա[ր]մնոյ մոռացեալ էաք, աղաչեմ տեարք իմ սուրբք, վերստին մտածեսջի ունայնութիւն մեր ի ձեռն առհաւատչէիս ընթերցման, որ ձեռահիւս է եդելոցս ի գրի խաւարայնոյս դամբարան, եւ ցաւղ աղաւթից ձերոց կաթեսցէ ի վերա մեր՝ գրգել եւ

բեղմնաւորել ըղպասքեալքս ի պատրաստութիւն հասարակաց յարութիւնն։

Զի թէ մեծատունն այն զդնեն վկայութիւն Ղազարու՝ եղբարցն իւր մխիթարութիւն վարկանէր՝ ի սոսկալին յայնմ տանջանս՝ որքան ապայ մեզ տառապեալքս՝ բարէյոյսս հանգչիմք ի կարգս մեռելոց, աւանդելով զաստուածային այս մատեան յեղբարսդ մեր ընծայ առաջի Քրիստոսի, եւ յիշատակ մեր ոգւոց, միայն զի կալցուք զձեզ յանծանաւթ աշխարհն յայն վշտակիցս, եւ հասարակաց փրկանաւն Քրիստոսի պատարագաւն հանապազորդ մեզ քաւիչս, որ եւ եւս աղաչեմ իբրեւ հասարակաց բնութեանն վիճակեալք, եւ մերոյ տկարութեանս փործիւ աւժանդակ բոլոր սրտիւ զմիջնորդութիւն բարէխաւսութեան, որ ի սմա առաքելոց եւ մարգարէից առնուլ ձեզ ձայնակիցս, եւ ղաւետարանեալն ստա ի Քրիստոսէ արքայութիւնն խնդրել մերոյ տառապանացս հանգիստ. եւ նայ որ ըստ մեծի ողորմութեանն բանայ զձեռն եւ լնու զամենայն խնդրողս ի քաղցրութենէ կամաց իւրոց՝ զձեզ մեւք հանդերձ, եւ զմեզ եւ զձեզ, որք ստա յիշատակեցաք, ընդ ամենայն սուրբս ընկալցի խորանակից իւր յերկնային հարսնարանին առագաստն, առ ի լնուլ հասակի աստուածեղէն մարմնոյն ի զանազան անդամոցս իւրոց, որք եմք յեկեղեցի, եւ կատարել Աստուած ամենայն յամենայնի, որում փառք այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

## 468

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երեւան 5560

Գրիչ՝ Վարդան

Վայր՝ Անարզաբա

ա

355ա Փառք և պատիւ, և գոհութիւն, և երկրպագութիւն անեղին և անծնին Աստուծոյ Հաւր, և ծնիցելոյն ի նմանէ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, և բխեցելոյն ի նոցունց էութենէ Հոգւոյն Սրբոյ, երից կատարեալ անձնաւորութեանց և մի անբաժանելի աստուածութեանն, յորմէ ամենայն էքս են գոյացեալ՝ իմանալիքն և զգալիքս, քանզի նորա սպասաւոր են վեհագոյն դասք անմարմնոցն, միշտ անլռելի ձայնիւ վեր առաքեն զերեքսրբեան աւրհնութիւնս և ի նմանէ լուսափայլին աստուծեղէն իմաստութեամբ և տեղեկանան նորին անճառ խորհրդոց աստուածութեան։ Հաճեցաւ և ի մենջ աւրհնութիւնս ընդունել և առնել զմեզ տեղեակս իւրոց աստուածութեանն, որո վասն ի ընդրեաց զամէնճրջանիկ դասս մարգարէիցն յառաջ քան զլինելն աշխարհի, ըստ այնմ թե Մինչ չև ծնեալ էիր յարգանդի, սրբեցի զքեզ և լցոյց զնոսա յառատաբուխ շնորհեաց Հո[գւ]ոյն, որով և արբեց[ա]ն անմ[ա]հական բաժակա[ն] և մ[ատր]ուակեցին ղուր[ա]խարա[ր]ն մանկանց եկեղեցւ։

* Այստեղ կեռան թաղուհին դեռ ողջ է. դնում ենք մահվան թվականի (1285) տակ, որպեսզի ղրույթյան հնարավոր վերջին ժամանակ։

Քաջ հովիւքն և հաւատարիմքն յամենայն տանն Աստուծոյ, դի
զանձինս դնէին ի վերա ժողովրդեանն, որպէս դտանես յիւրաքանչիւր
մատեանս, և այնպիսի ջերմ սէր և փոյթ ունէին առ աստուածային տըն-
տեսութիւնս, վասն որոյ և արժանի եղեն հոգոյն ակամբ գուշակել
զամենագովելի և զաւիթն փրկութեանն մերոյ բնութեանս, զոր կորու-
սեալ էաք նախահաւրն յանցանաւք, զանանց և զանթառամելի ուրախու-
թիւնն զտնաւրէնութիւն Տեառն մերո և բանին Հաւր գուշակեցին բանիւ,
և ցնծացան հոգով, և կատարեցին մարմնով ակն ունելով ճշմարիտ արե-
գականն արդարութեան, որ լուսաւորեաց զխաւար մեղաց մերոց, և ան-
տըրտում ուրախութեանն, յորս հայցեալ իբր ընդ հայելի աւրինակաւ
ցանկացան այնմ հանգստեան և զհեշտասէր և զվայրաքարշ կրիցս
355բ զան‖արարեալ և աստուածային սիրովն///անչափ, զի և զայ[ս] աղքա-
տութիւն և պանդխտութիւն համարէին, թէպէտ և թագաւորութեան պա-
տահէին ըստ Դաւթեա, թէ Վայ զի ընդ երկար եղև պա[նդխտութիւն իմ]
և զնորս խորհուրդ գուշակեցին, որպէս ասացաք, նմանողք եղեն տեառն
իւրեանց, գունակ-գունակ առաքինութեամբ զանձինս զարդարեցին և ի
վերայ պատուիրի տեառն իւրեանց զմարտիրոսական մահ ճաշակեցին,
որպէս և աստուածային առաքեալն վկայասանէ։ Քարկոծեցան, սղոցե-
ցան և այլն ամենայն բանաւոր ծիծռունքն աստուածաբան մարգարէքն,
որ զհոգևոր գարունն մեզ ընծայեցին, քաջ և արի և իմաստուն նաւա-
պետին, որ ի ծովածուփ և ի կուտակեալ ալեաց կենցաղոյս անվրդով
զղեակս նաւին ուղղեալ՝ հասին ի խաղաղ նաւահանգիստն, և մեզ ճա-
նապարհորդեալ, զի անմոլարապէս ընթասցուք, թերևս արժանի լիցուց
հասանել ի նոցա կայանս, շնորհաւք Հոգոյն Սրբո։

Ցանկացայ ստանալ զմատեանս սոցա, ես Վարդանս սուտանուն
կրաւնաւոր, բազմաւէր և ամենաթշուառ անձին իմոյ, ի մխիթարութիւն
և ի սփոփանս տկարացեալ և հարեալս ի բանսարկուէն անձին իմոյ, որ
յոյժ նեղիմ և լլկիմ ի նմանէ, ապաւինեալ ի սոցա աւգնականութիւնն,
թերևս ազատութիւն լիցի ինձ։ Բայց ոչ եթէ ըստ կարողութեան և ըստ
յաջողակ լինելոյն ստացա զսա, այլ ի վեր քան զկար մեր, զի աղքա-
տութիւնն չտայր թոյլ և տկարութիւն մարմնոյ չզաւրէր, և յերկուցունց
կողմանցն տագնապէր ինձ։ Մանաւանդ զի և ժամանակն կարի յոյժ
թշուառութեան էր։ Զի ամբարիշտ և երիցս անիծեալ ազգն Իսմաելեան,
զաւրացեալ էր ի վերայ աշխարհիս մերոյ, և միշտ և հանապազ յաւարի
առեալ, և զքրիստոնէսն գերիս վարեալ, և զեկեղեցիս և զվանաւրեայս
336ա աւար հարկանէր, և ոչ գտանէք տեղի հանգստեան‖և ի տեղոց ի տեղիս
փոփոխեաք, և այսպէս յընդդէմն և հակառակն պատահէր սմա, որով և
անյարմար եղև գիր սորա և խոշոր, այլև յիմոյ տկարութէնէս եղև, զի
անհմուտ էի բանիս, աղաչեմ չմեղադրել տխմարութեանս իմոյ։ Զի
սէր և փափագ աստուածային բանիցս էած զիս ի սոցին հանդէսս, զի լիցի
ինձ սա գանձ անպակաս յերկինս, և փող աստուածային շնչոյն՝ գոչելով
զեկեղեցիս Աստուծոյ՝ ի շահ և ի յաւգուտ լսողաց։ Բարեխաւսութեամբ
և աղաւթիւք սոցին աւանդողաց Քրիստոս Աստուած արժանի արասցէ
զանարժանս զՎարդան և զծնողսն իմ, և զհարազատ զեղբարսն իմ, և

ղքւերսն իմ, և զամենայն ազգատոհմն իմ լսել զերանական զձայն, եթէ Եկայք աւրհնեալք Հաւր իմոյ։ Մանաւանդ և այնոցիկ, որք ձեռնտու եղեն ի դրութիւն սորա Ստեփանոսի և Կիրակոսի սպասաւորք բանի և Կոստանդին վարդապետի, վարձս բարեաց պարգևեա Քրիստոս Աստուած ի քո [գալստեանն]. զի յաւրինակ [շնորհեաց]։

Եղև կատարումն գ[րոցս] ի յաստուածապահ դղեակս Անա[րզ]աբոյ, ընդ հովանեաւ գերահռչակ և պատուական պատկերին և մաւրն և հանգուցեալ հաւրն իմոյ Ալիֆսի, և մաւրն իմո, ընդ սմին և զՍտեփաննեան եկեղեցւոյն Կաստաղաւնոյ, և յաթոռակալութեան Անարզաբոյ տեառն մերոյ Գրիգորի առաքինասէր և սրբասէր անձն, կենադանութեան աղբիւրն, իմաստութեան մայրն, որով զծարաւի և զպասքեալ ժողովուրդըս իւր ուրախ առնէր հոգեշահ և արդիւնական բանիւ, մանաւանդ և մեզ հանգուցիչ և անդորիչ եղև։ Քրիստոս Աստուած, ղհոգի սորա և ծնողաց իւրոց յանանց հանգիս[տ]ն հասուցէ, և զմերձաւոր և զընդանի եղբարքս մեր, Քրիստոս Աստուած, իւր անճառ և անտրտում բարեացն արժանի արարցէ, և որք յիշէք զտառապեալս յամենայն բարեաց զՎարդան, ո՜վ մանկունք Նոր Սիոնի, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն, ամէն, ամէն։

356բ [Գրեցաւ սա] ի թուին [Հայոց ՉԼԴ (1285)*; ի հայ]րապետութեան [տեառն Յակ]ովբայ և ի թագ[աւո]րութեան Հայոց Լևոնի՝ որդոյ Հեթմոյ՝ որդոյ Ռաւբենեանցն: Թագաւորն Քրիստոս խաղաղութեամբ և հաստատուն պահեսցէ քթագաւորութիւն սորա՝ որդովք իւրովք ընդ երկայն աւուրս, և Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս։

Բ

240ա Յիշեսջիք զիս՝ զմեղուցեալ և զանարժան ծառայս Քրիստոսի Աստուծոյն իմոյ զՎարդան, և մեղաց թողութիւն հայցէցէք ի Քրիստոսէ ինձ, և հանգուցեալ հաւրն իմոյ Ալիֆսի, և մաւրն իմո, ընդ սմին և զՍտեփանոս սպասաւոր բանի, որ զաւրինակն շնորհեաց. և որք յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեան**։

Գ

334բ ...Զգրող սոցին մատենից զՎարդան, և զծնողն իմ զԱլէֆս, և զմայրն իմ զՄարգարիտ, և զեղբայրն իմ զՎասիլ, որ զթուղթս կոկեց, սրբեսցես յամենայն մեղաց, որ ի չարէն ծնանի, և քո արքայութեանդ արժանի արասցէս, և քեզ փառք այժմ և յաւիտեանս։

---

* Թերթի վերևի անկյունը մաշվել պատռվել է իր հետ տանելով նաև գրության թվականը։ Բարեբախտաբար Ղ. Փիրղալեմյանը 1865 թ. սեպտեմբերի 15-ին Կտուց կղզու Ս. Կարապետի վանքում ընդօրինակել է հիշատակարանը և փրկել թվականը։ Լրացնում ենք նրանից (տե՛ս ձեռ-6273, էջ 50)։

** Այսպիսի հիշատակագրություններ կան նաև 176բ, 289ա, 311բ և այլ էջերում։

## 469

### ՓԱՀՈՑ ԳԻՐՔ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՅ

Երևան 822

ա

270բ Կատարեցաւ պայման գրոցս այսոցիկ ասացւածքի սրբոյն Բարսեղի եպիսկոպոսի Կապադ[ով]կացոց, ի ձեռն Ստեփանոսի քահանայի և ետին կրաւնաւորի։

բ

Գրիչ՝ Եզեկիել

Կատարեցաւ վարդապետական խրատս սրբոյն Բարսեղի, յամի յոռում Հա[յ] Թւականն ՉԼԴ (1285) էր, յամսեանս արաց ԻԵ (25)։ Ես բազմամեղս Եզեկիել գրեցի զսա, բայց ոչ զբաւանդակս, այլ զկէսն, քանզի այլն գրած էր*, և զպակասն մեք կատարեցաք, հրամանաւ բազմերջանիկ և սրբազան Յոհաննէսի վարդապետաց վարժապետի, ի վայելումն անձին իւրոյ մաքրափայլի, և յետ ելից իւրոյ՝ յիշատակ հոգոյ իւրոյ անջնջելի, ի պէտս մանկանց նոր Սիոնի։

Ես երեսս անկեալ ամենի,
Զրժշկութիւն խնդրեմ վիրի,
Զի յոյժ խոցեալ նետիւք չարի
Եւ հեծեծեմ յամէն ժամի։
Յորժամ ճաշիք յայսմ սեղանի,
Եւ տայք այլոց ում արժանի,
Դուք յիշեսջիք զիս ի բարի,
Եւ ասասջիք Տէր ողորմի
Եզեկիել սարկաւագի,
Եւ ձեզ նոյնն հատուցի։

գ

Երկրորդ գրիչ

155բ Քրիստոս Աստուած ողորմեա աշխարհի և աշխատեցելոց ի բարի։

## 470

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 2453

Գրիչ՝ Վարդան

37բ Փառք ամենասուրբ Երրորդութեան, Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ, այժմ և միշտ։

* Առաջին մասի (1—148 թերթեր) գրչից հիշատակագրություն չկա։ 148—155բ թերթերը գրել է մի այլ գրիչ և թողել գ հիշատակագրությունը։ Եզեկիելը երրորդ գրիչն է, որի նույն հիշատակարանից առաջ եղած վկայությունը (ա), հավանաբար գաղափար օրինակի գրչին է վերաբերում։

*Ի թիւ Հայոց ՉԼԴ (1285) գրեցաւ տառս այս, ձեռամբ մեղապարտ և սուտանուն կրաւնաւորի* Վարդանի:

*ի4ա* *Աղաչեմ յիշել ի Տէր զգծողս։*

## 471

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

*Վենետիկ 40, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 818*

*Գրիչ՝* **Մխիթար**

**ա**

*Ո՜վ սրբազան սուրբ առաքեալք, զձեզ արարիչն արարածոց Քրիստոս Աստուած հանդերձ Հարբ և Սուրբ Հոգովն առաքեաց ի փրկութիւն ամենայն ծննդոց Ադամայ։ Արդ, ես ողորմելիս քան զամենեսեան* **Մխիթար** *զամենայն սուրբս բարեխաւս ունիմք առ ձեզ արտասուալից գոչմամբ, և մեծ հաւատով հայցեմք ողորմեցարուք ինձ և իմոցն աստուածապէս, և փրկեցէք աններելի տանջանացն, և զայնոսիկ որ զմեզ յիշեն և յիշելոցն, ամէն։*

**բ**

*Գրիչ՝* Պետրոս

*Յամի ՉԼԴ (1285) գրեցաւ Կաթողիկէքս, և եղև աւարտ սորա ի ձեռն* Պետրոսի *քահանայի, զի Գործքն այլում էր գրած և չէր ժամանեալ ի յաւարտն՝* Ստեփանոս *վանական քահանայի, Քրիստոս ողորմեսցի նմա և թողութիւն շնորհեսցէ յանցանաց նորա։ Ընդ նմին և ի յապագային, ուր բանքն սպառին, Քրիստոս Աստուած թողութիւն շնորհեսցէ ստացող[ի] Կաթողիկէիցս* Պետրոս *վանական քահանայի, և մաւր նորա* Սանդղխի, *ի Քրիստոս հանգուցեալ է, յիշեսջիք[//]։*

## 472

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երուսաղեմ 1681, Պողարյան, Ցուցակ Ե, էջ 540—541*

**ա**

*Գրիչ՝* Սիմոն

148 *Այլ եւ զպատճեալն շնորհիւ զ*Մաթէոս *ստացող գրոյս յիշեսջիք ի Քրիստոս, եւ զծնողս իւր, եւ զամենայն ազգատոհմն՝ զկենդանիս եւ զհանգուցեալսն։*

*Ո՜վ աստուածարեալ եւ շնորհաւք զարդարեալ պատուական եղբայր* Մաթէոս, *զսակաւ գիծս ընկալ եւ զմեղապարտ* Սիմոն *գրիչ յիշման արժանի արա ի մաքրափայլ յաղաւթս քո։ Այլ եւ աղաչեմ անմեղադիր լինել աղաչանաց, եւ եղբայրաբար ուղղել, որպէս է ձեր սովորութիւն։*

Բ

188 Ո՛վ աստուածարեալ եւ վեհիմաց րաբունի Մաթէոս, ընկալ զսակօ գիծս, եւ անմեղադիր լեր անարհեստութեան, եւ ի քարտիսէ աղքատ էի, եւ զնուաստս զՍիմոն արժանի արա մի Տէր ողորմաիւ

Գ

Գրիչ՝ Տիրիկ
Վայր՝ Հօրս գիւղ

578 Փառք անբաժանելի Սուրբ Երրորդութեանն, յաւիտեանս յաւիտեանից ամէն։

Գրեցաւ աստուածային Յայտնութեանս Մեկնութիւն ի թվականիս ՉԼԴ (1285), ի գաւառիս որ կոչի Վայոյձոր, ի գեղս որ կոչի Հօրս, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, իշխանութեան բարեպաշտ պարոնիս Լիպարտի, յառաջնորդութեան արհեպիսկոպոսի տէր Սարգսի, ձեռամբ անարժ[ան]///։

Դ

573 ԶՄաթէոս վարդապետ Տայթեւացի սպասաւոր բանի, եւ բստացիչ գրոցս, եւ զբազմամեղ գրիչս զՏիրիկ յիշեցէք ի Քրիստոս, ո՛վ սուրբ ընթերցողք աստուածային խորհրդոյս։

## 473

## ՃԱՌՔ ՎԱՀՐԱՄԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Վիեննա 77, (ԺԸ—ԺԹ դդ.) Տաշյան Ցուցակ, էջ 331*

Հեղինակ՝ Վահրամ րաբունի

ա

21ա Շարադրեալ ի մերս նուաստութենէ Վահրամայ վարդապետի ի հրամանէ մեծի թագաւորին Լեւոնի: Վասն որոյ եթէ ինչ արժանաւոր եւ պիտանացու յասացեալս գտցի, Աստուծոյ շնորհ, որ զկամել ետ մեղ յառնելն։ Իսկ եթէ նուաստագոյն եւ դուզնաքեայ ի շահս աւգտութեան, իբր զի սխալագոյն եւ կամ թիւր ինչ, ոչ ունիմ ասել գտանել ի գրեցեալքս քան զանձն իմ, եւ զայլս հաւանեցուցանեմ աստուածային գրոց վկայութեամբ, որ են ի սոյն շարադրութիւն առագրեալ, սակս որոյ զայնքան թիւրութիւն իմոյ տկարութեանս վարկանիչիք, որ վասն երկրաքարշ եւ մեղսասէր դոլոյ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ՝ ոչ կարացի ի բարձրագոյնսն եւ յաստուածային խորս մտանել, եւ յայնմանէ փարթամութիւն բարձրագունից մտաց ընծայել։ Վասն որոյ բարեսէր կամօք չափաւոր այս աշխատութեան թողութիւն անչափից մեղաց իմոց հայցեսչիք յանբաւաբաշխ բարեացն Աստուծոյ, այլ եւ ստացողի սորա Տեառն Ստեփանոսի արքեպիսկոպոսի մայրաքաղաքին Տարսոնի: Թվին ՉԼԴ (1285)։

Բ

36ա *Բայց դու, ով իմաստուն և ճշմարիտ ուղղափառ խնդրող, թէ հաւանիս սակաւ բանիցս՝ Աստուծոյ շնորհ, որ այսչափ ետ զօրութիւն տկարիմաց մտացս և թէ ոչ՝ նոյնպէս Աստուծոյ շնորհ, որ զայսչափ զանարժան արժանացոյց, միայն առանց բամբասանաց արձակեսցես, եւ մի տալ տեղի այնոցիկ որ բամբասեն թէ Հայոց վարդապետերն վասն անձին ոչ բան չգիտեն ասել։*

## 474

### ՃԱՇՈՑ ՀԵԹՄՈՅ ԱՐՔԱՅՈՐԴՒՈՅ

*Երևան 979*

*Հեղինակ*՝ [Գէորգ Սկեւռացի]
*Գրիչ*՝ [Ստեփանոս Սկեւռացի]
*Վայր*՝ [Սկեւռայի վանք]

ա

470ա *Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգ-*
*ւոյն այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ի թուականութեանս*
*Հայոց ՉԼԵ (1286) յանկ ելեալ կատարեցաւ աստուածախաւս մատեանս,*
*հրամանաւ աստուածասէր և ամենիմաստ, բարեպաշտ և հանճարեղ պա-*
*րոնին* Հեթմոյ, *որդւոյ քրիստոսապսակ սուրբ արքային* Լևոնի, *որ լի և*
*պատարուն իբրև զծաղկազարդ բուրաստան հաւաքեալ է ի հին և ի նոր*
*ուրինաց, ի պէաս պայծառութեան տաւնից տէրունականաց, հրաշափառ*
*ծննդեանն Քրիստոսի և կենսաբեր չարչարանացն, փառաւոր յարութեանն*
*և սքանչելի համբարձմանն, պայծառ գալստեան Սուրբ Հոգւոյն և այլոց*
*փրկչական տեսութեանցն։ Ընդ որս և սրբոցն Աստուծոյ, առաքելոց և*
*մարգարէից, բազմաչարչար մարտիրոսաց՝ հայրապետաց և միանձանց,*
*և ամենայն հաճոյացելոց Աստուծոյ, որով մեծախորհրդութիւնն, և շնորհ*
*մերոյ փրկութեանն՝ միշտ հռչակի եկեղեցիս սրբոց, խընկանուէր հընչ-*
*մամբ առաջի Աստուծոյ, ի բարեխաւսութիւն մեզ մեղաւորացս, ի վար-*
*դապետութիւն խրատու յաւիտենական կենացն ժամանելոց։*

*Զայս խրախճանութիւն հոգևոր և անմահական փարթամութիւնս*
470բ *ստացաւ նախաչիշատակեալ բարեսէր‖պարոնս մեր* Հեթում, *որ է շա-*
*ռաւեղ բարեշնորհ բղխեալ յարմատոյ թագաւորութեան Թորգոմեան*
*սեռի և Ասքանազանս տոհմի, որ յայտնաբանեալ լինի զայս ձև աւրի-*
*նակի։*

*Յորժամ յաղախնածին զաւրացն սրոյ, և ի պարսկականն խակամիտ նենգութենէ սպառեցաւ թագաւորութիւնն Հայոց ի տանէն Արևելից, և բարձաւ բազում տէրութեան նոցին ի կողմանցն հիւսիսոյ, յայնժամ սահեալք իշխանք Հայոց և որք ընդ իշխանութեամբ նոցին, զետեղեալ պանդխտեցան ի ստորին կողմանս* Գամրաց *և* Պոնտոսի, *որք և անդա-*

---

** Ձեռագրի և հիշատակարանի մասին տե՛ս Ա. Մաթևոսյան, Հեթում Բ թագավորի ճաշոցը։*

*նաւր նեղեալք և ն[ա]հանջեալք ի ննդամէտ յազգէն Յունաց, խոյս*
*տուեալ եկին ի սահմանս* Կեսարեայ Կապադովկացւոց, *որոյ տիրեալ*
*քաջութեամբ արքայն մեծ* Գագիկ, *և զբազումս ի Յունաց սատակեալ,*
*ընդ որս և զմետրապալիտ քաղաքին* զՄարկոս, *որ եղեռնական բարուք*
*զանուն ազգին Հայոց՝ շանն իւրոյ մակադրեալ Արմէն անուն վերաձայնէր։*
*Արքայն բարեշուք՝ զնա և շունն իւր ի միում քրձի ածեալ չար հարուա-*
*ծովք գանից ի միասին սատակեաց։*

*Վասն որոյ և յընթանուր Յունաց բնակչաց աշխարհին որսացեալ*
*եղև, որով և սպանաւ արդար արքայն յամպարիշտ որդւոցն* Մանդալէի
*ի բերդն* Կնդասկաւի: *Եւ յայնմ պատճառէ ցրուեցան պայազատք Հա-*
*յոց և այլ ևս խառնիճաղանջ բազմութիւնքն ընդ բազում տեղիս և գա-*
*ւառս պանդխտացեալք։ Ընդ որս և մեծափառ ոմն իշխան իշխանաց, ի*
*սեռէ թագաւորութեանն արեանառու մեծին* Գագկայ, Ռուբէն *անուն,*
471ա *յինքն հարեալ զյոլովս ի զաւրացն, խաղացեալ||գայ և առնու զամրոցն*
զԿաւսիտառայ, *յորում և դնէ ինքեան տուն իշխանութեան, և տիրէ*
*լեռնակողմանցն* Փռիգիոյ, *և բարեպաշտութեամբ կենաւք կացեալ, փո-*
*խեցաւ առ Քրիստոս։*

*Յաջորդեալ զփառս նորա որդի նորին* Կոստանդին, *այր քաջ և ար-*
*դարագործ, որ և ի բազմաց սիրեցեալ եղև բնակչաց աշխարհին* Կիլի-
կեայ, *որոյ ձեռնտուութեամբ ելեալ ի ծովակողմ* Տաւրոսի, *տիրեաց նա-*
*հանգին այնորիկ, նախ առեալ զդղեակն* զՎա(հ)կայ, *և ապա անաչ*
*յառաջ յոլովից տիրեալ տեղեաց՝ դաշտաց և ամրոցաց, զյոքունս ի Յու-*
*նաց հարեալ։*

*Այղ և Փռանգ զաւրուն, որ յ*Անտիոք, *նիզակակից եղեալ ընդդէմ*
*Իսմայելեան զաւրուն, և քաջութիւնս զարմանալիս անդանաւր կատա-*
*րեալ, հիացոյց զարիականաց գունդն, յորոց և կոմսութեան անուն ստա-*
*ցեալ՝ մարգիզ զնա վերակոչեին։ Եւ այնպիսի յաղթական կենաւք կեցեալ*
*և ծնեալ երկու որդիս* զԹորոս *և* զԼևոն, *ինքն փոխեցաւ առ Քրիստոս, և*
*թաղեցաւ ի սուրբ ուխտն* Կաստաղաւն: *Տուեալ զիշխանութիւն իւր որդւոյ*
*իւրոյ* Թորոսի, *այն որ ի Յունացն պատուեալ պռտաւ սևաստիաւս կո-*
*չեցաւ։*

*Որ և իսկոյն ընդ տիրելն խնդրեաց զվրէժ արեանն* Գագկայ *յորդւոցն*
Մանդալէի, *և առեալ զամրոցն յոլով գանձիւք և զնոսին չարամահ սա-*
*տակեալ, բերեալ ընդ ինքեան զպատկեր Տիրամաւր, եդ ի դղեակն* Անար-
զաբայ *զոր իւր առեալ էր ի Յունաց, յորում և շինեաց զհռչակաւոր տա-*
*ճարն և եդ անդ զպատկերն, որպէս և դրեալ է յարձանի, ի շինուածս*
*տաճարին։ Այլ և բազում եկեղեցիս և ժողովարանս միանձանց շինեալ,*
471բ *և առատատուր պարգևաւք||կարգաւորեալ ճոխացոյց, միանգամայն և*
*հիւրանոցս բազումս և ամենայն ազգաց քրիստոնէից տեղի և տուն*
*պատրաստեալ, հարգեցաւ, բարձրացաւ և հռչակեցաւ յամենայն լեզուս,*
*որք* զԿիլիկեա *անուն լքեալ,* Թորոսի Երկիր *զաշխարհն նորին վերա-*
*ձայնէին։ Եւ նա բարւոք վարուք կենցաղավարեալ հանգեաւ ի Քրիստոս,*
*և թաղեցաւ ի սուրբ ուխտն* Դրազարկն, *թողեալ իւր որդի մի, որ ննջեալ*
*սպանմամբ յամպարըշտաց ոմանց։ Վասն որոյ ընկալաւ զիշխանութիւն*

*մեծին* Թորոսի, *եղբայր նորին* Լևոն, *որ և ծնեալ երիս որդիս զ*Թորոս,
*զ*Ստեփանէ *և ի հարճէ զոմն* Ռուբէն *անուն։*
*Այս* Լևոն *տիրեալ* Մամեստիոյ *և* Տարսոնի, *և ամենայն սոցին նա-*
*հանգի և աջակցեալ ֆռանգաց ի գործ պատերազմի, քաջութեան անուն՝*
*ստացաւ։ Եւ կացեալ յիշխանութեանն կարողագոյն կենաւք և առաքինի*
*վարուք, մինչև եկն թագաւորն Յունաց* Փեռիեռաժէն *ի* Կիլիկեա *և պատ-*
*րանաւք կոչեալ զ*Լևոն, *ըմբռնեաց ի կապանս երկու որդովքն* Թորոսի
*և* Ռուբենաւ, *ոչ դիպեալ անդ* Մլեհին *և* Ստեփանէի, *զի կային յ*Ուռհայ,
*առ կոմս նորին, որ էր քեռի ինքեանց։*
*Առեալ* Պեռոյեռաժէն *զ*Լևոն *որդովքն, տարաւ ի* Կոստանդինուպա-
լիս *և արկ ի բանտ, յորում. տեղւոջ* Ռուբէն *վասն անհնարին քաջու-*
*թեանն կուրացուցին, կուրացեալ նախանձով ազգն Յունաց։ Եւ մեծն*
Լևոն, *որդի նորա* Թորոս, *մնացին անդանաւր ի բանտի, և իշխանութիւն*
*Հայոց բարձաւ ի* Կիլիկիոյ, *տիրելով վերստին Յունաց։*
472ա *Յետ ժամանակաց ինչ լի||նելոյ ի բանտի, ետես երազ որդի նորա*
Թորոս *և պատմեաց հաւր իւրում, թէ տեսի յանուրջս, զի այր ոմն տայր*
*յիս նկանակ մի հացի, և ձուկն ի վերայ, եւ ես առի և քեզ ոչ ետու ի*
*նմանէ։ Եւ հայրն խնդացեալ ելոյծ զտեսիլն որդւոյ, թէ ունիս վերստին*
*տիրել* Կիլիկիոյ, *զոր նախնիքն մեր կալան քաջութեամբ, այլ և ընդաբ-*
*ձակեսցես զտէրութիւնն քո, մինչև ի ծով, զոր ձուկն նշանակեաց։ Սա-*
*կայն ես յայն ոչ ժամանեմ։ Որ և եղև իսկ, զի մեռաւ մեծն* Լևոն *ի* Կոս-
տանդինուպալիս:
*Եւ մեծն* Թորոս *գտեալ աւգնութիւնն յԱստուծոյ, և ի դիպաւղ ժա-*
*մու վերստին եկն ի* Կիլիկիա *և ձեռնտուութեամբ* Լեռնակողմանցն Տաւ-
րոսի *ազինս Հայոց, որ մնացեալ էին անդանաւր, տիրեաց նախ* Վահկա-
յին *և ամենայն* Փոիգիոյ, *և ետ սակաւուց* Անարզաբոյ *և ամենայն* Դաշ-
տակողմանն, *զորոյ զյեղանակ գալստեանն ի* Կոստանդնուպալսէ *և*
*զտիրելոյն* Կիլիկեա *այլ և այլ աւրինակաւ պատմեն գիրք։ Բայց որպէս*
*և է՝ գթութեամբն Աստուծոյ և աւգնականութեամբն ազատեալ ի բանտէ,*
*վերստին տիրեաց իշխանութեան նախնեաց իւրոց, զոր յափշտակեալ էր*
*Յունաց։ Եւ ևս ընդարձակեալ զբազուկ տէրութեան իւրոյ, գնաց ի* Մա-
մուստիայ *և առ զնա։*
*Եւ մինչ կայր անդ յանհոգս, տուկն յունական ազգին, որ էր ի կայ-*
*սերէ կարգեալ, ժողովեալ զզաւրս իւր, ևս և զհայկազունսն, զ*Նաթանի-
լեանք, *զտերսն* Ասկուտսայ, *և զ*Հեթում *տէր* Լամբրունին, *որք և նոքա*
*յարեւելից ի սրոյ Իսմայէլացւոց խոյս տուեալ, եկին և կալան զկող-*
*մանսդ նախասացեալ, և մտին ընդ հնազանդութեամբ կայսերն Յունաց*
*Վասն սրոյ և ընդ նոցին ղաւրաց և զաւրապետի, եկին ի վերայ* Թորոսի
472բ *ի* Մամեստիա: *Եւ նա||յարուցեալ սակաւուք արամբք, անզէն և անպատ-*
*րաստ, ի վերայ անկաւ բիւրական զաւրացն յեղակարծ ժամու, զյոյնսն*
*եսպան և զհայկազունսն ձերբակալ արարեալ կալաւ, և յետոյ ազա-*
*տեաց։ Եւ այսպէս քաջացեալ էառ զ*Տարսոն *և զյոլով մասն* Սավոիոյ,
*զորոյ քաջութեան համբաւ լուեալ կայսրն* Էմմանուի[լ] *որդին* Պեռոյե-
ռաժէնին, *մրմռեալ իբրև զառիւծ, եկն ղաւրաւք բազմաւք ի* Կիլիկիա,

ըմբռնել զԹորոս: Եւ պաշարեալ զնա ի դղեակն Բարձրբերդ կոչեցեալ:
Յարձակեալ* ապա քաջն Թորոս ի վերայ ժողովոյն Յունաց, զբազումս
եսպան, և զլոլով սեաստիաւս գերի տարեալ ի դղեակն, վաճառեաց
ընդ ոսկւոյն կայսերն Էմմանուիլի, և զգանձն բաշխեաց իւրոյ հետևա-
կաց ղաւրուն։ Ընդ որոյ քաջութիւնն և առատամտութիւնն զարմացեալ
կոչեաց զնա իւր յորդեգրութիւնն, և ետ զԿիլիկիեա ձեռնագրով և ոսկի
վուլով Թորոսի և այլ գանձս բաղումս, և ինքն գնաց ի Կոստանդինու-
պաւլիս:

Եւ վերստին լուեալ զհամբաւ բարութեան և քաջութեան մեծին Թո-
րոսի կայսրն Էմմանուիլ, եւ ոչ կարեցեալ տանել նախանձու, սկսաւ
կաշառաւք գրգռել զԽլիճ Ասլան սուլտանն յԻկոնիոյ ի վերայ Թորոսի,
որ և եկեալ և բազում զաւրաւք ի Կիլիկեայ, պաշարեաց զԹիլն ավան, և
ի Տեառնէ պատուհասեալ ախտիւ և ցաւաւք, զորոց զերիվարսն շանա-
ճանճ սպառեաց։

Այլ և մեծն Թորոս ասպատակեալ զաշխարհն յԻկոնիոյ, աւերեաց
և զառ և ղաւար էած ի Կիլիկիա: Վասն որոյ յաչմանէ Խլիճ Ասլան և ի
հարուածոցն Աստուծոյ նեղեալ, ամաւթով դարձաւ յաշխարհն իւր, սէր
473ա երդմամբ եդեալ ընդ մեծին Թորոսի, և այլ ոչ հրապուրեցաւ||ի բանսն
Էմմանուիլի:

Բայց իբրև եկն Թորոս ի Կոստանդինուպաւլսէ ի Կիլիկիա, լուեալ
եղբաւր նորա Ստեփանէի եկն առ նա։ Բայց Մլէհն մնաց առ Նուրատին
սուլտանն Հալպայ: Եւ Ստեփանէ ձեռնտուութեամբ եղբաւր իւրոյ գնաց
ի Սեաւ լեռան և տիրեաց ամենայն կողմանցն այնոցիկ, այլ և կալաւ
զԳերմանիկէև զ Պեհեսնի և դաւեալ ի Յունացն սպանաւ յեռանդան
կաթսայի, և թաղեցաւ ի սուրբ ուխտն յԱրքայակաղնին, թողեալ իւր եր-
կու որդի՝ զՌուբէն և զԼևոն, որ և յետոյ թագաւորեաց։

Այդ մեծն Թորոս տիրեալ քաջութեամբ Կիլիկեա և Սատիոյ, վարէր
զիշխանութիւնն ըստ հաճոյիցն Աստուծոյ, զի էր այր բարեպաշտ և
ողորմած; մեծախորհուրդ և առատամիտ, վարեալ հին և նոր աւրինաւք
Աստուծոյ, տեղեակ գոլով և ամենայն իմաստասիրական արհեստից,
զորմէ ամեն հոգի մարգարեութեան ունել, որ և զբազում դժուարալոյծ
բանս մեկնեալ, զոր գտանի այժմ առ մեզ։ Կեցեալ սա այսպիսի բարե-
զարդ կենաւք, փոխեցաւ յաշխարհն կենդանեաց, և հանգուցեալ եղաւ ի
դամբարանի, ի հռչակաւոր անապատն սուրբ, ի Դրազարկն: Եւ երկիր
իշխանութեան իւրոյ և զմատաղ որդին իւր վստահացաւ յանձերն իւր՝
Թումաս անուն, իշխան մեծ, զոր և պայլ իսկ եդ Հայոց՝ յետ իւր։

Այդ Մլէհն լուեալ զմահ եղբաւր իւրոյ զմեծին Թորոսի, էառ զաւր
բազում ի Նորատին սուլտանէն, և եկն առնուլ զտէրութիւն ի վերայ Հա-
յոց։ Եւ բազում չար հասուցեալ աշխարհիս Կիլիկեցւոց, յորմէ նեղեալք
բնակիչք և իշխանք աշխարհիս, կամաւք ձեռնտու եղեն նմա տիրեալ
ի վերայ ինքեանց։ Ուստի ընդ գալն նորա Թումասն փախչէր յԱնտիոք,
473բ ուստի և եկեալն իսկ էր։ Եւ զորդի Թորոսին ամպարիշտք||ոմանք կալեալ

* Գրված է «դարձակեալ»․ հավանաբար մատծել է գրել «դարձեալ յարձակեալ» և շփոթել է։

սպանին։ Եւ Մլէճն տիրեաց որոց ցանկայր անձն նորա։ Սակայն վասն խստասրտութեանն ոչ կարացեալ յերկարել, վաղվաղակի սպանաւ ի զաւրաց իւրոց ի քաղաքն Սիս, և թաղեցաւ ի վանքն Մեծ Քար կոչեցեալ, զոր իւր իսկ շինեալ էր։ Եւ զաւրք աշխարհին առաքեալ բերին զորդիսն Ստեփանէի, որ սնանէին առ քեռին իւրեանց Բակուրան, ի Տարսոն, և կացուցին իշխան և պարոն զՌուբէն զորդի Ստեփանէի, որ եղև այր աշխարհաշէն, առատամիտ և բարեգործ, որոյ եւ համբաւ անուան նորա ընդ ամենայն աշխարհ։ Վասն որոյ Հոռվմայեցիքն զնա պատուեալ յազգէն թագաւորութեանն կին ետուն նմա, յորմէ ծնաւ երկուս դստերս։

Սակայն ի տերանց Լամբրունի, եղև դաւ նմա; զի սղարել էր Ռուբէն զԼամբրուն: Եւ նոքա նենգեալ, յեղիցին առ բրինձն առ Անտիոքու, զի ելս հնարեսցէ իւրացն։ Իսկ բրինձն խաբանաւք ի ճաշ կոչեալ զՌուբէն, արգել զնա յԱնտիոք, վստահանալով, թէ կարասցէ այնու զԿիլիկեա առնուլ։ Այլ Ռուբէն յղեաց առ եղբայր իւր Լևոնի՝ նստել՝ յաթոռ պարոնութեանն և պահել զերկիրն, և պնդել զսղար բերդին Լամբրունի: Եւ Լևոն և իշխանքն այսպէս արարին։

Իսկ բրինձն իբրև ետես, թե ոչինչ շահի այնու, ապա անկաւ ի բանս վաճառելոյ, զոր հաւանեալ պարոն Լևոն և իշխանքն, ետուն գանձ և երկիր, և թափեցին զՌուբէն: Որ եկեալ և վերստին յինքն առեալ զպարոնութիւնն, կեցեալ աւուրս ինչ բարիոք կենաւք։ Եւ վախճան մահու հասեալ, խրատեաց զեղբայրն իւր բազում իմաստութեամբ և բարութեան
474ա խրատով, թողեալ ի նա զիշխանութիւնն և զ[դս]տերս իւր, || ինքն հանգաւ ի Քրիստոս, և կրաւնաւորեալ թողեցաւ ի Դրազարկն:

Լևոն ընկալեալ զտէրութիւնն եղբաւրէն, առաւելաւ յամենայն բարութիւնս քան զնախնիսն իւր։ Եւ ես ընդարձակեաց զսահմանս տէրութեանն, եւ մինչդեռ կայր քաջութեամբ և բարութեամբ, եկ ի վերայ նորա Ռըստամ յազգէ Իսմայէլի անթիւ զաւրաւք, և նկուն եղեալ աւգնականութեամբն Աստուծոյ, խորտակեցաւ առաջի մեծին Լևոնի, և մնացեալքն փախստական եղէն։ Տիրեաց և զկողմանցն Սավրիոյ մինչև յԻտալիա: Էառ զԱռակլիա և զԿեսարիա, և ընդ գանձուց փոխանակեաց։ Բազում ամրոցս և դղեակս շինեաց, յոլով վանաւրեայս և աղքատանոցս կազմեաց, և գողեացն տունս և ոռճիկս պարգևաց, և բարութեամբ զաշխարհըն իւր եւ[ի]ց։

Զոր զբարեգործութիւն նորա լուեալ թագաւորք երկրի՝ ստիպէին զնա թագ առնուլ, յորոց և ումբրուրն Ֆռանգաց, կայսրն Յունաց, առաքեցին նմա թագ և գանձ բազում։ Եւ նա ընկալեալ զայն, աշխարհաժողով բազմութեամբ և եկեղեցւոյ լրութեամբ պսակեցաւ թագաւոր Հայոց, և նորոգեաց զաթոռ և զգաւազան թագաւորութեան Թորգոմայ, և ելից խաղաղութեամբ զաշխարհ և բարութեամբ, իբրև զդրախտ պտղաւետեալ։ Ամուսնացոյց զդստեր եղբաւր իւրոյ յԱնտիոք, և ապա առեալ զԱնտիոք՝ ետ նմա և որդւոյ իւրոյ, այնմ որ բրինձ Ռուբեն կոչեցաւ, էառ զԱրասուս և զՊաղրաս, տիրեաց և Լամբրունին:

Յետ աւուրց եկն ի վերայ նորա սուլտան Հոռոմոց Քայքայուզն, և պաշարեաց զդղեակն զԿապանն ըմբռնեաց և զիշխանսն Հայոց և

474բ զզաւրա‖գլուխսն զպարոն Կոստանդին: Իսկ արքայն Լևոն, առեալ զմնա-
ցեալ զաւրս իւր, ասպատակեաց յաշխարհն Գամրաց, և բազում ոճիրս
գործեաց, և առեալ զառ և զաւար, դարձաւ ի Կիլիկեա: Զոր լուեալ Քայ-
Իալուզն, եթող զԿապանն և զերկիր Թագաւորին, և ամաւթով դարձաւ
յաշխարհ իւր, ընդ սակաւ գնոց դարձոյց զիշխանսն, և սէր եդմամբ եդ
ընդ արքային Լևոնի:

Բայց արքայն Լևոն կացեալ ի պարոնութեան զերկոտասան ամ և Թագաւոր ԻԲ (22) ամ, փոխեցաւ առ անմահ արքայն Քրիստոս և հանգուցեաւ ի սուրբ ուխտն յԱկներն, վստահացեալ զերկիր իւր զդուստր մի իւր Զապել* անուն, յիշխան ումն Ատան անուն, որ իսկոյն սպանեալ եղև ի Հաշիշեացն ի Սիս:

Եւ ամբարձեալ ազգական Թագաւորին Լևոնի, պարոն Կոստանդին էառ յինքն զիշխանութիւնն Հայոց և զդուստր Թագաւորին Լևոնի զԶապէլ ամուսնացոյց որդի իւր ի Հեթում, որ և ածաւ Թագաւոր Հայոց: Եւ եղև բարեբախտ և անուանի առ ամենեսեան: Ծնաւ այս արքայ Հեթում ի Թագուհոյ իւր Զապիլէ զԼևոն, որ այժմ է Թագաւոր, զեղբայր իւր Թորոս, որ խողխողեցաւ ի զաւրացն Հագարացւոց, և դստերս բազումս: Եւ աստուածահաճոյ կենաւք կային ի Քրիստոս: Իսկ ի վախճան կենաց հասեալ Թագուհոյն բարեպաշտի, փոխեցաւ ի Քրիստոս և եդեալ կայ ի սուրբ ուխտն ի Դրազարկ:

Յայնժամ արքայն Հեթում խորհրդածեալ զխաղաղութիւն աշխար-
հիս Հայոց, յուղի անկեալ գնաց առ ազգն Մուղալ, զոր Թաթարն կոչեն,
և յուխտ մտեալ ընդ նոսա, զմշտ(ը)նչենաւր խաղաղութիւն այսու ստա-
475ա ցաւ աշխարհի իւրոյ ի նոցանէ, որ ապականէին զամենայն աշ‖խարհ:
Յայսմանէ լցեալ նախանձու պաշտաւնեայքն Մահմետի ամենայն ուստեք՝
նիւթէին նենգութիւն ի վերայ Հայոց: Այլ նա աւգնականութեամբն Աս-
տուծոյ և ձեռնտուութեամբ Մուղալ զաւրուն էառ զմեծն Գերմանիկէ և
և զՊեհեսնի, Թափեաց և զնախնեաց իւրոց զաշխարհ՝ ղյափշտակեալն
յայլոց:

Եւ մինչ կայր յաշխարհ Հայոց ի հաշտութիւնն Աստուծոյ, և ի բարութիւն, յայն ժամ բազմապատիկ մեղաւք լցեալ ազգ մարդկան, ձգեցին ի վերայ ինքնեաց զարժանասաստ բարկութիւնն Աստուծոյ, յորմէ եղև զաւրացեալ ազգն Հագարացւոց և բռնակալեաց ումն ծառայ յԵգիպտոս, և տիրեաց ամենայն տանն Սեմյան: Եւ շարժեցաւ ընդդէմ քրիստոնէից, աւերեաց զծովեզերա[յս]ն, քակեալ կործանեաց [զ]մեծն Անտիոք, գերեաց [ա]նհամար անձինս քրիստոնէից, և զանթիւս մաշեաց ի սուր սուսերի:

---

* Ձեռագրում, Զապել անվան վրա նշան է գրված և ստորին լուսանցքում, նույնակերպ նշանի տակ գրված է. «Ի հայրապետութեան տեառն մեր Մինաս Կաթողիկոսին, Թվականութեանս Հայոց ՌՁէ (1638) նւաստս յամենայնի Յակոբ [Ս]ըսցի. որ յայժմ եմ փակակալ ի դուռն Սուրբ Լուսորչի, ի Կըլիկեայ այմ որ ի Մարաստոն ասի Բ և Գ եղբօր հետ եկայ գնացի Սանտըխտով, Թվական նորայ, որ ի դռան վերայ կայր կարդացի, որ էր օրինակն այս. Կատարեցաւ յարմարումն շինուա[ծ] հիւանդանոցիս, հրամանաւ մեծաւ փառաւք քրիստոսասէր Թագուհոյ Զապիլի <ի Թվ>ի Թվականութեանս Հայոց ի Ո և Ղ (1241)»:

Բայց յառաջ քան զայս, եկն ի վերայ Թագաւորին Հեթմոյ և տանս Հայոց, վանեաց զզաւրսն քրիստոնէից, եսպան զԹորոս զորդին Հեթմոյ Թագաւորին, և զմեծն Լևոն, որ այժմ է Թագաւոր, յետ բազում քաջութիւնս կատարելոյ նորա՝ ըմբռնեաց զնա ի գերութիւն։ Վասն որոյ և յայնմանէ համարձակեալ եմուտ յաշխարհ Հայոց և հրկիզութեամբ ապականեաց, և զբնակիչսն ի սուր մաշեաց, զառ և զաւար առեալ, ել ողջամբ և գնաց յաշխարհ իւր։

Բայց որդի Թագաւորին Լևոն, ոչ զանգիտեալ ի ծառայութենէ իս-
մայելացւոցն, այլ պինդ հաւատով և արիագոյն սրտիւ կացեալ ի գերու-
թեանն, նախ բանիւք քաջալերէր զբնակիչս, որ յամրոցս աշխարհիս գայ-
475բ Թագղեալք էին, պինդ կեալ և ոչ տալ ի ձեռս, և ապա||ի յանդիման լի-
նելն սուլտանին, զարմացոյց զամենեսին իմաստուն բանիւքն և անհար-
կու կայիւքն, պատրաստ գոլով ի հարցմունսն և ի պատասխանիսն։ Այլ
և ի ձիընթացս ասպարիսին ելեալ ընդ սուլտանին, առաւելագոյն գտաւ,
քան զամենայն զինւորսն ի հրահանգս ձիւարժութեան, մինչ զի զամե-
նայն գործս և ի բանս նորա հաճեալ և հաւանեալ սուլտանն, ազատեաց
զնա ի բանտէ և ի կապանաց։ Եւ ի պատգամ յղեալ առ Թագաւորն Հե-
թում, և սիրով և երդմամբ, մեծագոյն պարգևաւք դարձոյց զմեծն Լևոն
յաշխարհ իւր։ Որ և ի գալն վերստին նորոգեցան բնակիչք Կիլիկեա, և
ամենայն զարմք քրիստոնէից։ Եւ իսկոյն հայր նորա և ամենայն աշ-
խարհն եդին զնա յաթոռ պարոնութեան, քանզի ոչ առ յանձն լինել Թա-
գաւոր յաւուրս հաւր իւրոյ։

Յետ այսորիկ հիւանդացաւ Թագաւորն Հեթում, որ եւ մեռաւ իսկ լեալ կրաւնաւոր, Թաղեցաւ ի սուրբ ուխտն Դրազարկն, եւ մեծն Լևոն սուգ պահեալ զերիս ամիսս ցաւագին անձամբ, և ապա մեծարեալ ի զանեն և յամենայն Թագաւորաց մերձակայից և հեռաւորաց, միաբանութեամբ ամենայն աշխարհի ւծաւ Թագաւոր ի վերայ ամենայն Հայոց, եթող ի սրտէ զյանցանս ամենեցուն, որք սղալեալ էին նմա, և շնորհեաց պարգևս ամենեցուն։

Է սուրբ արքայս Հայոց առատամիտ, ողորմած, ունկնդիր զգուելոց, ապաւէն վտանգելոց, ողջախոհ և մաքուր, երկայնամիտ և ժուժկալ և յամենայն նեղութիւնս համբերաւղ նման Յովբայ, և մեծախորհ[ուր]դ իբրև զնա, ի փորձութիւ[ն] անկեալ նման նմա, քանզի յիշեալ* սուլ-

* Այստեղ մագաղաթյա թերթերը վերջանում են և հաջորդում է 1694 թ. վերանորոգող Իսկենտեր դպրի լրացրած թերթերը. «Վերստին նորոգեցաւ գիրգս ի մայրաքաղաքն Ատանայ, ձեռամբ սուտանուն Իսկենտեր դպրի, Թուականիս մերում ՌՃԽԳ (1694)», որոնցից առաջինի վրա շարունակվում է հիշատակարանը և զբաղեցնում մեկ ու կես սյունակ։ Հիշատակարանը, որ առաջին անգամ հրատարակվել է «Արարատ» ամսագրում (1870 թ., էջ 353—360, 382—386) «Յիշատակարան Թագաւորական Ճաշոցին կամ Համառօտ պատմութիւն Ռուբինեան իշխանաց» վերնագրով, լրացրած թերթի մասին գրում է. «Աստի մինչ ցվերջն... բուն հեղինակին ձեռագիրը չէ, այլ Իսկենտեր... կազմարարի ձեռագիրն է, և ընդօրինակության մեջ մի քանի սխալներ սպրդած (գուցե և պարբերություններ մոռացած) է, բայց մի քանի բառեր ես մոռացած լինելը աներկբայելի կերևի ընդօրինակության մեջ։ «Դարձեալ աւուրս (յաւուրս) Լևոն եկն զօրօք բազմօք յաշխարհս Հայոց» աստ յայտնի չէ, թէ ո՞վ եկաւ, թեև ի պատմութեանց յայլոց գիտեմք, որ Եգիպտոսի սուլթան Փնտուխտար կամ Բիբարսն է»։

տանն Սըսռա, որ յաւուր Հայոց թագաւորիս եմուտ ի Կիլիկեա, դարձեալ յաւուրս Լեոնի եկն զօրք բազմաւք յաշխարհս Հայոց, և եկեալ Արապ և Թուրքման ամբոխիւք, որ ընդ նմա միաբանեալ էին, և աւերեցին դարձեալ զաշխարհս Կիլիկիայ: Եւ արքայս Լեոն, ըստ բնական քաջութեան իւրոյ զամենեսին յորդորէր մարտնչել ընդ Հագարացիսն, այլ զաւրքն ոչ առին յանձն, զի սակաւք էին։

Բայց իբրև թշնամիքն գնացին, զամենեսեան քաշալերէր և մխիթարէր, և առատ պարգևօք յանձանձէր, մինչև հայեցեալ Աստուած ի պնդագոյն հաւատս նորա և ի սէր՝ դարձոյց զքաղցրութիւն իւր ի վերայ մեր, և սկիզբն արար բնակելոցս ի մէջ ցաւոց, քանզի եւ մերոյ թագաւորիս յաղթութիւն ընդդէմ թշնամեաց, նախ կոտորեաց զբազում զօրս սուլտանին Մսրայ ի Հարունին, և ապա զբազումս ի Թուրք սեռէն՝ և յոլով առ և աւար շահեցաւ, այլ և եգիտ շնորհս առաջի գլխաւորին Մուղալ զօրուն, մինչ զի պարգևս և պատիւս յոլով շնորհեաց նմայ, ամէն։

Բ

276ա Համբարձմանն առաւատուն և ճաշոյն կարգն գրեալ է ի մայիս ամիս, ԿԵ (65) համարն, գիտ և կարդայ և մի մեղադրեր, զի զԳործքս յետոյ գրեցի և ի Յինանցն ի կարգն դրի։

475

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 10480

Գրիչ և ստացող՝ Վարդան
Բարձրաբերդցի

ա

159բ Զվարդան վարդապետ Բարձրբերդցի զստացաւղ աստուածային մարգարանիս՝ աղաչեմ զամենեսեան, որք սրտի մտաւք ճաշակէք զպըտուղ անմահական դրախտիս, յիշեցէք զմեզ ծնաւղաւքն մեր և եղբարբք, խնդրել զթողութիւն մեղաց ի Քրիստոսէ, և ուսուցողին իմոյ տեառն Յոհաննիսի արքայի եղբաւր Հայոց Հեթմոյ, և Աստուած յիշողացդ ողորմեսցի, ամեն*։

---

Մաշտոցի անվան Մատենադարանի № 3073 ձեռագրում պահպանվել է այդ հիշատակարանի լրիվ ընդօրինակությունը, կատարված մինչև նորոգումը։ Համեմատությունը ցույց տվեց, որ Իսկենդեր գրիչը առաջին բառերից բացի հարազատ է մնացել բնագրին։ Սրբագրում ենք այդ հատվածը. Ճաշոցում առաջին երկու տողն այսպես է. «զնոսայ որ աւուրն Լեոն թագաւորիս եմուտ ի իւրեանս»։ Մնացած մասում տարբերությունները քիչ են։ Ոչչ հիշատակարանը № 3073 ձեռագրում, որ վերնագրված է «Պատմութիւն թագաւորացն Հայոց, որ ի Սիս», սկսվում է 258ա էջից. «Ի թվականիս Հայոց ՉԼԵ յանկ եղեալ կատարեցաւ աստուածախօս մատեանս» նախադասությամբ. բաց է թողնված «Փառքի» մի քանի տողը։

* Գրված է Իգնատիոսի՝ Ղուկասի Աւետարանի Մեկնութեան վերջում։

Բ

Գրիչ՝ Յոհաննէս Արքաեպիսկոպոս

Ես Յոհաննէս եպիսկոպոս արքաեղբայր Հայոց, որ երբեմն Պաղաւոյն կոչէի, որդի քրիստոսաբեալ և ամեներջանիկ իշխանաց իշխանին և աբրահամեան ծերունոյն արքայահաւր և պարոնին Հայոց Կոստանդեայ, Մոզոն կոչեցելոյ, որոց Քրիստոս Աստուած ողորմեսցի ի լոյս երեսաց իւրոց ընդ արդարսն դասելով, ամէն։

Ի թվականին Հայոց ՉԼԵ (1286) գրել ետու զսուրբ տառս երից գրչաց, որոց Տէր Աստուած ողորմեսցի, ամէն։ Որոց յոյժ բաղձալի լուսալիր մտաց սոցա և անսայթաք իմաստից յար ընդ իս կալոյ սակս, զորս ի մի տեղ հաւաքեալ եդի գԳլուխսն՝ յԻգնատոսէ, զՅոհաննուն՝ ի Նանան Սարկաւագէ, զՑայտնութեանն՝ ի Թեոդորոսէ եպիսկոպոսէ, զէր ընդ եղբարսն՝ ի Ներսէս եպիսկոպոսէ Տարսոնի, զի առ ձեռն պատրաստ բնաւքն գտցի բանասիրաց և աշխատասէր ժիր մշակացդ աստուածատունկն այգւոյ։ Վասն որոյ Տէրամբ Աստուծով աղաչեմ զվայելողսդ սորա և զկնի մեր ժառանգողսդ, որք ուգտիք ի սմանէ, և որք աւրինակէք՝ յիշեցէք սրտի մտաւք զմեզ ի բարին Քրիստոս՝ ծնողաւք մերովք և համայն նոցին ծնընդաւք և ամենայն ի Քրիստոս հաւատացելովք, փրկութիւն և թողութիւն, և հանգիստ և ողորմութիւն գտանել համայնից ի Քրիստոսէ Աստուծոյ, այժմ և յապագայն, և յիշողաց մեր՝ կրկին Աստուած ի բարի յիշեսցէ միշտ, ամէն։

Դարձեալ աղաչեմ խնամ և գութ, և մեծարանս առնել սմա իբր Աստուծոյ պատգամաւորի և հոգոց ծնողի, մի մրճոտել, մի պատառել, մի մերկ ընգենուլ[[/և որ անցանէ ընդ մի[ւ]ս՝ զրկեսցի ի կենացն Քրիստոսի, և որ առնէ զոր գրեալս եղև, և յիշէ ի բարի զմեզ աւրհնեալ յԱստուծոյ լիցի, ամէն։

Գ

335ա ԶՅոհաննէս եպիսկոպոս յիշեցէք ի Քրիստոս, սո՛ւրբք Աստուծոյ։

Դ

337ա Զստացող տառիս և զգծող սակաւուս զՅոհաննէս եպիսկոպոս արքաեղբայր Հայոց, ծնողաւք նորին և ծնընաւք նոցին յիշեցէք ի Քրիստոս և Տէր զձեզ յիշեսցէ։

Ե

Աւրհնութիւն գոհութիւն և փառք ամենասուրբ Երրորդութեանն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ես՝ Յոհաննէս եպիսկոպոս անիմա բարուն արքաեղբայր, դատապարտ ծառա Քրիստոսի Աստուծոյ, նվաստ ձեր ծառայակից, ի թւին ՉԼԵ (1286), գրել ետու զսուրբ տառս այլևայլ գրչաց, որոց Տէր ողորմեսցի, ուսումնասիրացդ ի վայլես ւգտի, և յիշատակ բարի մեզ և մերոցն հոգեպէս և մարմնապէս ծնողաց և զարմից և սպասաւորաց, վասն որոյ տերամբ Աստուծով աղաչեմ զամենեսեան, յիշել զմեզ սրտի մտաւք ի

բարին Քրիստոս, թողութիւն և հանգիստ, ողորմութիւն հայցել մեզ ի Քրիստոսէ, այժմ և յապագայն, զի միշտ կարաւտ ենք ձերդ յիշման, որպէս և դուք Տեառն ողորմութեան, և որք յիշեքդ, յիշեալ-լիշիք Քրիստոսէ Աստուծոյ մերմէ, որ է աւրհնեալ յաւիտեան, ամէն։

գ

Գրիչ՝ Բարսեղ

333ա Եւ Վարդանա վարդապետի գրչութեանս յիշել մերայաւքն ի Քրիստոս։

է

396ա Զստացող սորա զսրբասնեալ արհի եպիսկոպոսն զտէր Յովհաննէս արքաեղբայր Հայոց, և զծնաւղս նորին, և զհարազատ եղբարսն իւր՝ համայն ծնընդովք նոցին փրկեսցէ Քրիստոս Աստուած ի պատրանաց և ի նենգութենէ հակառակ Քրիստոսին, և սրբոց իւրոց սպիտակազգեստիցն մասնակից և ժառանգակից արասցէ, և սիրելոց քաղաքին բնակակից, ամէն։

Ընդ որս և տառապեալ Բարսեղս աղաչեմ զընթերցողսդ յիշել զեղկելիս, և յանցանաց իմոց թողութիւն հայցել յԱստուծոյ, և առատ տուողն Տէրն և Աստուածն մեր Յիսուս Քրիստոս յիշելեացս և յիշողացդ և ամենեցուն ողորմեսցի, ամէն*։

## 476

## ՄԱՍՈՒՆՔ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Երևան 196

Գրիչ՝ Կոստանդին Աւրդցի
Վայր՝ Տիրոջ գիւղ

ա

76բ ԶՅոհաննէս** սրբազան արքեպիսկոպոս, որդի բարեպաշտ իշխանաց իշխանին Կոստանդեա, և զեղբայր քրիստոսասէր արքային Հայոց Հեթմոյ՝ զստացող սորա, ծնաւղաւք իւր և համայն զարմիւք յիշեցէք ի բարին Քրիստոս՝ ժառանգողք սորա և վայելողք, և Աստուած զձեզ յիշեսցէ ի բարի, ամէն։

Գրեցաւ սուրբ տառս նորակերտ տաճարին, որ յանուն աստուածասուրբ Հոգոյն կանգնեցաւ ի գաւզն Տիրոջ, որ է սեփհական ժառանգութիւն սուրբ անապատին Գռներոյն, որոց Տէր հովանասցի, ամէն։

---

* Բարսեղը, գրիչն է 333 էջից սկսվող նյութերի։ Մինչ այդ գրել է Վարդանը, իսկ 335—339 էջերը գրել է Հովհաննես արքաեղբայրը։

367 բ-ի ստորին լուսանցքում գրված է «Ի Քրիստոսի խաչելութենէ մինչև ի ՈՂ թուականն ամք ՌՃՁԲ (1182), որը գաղափար օրինակից է։

** Այսպիսի մի հիշատակարան կա նաև 78բ-ում։ Ամենուր Յոհաննէս անունը քերված է, բայց ոչ լրիվ և տեղ-տեղ գրված «Արիստակէս»՝ վերջին ստացողի անունը։

Բ

86բ *Զստացող սուրբ [Աւետարանիս]* զՅոհաննէս*... *նաև զձեռասուն աշակերտ իւր* զՍտեփանոս Վանկացի *և* զԳրիգոր *մականուն* Պիծակ՝ *զնկարողք սուրբ տառիցս յիշման արժանի համարեսջիք և զգծող սորին* զԿոստանդին Աւրդցի:

Գ

111բ *Զաստուածահաճոյ և զերիցս երանեալ բարունին և տէր,* զՅոհաննէս *եպիսկոպոս արքաեղբայր ամենայն Հայոց յիշեցէք ի սուրբ սրտէ և զամենայն զաւրութենէ ծնողաւք իւրաք և համայն զարմաւք ի Տէր Յիսուս Քրիստոս, և որ առատն է ի տուրս բարեաց տացէ այնմ հազարապատիկ, որ արտասուալից հառաչմամբ խնդրէ զթողութիւն մեղաց և զհանգիստն յաւիտենից վերագրելոցս և ստորագրելոցս, գծողին և նկարագրողացն, այժմ և յարաժամ։*

Դ

Յոհաննէս Արքաեղբայր

10ա *Ստացողի սորա* Յոհանիսի *եպիսկոպոսի ողորմեսցի։*

Ե

111բ *Տարտամս ի բարիս և արագս ի չարիս, դատապարտ ծառայակիցս* Յոհաննէս *եպիսկոպոս յիշեալ յաստուածայնոցդ եղէց**։*

477

ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5525*

*Գրիչ՝* Յոհաննէս Արքաեղբայր

*Վայր՝* Տիրոչ գիւղ

ա

*Փառք ամենամեծին Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Նուաստ ծառայս՝ վեհիցդ տրուպս և մեծագունիցդ հողս,* Յովհան *եպիսկոպոս արքաեղբայրս, բարուն առաջնորդ աստուածաբնակ սուրբ մենաստանիս* Գոներոյն, *ի թուականիս ՉԻԱ (1272) շինեցի զսուրբ մատուռն յանուն սուրբ աւետարանչին Յոհաննու, ի գեաւղս* Տիրոչ *կոչեցեալ։ Զոր ի բազում ամաց՝ նախնին արքայ* Լևոն Յուաբինեան *շնորհեալ էր* Գոներոյն *զայս գեաւղ* Տիրոչ *կոչեցեալ, որոյ յիշատակն աւրհնութեամբ ի Քրիստոս և ցաւղ արեան նորա յոսկերս նոցին միշտ ցաւղեսցի։*

---

* *Նույնն է, ինչ նախորդում։*

** *Պահպանվել է ձեռագրի ԼԱ-պրակից, որ «Գործք Առաքելոցն» է։ Սկզբի մասը՝ կորած է։ Թվականն անհայտ է, դնում ենք արքաեղբոր պատվիրած և Կոստանդնի գրած մյուս ձեռագրին առընթեր։*

*Եւ ես սակս պիտոյից իմոց չինեցի զՍուրբն Յոհանէս, զոր և ըստ
226ա կարի պատշաճին զարդարեցի զգեստիւք* և‖[տ]առիւք**, եւու սուրբ
Աւետարան, զորս մերկեաց և գողացաւ գողացեա[լ] ի չար գողէն, ե ոչ
գտի։ Զոր իմ ի ծեր հասակի սկսա գրել զսուրբ Աւետարանս ի թվին ՉԼԵ
(1286), ի լաւ և յընտիր աւրինակէ, և սորին մերձ զայլ սրբոցն եդի ըն-
թերցմունս Ճաշոյ, գրեալ ձեռամբ* Ստեփանոս *երիցու, և պարգևեցի
զսա Տիրոջ դեղչին եկեղեցոյն, յընթեռնուլ ի շահ աւգտի բնակչաց* Տիրոջ
*գեաւղջս, ե ի յիշատակ մեզ և մերոցն։*

*Վասն որոյ տէրամբ Աստուծով աղաչեմ զապագայսդ յիշել սովաւ
զմեզ ի բարին Քրիստոս, հանգիստ և թողութիւն և ողորմութիւն գտանել
բնաւիցս ի Քրիստոսէ Աստուծոյ աստ և յապագայն, և ընդ աջեայսն դա-
սումն, ե մի ոք իւր սեփհական զգանձս հասարակաց վարկցի և մի տացէ
զսա մանդանց՝ ձեռամբ մրճոտել և անառիգած ունել և յանվայելուչ վայ-
րըս ընկենուլ։ Եւ մի ոք գողասցի և ի փառացն Քրիստոսի մերկասցի,
այլ ի սուրբ խորանն կայցէ, և անդ կենդանատուն Աստուծոյ զձայն հըն-
չեսցէ համայն լսողաց։ Եւ յամենայն ժամ զմաղթանաց մեր բան ընթեր-
ցին ի լուր լսողաց, Տէր ողորմի և Քրիստոս որդի Աստուծոյ մեղ ասել
մեղայիւ։*

226բ *Որով բարեխոյս ի կարգ‖քրիստոսաղաւան ննջեցելոցն լիցուք դա-
սեալք՝ ուր և հանգիստ ի վայրն անծկութեան սուրբ մարմնոյ և արեան
Տեառն ցաւղմամբ, և սուրբ աղաւթից ձեր արտասուաւք զմեզ ի բարին
Քրիստոս յիշմամբ զոցուք։ Որով և ի պարս աչէիցն խառնեալք և անաղտ
մաքրութեամբ ի գերակատարն մեր գլուխ Քրիստոս յաւդեալք ձեաւք և ի
նոյնն միացեալք՝ ըստ անսուտ խոստմանն իւրոց՝ թէ Ուր եսն եմ, անդ
եղիցի և պաշտաւնեայն իմ։ Ուր և դուք յիշողքդ մեր սրտի մտաւք ար-
տասուաւք դասեալք գտջիք, ամէն։*

*Աղաչեմ դարձեալ զձեզ, զիշխանացն իշխան քրիստոսա[ս]էր զպա-
րոն Հայոց* Կոստանդին *և զորդիսն իւր զՍմբատ սպարապետ, զՀեթ[ում]
թագաւոր, և զԱւշին պայլ և զարքեպիսկոպոս* Սիսոյ Բասիլ, *և զԼեոն մա-
րաջախտ, և զՎասակ մենամարտ կորովի, և զքոյրսն մեր զՀռիփսիմի
կրաւնաւոր, զ*Թեֆանաւ *թագուհի* Կիպրոսի, *և զ*Կալամառի *գունդէս* Ճա-
ֆուն *և* Ռամլոյ, *և զ*Ֆիլիպ *և զՄարեմթագ, և զԱկաց՝ ծնընգաւք նոցին և
զարմիւք յիշեցէք ի բարին Քրիստոս, զի բնաւիցն ողորմեսցի։ Նաև զձեզ
զյիշողսդ մեր և զվայելողսդ սորա մեաւք հանգուսցէ Քրիստոս ընդ սուր-
բըս իւր, որում փառք յաւիտեան, ամէն։*

Բ

221ա *Աստուածարեալոցդ անձանց հարց մերոց ի Քրիստոս և եղբարց,
Նւաստկրսեր հողս ձեր* Յոհանէս *եպիսկոպոս և րաբուն արքաեղբայր՝*

---

* *Մինչև այստեղ պակասում է ձեռագրում, լրացնում ենք Ե. Լալայանի Վասպուրականի Ցուցակից, որի կազմելու ժամանակ հիշատակարանը ամբողջական է եղել, «բավական լավ պահված»։ Նշված 420 թղթանոց Աւետարանից այժմ մնացել է 226 թերթ։*

** *Ե. Լալայանի մոտ «զարգիւք»։*

կրկին ակամբ ճայրոտեալ մեղսագործ իմս ձեռաւք գրեցի զսուրբ Աւետարանս ծեր և ցաւոտ անձամբ, ուղղեալ և յրղկեալ յոլով աւրինակաց, որպէս ահա յայտ իսկ երևի տեսող գիտնոց՝ բանից և ջեշտից, և տանց և գրադարձից ծանաւթից, յոյժ վտանգեալ յանյայտից և խայտնեաց ցատոց։

Վասն որոյ աղաչեմ Տէրամբ Աստուծով զժառանգողսդ սորա և զգաղափարողսդ, սրտի մտաւք ի բարին Քրիստոս յիշել զմեզ ծնաւղաւք մեր, և նոցին համայն ծնրնդաւք և ընտանեաւք, և ես յաւէտ ի սուրբ և մեղսաբարձ գառինն Աստուծոյ անմահ զենումն տալ հանգիստ և թողութիւն բնաւիցն՝ յայժմուս և յանկէտ յաւիտենին։ Որում և դուք հաղորդք գտջիք այժմ և յապագայն։

Մի եպերել, այլ ի բարի յիշել, և զևսն ձեաւք լնուլ։

գ

57բ Պարուպետիցդ սուրբ հարցդ և եղբարցդ հոգս Յոհաննէս եպիսկոպոս արքաեղբայր գրող սորա պաղատիմ յիշել զմեզ մերայովքն ի բարին Քրիստոս և Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

դ

110բ Զմտաւք և աչաւք խաւարեալ ոգիս Յոհաննէս եպիսկոպոս և զաստուածասէր ծնաւղսն իմ և զծնունդս նոցին, յաւէտ զերջանիկ կրսեր եղբայրն իմ Վասակ, որի ի սոյն ամի ՉԼԳ (1284), ի մարտի ԺԳ (13) փոխեցաւ ի Քրիստոս, որոց Տէր Քրիստոս ողորմեսցի բնաւիցն, ամէն, յիշեցէք ի Քրիստոս։

ե

173ա Զբազմաբիծ և դատապարտ ոգի ստացողիս և աշխատողիս Յոհաննէս եպիսկոպոսի Արքաեղբաւր բաբունոյ, եւ ծնողաց նորին յիշել ի Քրիստոս, աղաչեմ զապագայսդ։

## 478

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Մարտիրոսյան, Ցուցակ, Մշո, էջ 98*

Գրիչ՝ Աւագ

ա

Փառք հզաւրին եւ անմահին, անեղին եւ անճառին... որ տրամադրեաց զմատոյնս վերջացեալ գծագրի եւ տկար ոգոյ, Նուաստ քահանայի անուամբ տէր Ավաf յորջորջի, սակայն մտաւք կատարեալ չնացող և պոռնիկ գոլով։ Եւ արդ, ջնորհիւն Աստուծոյ սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զտառս Աստուածայրամար, զգեղեցիկ, զպատուական, զանգին մարգարիտս...

Բ

Վայր՝ Մուշ քաղաք

Ի թւին ՉԼԵ (1286) գերի վարեցաւ սուրբ Աւետարանս եւ բերաւ ի քաղաքիս Մուշ, եւ էր ի ձեռս այլազգեաց եւ յոյժ հայհոյէին եւ կամեցան ծախել յաւտար աշխարհ։ Իսկ բարեպաշտ եւ երկիւղած եւ բարի ծնաւղաց ղաւակքն՝ եղբարքն հարազատք Հուսէն, որ մղդսի էր, եւ Մուսէսն տեսեալ զայսպիսի մարգարիտս ի ձեռս այլազգեաց, վառեցան ի սէր հոգևոր եւ առին զհրամանս Քրիստոսի, որ ասէ, թէ Գտեալ մի պատուական մարգարիտ, երթեալ վաճառեաց, զոր ունէր, եւ գնեաց զայս անգին մարգարիտս ՄՃ (200) սպ[իտակ] յիշատակ իւրեանց, եւ ծնաւղաց իւրոց Մագուլէի եւ Գոհարի, եւ քեր իւրոյ Մամխաթունին, եւ ամենայն արեան մերձաւորաց մեծի եւ փոքրի։

## 479

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՅՈՀԱՆՆՈՒ

Երևան 1418

Տեսութիւն քննութեամբ աղաւթից սուրբ աւետարանչին Յոհաննու, ի խնդրոյ վարդապետին Յակոբա, ի Ներսիսէ հոգևոր որդւոյ, եղբաւրէ պարոն Հայթմոյ:

221 Գրեցաւ Մեկնութիւն հանգստեան Յոհաննու աւետարանչի աստուածաբանի և սիրեցելոյն Յիսուսի, ի թվիս ՉԼԵ (1286)*, հրամանաւ և արդեամբք սրբազան եպիսկոպոսին տէր Համազասպայ, յիշատակ անջինջ յաւիտեանս։ Արդ, որք աւգտիք և լուսաւորիք ի սորա լուսալրութենէ, յիշեսջիք զսրբասնեալ և զերջանիկ սուրբ եպիսկոպոս զտէր Համազասպ, ասելով. Տէր Յիսուս արժանացոյ զսա մասին սուրբ առաքելոյն Յոհաննու ի փառս Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ. Ընդ նմին զեղկելի և զամենամեղ գրիչս յիշեա Տէր իմ Յիսուս։

## 480

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4011 (ԺԵ դ.)

Հեղինակ՝ Մխիթար Այրիվանեցի
Վայր՝ [Այրիվանք]

4ա ՉԼԵ (1286)։
Ի յախտաժետ ըստեանց ճընշեալ

---

* Իրար կպած էջերը անջատելիս, որոշ տառեր պոկվել են։ Հետագայում վերականգնելիս, թվականը գրել են ՋԼԷ (1488)։ Ինչպես երևում է ուշադիր նայելուց «Ջ»-ի փոխարեն «Չ», իսկ «Է»-ի փոխարեն «Ե» է գրված եղել։ Հիրավի, այդ ժամանակ Համազասպ եպիսկոպոսը Հովհաննավանքի առաջնորդն էր, որը և գրել է տվել այս նույն գրչին բազմաթիվ ուրիշ ձեռագրեր։

*Սպիտակ գինիս այս նոր յայտնեալ,*
*Տէր Մխիթար ի հոգս անկեալ*
*Պըտուղ պտուղ ղայս հաւաքեալ՝*
*Յաստուածաշունչ գրրոց առեալ,*
*Եւ ի սրբոց բանից քաղեալ,*
*Քան զդումարտակ ի մին շարեալ*
*'Ի եկեղեցոյ կոդն կախեալ։*
*Արդ դուք որդիք մաւրս այս ընտրեալ,*
*Որք յետ մեր գայք յարկս այս սըրբեալ,*
*Զմեզ յիշեցէք ի յաղաւթել,*
*Գրեցով ղայս բանքս ի սրբագրել*։*

## 481

## *ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ*

*Երևան 5135*

*Գրիչ՝* Յովանէս
*Վայր՝* Վայոց ձոր, ի
վանս Թանաստի

262ա *Փառք անբաւանդակելի և անսահման տէրութեան, որ է բնութիւն անհատնելի տ[ար]ածումն անփոփելի, նրբութիւն անարգելի, բաւանդակութիւն անծախելի, լիութիւն անթերանելի, անզուգակշիռ մեծի, անքանակ կերպի և անորակ նոյնութեան, երից անձանց և միոյ բնութեան ամենայզաւր շնորհաց Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից։ Ի գերունակ և մշտայբուժ ծաւալմանէն, որոյ անչափելի լուսոյն [ճ]առագայթիւք և մերձակայ լուսոյն անըմբռնելի, թէպէտ իմանալիք և հոգեղէնք հաղորդին և զայս, որ արդիւնս է հասարակաց հաւանելիս, առաջի դնէ վայելչաբանիւս երկրագործն* Գրիգորիոս Նարեկայ, *որ զբանականն արտափայլեալ պտղաբերել ի մեզ, աստուածային տեսչութեանցն ժամանել, որ ըստ գոյութեանն ճշմարտապէս լոյս է։*

*Ընթանայ և է եղելս, քանզի և սուրբք ամենեքեան ըստ նմանութեան լուսոյ են պայծառացուցեալ յանձինս զլոյս պատուին, որ զծածուկս քննէ Աստուած և զիւրաքանչիւր զբնութեան զչափն ճանաչէ ետես զի |||*
*անձ[նու]եր(°) ջանից մարդկան ի բնաւորական [գոյ]իցն տիրելոց ոչ զերծանել, վասն այս[ո]րիկ ածել զնոսա յիմաստս գիտութեան ա[ռ]*
262բ *մուտքն, [ը]ն[դ] երկինս [ե]լանէ...‖բնութեանն, նմանել ն[ա]հապետին ի[ւր] հաւատոյ և ամենայն հեթանոսացն [ա]յսո[ցիկ] մտաց ճա-*

* *«Տէր* Մխիթարն *ի ՉԼԵ (1286) թուին ասացեալ էր զիւր բանսն։ Եւ Գրիգոր վարդապետն ի ՊԼԶ (1387) թվին հանդիպեցաւ նորա բանիցն»,—գրում է գրիչը, որն ընդօրինակել է Գրիգոր Խլաթեցու արտագրած գանձերը և այս հիշատակարանը (էջ 4բ)։ Խլաթեցին, որ 1387 թ. Այրիվանքում հանդիպել է Մխիթարի գրած Գանձարանին, գրում է. «ԻԱ (21) գանձ կայ Տէր Մխիթարայ Այրիվանեցոյն ի գիրքս, և այս Բ երգս Նորկերտ դրոց և Պատկերաց սրբոց» և ընդօրինակում է այդ երկերը։*

նապարհորդակից գտ[եա]լ զսրբազան պվէտիկոսն Գրիգորիոս [Ն]արիկեցի ոսկէգործ և մաքսութեանս ճար[տ]արապետ, զի թեպէտ ետես զկատարելութիւն իւրաքանչիւր մարդկան, ոչ այնու [ը]ղձ]ի[սն տենչանաց իւրոյ յագելոյց, [ա]յլ դարձեալ արկանէ զամենեսեան ի բովս [ի]մաստիցն առ [ի] կրկին մաքրութեան մինչև [տ]եսցե զառա[ջ]ին զսրբունական տիպն [ա]նձինս ամե[նե]ցուն, առանց աղտոյ արտափայլեալ, [ո]րպէս և այժմ մաքրեաց զ[հ]ոգևոր տեսութիւնն աստուածասէր և բարեպաշտ և արքայուհի պարծանաց պարոնին [Թ]աճէրին և իմացեալ զհոգևոր դեղ կեն[ա]ցն որ ի սմայ, և ետ զսայ վերայդրել լապտեր անշիջանելի, ղի արկցէ զսայ [աստուած]ային երկնաւոր յառագաստն [հ]այրեն[եաց] և երկար կենդանութիւն և բարէխաւս [ա]ռ Տէր՝ իւրն և պատուական գլխոյն իւրոյ աստուածազաւր իշխանաց իշխանին Հասան[այ] որդոյն Պոռշայ, և հարազատ և [պարծան]աց նղբաւր իւրոյ Պապաքին, և գեղ[եցիկ] և [բարե]պաշտ զաւակին էաչոյ:
263ա [Տէր երկար]ացի յամերամս ժաման||[ակ]:

Գրեցաւ աստուածազարդ խոր[անս] ի գաւառիս Վայոց ձոր ի վանս Թանատի ձեռամբ Յովանիսի անմար և տգետ գրչի, ի վերադիտողութեան Թորգոմեան սեռից տէառն Յակոբայ, և ի թագաւորութեանն Լեվոնի, և մերոյս գաւառի հայրապե[տ]ութեան տեառն Սարգսի գիտնականի և արդի[ւն]ական[ի], հեզի և անարատի, պատւիրանաց Տեառն կատարողի: Եւ արդ, մանկունք ե[կ]եղեցոյ, որք հանդիպիք ճշմարիտ գան[ձ]արանիս վերլու[ծ]անել կամ աւրինակել, որ խաւսի ընդ Աստուծոյ, ամենեքեան առհասարակ սրտի մտաւք աւր[հնեց]էք զամենաւ[ր]հ[ն]եալ պարոնայքն զԹաճէրն և զՀասան, զՊապաքն և զէաչի, ղի պահեսցէ զնոսայ Տէր արտաքոյ լինել ամենայն փորձանաց մինչև ի խորին ծերութիւն, զի առատ[ն ք]տուրս ողորմութեան մեզ և ձեզ ողորմեսցի]:

Եւ արդ, ես զծառաեալս մեղաւք Յովանէս գրիչ, որ յաշխատութեամբ կատարեցի զհրաման մարմնատր տեարց ըստ առաքելոյ, յիշել զիմ ան///զի և դուք յիշեսջիք առաջի ատենին Քրիստոսի յաներեկ աւուրն, ամէն և եղիցի, եղիցի:

Թվկ ՉԼԵ (1286)*:

Բ

3բ Քրիստոս աւգնէ պատրոն Թաճէրին:

Գ

64ա Հոգևոր գանձս պատրոն Թաճէրի, նայ Աստուած վայելել տացէ:

* Հիշատակարանը եղծված է և տեղ-տեղ մաշված: Հետագայում այլ թանաքով անցել են որոշ տառերի վրայով և երբեմն բառերը խեղաթյուրել: 1865 թ. հիշատակարանը Կոուց անապատում ընդօրինակել է Ղ. Փիրղալեմյանը, երբ դեռ թվականը խաթարված չէր (Մատենադարան, ձեռ. № 6273 էջ 50ա—50բ) վերականգնում ենք ըստ այդմ: Ձեռագրում գրչության վայրը «վերականգնված» է «Թատեւոյ» ձևով, և Փիրղալեմյանը տեղը ընդունում է Տաթևը: Գ. Հովսեփյանը այն վերականգնում է «Թանատի» ճիշտ ձևով, ելնելով այն բանից, որ Վայոց ձորում Տաթև չկա, իսկ վերջինս «Թատեւ» չի գրվում (Խաղբակյանք, էջ 77):

Դ

153 Քրիստոս Աստուած ագնէ պատրոն Թանէրին և որդոյ էաչոյ:

Ե

166ա Տէր Յիսուս Քրիստոս ագնեա պարոն Թանէրյն, որ ստացաւ զհոգեւոր եղբայր Նարեկայ Գրիգորի:

Զ

178բ Աստուած վայելել տացէ զհոգելից տառս պատրոնացն Թանէրին և էաչոյ:

Է

204ա Աստուած վայելել տացէ զհոգեշահ աղաւթ[ար]անս պատրոն Թանէրին:

Ը

232բ Զերկար կեանք պահէ Աստուած զպատրոնայքն զԹան[էրն եւ էաչ]ոյ*:

## 482

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9229

4ա [Գրեցաւ... ի հայրա]պետութ[իւն տեառն] Յակոբա, ի թա[գաւո-ր]ութիւն Լևոնի, յաշխարհակալութիւն և [յա]ղթութիւն Արղու խանին, յայս նեղ և ի գառն ժամանակիս, որ հասել եկն ի վերայ մե[ր] վասն մեղաց մերոց, որ նախանձ կալեալ յաղագս քրիստոնէից և ըստ նախանձոյ նոցա եկն ազգն Նետողաց և գերեաց զաշ[խ]արհս ամենայն։

## 483

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9027, Փիրղալեմյան, Տետր, էջ 56

Գրիչ՝ Վահան
Վայր՝ Դրազարկ

Բայց գրեցաւ լուսազարդ Աւետարանս... մերս թիւ ՉԼԵ (1286)։ Եւ գրեցաւ սա ի սուրբ ուխտս Դրազարկ կոչեցեալ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի, ձեռամբ անիմաստ գրչի Վահանայ, ծովածուփ ալեկոծեալ մտօք և բազում աշխատութեամբ և չարչարանօք, շնորհօք և ձեռնըտուութեամբ Հոգւոյն գրեցի զսա և ի կատարումն ածի՝ յիշատակ կենդանի և ընտանեակ բարի հօրն իմոյ Ստեփաննոսի և մօրն իմոյ Ոսկե-

---

* Բոլոր հիշատակագրությունները գրված են ստորին լուսանցքներում, կարմիր թանաքով։

հատի, և ինձ յոգնամեղ գրչի Վահան անարժան քահանայի և եղբարց իմոց։

ԶԱւետարան գրեցի մեր ՝ծախիւք և բազում աշխատութեամբ, կուտամ ի Սուրբ Կարապետն ու ի Սուրբ Աստուածածինն ու ի Սուրբ Թորոս, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, որ չունենա այլ ոք իշխանութիւն, որ հանէ զսա ի յայս վանացս, այլ կայցէ սա յիշատակ յաւիտեանս յաւիտենից։

## 484

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՐԱՐԱԾՈՑ

Երևան 1135

Գրիչ՝ Սիմէոն

223բ ...Գրեցաւ Մեկնութիւն Արարածոցս ձեռամբ մեղապարտի և անարժանի Սիմէոնի, յանապատիս, որ կոչի Սուրբ Սիոն, ի թվաբերութիւն Հայոց ՉԼԵ (1286)։ Գրեցաւ սա հրամանաւ երջանիկ անյաղթ վարդապետին, որ կոչի [Թու]մա, ի վայելումն անձին և յիշատակ հոգո, և այս է կար մեր վասն գրոյս։ Որ զմեզ յիշէ յիշեսցի ինքն ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեան։

## 485

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սյուրմեյան, Ցուցակ Հալէպի, Ա, էջ 55 (1259 թ.)

Յիշատակագիր՝ Կոստանդին

///* Յոյս, եւ որ ոք յանդգնի և արասցէ բռնութիւնք, ընդ կապանաւք և ընդ պատժաւք եղիցի։ Այլ մնասցէ սեփհական սուրբ եկեղեցոյն, որպէս վերոյ ասացեալ եմք անշալունչ յամենայն կենդանոյ։ Եւ քահանայ, որ սպասաւոր լիցի սուրբ եկեղեցոյն, զգաստ կացցէ սուրբ Աւետարանիս՝ իբր Աստուծոյ պատգամաւորի, պահել յամենայն վնասակարաց։

Դարձեալ ես առաւել աղաչեմ զսուրբ քահանայդ, որ և լիցի սպասաւոր սուրբ տաճարիդ, զի յամենայն աւր Էրևելի տաւնից տերունականաց լսելի արասցես ժողովրդեանդ զպաղատանաւք բանս մեր յիշատակաց, զի վասն այնր յուսոյ եդաւ սա ի սուրբ եկեղեցիդ։

Ընդ նմին և զիս զմեղուցեալ ծառայս զԿոստ[անդին], որ զսակաւ բանքս յիշատակ գրեցի՝ աղաչեմ յիշել։

Ի թու[ին] ՉԼԵ (1286) եդաւ սա ի սուրբ եկեղեցին։

* Սկզբից թերթ է պակասում, այդ պատճառով անհայտ են մնում և նվիրողի և նվերն ստացող եկեղեցու անունները։

## 486

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

*Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 52ա, 52բ*

*Գրիչ՝* Գրիգոր Տաուշեցի
*Վայր՝* Արճէշ

Ահա Թովմայ վարդապետ անուն բարի*
Զքո խնդիրքս զուգելի
Կատարեցի ըստ իմում կարի;
Թեպէտ որ շատ յամեցուցի
Խիստ գովելի զինքս արարի,
Հենս որ ամէն մարդ հաւանի։
Արդ, գրեցաւ սա ի թուի՝
Ի Հայկազեան մեծ տոմարի,
Յեօթն հարիւր և երեսնի
Վեցն այլ զհետ իւր աւելի (1287)։
Յիշխանութեանս Տաթարի
Աստուածադիր թագաւորի,
Ի ժամանակս Արղուն ղանի
Քրիստոնէից յոյժ սիրելի։
Ի հայրապետութիւն Հայոց ազգի
Տէր Ստեփաննոս մեծ և անուանի։
Այլ ես Գրիգոր Տաուշեցի
Եւ աշխարհաւ Աղուանեցի,
Որ գրեցի զսա յԱրճէշ քաղաքի,
Ընդ հովանեաւ Սրբոյն Ստեփաննոսի։
Յոտք անկանիմ արտասուալի
Եւ աղաչեմ պաղատալի,
Զիս յիշել Տեառն առաջի,
Վասն սիրոյն Տէր Քրիստոսի։
Եւ զստացող այսմ տառի,

---

* Այս հիշատակարանը, որոշ կրճատումով ընդօրինակված է նաև Մատենադարանի № 6333 ձեռագրում (էջ 44բ), ուր ձեռագրի մասին ասված է. «Բորբոսնած, դեղնած և յատակէն փթած, գիրը տգեղ և դժվար ընթեռնելի, մեն մի երեսը 30 տող»։

ԶԹոմայ անուն բարի,
Եւ վարդապետ խիստ գովելի,
Նաև զիւր ծնողքն ցանկալի,
Որով ծնան ժառանգ բարի։
Եւ զասացեալն բաբունի,
Արժանաւոր պատարագի,
Յիշմամբ յիշել ով հանդիպի
Եւ ասել՝ Տէր ողորմի,
Ամէն, ամէն, հազար հետի։

487

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 50բ-51ա

Գրիչ՝ Դաւիթ
Վայր՝ Թեղենեաց անապատ

Յամի ՉԼԶ (1287) գրեցաւ սուրբ Աւետարանս ի յընտիր աւրինակէ, ի սուրբ անապատս Թեղենեաց, ձեռամբ մեղապարտ գրչի Դաւթի նուաստ բանի սպասաւորի, յիշատակ հոգւոյ ողորմելոյ և ի սփոփանս մարմնոյ ընթեռնելոյ։

Իսկ սատանայ խափան եղև բազմադիմի,
Զի զառաջին տառսն սքանչելի,
Նկարագրեալ Մոմիկ գրչի
Գեղադէշ և պիտանի
Պիղծ հարամիք տարան գերի...
Իսկ որ ունէր զաշխարհս հայրենի,
Արդուն ղան և մեզ բարի,
Քրիստոնէիցս սիրելի,
Եւ զաշխարհս արար ղահիւ իլի։
Եւ թագաւոր Հայոց երկրի՝
Լևոն որդի մեծ թագաւորի,
Որ և Հեթում յորջորջի։
Կաթողիկոս տէր Կոստանդին Խոռենացին,
Որ յայսմ ամի յաթոռն սուրբ
Լուսաւորչին հաստատեցին։
Եւ աթոռոյս մեծ Բջնեցւոյ
Զտէր Յովհաննէս եպիսկոպոս ձեռնադրեցին,
Եւ ի նախնեաց վիճակ հրավիրեցին։
Եկեղեցոյս Սուրբ Թեղենեաց
Տէր, վերատեսուչ մեծ Գրիգոր,
Որ Բջնեցին էր բանաւոր
Եւ հանճարեղ, հռչակաւոր։

## 488

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5247

Գրիչ

ա

240ա Փառք քառագիր ււնուան Սուրբ Երրորդութեան՝ Հայր, Որդի, Հոգի Սուրբ։

բ

Ստացող՝ Մխիթար
Վայր՝ [Մանեա այր]

243ա Այսմ աստուածաշունչ երգոյս և [հո]գևոր գանձուցս, աստուածա-
պատում սուրբ Աւետարանիս փափագող եղէ կրսերս յորդիս եկեղեցոյ
և յետինս ի կարգս կրաւնաւորաց Մխիթար անուն, որ անուամբ թեր-
եւս միայնակեց, և ըստացա զսայ ի մխիթարութիւն բազմավրդով կենաց
իմոց և ելք լուսազարդ շաւղացն, որ տանի առ Աստուած զամենայն
հոգի զհաւատով ապաւինողաց և զաւանողացս ըզսայ։ Արդ, երեսս ան-
կեալ աղաչեմ զամենայն հանդիպեալսդ կենսատու սուրբ Աւետարանիս,
վասն սիրոյն Քրիստոսի յիշման արժանի արարէք զըստացողս զՄխիթար
քահանա, և զհայրն իմ զԽայչիկ, և ղհաւրեղբայրն իմ զԳրիգոր, և զա-
243բ մենայն ազգաինս մեր, զկենդանիս և զննջեցեալսն։ Նայ և||[սրբաս]-
նեալ սուրբ ճգնաւորն զՅովան[է]ս միայնակեցն, որ զսուրբ Աւետա-
րանս մեզ շնորհեաց, որ աւանդեցաք միաբան սիրով յանուն սուրբ տի-
րուհոյ Աստուածածնին, որոյ փառաւորութիւնն է յամուր անձաւին, որ է
յանդիման աստուածաբնակ տաճարիս Սրբոյն Գրիգորի Հայաստանեաց
Լուսաւորչի։ Այլև մի ոք իշխեսցէ հանել զսայ ի սուրբ մենաստանէն և
ի Սուրբ Տիրուհոյն, որչափ հնար լինի կելոյ միանձանց պարսպեալք
աւգնականութեամբ Սուրբ Աստուածածնին և իւր միածնին, է թէ ոչ
լինի, առ Սուրբ Գրիգորս կալցեն հաստատուն և անպակաս յիշման, և
յիշատակի արժանի արասցեն զվերագրեալսս ի սմայ. և ինքն որ աննա-
խանձ պարգևատուն է Քրիստոս Աստուած զձեզ յիշէ յիւր յառատ պար-
գևսն, ամէն, ամէն*։

գ

244ա Աւետարանս այս աւետ[եաց],
Որ միախումբ ըզմեզ կոչեաց,
Զազգս մարդկան ի կենդանեաց,
Զոր ի նախնումն մեզ ճառեաց,

---

* Սույն հիշատակարանները տպագրված են Ե. Լալայանի «Վասպուրականի Ցուցակում» (№ 206), ընդ որում գրչության տարեթիվը ՃԼԶ=1487 և տեղը Աղթամար է նշանակել։ Ինչպես տեսնում ենք, հիշատակարանները այդ չեն հուշում։ Ձեռագիրը նվիրվել է Մանե այրին։ Մոտավորապես այս շրջանում էլ ընդօրինակված պետք է լինի երկու տարբեր գրիչների ձեռքով, որոնց անունները անհայտ են։

Եւ ի Սահակ տպաւորեաց,
Ձայն ի խաչին եւ կատարեաց,
Եւ զՁաքարիա* գերի փրկեաց։
Գրեցաւ ի թվին ՉԼՁ (1287)։

## 489

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 1796 (ԺԲ. դ), Պողարյան, Ցուցակ Զ, էջ 149

Ստացող՝ Յոհաննէս [Երզնկացի]
Վայր՝ Եզնկա

Առաջնորդք սուրբ ուխտիս եւ սպասաւորք Սուրբ Լուսաւորչիս գերեզմանին, որ յետ մեր լինիք եւ տեսանէք զգեղեցիկ եւ զծաղկանկար Աւետարանս Քրիստոսի Աստուծոյ մերո, յիշեցէք զստացողք սորին, զի բարի եւ քրիստոսասէր քրիստոնեայ մի Կիր Վասիլ անուն, եկեալ ի քաքաղէն Մելտենո յԵզնկայս՝ տամբ եւ զաւակաւք, եւ աստ վախճանեալ, փոխեցաւ ի Քրիստոս՝ յոյսն քրիստոնէից։

Իսկ ի թուիս ՉԼՁ (1287), ի տան վարդավառին եկին ի յուխտ ի Սուրբ Լուսաւորիչս բարեպաշտաւն կենակից նորա Մեծտիկին եւ երկեղազարդ որդի նորին Ապուլֆարամ այլ տղայաւքն, յորում էի ի ծառայութիւն Սուրբ Լուսաւորչիս նուաստ վարդապետս Յոհանէս, եւ տուին զգեղեցկազարդ Աւետարանս ընծայք Սուրբ Լուսաւորչիս, յիշատակ հոգո պարոն Կիր Վասլին, եւ փրկութիւն զաւակաց իւրոց։ Եւ ես վարդապետ Յոհաննէս եւ այլ միաբանքս տուաք ի տարին աւր մի պատարագ Կիր Վասլին, ի տանի սուրբ քառասնիցն, քանի պատարագող որ լինին յամեն եկեղեցիքն։

Արդ, որ գայք յետ մեր՝ անխափան կատարեցէք զյիշատակս զայս, եւ մնասցէ սա անջնջելի յիշատակ Կիր Վասլին, Մեծտիկնա, Ապուլֆարիմին, Նուարսթ խաթունին, եւ Ամիրոցին:

Յիշեսջիք եւ զհարկեւոր քրիստոնեայն զՇահնշահ դերձակն յԵզնկեա, որ միջնորդ եղեւ բարեգործութեանս, որ եւ յետին գլուխ** Մեծծծտիկնա, որո տացէ Քրիստոս վարձս բարեաց նմա, եւ ծնողաց իւրոց։

---

* Գրված է «զզաքը» ձևով։

** Նշանակում է երկրորդ ամուսին և վերաբերվում է դերձակ Շահնշահին։

## 490

## ՅԱՂԱԳՍ ԵՐԿՆԱՅԻՆ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՈՒԹԵԱՆՑ ԴԻՈՆԻՍԻՈՍԻ ԱՐԻՈՊԱԳԱՑԻՈՅ ԵՒ ԷԱԿԱՑ ԳԻՐՔ

*Երուսաղեմ 1709, Պողարյան, Ցուցակ Զ, էջ 17—18*

Գրիչ՝ Վարդան Կիլիկեցի
Վայր՝ (Գլաձոր)

ա

681 Վերնահանդէս լոյսն իմաստութեան առատակազմն յաւրինէ ի լուսաւորեալս պէսպէս որակս, եւս առաւել ի հանդիսարկուք յատենականսն ընախաւսել. զի որք հողովն են ըստ Պաւղոսի՝ չարալծեալ ունին զամենայն, իսկ որք աշխատասէրք գոլով ի վերին աւգնականութենէն շարժեալ՝ պարզ դոլով տեսողակին զերամբարձ ղաւրութեամբն։ Քանզի ներգործականքն առաքինութեամբն շարժեն զիսկական լոյսն առ ի յընդունումն լուսալիր մտաց, ի պատիւ եւ ի փառս Երրորդութեանն։ Յաւետ եւս շարժեալ զիմ տկարութիւնս ի սէր աստուածային մարգարանիս մեծին Դիոնէսիոսի:

Եւ թէ ոք վերաձայնէ թէ զիա՞րդ կամ ո՞րպէս զմեծին Ստեփանոսի զմեկնիչն չէ ստտ շարադրել, զի ոչ թէ խոտան գոլով, այլ կարի յոյժ գեղեցիկ իմաստաբար. եւ այսպէս ուսցիս զպատճառն. մին վասն տկարութեանն մարմնոյ ոչ շարադրեալ, եւ միւսն վասն աղքատութեանն, իսկ միւսն վասն ժամանակին անկարութեան։ [Աղա]չեմ ով ոք տիրեսցէ յետ մեր սիրով ընկալջիք, զի բազում են մեկնիչք՝ ով եւ կամի առցէ. զի առաւել սիրէի զսրբոցս վարդապետութիւնս, այսմ այսպէս գրեցաւ։

Աղաչեմ յիշել զմեզ ի բարին Քրիստոս՝ զՎարդան սպասաւոր բանի, հանդերձ ծնաւղաւքն մեր եւ եղբարբք, ընդ նմին եւ զուսուցիչն իմ զտէրն Յոհանէս զԱրքայեղբայր Հայոց Հեթմոյ, եւս եւ զվարժապետս իմ զԵսայի, որ զաւրինակն շնորհեաց, գրեցի ի դպրութիւն կենաց. եւ որ մեզ հայցէ եւ ինքն գտցէ ի Քրիստոսէ։

Էր թիւն Հայոց ՉԼԷ (1288), ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ բարեպաշտի եւ աստուածասիրի, այր ողորմածի եւ բարիվայելուչ թագաւորի։ Եւ ի հայրապետութեան Հայոց տեառն Գրիգորիսի երկրորդ վկայասիրի եւ գերակատար իմաստասիրի, այր առաքինւոյ, ուղիղ եւ ճշմարիտ դաւանողի զԵրրորդութիւնն։ Եւ ինքն Քրիստոս աւրհնեալ յաւիտեան, ամէն։

բ

641 ԶՎարդան սպասաւոր բանի յիշէք յաղաւթս, ո՜ սրբամիտ վերծանողք։

գ

729 Կատարեցաւ Էակաց Գիր եւ Դիոնէսիոսն ի մի կազմ, ձեռամբ Վարդանա Կիլիկեցո, յիշել յաղաւթս աղաչեմ։

## 491

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 470

Գրիչ՝ Վարդան Կիլիկեցի
Վայր՝ [Գլաձոր]

### ա

115բ Զարիականն գերահանդէս և զներածմունք բնաւին յընթացս ի
վերնկառոյց իմաստութեանն զծագաւղ բանին երկիղածաց զվարժապետն
իմ [Եսայի] ստացաւղ համայն աստուածագիր վեպասիս, ծիրանափայլ
հոգո վառմամբ յիմանալիսն կրող հաւրն լուսո, զաւր ըստ աւրէն հաց
իմաստութեան յարքայականն սեղան ընդ բանին միացեալ, յիշեցէք ար-
թուն ակամբ յաղաւթս, ո՜վ սիրալիրք վերծանողք բոլոր ազգապարն
ննջեցելովք, առ որո և դուք ընկալջիք, զի յոմանց մաքրագունից սրտից,
յայլ ոմանց վերաբաշխել յողորմածէն զթողութիւն։ Եւ զիմն տեառն Յո-
116ա հաննէս||զեղբայր արքային Հայոց Հեթմո, և զտարակացեալ գրիչս Վար-
դան Կիլիկեցի իմովքն, և որ յիշէ առաջի կենեղուտ պատարագաց՝ ի
սպառուած գրոյս յորժամ բոլորաչահիք՝ աւգտութեամբ իրենիազն իմաս-
տէս՝ և դուք ի համայնն ընկալջիք ի բառացի Տեառնէն, ամէն։

### բ

213ա Զենթադիր արտակերտեալս ի վիս սաւլեն ի Գրիգորէ Նիւսեա ար-
տաշարեալ զտիպն տերունեան ընդ երրեակն հանգէրելով դրախտ իմա-
նալի և զսգալի՝ յոգնազան դատողաց, հրամանաւ իմոյ վարժապետիս
Եսայեա շարազան պարեցի զգերաբուն դրախտս պէսպէսորակ պտղովք՝
ի զմայլուսն իմաստից՝ ճմլեալ ի խոհեմական իմաստս բանասիրաց լու-
սափայլ դիտողութեամբ յիսկականն լոյս՝ յորմէ ճաշակ և ճաշակաւղ
վերաբերիլ յիմանալի ստեղունսն ի փառս միակին, զվերոասացեալ րա-
բունիս մեր Իսայի հանդերձ ծնողաւք և ազգայնաւք անմոռաց մաղթել
զիսկն բան, յորմէ թողութիւնն վեր յաւելու աստ և ի հանդերձեալն, ո և
213բ զիմն տեառն Յոհաննես արքայ||եղբայր հայոց Հեթմո՝ յիշել առաջի կե-
նեղուտ պատարագին, այլև զիմս անարժան թախիծ մակածու՝ գրչու-
թեան զՎարդան Կիլիկեցի՝ համայն ծնողաւք մեր և եղբայրբք, հայցել
ի Քրիստոսէ զթողութիւն մեղաց, և որ մեզ հայցէ և ինքն գտցէ և Քրիս-
տոսի փառք ի սփիւռս բնաւից ամէն։

### գ

133ա Զմարդացեալն մարդութեամբն՝ յորմէ մարդն՝ ընդ աւծելումն, որ
է գէրն հանգէտ էզոջն, զիմաստս ընդ ելապար իմաստին՝ զիմս Եսայի
ելա ելում, որ է դաստիարակ բանին Յիսուսի, յիշեցէք և քերակաելով
յաղաւթս և զիս զՎարդան:

դ

87բ Զսնուցիչ և ղուսուցիչն իմ զտեառն Յոհաննէս զեղբայր արքային Հայոց Հեթմո յիշեցէք ի Տէր և Աստուած ձեզ յիշէ*։

ե

151բ Ո վատթար ենթայի, որ ցագանէ զսեւագեղս։

զ

157ա ‹Վա է արբեցողին, որ իբր զստուղյալ սուտ իմաստակաց շրջագա[յէ]։

է

185բ Զմարդս մարդութեամբն, զենթայս ի գերակայսն, զմակագիրս ի թեղութեանն արժանանալ հայցմամբ։

## 492

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 197

Նորոգող՝ Վասիլ
Վայր՝ Յոնուզ

ա

849 Գրեալ սուրբ Աւետարանս ձեռամբ Ոհաննէս եպիսկոպոսի, ի թագաւորութեանն** Հայոց Հեթմոյ, ի սուրբ ուխտն Ակներ կոչեցեալ, ուր յոլով ամաւք նախ նոցին միաբան էր գրեալ և յոլով արդիւնք անդ արարեալ։ Ի թուականին Հայոց ի ՉԼԶ (1287), ի մարտի ամսոյ ի ԺԳ (13), ի Սուրբ Քառասնորդացն պահս։

---

* Ձեռագրում կան այսպիսի ծածկագրություններ, որոնք չեն վերծանվում. 116ա ժ. ծ. շ. խ։ մ. ս. տ. բ։ հ։ ձ։

95բ ս։ ի. ա։ ե։ ա։ վ։ բ։ գ։ (տառերի տեղափոխությա՞մբ «Եսաի վարգ»)

85ա ա, ժ, մ, շ, պ, յ, ս, հշ, րր, ո, բ, ե, ն, մ, կ, էէ։

** Գլխավոր հիշատակարանը չկա, գրչից մնացել են ցածր բերված հիշատակագրությունները։ 1590 թ. Թոունղցի Մարտիրոս եպիսկոպոսը Ավետարանը հանձնում է Վասիլ աբեղային նորոգելու. Խոնավությունից ձեռագիրը «փտեալ, եղծեալ, ապականեալ» էր, ուստի «վերստին ուսլայեցաք և գրեցաք» հավաստում է գրիչը։ Հիրավի, Վասիլը վարպետորեն գրելով անցնում է բոլոր տառերի վրայով, շատ աննշան բացառությամբ, և միջամտում նույնիսկ նկարների, հատկապես խորանների, գույներին։ Փթած լինելու պատճառով Վասիլ գրիչը հիշատակարանը չի բերում, այլ վերապատմում է, և սխալ է թույլ տալիս։ «Ի թգրութեն» (ի թագաւորութեանն) բառը այդտեղ չէր կարող լինել, որովհետև 1287 թ. թագավորը Լևոնն էր և ոչ Հեթումը։ Բացի դրանից, Հովհաննես արքեպիսկոպոսը միշտ հիշվում էր «Յովհաննէս արքեպիսկոպոս (կամ՝ եպիսկոպոս) արքաեղբայր» մականունով։ Այստեղ պետք է կարդալ «Գրեալ սուրբ Աւետարանս ձեռամբ Ոհաննէս եպիսկոպոսի, արքեղբօր Հայոց Հեթմոյ...» և թյուրիմացությունը կվերանա։

Բ

Կիսոյն գրող և ստացող՝
Յոհաննէս արքաեպիսկոպոս
Վայր՝ Ակներ

102ա Գերակատար գլխոյն մաքուր անդամք, բարի և քաջ հովուին անմեղ գառինք, հայրատունկ որթ[ո]յն ուռք պտղեղք, այս աստուածատունկ դրախտի վայելողք և ժառանգողք հարք սուրբք և [եղ]բարք ի Քրիստոս և որդեակք, գրողս սորա և աշխատողս Յոհանէս եպիսկոպոս, ծնողաւք և ընտանեաւք մեր, և համայն Քրիստոսի երկրպագողաւք յիշեալ լիցուք ի ձենջ ի բարի, և դուք եւ։

Գ

103բ Եղկելի ոգիս Յոհաննէս եպիսկոպոս արքաեպիսկոպոս՝ այսմ գրող, ծնաւ-ղաւք մեր կրկին, և ընտանեաւք, և ամենայն ի սա աշխատողաւք յիշեալ լիցուք ի բարին Քրիստոս, ի վայելողացդ զսա, և զձեզ ի բարին յիշեսցէ Քրիստոս Աստուած մեաւք, ամէն։

Դ

162բ Բազմաբիծ բծկանս Յովհանէս /// ին Քրիստոս լիցուք յիշե ///

Ե

348բ Երջանիկ անձանցդ [տ]ամասիրաց և աստուածասիրաց պաղատիմ հողս դատապարտ ծառայակիցս Յոհաննէս եպիսկոպոս արքաեպիսկոպոս ստացող սորա և կիսոյն գրող* յիշել ի Քրիստոս մեծի լ[ու]սափայլ տաւ-նիս զիս, և ծնաւղսն իմ, և զեղբարսն, և դքոյրսն համայն՝ նոցին ծնըն-դաւք, և զարմիւք, հանգիստ և փրկութիւն և ողորմութիւն ի Քրիստոսէ գտանել համայն ի Քրիստոս հաւատացելովք այժմ և յապագայն, եւ և զի մեզ, աշխատողսն կրկին։ Եւ որ առատն է ի տուրս բարեաց Աստուածն իմ Յիսուս Քրիստոս զնախնեղեալսն և զկնի եկեալսդ մեաւք եւ և զմեզ յիշողաւքդ ի փառս իւր ընկալցի հայցմամբ սրբոյս, և նմա փառք յաւ-իտեանս, ամէն։

---

* Ձեռագրում «գրող» բառը տողադարձ է արված՝ «գր-ող»։ Բառի մեջ հետագայում գր-ից հետո ավելացրել են «ո», իսկ ող-ից առաջ «գ» տառերը։ Քերել են «գրող» բառի գ տառի ներքևի մասը՝ դարձրել «ո» և միացնելով «կիսոյն» բառի վերջին ն-ի հետ ստացել են «կիսոյ նորոգող»։ Այնինչ Հովհաննես արքաեպիսկոպոսը իսկապես կեսն է գրել, իսկ սկիզբը, խորանները, կիսախորանները, զարդագրերը և լուսանցազարդերը՝ այլ գրչի գործ են։ Մի երրորդի գործ են տերունական և ավետարանիչների նկարները, իսկ նախադրությունները և ցանկերը Հովհան-նես արքաեպիսկոպոսն է գրել՝ և տերունական նկարների հետ մուծել ձեռագրի մեջ։

## 493

## ՏԱՂԱՐԱՆ

Երևան, Պատարիկ 909

Ի ժամանակս արքային արքայից Հայոց Մեծաց Լևոնի բարեպաշտի և քրիստոսասէրի, և ի թվաբերութեան Հայոց տոմարի ՉԼԶ (1287) յանկ ելեալ աւարտեցաւ տառս այս հոգեխաշունչ, որ ունի ղծ[ա]ղիկս զանազանս կենդա[նա]րար, հաւաքեալ ըս[տ] սարասի աղին դրախտին, պահողացն և պատուողացն զսա կեանս անմահականս, արհամարհողացն մահ յաւիտենական։ Որոյ ցանկացեալ եղև մեծափափաք ըղձականութեամբ որպէս միեղջերու՝ յաղբիւրս ջուրց, խոհեմ յամենայնի և իմաստունն՝ ըստ Սողոմոնի, քաջ և արին՝ ըստ Գէդեոնի , արքայազունն պարոն Աւշինն, որդի Աւշնի՝ արքաղեբաւրն Հեթմոյ, և հաւրեղբարն Լևոնի արքայի, և ըստ մայրենի ծննդեան՝ դստեր մեծի, քաջի և իմաստնոյ աստուածակրողի Ջալալին Հայոց Մեծաց պարոնին, ի զարմէ Լուսաւորչին Սրբոյն Գրիգորի:

Եւ արդ, աստուածասէր և բարեսէր պարոն Աւշինս այս՝ տէր Կանչոյ, ժողովեաց զյոգնիմաստ տառքս տաղից. նեբբողինից, քաջոլորակաց ըստ Հոմերի չափոց և ոչ ըստ աշխարհի, այլ աստուածային և երկնային, ի վայելումն անձին և ի յիշատակ հոգւոյ իւր և նախնեացն իւր, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի և ամենեցունց զարմից նոցին կենդանեացն և հանգուցելոցն, և ի գալըստեան միածնի Որդւոյն Աստուծոյ ի վերջին աւր կենցաղոյս, և յառաջին աւր յաւիտենականին անմահ աշխարհին, ընդ սրբոց առաքելոցն մարգարէից և մարտիրոսացն, պսակեցին անթառամելի պսակաւք ժառանգակից լինել Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ աւրհնեալն է ընդ Հաւր և Սուրբ Հոգւոյն յաւիտեան, և յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։

## 494

## ԱՌԱԿՔ ՍՈՂՈՄՈՆԻ

Երևան 6333, Բարղամյան, Յուցակ, էջ 30ա—30բ

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Սիս

Փառք Հաւրն անհասի, Որդոյն միածնի և Հոգւոյն ճշմարտի, ամէն։

Ի թուականիս Հայոց Մեծաց ՉԼԶ (1287) յամսեանն մարտի Ե (5), աւարտեցաւ Գիր Առակաց Սողոմովնի աստուածայնու, ձեռամբ նուաստ քահանայի Թորոսի, ի վայելումն բաբունւոյն Սարգսի, որ մականուն Շալուէ կոչի, և զԳրիգոր սարկաւագի, յաւրինակէ տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի։

Արդ, գրեցաւ սա ի ժամանակի բարեպաշտ թագաւորին Հայոց Լևոնի, և ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, ի մայրաքաղաքս Սիս, ընդ հովանեաւ Սրբոյն Թեոգորոսի, որ մականուն Առիւծանով կոչի։ Արդ,

աղաչեմ զամենիսեան, որք կարդայք կամ աւրինակէք կամ գաղափարէք, յիշեցէք զսրբազան Վարդան և զԳրիգոր սարկաւագն, որք փափաք[ողք] եղէն այսմ աստուածայնոյս Սողոմովնի իմաստութեանս։ Եւս առաւել աղաչեմ զձեզ զամենիսեան զորդիս Սիոնի, վասն սիրոյն Աստուծոյ թողութիւն մեղաց հայցել /// վերո դրելոցս ///

## 495

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6345

Գրիչ՝ Խաչատուր
Վայր՝ Կիպրոս կղզի

ա

Փառք ի սկզբանն և անսկզբանն, և որ ընդ սկզբանն, երրեակ միութեանն, և եռանձնեան միակամ Երրորդութեանն, մի տէրութիւն, մի զաւրութիւն, մի իշխանութիւն, մի փառք և մի պատիւ համայղո Երրորդութեանն, յաւիտեանս, ամէն։

Որ արժանի արար զանարժան և զյետին կրաւնաւորս, որ անուամբ միայն և գործովս յետս կացեալ ամենայն բարեաց, հասանել ի վերջ գծիս։

280ա Արդ, շնորհիւն Աստուծոյ սկսա և ողորմութեամբ նորին կատարեցի
զառաքելադիր սուրբ Աւետարանս, ի պայծառութիւն եկեղեցոյ և ի
լուսաւորութիւն մանգանց առագաստի Նոր Սիովնի, և ի հանգիստ հա-
մաւրէն ննջեցելոց։

Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց յամի ՉՃ-երրորդի և Լ-երրորդի Զ-երրորդի (1287), ի թագաւորութիւն Հայոց Լևոնի, և ի կաթողիկոսութիւն տեառն Կոստանդեա: Արդ, շարադրեցաւ սա ի կղզիս, որ կոչի Կիպրաւս, ընդ հովանեաւ Սուրբ Կառվառա և սուրբ զաւրաւարին Սարգսի։ Արդ, գրեցաւ ձեռամբ մեղապարտ և անարժան և մականուն կրաւնաւորի, ի խնդրո սրբասէր և պատուական քահանայի Աբրահամա, զոր ստացաւ զսա յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, զոր ետ գրել զսա ի հալալ արդեանց, վասն սննդեան տեղո իւրոյ*։

Ո՜վ մանկունք Նոր Սիովնի, որք լուսաւորիք ի սմանէ, կամ գաղա-
280բ փարէք, յիշեսջիք զԱբրահամ||քահանա, և զհայր իւր զՍաճակ և զմայր
իւր, և զեղբարս, և զքոյր, և զամենայն ազգատոհմն իւր, և զվարդա-
պետն իւր զՍարգիս, և զիրսն ամենայն։

Յիշեսջի՜ք և զԽաչատուր քահանայ, որ գծեաց զսա։ Յիշեսջիք զպարոն Վասակ, որո ընգալեալ զլուծ՝ խոնարհութեան, զի և մեզ խրատատու եղև։ Նաև զՄխիթիար միակեց, զի և սպասաւոր էր մեր։ Յիշեսջիք և զտիկին Ալիծն, որ զաւրինակն շնորհեաց։ Յիշեսջիք և որ այլ ոք ի սմա տրաւք աւգնեաց վասն կատարման սորա։ Յիշեսջիք և ասաս-

* Մի տող ջնջված է։

*չիք երանի ում թողու և Քրիստոս որդի, և որք յիշէք, յիշել լիշիք յանհիշաչար Տէառնէ։*

*Արդ, աղաչեմ, զի ամ ի յամի ընթեռնուք զյիշատակ սորա, յաւուր մեծի պենդէկոստէին, և մի անփոյթ առնէք, զի թերևս ողորմութիւն գտցուք ասելով զՔրիստոս որդին։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զսա ի տեղոչէդ յայտմանէ, զի մի ելցէ ինք յարքայութենէն Աստուծոյ։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, զի անմեղադիր լինիք խոշոր[ութեան] ///*

Բ

87բ *Քրիստոս Աստուած մեր, զՍահակ*///*

## 496

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Տիրերան, Ցուցակ Հռոմի, էջ 221*

*Գրիչ՝* Ստեփանոս

ա

*Հրամանաւ թագազարմ իշխանին իշխանաց՝ բարեպաշտին և աստուածասիրին* Հեթմռ *տեառն* Կուրիկոսի, *շինեցաւ և գրեցաւ Ամսամտիկս այս ձեռամբ* Ստեփաննոսի *նըւաստ քահանայի, ի ժամանակս հայրապետին Հայոց տեառն* Կոստանդեա, *եւ ի թագաւորութեանն Հայոց բարեպաշտին և աստուածասիրին* Լէոնի, *ի թուականիս Հայոց յՉԼԶ (1287)-ն, եւ ի փոքր թուին, ի յընդիքտիոնին Հոռոմոց ի ԺԵ (15)-ն, եւ ի մեծ թուին Հոռոմոց յՉՂԵ (795)-ն։ Եւ է յայսմ ամի արեգականն շըրջանն ԺԹ (19), եւ լուսնին շրջան ԺԲ (12)։*

*Արդ, աղաչեմ զամէնեսեան, խնդրեցէք յԱստուծոյ, զի զվերասացեալ տեարսդ-մեր՝ պահեսցէ խաղաղութեամբ և առողջութեամբ, և ուղիղ վերակացութեամբ երկայն ժամանակօք։ Ընդ նոսին և զիս զաշխատողս ի սմա։*

Բ

*Գրիչ՝* Ռօբեն

*Ձմեղաւք դատապարտեալս, զ*Ռօբեն *գրիչս աղաչեմ յիշել ի Տէր։*

---

* *Մյուս մասը լվացված է։*

## 497

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾՈՑՆ ԱՌԱՔԵԼՈՑ ՅՈՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

*Երևան 1316*

*Գրիչ՝* Կարապետ
*Վայր՝* Յոհաննավանք

ա

403ա *Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտենս յաւիտենից, ամէն։*
*Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ առաքելական մատեանս, զոր*
*սուրբն Ղուկաս գրեաց զքաղաքաւարութեան և զվարս և զսքանչելագոր-*
*ծութիւն և զմահ սուրբ առաքելոցն, և ետ ի լոյս և ի պայծառութիւն և ի*
*փառս և ի պարծանս ամենայն հաւատացելոց Քրիստոսի։ Զոր սուրբ*
*հայրապետս* Յոհան Ոսկեբերան *հանդիսացեալ վարդապետութեամբ և*
403բ *առեալ‖զգործ սուրբ առաքելոցն մեկնութիւն արարեալ, և դժուարինսն ի*
*լոյս և ի յայտ արարեալ էած, և ետ ամենայն մանկանց եկեղեցւոյ, ի*
*զարդարումն և ի պայծառութիւն, և ի բժշկութիւն հոգւոյ և մարմնոյ*
*ամենայն ախտցելոց, և ամենայն հիւանդացելոց հոգւով և մարմնով, զի*
*որ լսէ ունկնդրութեամբ և առնէ զբան սուրբ հայրապետիս, ոչ միայն*
*հոգին բժշկի, այլ և մարմինն ու հոգին, և ժառանգէ զպատիւ և զփառս*
*սուրբ առաքելոցն, և այլ վերագոյն ևս առաւել փառաւք։*
*Արդ, ոչ եթէ զՄեկնութիւն միայն գրեաց սա, այլ և յորդորակաւք*
*և նախերգութեամբ և խրատաւք զարդարեաց, և ետ քրիստոնէից ի լսել*
*և յառնել և յաւգտել։ Որ և տէր* Համազասպ *մեծապատիւ և առաքելա-*
*շնորհ արհիեպիսկոպոս, վերադիտող տանս* Այրարատու *և մեծ մենաս-*
*տանի վանից Յոհաննու, ցանկացող եղեալ այսմ աստուածային մատենա-*
*գիրս, և ետ գրել զսա ի հալալ արդեանց, ի վայելումն յերկար կենդա-*
*նութեան իւր, և բարի գնացելոց առ Քրիստոս հանգիստ և ողորմութիւն*
*յերկնից արքայութեանն։*
*Արդ, ով որդիք լուսոյ, որ փափագէք կենդանի ջրոյն և լնուք զփա-*
*փագ տենչման ձեր ի սուրբ կտակէս, յիշման բարոյ արժանի արարէք*
*զպատուեալն յԱստուծոյ և մարդկանէ զտէր* Համազասպ *և զամենայն*
*ընտանիս իւր, զազգայինսն* Մամիկոնեան՝ *զմիջինսն և զվերջինսն և*
404բ *զառաջինսն, և զարէն մեր‖ձաւորսն, զկենդանիս և զգնացելսն առ Քրիս-*
*տոս, կենդանեացն բարի և երկար ժամանակ, և բարի գնացելոցն յա-*
*րութիւն կենաց ի Տեառնէ Յիսուսէ Աստուծոյ մեր։*
*Ու ես իսկ տրուպ և փցուն գրիչս, ծառայ Աստուծոյ* Կարապետս

խնդրել ի ձէնջ, խնդրել ի Տեառնէ թողութիւն յանցանաց ինձ և իմոց ամէնեցուն, և Տէր Յիսուս առատ պարգևաւք լցուսցէ զամենեսեան և նմա փառք ընդ Հաւր և ընդ ամենասուրբ Հոգւոյն այժմ և միշտ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Արդ, աղերսանաւք աղաչեմ և խնդրեմ ի ձէնջ ըլլան և զբարին և զհաճոյն Աստուծոյ և մարդկան՝ զՍարգիս քահանայ, և զեղբարն իւր ղսիրեցել զԽափլան, և ձեռնասուն աշակերտն զԳաւգի յիշման արժանի արարէք, և գնացելոց առ Քրիստոս՝ հանգիստ և ողորմութիւն խնդրեցէք Աստուծոյ, զոր և վասն մեր խիստ էր ցաւակից ի գրոցս գրելս։ Իսկ մեք հոգւով և մարմնով հանգաք ընդ հովանեաւ սմայ։ Քրիստոս, որ առատ է ի տուրս բարեաց, հատուսցէ ընդ միոյ հազարապատիկ սոտ և ի հանդերձումն գնացելոցն յարութիւն կենաց և կենդանեացն երկար ժամանակ։

Ընդ նմին և զՎարդան վարդապետն, որ և բազում լուսաւորութեան բանիւ խրատէր հանապազ, և զհոգեոր եղբայրն մեր զՅովաննէս յիշման արժանի արարէք, զի մեզ և ձեզ և ամենեցուն առհասարակ ողորմեսցի գթածն Աստուած յաւրն կարեաց, ուր սնոտի բանքն սպառին և բարի գործքն թագաւորեն։

Արդ, դծագրեցաւ սա ի նոյն վանս Յոհաննու Սրբոյ Կարապետիս և մաւր լուսոյ Սրբոյ Կաթողիկէիս, հրամանաւ և արդեամբք տէր Համազասպայ, ի թվաբերութեանս Հայոց ՉԼԷ (1288)։ Մի ոք իշխեսցի հեռացուցանել զսա ի դրանէ Սուրբ Կարապետիս, զի մի ինքն լիցի հեռացեալ ի կենացն։ Քրիստոս Աստուած մեր, որ դու ղաւրութիւն տկարաց. ընդ Հաւր և ընդ ամենայն Սուրբ Հոգոյն, փառք այժմ, և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն, այո, եղիցի, եղիցի։

Զխաչատուր զաշակերտս մեր յիշեցէք ի Տէր։

Բ

39բ Զաստուածայնպատիւ և զառաքելայշնորհ տէր Համազասպ և զանդրանիկ որդին անդր մաւրն Սիոնի յիշեցէք առ աւրհնեալն Աստուած, և նմ[ա] պատիւ յաւիտեանս։

Գ

46բ Քրիստոս Աստուած, տուր զսէր և զխաղաղութիւն ի սիրտս լսաւղացս, եւ սոցա աղաւթիւք և բարեխաւսութեամբ ամենայն սրբոց ողորմեա գրողի գրոցս, տէր Համազասպ, եւ իւր ծնողացն, ամէն։

Դ

113ա Զստացող սուրբ տառիս ղարհքեպիսկոպոսն զտեր Համազասպ և զամենայն ազգայինսն յիշեացիք, ո՜վ սուրբ մանկունք, ընդ նմին և զիս զգծողս, և Աստուած զձեզ յիշե։

Ե

121ա Զգծողս և զամենաւրհնեալ զեղբայրն մեր Սարգիս յիշեսջիք յաղաւթս։ Աստուած, որ առատ է ի տուրս բարեաց, զձեզ յիշէ, ամէն։

Զ

128ա ԶԿարապետ գծողս յիշեսջիք և Աստուած զձեզ յիշէ։

Է

201բ Քրիստոս Աստուած ողորմեա Շնաւոր տիկնա քո սուրբ առաքելոցն բարեխաւսութեամբ, և ինձ ողորմելի գրչիս, ամէն։

Ը

214ա Արդ, աղերսանաւք աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ քահանայքդ, միայն ողորմաւի՝ ղփոխեցեալն առ Քրիստոս զեղբաւր զաւակն իմ՝ զՇնաւոր տիկինն, ղի տարաժամ էլ աշխարհէս, և էթող սուգ մեծ ծնաւղաց իւրոց. և ղիս՝ ղգծողս զողորմելիս; Ջեղկելիս յիշեցէք ի Քրիստոս և Աստուած ղձէղ յիշէ։

Թ

251բ ԶՇնաւոր տիկինն, որ տղայ հասակաւ ել յաշխարհէս... յաղաւթս ձեր յիշեսջիք...

Ժ

69բ Յայսմ աւուր տաւն է քառասնիցն, որք ի Սեբաստիա կատարեցան, և են բարեխաւս վասն մեր։

ԺԱ

381ա Ողորմեսցի մարդասէր Աստուած և գթասցէ ի հոգիս գնացելոցն ի Քրիստոս և զաւթևան նոցա քաղցր արասցէ, և սուրբ առաքելոցն մասնակից լիցի, որ աւգնական եղև մեզ ի գրոց գրելս Սարգիս և պահեացէ հաստատ մինչև ի խորին ծերութեան անխարդախ, և զպատանի եղբարն, որ հեռևոր գնաց ի ճանապարհ, բերէ Քրիստոս բարով, ամէն։

ԺԲ

396ա Տէր աստուած Յիսուս Քրիստոս, որդի Աստուծոյ, որ արարէր զիս զանարժանս հասանել ի վերջս, արայ և զմեզ արժանի ընդ առաջոց քոց առաքելոց, որք արժանի եղեն որ սիրեցին զքեզ։ Եւ մեր ննջեցելոցն առաջնոցն և միջնոցն և վերջնոցն արայ տեղ ի քում արքայութեանդ, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Եւ ընդ նմին յիշեայ զպատանի եղբայրորդեակն իմ զՍումեկ, որ է Աստուծոյ և մարդկան հաճոյ։

ԺԳ

186ա Զհոգևոր եղբայրն մեր Գրիգոր, որ ի նեղել ժամս երեկ և զվաղահաս ծիրանն էբեր, յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

ԺԴ

304ա Զհոգևոր եղբարն մեր զՄխիթար, որ երեկ և ի նեղել ժամու մխիթարեաց, յիշեցէք ի Քրիստոս։

ԺԵ

Սրբագրող

22ա Այս որ անգիր է, յաւրինակէն պակաս էր։ Թէ այլ աւրինակ գտանես, որ ի Լիմճ կենա, զպակասդ գրեայ և զմեզ յիշեա յաղաւթս*։

ԺԳ

Կազմող՝ Մխիթար

404բ Քրիստոս Աստուած ողորմեա Յոհան կազմողի և Մխիթարայ վարդապետի, ամէն։

## 498

## ԱՎԵՏԱՐԱՆ

Երևան 4810

Գրիչ՝ Սարգիս
Վայր՝ Առեղս գիւղ

Ա

252բ Փառք եռանձնեա, անեզարուն, համակերտող, անշարժ, մշտաշարժ,
յավէտաշարժ, անաւկ էին, անհոսանուտ կաին, անպար արփոյն, անկը-
ցորդ պետականին, անկէտ ամակաւորին, ինքնաբաւ փառացն, յոքնարի
զաւրութեանն, բիւրաճաճանչ լուսոյ, անբաւ մարդասիրի, անկարաւտ
հղաւրի, աննուազ բարերարի, Սուրբ Երրորդութեանն և միասնական աս-
տուածութեանն, այժմ և միշտ, յաւիտեանս յաւիտէնից, ամէն։
253ա [Աստ]անաւր յանգ եղեալ [ա]ւա[րտ]եցաւ սուրբ աւետարեր
[քա]ռակմամբ և քառանիւթ և քառագիր Աւետարանս չորս եդեմարուի
վտակաւքս աբբուցեալ և հաստատուն պահեալ զեկեղեցի սուրբ ոսկիա-
նկար քանդուածով առաւել քան զլուսատեսիլն բիւրեղ, սեղան ամենալի
յոքնախորտիկ և աղբիւր անսպառ և ուրախարար, սեղան ոչ ունայ-
նութեան, որ ծորելով լրութեան կարաւտանա, այլ յանծայրածաւալ սե-
ղանոյն, զոր Տէրն հրամայեաց ուտել, և ոչ ճաշակել զմահ։
Իսկ ի յայսմ սեղանոյ ճաշակեցաք մեք, Յոհաննէս քահանայս և
Յովաննէս, Աւետս և Մուսիկս, Վարդանս և Սահակս, Աբրահամս և Դա-
ւիթս, և Յակոբս, Մարգարիտս և Թագուհիս, և որդեակս իմ Ստեփանոս՝
և եղբայրքն իմ Թաւրոս և Սարգիս։ Յանկացողք եղեալ մեր այսմ կեն-
սակիր և աստուածական սեղանոյս, որ և գովի ի շինուած արարչին ի
վերա հիմանն Յիսուսի, կարկեհան ակամբ ընդ արծաթոյ և ելիտական
ոսկոյ, զի սա [է] ժառանգ լուսաճաճանչ և հրաշալի ուրախութիւն երկ-
նաւորաց և երկրաւորաց, վասնզի հոգևոր ծնունդն, որ յաւազանէն, և
զպատուական անուն, որ է կոչումն յորդեգրութիւն Հաւրն երկնաւորի
յաւծումն քահանայութեան և զպատարագիչս անմահ գառինն Աստուծոյ,
253ա զենեալ|| միշտ և կենդանի ի հաշտութիւն Հաւր և ի բառնալ զմեղս աշ-
խարհի, զի սա է կեանք մեր և փրկութիւն, զի աստի ո[ւ]նիմք զակն լու-
սափայլ և զմարգարիտս գեղեցկատեսիլ, որ զինչ և ունիմք՝ վաճառեմք

* Գրված է չգրված սյունակի ստորին մասում՝ շղագրով և սրբագրության թանաքով։

և դնեմք զայս մարգարիտ, զի սովիմք Հոգով Հոգիանամք, և սմին անճառ և աստուածային լուսով լուսաւ[ո]րիմք ի խաւարէ և յանաստուածութենէ, սորին զաւրութեամբն զաւրանամ[ք] և լինիմք յաղթ[ող]ք հակառակամարտին ի պատերազմունս։ Եւ սա է խորտակիչ անբարի բարուցն Բելիարայ, յորմէ փրկեսցէ Քրիստոս Աստուած մեր զհաւատացեալս<ա>նն իւրոյ։

253բ Արդ, ես՝ Յոհաննէս էրէցս, ստացայ զսուրբ Աւետարանս և զկենար[ար վար]դապետութիւնս ան///նին և բազկացն,/ի/ութեանց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, [յիշա]տակ ինձ և ծնողաց ի[մոց և] ամենայն ազգատոհմից մերո[յ ի կ]ենդանեաց և մեռելոց, և ի վայելումն զաւակի իմոյ Ստեփաննոսի ըստ այնմ [թէ] Պատուաիրանք Տեառն լոյս են ե լոյս տան, և՝ Երանի որ ունի զաւակ ի Սիոն և ընտանեակք իցեն նորա յերուսաղէմ վերին, և թէ՝ Գանձնեցէք ձեզ գանձս յերկինս, որ ոչ ցեց և ուտիճ ապականէ, և ոչ գողք ական հատանեն և գողանան։

Արդ ես, Յ[ո]հաննէս էրէցս փափագող եղեալ այսմ աստուածային գանձուս և անպաւման ուրախութեան, և գրել ետու զսա ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, ի նեղ և ի դարանակալի աւուր///ի թուաբերութեան Հայկազեն [տումարիս ]մերում մ///ազատութիւն եւթնհարիւրերրորդի երես[ներ]որդի եւթներորդի (1288) ի Հայկազեան սեռիցս, ի հայրապետութեան տեառն Տղա Ստեփաննոսի, ի տիեզերակալութեան Ղուբիլա և ի կողմկալութեան Արղու և ի բռնակալութեան ազգին նետողաց։

Արդ, գրեցաւ ի դուռն Նախաւկաի և յառաջին սարկաւագի, և այլ սրբոցս որ կան շուրջ զմեաւք, ի դեղս Առեղս, երկրիս Տարբերունոյ, որ կոչի Բերկրի։ Զթխացեալս մեղաւք զՍարգիս գրողս սուրբ Աւետարանիս աղաչեմ զձեզ, ո՜վ լուսերամից դասք և որդիք Վերինն Սիոնի, անմոռաց հայց[եց]էք ի հեզէն և ի մարդասիրէն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ զթողութիւն իմոցն յանցանաց, և ի ձեռն մաքրափայլ աղաւթից ձերոց ոչ կրեցից զանտի ամաւթն և զարտասուսն անվախճան, զի յոյժ քան զամենայն երկրածինք առաւել գտա ստոմնկանող [պ]ատուիրանաց արարչին իմոյ Յիսուսի։

Աղաչեմք զձեզ, ո՜վ եղբարք գթութեամբն Աստուծոյ և Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, սխալանաց և խոշորութեան անմեղադի[ր] լինիք։ Կրկին յիշման բարոյ արժանի արարեք զ[Յ]ոհաննէս սրբասնեալ քահանա և զծնողսն իւր, [և] զաւակսն իւր և զերիցակինն իւր, և զհաւրեղբարքն իւրեանց՝ ամուսնաւքն, զաւակաւքն [պ]ահեսցէ Տէր Աստուած ի խաղաղութիւն, և թէ ոք զյիշատակարանս կտրէ կամ անուն քերէ, ջնջեսցի և՛ ինքն ի դպրութենէ կենացն յաւիտենից, ամէն։

Բ

128բ ԶՍարգիս գրիչս յիշեայ ի Տէր Յիսուս, ո՜վ խաղագիծք, և Քրիստոս զձեզ յիշէ յիւր անսպառ բարիսն, ամէն, ամէն։

Գ

199բ Ի կարդացմանդ զՍարգիս գրիչ յիշեա ի Տեր Քրիստոս, ամէն։

Դ

18բ Զի ծնեաց զիս մայր իմ, և ես նստեալ լամ։

Ե

51ա Եւ արդ ես հիգեցեալս մեղաւք և թշուառացեալս մարմնոյ։

## 499

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4851

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ Արճէշ

ա

261բ Փառք անպարագիծ էին, այնմ որ ոչ են հետ հղաւրի և ոչ զինչ են,
և ոչ զինչ պիտին, և ոչ քանակն համբարձելոյն յամենայն մտաց սլաց-
ման։ Գոհութիւն անզնին գոյին, որ է բան, կնիք և սահման էին։ Փա-
ռատրութիւն անպաստ իմանալի սեռին, որ է հոգի համագոյ էին և փա-
ռակից բանին, որ տրամադրեաց զմատոմս վերջացեալ տկար ոգւոյ
Սիմեոնի նուաստ քահանայի, գրեալ և կարգեալ զճառս երախտեաց աս-
տուածագործ սքանչելեացն. զոր ճշմարիտ և աստուածն բան միածին
Որդին Աստուծոյ Յիսուս Քրիստոս, ի վախճան ժամանակի կատարեաց
զնշանս և զարուեստս, որպէս զի որք ընթերցին, ի միտ առցեն և ծանի-
ցեն, թէ նոյն Տէրն է, որ Մովսէսի հրամայեաց առնուլ գառն տարևոր
և յիշել զերախտիս աստուածութեան, որ յԵգիպտոս: Նոյն և աստ եդոյր
մեզ յիշատակ չարչարանաց իւրոց, ոչ միայն պէս պէս նշանաւք լուսա-
ւորեաց, այլ և չարչարանաց և մահու համբերեաց, զի գիտեր, թէ լսե-
լով զանարգանս Տեառն մերում, դարձ եղիցէ ի մեղաց մերոց։
262ա Արդ, այսմ գաղափարութեան, երջանիկ ումն պատուական և աս-
տուածային ծրիւքն բարգաւաճեալ վարդապետ Թովմայ, սորա ելեալ
մեծաւ ցանկութեամբ և յոյժ փափագմամբ ի խնդիր աստուածունակ տա-
ռիցս, որ կեանս տայ կամայորդոր լսողաց, ստացաւ զսա զաւակ ի
Սրովն և ընտանեակ յՆրուսաղէմ,՝ի զարդ ճոխութեան հարսնացեալ սրր-
բոյ մաւր եկեղեցւոյ, և ի լուսաւորութիւն մանկանց Սիովնի, յամս աս-
տուածապատիւ և երջանիկ հոգևոր տեառն Ստեփանոսի և ի թուաբերու-
թեանս Հայկազնեան տոմարիս ՉԼԷ (1288), ի քաղա[քիս] Արճէշ, և ընդ
հով[ան]եաւ Սրբոյն Յակովբայ գրեցաւ։
Եւ արդ, աղաչեմ զձեզ Տէրամբ անպտուղս ի բարեաց, զդասս լու-
սերամիցդ, որ հանդիպիք սմա տեսութեամբ և ընթեռնուք և կամ գաղա-
ջարէք, յիշեսջիք ի սուրբ և երկնաբացիկ աղաւթս ձեր զստացող տառիս
զվարդապետ Թովմա, և ծնաւղսն իւր Ստեփանոս, և զթարմատար գրիչ
Սիմէոն, և զծնողսն իմ, և զնախնիսն իմ՝ հանգուցեալսն ի Քրիստոս
և որք սատարեցին և աւգնական եղեն մեզ յայս գործ, և Քրիստոս Աս-
262բ տուած, որ տերն է փառաց և‖և տ[ո]ւիչ ամենայն բարեաց յիշողացդ և

յիշեցելոց[ս] ողորմեսցի կրկին կենաւք և երկու աշխարհաւք, որ է աւրհնեալ, գովեալ և փառաւորեալ յաւիտեանս, և յաւիտենից յաւիտեանս, ամէն։

Բ

3բ Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ քո եւ Կուսի ողորմեա Թու-
մա վարդապետի և իւր ծնաւղին Ստեփանոսի, և եղկելի գրչի Սիմէոնի և իւրոցն։

Գ

4բ Տէր Յիսուս ողորմեա գծողին և ստացողին։

Դ

Ստացող՝ Թովմա

7բ Զսուրբ Աւետարանս Սուրբ Խաչիս Աղթամարայ, ես Թովմայ տվի իմ
հաւրն յիշատակ, ըի յամեն ամի Ա ժամ արասցէն անխափան։

## 500

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

«Լոյս» 1906 թ. էջ 1219—1220. Ալիշան, Հայապատում, Բ, էջ 496—497

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Սկեւռայ

ա

1065ա Փառք գոյացուցչին բոլորից անսկիզբն և անեզր բնութեան միաս-
նական աստուածութեանն Հաւր եւ Որդւոյ եւ ամենասուրբ Հոգւոյ, որոյ շնորհաւքն շարժին էակք ամենայն, յիւրաքանչիւր ընթացս ըստ կարգի, յաւէտ եւս ի զգալեացս բանականս այս մարդ սլատուեալ հանճարով, որով զբնաւորական շարժումնն իմաստնապէս մարթ է յաւրինել, աստուածային սիրովն ուղերձեալ. ըստ որում է տեսանել ի բազմադիմի յայսպիսեաց իւրաց, այսինքն յաստուածասէր կամաց լաւաց մարդկան արգասեաց, եւ զգրութիւնս աստուածայնոց գրոց ստանալ։ Յորոց պընդագոյն փութոյ խորհրդեամբ՝ քահանայ տէրն Աստուածատուր անուն հանդերձ ձեռնասուն իւր հարազատ պատանւով Խաչատրիւ, որ է որդի քեռ իւրոյ, ի դեգերանս աստուածայնոց գրոց գոլով, կանխագոյն յինքենէ ի տղայոյթ վարժեալ եւ իւրանման կրթաւէր բարուց զուգակցեալ կամաւք երկոցունց յաստուածահաճոյ զբաւսանս անձանց եւ ի սատարութիւն բռնահարեալ գործոյ ընթերցմանն, եւ ի յիշատակ բարեաց զկնի՝ ստացան զայս աստուածախաւս մատեանս նորոյ կտակարանաց, ի ձեռն իմոյ նուաստութեան Ստեփաննոսի ամենամեղ եւ անպիտան գրչի եւ ներելովն Աստուծոյ տրուպ և անարժան քահանայի, ի ժամանակս աստուածապաշտ, աստուածահաճոյ կրկին արքայի Լեւոնի որդւոյ Հեթմոյ, և ի նորուն աստուածասէր անդրանիկի Հեթմոյ՝ տէրութեան սա-

տուածապահ բերդիս Լամբրոնի, և ի կաթողիկոսութեան ծերութեամբ պատուեալ տեառն Յակովբայ, ՉԼԴ (1285) թուականիս Հայոց գրեցաւ տառս յաստուածապահ սրբարանս մեծի ուխտիս Սկեւռայի՝ ընդ շքով թեւոց աստուածազաւր Նշանիս եւ Սրբոյ Փրկչիս, յառաջնորդութեան տեառն Մինասայ:

Արդ, մաղթեմք բոլորից Աստուծոյ, զստացաւղք գրոցս հանդերձ տրուպ գրչաւս եւ մերովքն համայնիւք, եւս եւ զպատուական քահանայն Սանեփանոս Գոյներերիցանց և զծնաւղս նորին գտանել ողորմութիւն ի Տեառնէ, որ աւդնական եղեւ ի նիւթ գրոյս։ Նա եւ հանդիպելովդ այժմ եւ յապա՝ ամենառատ ողորմութեանն Աստուծոյ արժանանալ խընդրուածովք Աստուածածնին սրբոյ եւ սրբոց աւետարանչացն եւ բոլոր իսկ առաքելոցն դասուց, այժմ եւ յանվախճան աւուրն, ի փառս մարդասիրին Աստուծոյ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բ

Գրիչ՝ Ստեփանոս Գոյներերիցանց
Վայր՝ Սկեւռայ

822բ Ըստ բանի սրբոյ ուրեմն. Որում բաղձայ ոք՝ նմին եւ հասանել չանայ, վասն զի բուռն է քան զմահ սէր, զոր ջուրք բազումք ոչ կարեն շիջուցանել, մանաւանդ յորժամ Աստուած իցէ տուփումնն։ Այսպիսեաւ երանելի ըղձիւք առ ստացումն աստուածաշունչ տառիցս վառեալ սըրբասնունդ պատանին Խաչատուր, թելադրութեամբ Գէորգեայ վարդապետի, առ որում կայր ի վարժս կրթութեան բանի եւ գրոյ ուսումնասէր դպիրն Խաչատուր, ինքնագիր երկաւք ստացաւ զգիրս ծննդոցն, զԴատաւորացն և զԹագաւորութեանց։ Եւ վասն ոչ բերելոյ տկար մարմնոյն զերկս գրութեանն, աւժանդակեաց սնուցիչ նորին և քեռի աստուածապաշտ քահանայն Աստուածատուրն, եւ սակս աղքատութեան կարծեաց նախ զնոր Կտակարանս ետ գրել իբրեւ ըլյոյժ հարկաւորս։

Եւ դարձեալք յԱստուած խրախուսեալք իմով ձեռամբ Ստեփանոսի Գոյներերիցանց վցուն գրչի՝ ստացան զաստուածային գիրս սրբոց մարգարէից եւ զսրբագրաց ոմանց, յեւթն հարիւր երեսուն եւ եւթն (1288) թուականիս, ի մխիթարութիւն ինքեանց հոգւոյ, որոց տացէ Աստուած ի հաճոյս իւր երկար վայելել ի սոյն, եւ ի յոյս բարեաց յիշատակի ստացողացն և աշխատողիս գրչի եւս եւ ընդհանուր զարմիցն նոցա եւ մեր, ի փառս Քրիստոսի աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։

Գ

Կին ոմն ի նիւթ աւդնական եղեւ, յիշեսջիք եւ զնա ընդ վերոգրեալքըն, եւ Աստուած ձեզ յիշէ։

Դ

756բ Զմեղուցեալ հոգիս զՍանեփանոս Գոյներերիցանց յիշեա ի Տէր, պատուական եղբայր Խաչատուր;

Ե

782ա Զստացաւղ գրոցս զխաչատուր յիշեսջիք ի Քրիստոս, այլ եւ զմեղաւոր հողս Ստեփանոս, եւ Աստուած զքեզ յիշէ։

Գ

970բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ ետ զաւրութիւն ամենամեղ քահանայի Ստեփանոսի աւարտել զտառս աստուածայլին, եւ զփափագ ըղձից պատուական եղբաւրն Խաչատրոյ լցոյց, զոր եւ մաղթեմ ի Տեառնէ ներել բազում յանցանաց իմոց, զի զմեծն եւ զեւս գերագոյնն կատարեցից*։

## 501

## ՔԱՐՈԶԳԻՐՔ

Երուսաղէմ 1406 (1731 թ.), Պողարյան, Ցուցակ Ե, էջ 60

...Ի թուականիս Հայոց ՉԼԷ (1288) ասացաւ եւ գրեցաւ ճառս. եւ ընծայեցաւ Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ*։

## 502

## ՀԱՒԱՔԱԾՈՒ

Օքսֆորդի, էջ 307 (ԺԶ դ.)

Գրիչ՝ [Թորոս]
Վայր՝ [Հռոմ]

69ա Այս գրոց աւրինակն գրած էր ի Հռոմ քաղաքն, առ դրան սուրբ ծայեցաւ Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ**։
տուած թողցէ զյանցանս իւր, ամէն. և գրեալ էր ի թվինս Հայոց ՉԺԷ (1288)։

---

* Ձեռագիրը նկարագրել է Բաբկեն Կյուլեսերյանը «Պրուսայի Ս. Աստուածածին եկեղեցւոյ ձեռագիր Աստուածաշունչը 1285—1287 թթ.» հոդվածում, («Լոյս», 1906, Կ. Պոլիս, էջ 1166—1172, 1191—1196, 1216—1221)։ Ձեռագիրն ունեցել է 534 թերթ, կամ 1068 էջ, 22,5×10,6 մեծության։ Գրվել է 1285 և 1288 թվականներին, երեք գրիչների ձեռքով, ինչպես երևում է հիշատակարանից։ Ծննդոց գիրքը, Դատաւորացն և Թագաւորութեանցն գրել է ստացող խաչատուր Դպիրը։ Այն զբաղեցնում է 1—356 էջերը։ Այնուհետև Ստեփանոս գրիչը 1285 թ. ավարտում է Նոր Կտակարանը, որն զբաղեցնում է ձեռագրի 835—1068 էջերը։ 1288 թ. Ստեփանոս Դոյներերիցանցը գրում է «գրոց մարգարէից և զսրբագրաց ոմանց» գրքերը, այսինքն 357—834 էջերը։ Սկզբում՝ Ստեփանոսի հիշատակարանն ենք բերել, որովհետև այնտեղ բացատրված են գրության հանգամանքները և տրված է առաջին թվականը։

Գևորգ Սկևռացին այս օրինակի վրա է սկսել նախագրությունների և ցանկերի ավելացումը և ավարտել է Մովսես Երզնկացու պատվերով 1295 թվականին։

** Էջի վերին մասը կտրված է, ուստի անհայտ է մնում ճառի խորագիրը։

## 503

### ՅՈՀԱՆՆԷՍԻ ԵԶՆԿԱՑՈ ԳՈՎԵՍՏ Ի ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉՆ ՀԱՅՈՑ

*Վենետիկ 207 (1272 թ.), Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 169*

117բ *Փառաւորեալ զամենասուրբ զերրորդութիւնն՝ զՀայր և զՈրդի և զամենասուրբ Հոգին այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ի թուականիս Հայոց ՉԼԷ (1288) գրեցաւ ճառս և ընծայեցաւ Հայաստանեայց [սուրբ եկեղեցւոյ]**։*

## 504

### ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ-ԵՒ ԹՈՒՂԹՔ ԿԱԹՈՒՂԻԿԵԱՅՔ

*Վիեննա 261, Տաշյան, Ցուցակ, էջ 667*

Գրիչ
Վայր՝ Կամբիկ անապատ

ա

159ա *Փառք...։ Բայց գրեցաւ Գործքս Առաքելոցն Քրիստոսի ի դղէակս* Մոլեւոնի, *ի յանապատըս որ* Կամբիկ *կոչ[ի], ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին եւ առաքելոցն<եւ>Պետրոսի եւ Պաւղոսի եւ սքանչելագործ Սուրբ Նշանի, որ պահապան այսմ եղիցի, ի թագաւորութեանն* Լէոնի: *Արդ, յիշեցէք զփակակալ սուրբ ուխտին* Կամբկունն՝ զՅովաննէս *պատուական կուսակրօն քահանայն, որ ետ ըզսայ փափաքանաւք գրել յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց, եւ որ յիշէ՝ յիշեալ լիցի և Քրիստոսէ ինք։ Ո՜վ սուրբ հարք եւ եղբարք եւ որդեակ, եւ որք առնոյք ըզսայ ուսմամբ կամ աւրինակ դնելով, յիշեցէք* զՅովաննէս *քահանայ, որ ստացաւ ըզսայ յարդար ընչից իւրոց յիշատակ հոգւոյ իւրոյ։*

բ

Ծաղկող

113բ *Ո՜վ հայրք եւ եղբայրք, անմեղադիր լերուք տխ(մ)արութեան ծաղկիս, աղաչեմ զձեզ մախրաթաւալ երեսաւք։ Վա՜յ խաւարեալ մտացս ինչ այնեմ, գերա եղկելիս ի՞նչ այնեմ***։

* Թվում է այս և 501-րդ հիշատակագրությունները միևնույն ճառին են վերաբերվում։
** Դնում ենք Լևոն Գ թագավորի մահվան թվականից առաջ։

## 505

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

*Ն. Ջուղա 207, Տէր-Awետիսյան, Ցուցակ, էջ 255—256*

Գրիչ՝ Զակքէոս
Վայր՝ Կողբայ վանք

ա

237ա ...*Որում և ես կրսերս յորդիս եկեղեցոյ* Վարդան *քահանա, փափագող եղէ այսր շահաւէտութեան եւ հոգելիր գանձուցս գրոց Գործոց առաքելոց եւ Ընթանրական Թղթոց կաթողիկէից, յինքեան ունելով զգլուխն մեր Քրիստոս, զպրակս աւետաբեր սուրբ Աւետարանիս, ցուցանելով մասնաւորաբար զմարգարէութիւն ստոյգ ուղեաց, որ միահաղոյն կոչի Յինունք։ Եւ աւանդեցի զսայ ընծայ և նուէր Սուրբ Գրիգորիս Հայաստանեաց Լուսաւորչիս և աստուածաշնորհ նշխարացս Սրբոց Սուքեաեանց ըստ կարի մերում, զի կացցէ յիշատակս մեր անհեռանալի ի սուրբ տաճարէս աստուածաբնակ, զի ընթեռնելով եւ լուսաւորելով յաստուածատուր պատգամացս, արժանի եղեցուք միասին փրկութեան, յանձին առնելով և յերեսս անկեալ աղաչելով ղաստուածառաք սուրբ զառաքեալսն և զհամանման որդիս իւրեանց զՍուրբս* Գրիգոր *և զսուրբ նահատակս աստուածունակ, զի թերևս աղաւթիւք ձեր և ամենայն սրբոց, որ հաւաքեալ կան ի գիրս, գթասցի բնութեամբ բարին Աստուած ի ստացող գրոյս ի* Վարդան *քահանայ, և ի հայրն իմ* Զարճամշահ, *և ի մայրն* Ծաղկանց, *և ի քոյրն իմ* Շաշթի, *և յեղբայրն իմ* Դաւիթ, *յայնմ ի տիեզերական եւ ահեղ հրապարակմն, ուր բանք սպառին և գործքն թագաւորեն, զի նմայ միայնոյ իմաստնոյն Աստուծոյ վայել է փառք, իշխանութիւն և պատիւ յափտեանս յաւիտենից։*

*Այլ և ես յետինս ի գրչաց և առաշինս ի մեղաւորաց, մեղապարտ ծառայս* Զակքէոս, *գրեցի զհոգոյ լուսատու պատուիրանս ի թվին ՉԼԸ (1289), ի սուրբ մենաստան Գրիգորի և աստուածագութ ծնողի և Հայաստանեաց Լուսաւորչի, ի նահանգս* Սուրբ Մարոյ, *որ կոչի* Կողբա Վանք, *յորում տեղւոջ կամ ծածկեալ աստուածային գանձքս և նշխարք Սուրբ Սուքիասեանց գլխաւորաց, զոր էր բերեալ սուրբ հայրն հաւատոյ մեծն* Գրիգորիոս՝ *կրկին տեսլեամբ եւ դառնալոյն ի Հռոմա։ Աստուածահրաշ նշանիք երևեալ սմա և բերեալ սորա ի տեղիս յայս, ամփոփէ ի խորանս լուսոյ, ի կողմ արևմտից, մերձ ի դուռս, զոր յաւուրս մեր*

յայտնեաց Աստուած սքանչելի հրաշիւք, ի ձեռն արհիականիս մերոյ և մեծ դիտապետիս տէր Տիրացուի, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի առաջի Քրիստոսի։

Զոր տեսեալ սորա ղայս սոսկալի սրբութիւնս և իբրև զհուր վառեալ ի սէրս աստուածային, զանձագին արարեալ ազատեաց զբազմամեալ ծառայելաքս յայլազգեաց և ղհնացեալ և ղամայացեալ հայրենիք եւ զվիճակ, որ յառաշ լեալ էր, սա եւս առաւել կրկին նորոգեաց և արձանացոյց բաղում եւ երեւելի ընձայիւք, որոյ վարձահատոյց լիցի Քրիստոս իւր սիրեցեալ սրբովքս, և ղվերագրեալ բստացող սուրբ մատենիս զՎարդան քահանայ և զամենայն ազգաինս իւր և զաշակերտ իւր զԱստուածատուր քահանայ մասին փրկութեան արժանի արասցէ։ Եւս առաւել զարդիւնական ծերունիս զԿարապետս և զՅովանէս, որ մխիթարութեան և հանգստեան պատճառ եղեն մեզ, հանգուսցէ Քրիստոս յիւր լուսեղէն յարկսն, և զայլ սպասաւորք սուրբ տաճարիս, եւ զմիեղէն եղբայրութիւնս, որ դեգերեալ պաղատանաւք կան արձանացեալ ի դուռս սուրբ քաւարանիս, ակն ունելով ողորմութեանն Աստուծոյ, արժանի արասցէ Քրիստոս ողորմութիւն գտանել յաւուրն յետնում, ամէն;

Զսնուցող վարդապետն մեր զՎարդան և զսիրելի եղբայրն մեր Ղևոնդ, որ յայսմ ամի փոխեցան ի Քրիստոս, յիշեցէք ի նուիրական յաղաւթս։ Նաեւ զՄաթէոս վարդապետ Կիլիկեցի, որ աւժանդակ եղեւ իմոյ անյարմար արհեստիս, գրեսցէ Քրիստոս զսա ի գիրն կենդանի, ամէն։

Աղաչեմք վասն սիրոյն Քրիստոսի, ընթեռնուլ զյիշատակարանս ի տաւնի Հոգոյն գալստեան, եւ ասել, Երանի ում թողութիւն եղեւ եւ Քրիստոս Որդի և Աստուած զձեզ յիշէ յիւր բարութիւնսն եւ յանտրտում ուրախութիւնսն ամէն։

Բ

159ա Ողորմեսցի Քրիստոս Աստուած Խաչատուր քահանայի, որ կոկեաց զնիւթ գրոյս և հանգոյց զանարգութիւնս մեր։ Հանգուսցէ Քրիստոս զննջեցեալսն սորա ի լուսեղէն յարկսն, և տացէ սմա հոգի երկնղի, ամէն։

Գ

Սուրբ Գրիգորիսէ գիրքս՝ Կողբա վանիցս, մի ոք իշխեսցէ հեռացուցանել ի սուրբ ուխտէս։ Եթէ ոք յանդգնի և հանէ, ինքն ելցէ յաւիտենից կենացն, եւ որք հաստատուն պահեն ի սմայ, աւրհնին Աստուծոյ։

Յիշեցէք առաջի Քրիստոսի զմեղապարտ գրիչս Զաքէոս և Աստուած զձեզ յիշէ յիւր ողորմն, ամէն։

Դ

Սուրբ Գրիգորիս[է] գիրքս՝ Կողբա վանիցս, աւանդեալ ի Վարդան փակակալէ, մի ոք իշխեսցէ հեռացուցանել և հանել ի սուրբ քաւարանէս; Եւ թէ ոք յանդգնի և հանէ, ինքն ելցն ի կենաց յուսոյն, եւ որք հաստատուն պահեն, աւրհնին յԱստուծոյ եւ յամենայն սրբոց։

Այլև հրաման ունի եկեղեցապանն յաստուածաշունչ մատենէս, որ խնամով պահէ և չտայ ի տղայի ձեռն։

## 506

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 1530

Գրիչ՝ Ոմեկ
Վայր՝ Եզնկա

ա

460բ Փառաւորեսցուք և մեք զԱստուած մի՛ բերանով միայն և լեզուաւ,
այլ հոգով և մտաւք, մի՛ բանիւք միայն, այլև արդեամբք և իրաւք, և
յայնժամ փառաւորեմք յորժամ զմիմեանց բեռն բառնամք, յորժամ
միմեանց գիրկս արկանեմք, յորժամ զմիմեամբք փարիցիմք, յորժամ առ
միմեանս ջուրիցիմք, յորժամ միմեանց կարեկից և վշտակից գտանի-
ցիմք, յորժամ ի վերա յիրերաց հիքութեան արտասուեմք՝ յայնժամ փա-
ռաւորեմք զԱստուած։ Վասն զի այսու ամենայնիւ առաւել փառաւորի
Աստուած, քան ի ձայնիցն փառաւորութեանէ։ Այնպէս վշտակից լիցուք
միմեանց, զոր աւրինակ, եթէ զմիոյ գաւառի զգաւառականս ի մի քա-
ղաք ի գերութիւն տանիցեն, և յորժամ բազումնքն զմիմեանս տեսանի-
ցեն ի հասարակաց վիշտսն՝ սգակից միմեանց լինիցին և ողբակիցք, ընդ
461 միմեանս անկանին և հառաչէն, և զմիարտաւսր ամենեքեան կաթէցուց||
անեն։ Նմանապէս և մեք ամենեքին ի գերութիւն մեղաց ըմպըռնեալք
յիւրաքանչիւր հասակէ, յիւրաքանչիւր արժանաւորութենէ, և եթէ
մարմնով եւեթ էաք ի գերութիւն և ոչ ընդ նմին հոգով և մտաւք, որ ևս
չար է քան զամենայն գերութիւնս, եւ եթէ ի ձեռս մարդկան
ըմպռնեալք էաք ի գերութիւն, և ոչ ի ձեռն խուժադուժ տիկնոջ բան-
սարկուին, որ քան զամենայն դառնագոյն տեարս է ծանրագոյն, վասն
զի չիք ի մարդկանէ քան զդէւս չարագոյն զտանել, և ոչ կապանս նորայ
ծանրագոյն։

Եւ արդ, յայսպիսի գերութեան գոլով մեք արտասուեսցուք, մեք ողբասցուք, հառաչեսցուք, մի՛ միայն զանձինս մեր լացցուք, այլ եւս առաւել զեղբայրս մեր տեսանելով յայնպիսի տառունս մեղաց, մի՛ մեայն զմեղս մեր զղջասցուք, այլև զմեղս եղբարցն ի մասինս յայսմիկ, առաւել առ միմեանս խոնարհեսցուք, յառաւել նեղութիւնս զանձինս մեր արկցուք ի յանձուկ սիրո, ի յաճախութիւն գթոյ, որպէսզի այսու զպատուիրանս Քրիստոսի կատարեմք, որ ետ զանձն իւր վասն մեղաց մերոց, առ ի զմեզ արդարացուցանելոյ, որոյ վիրաւքն բժըշկեցաք։

Արդ, մտցուք ի նեղութիւնս իրոյն այնորիկ, վասն զի կապանք անլուծանելիք են այսպիսի նեղութիւնք սիրո, յաջախումն ստըրջանաց և երկիւղի պատճառք։ Լուր Դաւթի զինչ ասէ. Բարի է ինձ, զի խոնարհ արարեր զիս, որով ուսայց զարդարութիւնս քո։ Եւ միւսոյ մարգարէին. Բարի է, ասէ, մարդոյ, յորժամ առնու զլուծ խոնարհութեան ի մանկութենէ։ Եւ դարձեալ՝ Երանի մարդոյ, զոր խրատես դու, Տէր։ Եւ միւսո

իմաստնո. էթէ մի ինչ հեղգար ի խրատ Տեառն։ Եւ միւսումն. Եթէ մերձենաս ծառայել Տեառն, պատրաստեայ զանձն քո ի փորձութիւնս։ Եւ Քրիստոս հրամայէ. Եթէ յաշխարհի աստ նեղութիւն ունիցիք, այլ քաջալերեցարուք; Եւ դարձեալ. Եթէ լացէք և զգացարուք դուք, և աշխարհ խնդասցէ; Եւ դարձեալ նեղ և նուրբ է ճանապարհն։

Տեսանե՞ս, զի ամենայն ուրէք նեղութիւն է գովելի, և նոյն մեզ կարևոր պիտանացու, զի թէ յարտաքին մարտսն ոչ ոք է որ պսակի, եթէ ոչ յաշխատութեան կայցէ և ի վնասակար կերակրոց հրաժարիցէ, և ըստ ուրինաց զանձնն կրթիցէ, և տքնութեամբ և այլ ինչ բազում իրաւք ամբանայցէ, որչափ ևս առաւել աստ։

461բ Արդ, զո՞վ ոք ի թագաւորաց տեսեր, զի զաստի կեանս||անհոգութեամբ անցոյց, ո՞վ ոք ի բռնաւորաց, ո՞վ ոք յիշխանաց, ո՞վ ոք ի փարթամաց զառժամանակեայ զկեանս հեշտեաւ վճարեց; եւ դո՛ւ մի՛ ընդ երևելի զարդն հայիր, այլ ի ներքո, ի միտսն յառեաց, և անդ տեսանիցես բազում խռովութիւնս, բազում ալեկոծութիւնս, բազում ձմերունս, բազում յոյղ հոգոց, բազում պատճառս տրտմութեան՝ որ յընտանեացն, որ յարտաքնոցն, որ ի պատերազմացն, որ ի դաւողացն։

Արդ, ո՞րքան խաղաղութիւն ի տունս շինականաց և անհոգութիւն, քան ի տունս թագաւորաց. ահայ յայտնի է և չէ ինչ զանխուլ։ Եւ դու մի՛ զայն ինչ ասիցես, եթէ ամենեցունց իշխէ, յամենեցունց դողա, յամենեցունց երկնչի։ Այնպիսեացն և ոչ սեղանն քաղցրագոյն է, այլ լի կասկածանաւք, և ոչ քունն հեշտալի, այլ լի խռովութեամբ, նայ և երազք այնպիսեացն անդոհականք և զարհուրեցուցիչք, և արդ այն կյանք իցէ՟, աղէ, ասայ, և ո՛չ երբեք, այլ քան զմահ ևս դառնագոյն։ Եւ արդ, եթէ այսպիսի վշտաւք լի է կենցաղս և ևս դառնագոյնիւք, քան զասացեալս, և ոչ է ումէք հանկիստ գտանել ի սմա, կամ հեշտեաւ ելանել ի սմանէ, ապայ զհարկաւորն կամաւոր արասցուք, զի փոխարէն զվարձսն ընկալցուք։ Այլ մէք տրտմեսցուք մի՛ վասն այնպիսի ինչ իրաց, որովք թագաւորք տրտմին, այլ վասն այնպիսեացն, որովք շահս մեծամեծս շահիցիմք, որ ըստ Աստուծոյ տրտմութիւնէ ասէ. Ապաշխարութիւն ի փրկութիւն առանց զղջանալոյ գործէ։ Վասն այնպիսեացն պարտ է տրտմել, զի և Պաւղոս վասն այնպիսեացն տրտմէր և արտասուէր. Ի բազում նեղութենէ, ասէ, և ի վշտաց սրտիս գրեցի առ ձեզ բազում արտասուաւք, քան զի ընդ իւր մեղս չգոյր նորա յարտասուել, այլ ընդ այլոց տրտմէր, մանաւանդ թէև զայն ևս իւր սուգ համարէր, քանզի այլք գայթակղէին և նայ ջերմանայր, այլ՝ տկարանային, և նայ հիւանդանայր։ Քան զամենայն աշխարհական ուրախութիւն՝ կարևոր համարիմ զայն սուգ։

Նայ և ինքն Տէրն զայնպիսի սգաւորսն երանէ, որ վշտակիցն գիտիցեն լինել; Եւ ես ոչ զնոսա, որ ի վիշտս ինչ-որ վասն Աստուծոյ կայցեն, աւելի ինչ գովեմք, քան զնոսայ, որ վասն այլոց մեղաց սուգ առնուցուն, զի այս զաստուածասէր և ի գթած ոգոյ լինի, զոր Քրիստոս խնդրէ, և յեղբայրական վշտակցութենէ, և ի հայրական խնամոց, մանաւանդ եթէ

462ա քան զերկուսինն իսկ մեծ իցէ, այնպէս գթալ ///* Փոխանակ ճառելոյ և

* Թերթի անկյունը պատռված է, ութ տող բաց ենք թողնում։

ի յայ[տ] բերելոյ զհրաշսն՝ լռէին, և համանգամանք միմեանց իբրև
յահեղի կացեալք, սարսեալ դողային, և Տեառնն շնորհէին գիտել զխորսն
նորայ, անցելոցն Տէր կարդային և արարիչ, և ներկայիցս՝ խնամող և
փրկիչ, և ապառնեացն կարող գոլ, զորս կամեսցի հրաշագործել և այս
նոցա։

Իսկ խուզարկուք եղեն յարտաքնոց և ի մանր և ի նուրբ քննութիւնս
աշխատեալք վերին և ստորին գոյութեանց, ի ձեռն չորիցն խառնուածոց,
գտակք ցուցին զինքեանս, և կարծեցեալք գիտել ինչ՝ գտին զոչինչ, և
փոխանակ ճանաչելոյ զարարիչն ի ձեռն արարածոցս զպաշտաւն Աստու-
ծոյ ճշմարտ[ի] յարարածս դարձուցեալ, խաւարեցան ի գիտութեանն
Աստուծոյ, վասն որոյ պատճառի ոչ կարացեալ արարչին կորուսեալս
տեսանել, և յիմաստութեամբ լցեալ ղմարդկան ազգս, այլ /// և զանի-
մաստ մարդիկ վարդապետեալ ծանոյց նոցայ զխորհուրդ խորոցն Աս-
տուծոյ, վասն զի ինքն էր արարիչ, ինքեամբ դարձեալ պարտէր ածել ի
գիտութիւն, զի հաստատուն կայցցէ ձայնն, թէ՝ Եղիցի Աստուած ճշմա-
րիտ և ամենայն մարդ՝ սուտ։ Քանզի առ գիտութիւն Աստուծոյ՝ տկարա-
ցաւ հլրեայն, յամայթ եղև հեթանոսն, Աստուծոյ միայն եղև կարողանալ,
զի ոչ տկարասցի առ նայ և ոչինչ, և զոր յառաջագոյն ի ձեռն անմար-
մին և տարրամած եղութեանց բարձանց և ստորնագունից խորհրդա-
ծեաց, և ոչ ոք գտաւ խորհրդածու և ճանաչող։

Սկսաւ դարձեալ /// ընտրեաց յառաջ խա ///՝աշխարհի; և զհրաւի-
րեաց /// զինքն զնորս եկեղեցի, յինքն /// ցանելով, իբրև զհարսն նախա-
խաւսեալ՝ յարդարելով վերստին և զեղեալն կարակերպութիւնն կրկին
շնորհելով, երկին կազմեալ և վերնաքաղաք բնակեալ հոգեղինա[ց], որ
հիմնատրեալ սկզմամբ ի ոմն կենդանի, որ եդաւ ի հիմունսս /// նի,
որ է վէմ պատուական և քար գլ[ո]ւխ անկեան, աստուածութեամբն և
462բ մարդկութեամբն, միացեալ և միացուցեալ զԱստուած /// որ առնի փըր-
կագործել, զի զոր աւրինակ ի զոյգ եղեն, պարտ էր, զի և ի զոյգ նորո-
գեսցին, այլ և ի միասին առցեն զկատարումն։ Զի որպէս մի է կենդա-
նիս, յոր հաճեցաւ Աստուած բնակիլ ի սմա, այսինքն մարդս բանական,
որ և պատկեր կոչեցաւ Աստուծոյ և երկնից համապատուաբար պայծա-
ռազարդեալ գտաւ վերըստին նորոգութեամբ; Եւ այժմ ամենայն ոք
գտեալ զկարգ իւր և կայան, ուղղեցան ի լոյս քաջ հովուապետին նորոյ
Ադամայ՝ Յիսուսի Քրիստոսի, քանզի եկեալ մարդասիրապէս և ի ձեռն
տնաւրէնութեանն ուղղեաց զամենայն և զոր ինչ ի սկզբանն ժամանա-
կէ, և այսր տպաւորեաց յառաջ քան զլինելն աշխարհի, և յետ լինելու-
թեան դրախտին և առ մարդն նախաստեղծ։

Զայս ամենայն եկեալ ի լրումն ///*

Յայս բարձրառ խրախուսեալք և արիացեալք կարող զաւրութեամբն
Աստուծոյ, այնոքիկ որք թողեալ զամենայն և առեալ զխաչ չարչարանաց
և զհետ նորայ ընթացան և սիրեցին զնա, քան զաշխարհ, որք ընկալան

* Այս սյունակի ստորին ծայրը և հաջորդի վերին անկյունը պատռված են։ Բաց ենք թող-
նում տասնյոթ տող։



40—487

ի նմանէ զիշխանութիւն յերկինս և յերկրի, և զայլս բազմապատիկ պարգևս։

Սոքայ, որ առաքեալք կոչեցան Քրիստոսի և հազարապետք խորհրդոցն Աստուծոյ, իբրև առին զշնորհս Հոգոյն Սրբո, յետ կատարելոյն Տեառն զկամս Հաւր, և մերովս մարմնով վերանալ առ Հայր, յայնժամ եկեալ բնակեցաւ ի նոսայ զաւրութիւն Տեառն իւրեանց, և բովանդակ զխորս Աստուծոյ իմացեալ ածին զամենայն [տիե]զերս ի լոյս գիտութեան, ի ձեռն սուրբ մկրտութեանն, որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ։

Ուսուցանէին զամենեսին երկրպագութիւնն Քրիստոսի և ի հաւատս
463ա ‖ճշմարիտս, վկայեալ ի Հին և Նոր կտակարանաց և յաւարտմանէ սրբոյ կենսաբեր աւետարանչաց և յամենայն հոգէհնձող նուագերգութեանց աւրհնեալ միշտ զԱստուած Հայր՝ առաքիչ և զՈրդի Աստուած՝ առաքեալ, և զՀոգին Սուրբ Աստուած՝ յարդարիչ և ուղղիչ և կարգաւորիչ ամենայնի, ի կամս Հաւր և Որդոյ համազուգեալ։

Զայս այսպէս տրամարկեալ հաստատէին, զի եկեղեցի բարձրասցի և ամրապահեստ մնասցէ ի ձեռն այսոցիկ այսպէս եղելոյ։

Այսմ համաձայն և զուգաբան հոգիունակ և շնորհառատ սուրբ վարդապետս Սարգիս, որ նախատեսչութեամբն պահեալ Աստուծոյ, և ի վերջին դարուս, ի պէտս ժամանակի յայտնեաց առ ի լցումն տարփողաց այսմ առաքելախաւս և աստուածաբան Թղթոց Եւթանեցունց գլխոց Կաթուղիկեաց յոգնաչյան վաստակաւք և բազմաքիրտ տքնութեամբ, յորդառատ արտասուաւք և անդադար աղաւթիւք առեալ ի տուչութեանցն Աստուծոյ, զմեռոյլուծութիւն այսմ աստուածատուր զանձուցս, որ ոչ ուրեք գտաւ յառաջնոցն հոգացող սմա, և ոչ ի վերջնոցս, ոչ ի մերասէր ազգէ, և ոչ յայլոց ես ուրեք։ Վասն որոյ յԱստուծոյ տուաւ այսմ հոգէշնոր՞ վարդապետի սերմանեալ յազգս մեր և յեկեղեցիս Հայաստ[անեայց] ///[թ]արգմանչացն և վարդապ[ետացն] ի սպարծանս Հայկազեան ազգիս Թորգմա, երփներանգն և յորդառատ յորդորակաւք յաւրինեալ հանգոյն տեառն Յոհաննու Ոսկէբերանի, որ զամենեսեան յապաշխարութիւն կոչէ։ Եւ Քրիստոսի մարդաս[իրի]ն փառք յաւիտեանս։

463բ ///հոգևորս ա[ս]ցեալ սուրբ և իմաստուն և առաքինի վարդապետի Սարգսի և նորին ողորմութեամբն կատարեցաք։ Յամի ՉԼԸ երրորդի երեսուներորդի ութէրրորդի (1289) թուականութեանս Հայոց գրեցաւ հոգէպատում գանձս աստուածային, Մեկնութիւն Եւթանեցունց Թղթոց Կաթուղիկեաց, զոր արարեալ է Շնորհալից վարդապետին Սարգսի: Եւ սա նորընծայ եկեալ ի մայրաքաղաքս ի Յեգընկայս, զոր ստացաւ զսա և ետ գրել հոգևոր և իմաստուն և հանճարեղ պարոն Թորոս, մականուն Հուսամատին, որդի պարոն Նիկոլին, ի հալալ արդեանց իւրոց և յիշատակ իւր, և զաւակաց իւրոց, և նախնեաց իւրոց։ [Ե]ւ գրեցաւ սայ ընդ հովա[ննեաւ] սուրբ և փ[առա]կան կաթուղիկէ եկեղ[եցւոյ, առ ոտս] սուրբ և արհիական եպի[սկոպո]սին տէր Սարգսի: Եւ գրեցաւ սայ ի կաթողիկոսութեան սրբոյն Կոստանդնայ, և ի թագաւորութեան Հեթմո, և ի եպիսկոպոսութեան մերոյ տէր Ներսիսի:

Արդ, ես՝ Թորոս մականուն կոչեցեալ Հուսամաաին, արարի զսա Հոգո իմո* յիշատակ, զի յետ ելից իմոց յաշխարհէս յիշեսցի անուն իմ ի դրան եկեղեցոյ, միայն զառաքելսն սուրբ և զկտակս նոցա տեսեալ աւժընդակ և ապաւէն և յոյս, բարեխաւս ունելով առ փրկագործաւղն բոլոր սեռիցս։ Եւ քրտնաջան աշխատութեամբ և տառապանաւք ստացայ զկտակս ղայս նորայթարգման զաւակ ի Սիոն և ընդանեակ յԵրուսաղէմ, ի յիշատակ Հոգոյ իմոյ և ծնողաց իմոց և զաւակաց. զի ողորմեսցի Քրիստոս յաներեկ աւուրն մեծի աղաւթիւք և բարեխաւսութեամբ սուրբ առաքելոցն Յակովբոսի և Պետրոսի և Յոհաննու և Յուդայի և ամենայն սրբոց։ Եւ ողորմեսցի սուրբն Թէոդորոս, որ անուանակից է սորայ և լինի...

Բ

2բ Տէր Աստուած, զգործս ձեռաց մերոց ուղղեա և զհոգիս մեր իմաստնացոյ աղաւթիւք Սուրբ Վարդան եպիսկոպոսի։

Գ

Գրիչ՝ Յովսէփ

17բ Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սուրբ առաքելոյն Յակովբա և սուրբ վարդապետիս, ողորմեայ ստացողի սորա պարոն Թորոսին, մականուն կոչեցեալ Հուսամաաին, և հաւր նորին պարոն Նիկային, և նախնեաց նոցին, և զաւակաց; Որ առատն է ի տուրս բարեաց ողորմեսցի մեզ և լսողացս առ հասարակ։

Եւ զիս բազմամեղս զգրող սորին զՅովսէփ աղաչեմ յիշման արժանի արարէք**։

Դ

63բ ...Եւ զգրող սորին զՅովսէփ սարկաւագ յիշման արժանի արարէք։

Ե

82ա Սուրբ Յովանէս՝ կարապետ և մկրտիչ Քրիստոսի
Բարէխաւս և յոյս յաւուրն մեծի,
Ընկալ զընծայս ղայս քեզ հաճելի,
Որ վասն սիրո քո ի դրան քո ընձեռեցի։
Գանձ փարթամացուցիչ, որ սովաւ վարժի
Մեզ ի լոյս յիշատակի և արձան անջնջելի;
Թորոս ծառա քո, որ մականուն Հուսամաաին յորջորջի
Չի յարաժամ որքան սա ի դրան քո ընթերցի,
Գթութեամբ զմեզ խնամարկեսցես յամենայնի,
Եւ ողորմութիւն ի Տեառնէ հայցեսցես անսպառելի։
Յառաւրեա կեանս առաջնորդել մեզ միշտ բարի.

* «Արարի զսա Հոգո իմո» բառերը գրված են այլ թանաքով, ուրիշ բառեր ջնջելուց հետո։
** Ձեռագիրը երեք գրչի գործ է. սկսել է Հովսեփը և հասցրել մինչև 305ա։

Եւ ի հանդերձեալն արժանի լինել երանեալն ձայնի։
Եւ դուք ընթերցողք այսմ աստուածային մատենի,
Եւ շնորհեա ողորմութիւն քո առատապէս նմա յամենայնի։

Գ

97ա Քրիստոս Աստուած, քո միւս անգամ գալուստ ողորմեա ստացողի այսմ լուսազարդ կտակի պարոն Հուսամատնի և հաւր նորին պարոն Նիկալին և նախնեաց նոցին, որ անուանեցին զգիրքս զայս Սրբոյ Կարապետին, ամէն։

Է

124ա Ջանպիտան և մեղուցեալ գրող սորին Յովսէփ դպիրս աղաչեմ յիշման արժանի արարէք։

Ը

Այլ գրիչ*

310ա Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սուրբ առաքելոյն Յակովբա և ամենայն սրբոց ողորմեա ստացողի և այսմ լուսազարդ կտակի պարոն Թորոսի մականուն կոչեցեալ Հուսամատին, և հաւր նորին պարոն Նիկալին, և նախնեաց նոցին, և զաւակաց նոցա։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք կարդաք և լսէք ողորմութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ մեզ և ձեզ, և յամենայն մեղաւորաց դարձ առ Քրիստոս ամենայն բարեաւք, ամէն։ ՉԼԸ (1289)։

Թ

Այլ գրիչ

380ա Արգ, աղաչեմ զամենեսեան, որք կարդաք և լսէքդ, ողորմութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ մեզ և ձեզ, և ամենայն մեղաւորաց դարձ առ Քրիստոս ամենայն բարեաւք, ամէն։ ՉԼԸ (1289)**։

Ժ

Գրիչ՝ Ոմեկ

413ա Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ առաքելացս Յոհաննու և Սարգսի վարդապետի և ամենայն սրբոց քոց, ողորմեայ ստացողի սորայ պարոն Հուսամաանի, որդի պարոն Նիկոլի, և նախնեաց սորին, և զաւակաց իւրոց, և Քրիստոսի մարդաս[եր]ին փառք յաւիտեանս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որ կարդայք կամ աւրինակէք, թողութիւն յանցանաց իմոց հայցեցէք՝ ինձ, բազմամեղ գծողիս Ոմեկ սարկաւագս, և ծնողաց իմոց փոխեցելոցն ի Քրիստոս***։

* Այս գրիչը գրել է 306բ-386բ էջերը և իր անունը ոչ մի տեղ չի հիշում։

** Այս գրչից այսպիսի հիշատակագրություններ կան 340ա, 347ա, 354ա, 366ա, 376բ էջերում, և անունը չի հիշատակում, գրել է մինչև ԼԳ պրակը (էջ 386 բ)։

*** Ոմեկի անվամբ (որը գրել է 387ա—463բ էջերը. վերջը թերի) այսպիսի հիշատակագրություններ կան նաև 398բ, 405բ, 456բ էջերում։ Ոմեկն է գրել նաև գլխավոր հիշատակարանը։

## 507

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Կյուլեսերյան, Ցուցակ Անկիւրիո, էջ 1116—1120*

Գրիչ՝ Ստեփանոս Կաղզւանցի
Վայր՝ Ցախոտան անապատ

ա

560 *Փառք համագոյն և միասնական անբաժանելի Սուրբ Երրորդութեան և միաստուածութեանն՝ Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս։*

*Ի թուականութեանս Հայոց մեծաց ՉԼԸ (1289), ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ՝ որդւոյ բարեպաշտ արքային* Լէոնի, *և ի դիտապետութեանն տեառն* Կոստանդեայ *գրեցաւ աստուածախաւս մատեանս՝ վտակս քառավտակ գետոյն Ադենայ, յերկիրս* Կիլիկիա, *ի յանապատիս* Ցախոտան *Սուրբ Աստուածածնիս, ձեռամբ* Ստեփանոսի Կաղզւանցոյ, *ի դառն և ի դժնեայ ժամանակիս, յորում ամի յարեաւ անիծեալ ազգն Իսմայելի՝ զօրքն* Եգիպ[տ]ոսի *կառաւք և հեծելօք, անաւրէն և արիւնարբու սուլտանեաւն իւրեանց* Ալֆէի, *և չոգան ի վերայ մեծի մայրաքաղաքին* Տրապօլսոյ, *և բազում անցս չարչարանաց և զամենայն հնարս որոգայթից կուտեցին ի վերայ նորա, մինչեւ առին զանառիկ ամրոցն, և ի հիմանց տապալեցին զմեծ և զհռչակավոր Կաթողիկէ եկեղեցին, և զայլ տաճարսն Աստուծոյ, և զսուրբ վանսւրեայսն, զարանց և զկանանց՝ որք էին ի մեծ քաղաքին գեղեցիկք և շքեղազարդ փառաւք պաճուճեալք, հրաձիգ արաին ե քարայատակ, և զսեղանսն սուրբ կործանեցին, և զզարդ տաճարացն կողոպտեցին, և զսուրբ քահանայսն և զսարկաւագունս և զհրեշտակատեսիլ դպիրսն և զամենայն ժառանգաւորս եկեղեցեացն ի սուր սուսերի մաշեցին, և զիշխանս և զամենայն զօրս քրիստոնէիցն սրախողխող յերկիր ընգեցին, և զնազելի տիկնայս և զազախնայս և զկրօնաւորեալ կուասնսն՝ զդստերս մեծատանց և զաղքատաց՝ հրապարակախաղ առնէին, և զանբիծ մանկունսն՝ ի գիրկս մարցն սպանանէին, և զարիւն ընդ կաթին խառնեալ՝ տային մարցն ըմպել, և ընդ սրբութիւն սրբոցն զանհնարին չարիսն գործէին, զոր անվայելուչ համարեցիք զճառելն։ Ո՞վ հրաշիցս անճառութեան, ո՞հ աստուածասէր եղբարք, ոչ կարէ բերան պատմել և ոչ լեզու ճառել զանհնարին աղէտն և զհրաբորբոք կսկիծն, զոր վասն մեղաց իմոց կրեցին անմեղ անձինք յանօրէն զաւրացն։ Մի թէ յաւարումն* Երուսաղէմի *ի ձեռն Քաղդէացոցն ի ժամանակն Երեմիայ, որք ի գնալն ի գերութիւնն զերգարանս տաճարին միշտ յուռիսն կախէին, և անդադար նստեալ լային միշտ առ գետով* Բաբելոնին, *եւ կամ թէ կրկին աւարումն* Երուսաղէմի *ի յանիծեալ զօրացն* Եգիպտոսի, *ի* Սալահատին *սուլտանս, որք ի սուր սուսերի մաշեցին զերկիրն* Պաղեստինացւոց, *և աւերեցին զսուրբ տեղիս Աստուծոյ՝ զմեծն Սիոն, և զՍուրբ մատուռն զՍուրբ Համբարձումն՝* զԲեդղէ[հ]էմ *և* զԼեռնակողմն *և զամենայն տնօրինականսն։ Կարծեմ և այլ համադէպ սորա աղետիցն զաւառումն մեծին* Ուռհայոյ, *նաեւ զմայրաքաղաքին*

Անաւոզայ, և զտապալումն երկրիս Կիլիկիա, զՍիսիա և զՄամուէստիա, զէգիա, և զԱտանա, և զՏարսոնն մեծ, և զգերափառ տաճարն Աստուծոյ զՍուրբ Սոֆի, և զայլ աստուածաբնակ յարկքն։ Բայց կարծեմ, ո՛վ եղբարք, ամենեցուն համաղէպ զկսկիծ վերջնոյս Տրապալսոյ համարել. և վա և եղուկ անձին և հոգոյ իմոյ տալ, որ վասն մեղաց իմոց այս ամենայն ներգործի ի տունս Աստուծոյ։

Այլ ես, ո՛վ լուսերամ դասք քահանայից, ի վաղուց հետէ փափագէի այսմ աստուածախաւս մատենի, և թեպէտ և անկատար էի ի գրչական արհեստիս, բայց ըստ ասիցն Պօղոսի թէ Սերն կատարեալ ի բաց մերժէ զերկեղն, աներկեղ համարձակութեամբ սկսայ և Տէրամբ Աստուծով կատարեցի ըստ կարի տկարութեանն իմոյ։ Վասն որոյ յերես անգեալ աղաչեմ զձեզ խոշորութեանս և սխալանացս անմեղադիր լինել, և զիս անարժան գրիչս Ստեփանոս ի բարին Քրիստոս յիշել, և ղծ[ն]ողսն իմ, և զեղբարսն և զհամազգիսն մեր, նա և զուսուցիչսն մեր զԹորոս գրիչ և զայլսն՝ որք բազում աշխատութեամբ երկնեցին ղիս յայսչափ գիտութիւնս։

Բ

183բ ԶՍտեփանոս անարհես գրիչ աղաչեմ յիշել ի սուրբ յաղաւթս ձեր, ո՛վ սուրբ ընթերձողք։

Գ

Քրիստոս Աստուած, քո սուրբ աւետարանչիս բարեխաւսութեամբ՝ Մատթեոսի, թող զիմ ծնաւղացն զյանցանսն՝ զկամայ և զակամայ, և զիմ ողորմելի գրողի սորին՝ Ստեփանոսի սուտանուն կրաւնաւորի, որ միայն զձեւ ունիմ և ոչ զվարս, և տուր ինձ ոգաստանալ յայս մեղասէր յաշխարհէս և քեզ միայն ցանկալ։

Դ

Գրիչ՝ Աւշին սենեկալ

56 Եւ ղամէնայմեծ սենեկալն Հայոց զպարոն Աւշին՝ որդի ամենայմեծ սպարապետին Հայոց Սմբատայ, և զմայրն իմ զԹէֆանա՝ զդուս[տ]րսն մեծ պարոնին պարոն Կոզնայ Լամբրու[ն]ին տիրէոջն յիշէ[ս]ջ[իք] ի Տեր*։

508

ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ ՄԱՍԵՐ

Վիեննա 316, Տաշյան, Ցուցակ, էջ 754

Ստացող Աւշին սէնէճշալ որդի
Սմբատ Գունդուստապլի

Ես Աւշին սէնէհշալս ամենայն Հայոց՝ որդի բարեպաշտ իշխանաց իշխանին պարոն Սմբատ Գունդուստապլին Հայոց, զոր հմտեցա գրոցս եւ

* Գրված է գլխավոր հիշատակարաններից անմիջապես հետո տարբեր գրչով. անճոռնի ու անխնամ, հավանաբար Օշին սենեկալի (1277—1307) ձեռքով։

յոյժ սիրեցի, աղաչեմ զձեզ եղբարք, որք ընթեռնոյք մեզաց թողութիւն խնդրեցէք ինձ եւ ծնողաց իմոց, եւ որք խնդրէ Աստուած, հազարապատիկ տացէ իւր եւ ծնողաց իւրոց, ամէն* ։

## 509

## ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

Գալիմքյարյան, Ցուցակ Մյխիթնեանի էջ 19—20, (1427—1432 թթ.)։

Ի ժամանակս յետին եղեալ,
Ի Լեւոնի արքայ աւծեալ,
Հայոց մեծաց զարմէն սերեալ,
Ի յՌուբինանց յառաջ եկեալ։
Ի հայրապետութիւնն լեալ,
Որ Կոստանդին Սիսցի եղեալ,
Ի թուականիս մեր շուրջ առեալ,
Հարիւր իւթանց 'ւ երեսուն այլ լեալ,
Նա եւ եւթն այլ յաւելեալ,
Միակս ի հետ կոյս կիւս եկեալ (1289),
Գրեցաւ սուրբ տառքս այս շարադրեալ
Որ պատարագք են միացեալ։
Ազգաց հնգից, որ թարգմանեալ
Ի հայ բարբառ եւ յոյժ քերեալ,
Ի սուրբ բանէն բանքս այս ստեղծեալ,
Հոգւով սրբով սա մեզ շնորհեալ,
Զիր պարգեւաց սա մեզ տուեալ,
Ի նախահարց մեր յարդարեալ,
Եւ ի յաւանդ մեզ հաստատեալ.
Աստուածախաւս տառքս այս պատուեալ։
Որով ըզլոկ հաց մեր առեալ,
Բանիւքս այսու զառն կնքեալ,
Զխորհուրդ փրկչին մեր սուրբ խնկեալ,
Եւ ի սեղան սուրբ կառուցեալ,
Ի հաշտութիւն Հաւր ընծայեալ,
Ու ի թողութիւն հոգւոց բաշխեալ;
Որով լիցին արժանացեալ,
Հաղորդակից սրբոյն եղեալ,
Եւ ընդ հոգին սուրբ միացեալ,
Հաւր և Որդւոյ կցորդակցեալ։
Ընդ որս մեծ ռաբին Վարդան կոչեալ.
Այն երջանիկն աստուածարեալ,

* Օշինը սենեչալ էր 1277—1307 թվերին. «բայց գրչությունը քիչ մ ավելի հին ըլլալու է»— գրում է Հ. Տաշյանը։

*Որ ի մարմնի հրեշտակացեալ*
*Եւ աշխարհի քարոզ եղեալ,*
*Ի թաքուն* **Սարգիս՝ Շալվէ** *ձայնեալ,*
*Զսա յիշատակ հոգւոյ ստացեալ։*
*Անկողոպուտ գանձ սուրբ կնքեալ,*
*Եւ ապաւէն աշխարհի լեալ,*
*Մաքրիչ մեղաց մարդկան եղեալ*
*Եւ քաւութիւն մեզ պարգեւեալ։*
*Որք հաւատով զլուսոյ կախեալ,*
*Կան դէմ սորին ղձեռս տարածեալ,*
*Յանմահ գառին որ ընծայեալ,*
*Թանիւքս այսու պատարագեալ,*
*Ի սրբութիւն սրբոց կնքեալ,*
*Զեռամբ սրբոց եւ միշտ բաշխեալ,*
*Ի կերակուր հոգւոց տվեալ,*
*Որք յաւազան սուրբ մըկըրտեալ,*
*Եւ զարժանիսն աստուածացեալ,*
*Առնէ անմահ յարակայեալ։*
*Եւ զոչ արժանսն ի հուր մատնեալ,*
*Հոգւոյ մարմնովն ի մահ հովուեալ,*
*Ով մեծ հրաշիցս այս սքանչացեալ,*
*Սարսափելի բանս հիացեալ,*
*Որ զհացն Աստուած առնէ ստուգեալ,*
*Հացիւն զմարդն աստուածացեալ,*
*Եւ երկնայնոցն վեհ գտեալ,*
*Սէրովբէից գերափայեալ։*
*Որպէս զՏէրս մեր գըտեալ,*
**ԶՍարգիս Շալվէ** *թաքուն եղեալ,*
*Հեղ և խոնարհ եւ երկեղեալ,*
*Եւ ի բանիցս այս դողացեալ,*
*Հայր եւ Որդին ավթագաեալ,*
*Եւ Սուրբ Հոգին անդ հանգուցեալ,*
*Եւ ընդ ծնողսն իւր ննջեցեալ*
*Զարմիւքն իւրովք առ Տէր գնացեալ,*
*Որոց հոգիք նոցա աւրհնեալ*
*Որ աստ գրով են յիշեցեալ,*
*՚Իորք ոչ անուանք աստ է դրեալ՝*
*Ի գիր կենացն է կըտակեալ։*
*Որոց և մեք արժանացեալ,*
*Լիցուք մասին ժառանգեալ,*
**ԶԹորոս** *երէց, որ զայս գծեալ*
*Զեռամբ իւրով եւ շարագրեալ,*
*Նա եւ զծնաւղսն իմ կատարեալ,*
*Յիշման ձերոց արժանացեալ,*

Հարք և եղբարք զինչ յաշխարհ լեալ,
Հաւատացեալք եւ սրբասնեալ,
Արք և կանայք մանկունք տիեալ
Ծերք եւ ամեն հասակ ստեղծեալ;
Եւ անպիտան ծառայքս եղեալ,
Որ բանիս այս ենք միշտ սպասեալ,
Աղաչեմք դձեզ որք աղաւթեալ,
Սովաւ առ Հայր ու Որդի ղենեալ
Եւ առ Հոգին Սուրբս ըզսա բաշխեալ,
Որով լիցի սա կատարեալ։
Զի մեք յաղաւթս ձեր յիշեալ
Գտից ընդ ձեզ հաղորդ եղեալ։
Նա եւ որդեակն իւր հսկող լեալ,
Գրիգորիուն ամեն օրհնեալ*։
Մարմնոյ եւ արեան արժանացեալ,
Տեառն փրկչին մեր կցորդեալ,
Աստ եւ յապայն փառազարդեալ
Եւ պարակից սրբոցն եղեալ։
Որք ժառանգէք զհետ մեր եղեալ,
Մինչ ի վախճանն հանդերձեալ,
Սուրբ պատարագին արժանացեալ,
Եւ պարգեւացն հաղորդեալ։

## 510

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1531

Գրիչ
Վայր՝ Յովհաննու վանք

ա

230բ Այս պատմութիւն իմաստասիրական** ոչ գոլով ի սուրբ մենաստանիս, ի վանս Յովհաննու, ես տէր Համազասպս բաղում փափագանաւք ի խնդիր էի, դի յետ իմ մնասցէ ինձ ընծայ ընդ մեծամեծս ի սուրբս այս Սիովն կաթողիկէի։

Արդ աղաչեմ զձեզ մանդունք սուրբ առագաստի, հայցել ի Քրիստոսէ զթողութիւն յանցանաց մերոց, եւ ինձ եղկելի գրչիս***։

---

* Գրիչը Պատարագամատոյցն ընդօրինակելիս, պահպանել է գաղափարի հիշատակարանը, փոխելով գրչի անունը։ Բայց «Զաքարիա կրաւնաւոր» բառերի դիմաց լուսանցքում դրել է նախորդ գրչի՝ Թորոս Երեցի անունը։ Մենք տեղադրեցինք գաղափար օրինակից բաց թողումը։

** Ժողովածուն պարունակում է Պատմութիւն եկեղեցւոյ Սոկրատի, Պատմութիւն վարուց Ս. Սեղբեստրոսի, և Պատմութիւն Աղուանից Մ. Կաղանկատուացւոյ գործերը, որոնք գրված են տարբեր գրիչների կողմից և տարբեր ժամանակներում։ Հիշատակարանը վերաբերում է երկրորդ նյութին, որի վերջում էլ գրված է։

*** Ձեռագրում գրված բազմաթիվ հիշատակագրություններից և ոչ մեկում գրիչը չի հիշում իր անունը։

Բ

306բ Աւաղ մեծի աղետիս և անմխիթար սգոյս, որ էհաս տանս Վրաց և քրիստոնէից, զի սպանաւ թագաւորն Դէմէտրէ յազգէն Նետողաց, ոչ ինչ մահու պարտական, ի սահմի ամսոյ, և էր թիւն ՉԼԸ (1289)։
Եւ աhայ ի մեծի վտանգի կանք, Տէր փրկեա զմեզ /// նեղութեանցս, ամէն*։

Գ

123բ Զառաջնորդ գրոցս զսրբազան էպիսկոպոսն զտէր Համազասպ յի-շեսջիք ի Քրիստոսն և զԳրիգորէս կրաւնաւոր։

Դ

149ա Աստանաւր յիշեսջիք զսրբազան էպիսկոպոսն զտէր Համազասպ, ընդ նմին եւ զԳրիգորէս կրաւնաւոր, եւ զիս զանարժան գրչողս ի Քրիս-տոս։

Ե

205բ Յիշեա Քրիստոս Աստուած զստացաւղ գրոցս և զառաջնորդ սորա, և զգրողս։

Զ

256բ Սխալեցաւ միտքս, զի նեղէին զմեզ այլակրանաւքս, թողութիւն արայ։ Աւա՜դ ի վրացեա՜ցս**։

Է

120ա Աւաղ դառն ցաւիս, որ դիպաւ, և խափանեցաւ գիրս, վասն զի ատամս ցաւեցաւ զաւուրս եւթն, նաև գլուխս, այլ Տէր կարողացոյց։

Ը

97ա Եղո՜ւկ, քունս նեղեաց և միջտս յաւելուլ կամի։

Թ

172ա Զառաջնորդ գրոց զսրբազան եպիսկոպոսն Համազասպ եւ զԳրիգո-րէս կրաւնաւոր յիշեցէք ի Քրիստոս եւ զմեղապարտ գրիչս, աղաչեմք։

Ժ

265ա Աստանաւր յիշեսջիք զսրբազան եպիսկոպոսն զտէր Համազասպ, որ եղեւ ստացող գրոցս, եւ զԳրիգորէս կրաւնաւոր։ Թէ ճար կա՝ և զմե-ղապարտ գրիչս։

ԺԱ

273ա Զստացող գրոցս զերջանիկ եպիսկոպոսն զտէր Համազասպ, եւ զեղկելի գրիչս յիշեցէք ի Քրիստոս։

* Գրված է ներքևի լուսանցքում և վերջին տողը կտրված է, երկու բառ չի կարդացվում։
** Հետագայում, մեկը նոտրգրով ավելացրել է՝ «ճշմարիտ»։

ժբ

Գրիչ՝ Գրիգոր

74բ ԶԳրիգոր աշակերտ Թոքկայ, որ զդէմս գրեցի, յաղաւթս յիշեցէք, նայ և դուք անմոռաց լիցիք առաջի Աստուծոյ*։

511

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ՂԵՒՈՆԴԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Երևան 1902

Գրիչ՝ Սարգիս

Վայր՝ Յոհաննավանք

ա

130բ Կատարեցաւ վարդապետութիւն Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ, ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ, որ և ցանկացող եղեալ սորին տէր Համազասպ ի պատուաւոր յազգէն Մամիկոնեանց, ի հալալ արդեանց եւ հրաման ծրել փցուն գրչի Սարգսի։ Աղաչեմ յիշել յողորմածն Աստուած, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

բ

217բ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնույք կամ լսէք և կամ աւրինակէք, զմեծավաստակ ճգնաւորին Եսայեայ զհոգիայշահ հրամանքս, յիշեցէք զարժանին բարի յիշատակաց և բազմաց վկայեալն ի լաւն, զտէր Համազասպ, թէ յիշէք զփցուն գրիչս զՍարգիս, որ եմ սովեալ ի հոգեւոր կերակրոց։ Ողորմածն Աստուած ամենեցուն ողորմեսցի յաւրն կարեաց, զի նմա վաել է փառք և երկրպագութիւն այժմ և միշտ և յաւիտեանս աւիտենից, ամէն։

512

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 1094

Գրիչ՝ Յոհանէս

ա

2բ Ի խնդրոյն տեառն Համազասպայ և Գրիգոր վարդապետի Հաւաքումն մեկնութեան սրբոց արանց Եղիշէի, Եփրեմի, Յոհաննու Ոսկեբերանին և զորս տեսանին ի յանցնիւրսւ

բ

327բ ...Աւրհնութիւն... Վարդան վարդապետին, և ստացողի սորա Ներսէ[ս] վարդ[ապ]ետի, և անարժան և ծոյլ գրչի Յոհանիսի ողորմութիւն ի նմա։

* Գրիգորը միայն մի էջ է գրել և նշել է իր անունը։

## 513

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 4834*

Գրիչ՝ Առաքել
Վայր՝ Ս. Թեոդորոսի վանք,
մերձ ի գեղաքաղաքս Ճմին

57բ *Ի թուականիս Հայոց ՉԼԸ (1289), ի յամեանս յուլիս ԺԸ (18) եղև*
*կատարումն գրոցս ձեռամբ* Առաքել *գրչի, արդեամբք և ծախիւք* Ահա-
րոն *վարդապետի, յիշատակ իւր և ծնողաց և եղբարց և քերց, և ամե-*
*նայն ազգատոհմից՝ կենդանե[ա]ց և հանգուցելոց, և որք մի անգամ*
*ազնական եղեն* Մելիխանին, *և* Վարդին, *և* Շահնշահ *յատրին, որ զթուխ-*
*տըն յաժան ծախեց, և* Վարդան *սարկաւագին, որ ի կոկելն աւգնեց, ընդ*
*հովանեաւ Սուրբ Թ՛եոդորոսի, մերձ ի գեղաքաղաքս* Ճմին:
*Արդ, որք ընթեռնուք զսա, կամ աւրինակէք, յիշեցէք զմեզ և մեղաց*
58ա *թողութիւն խնդրէցէք,||և Աստուած, որ առատն է ի տուրս պարգևաց,*
*մեզ և ձեզ և ամենայն հաւատացելոց առհասարակ, ողորմեսցի, և նմա*
*փառք և պատիւ յաւիտեանս յաւիտէնից:*

## 514

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 9483*

Գրիչ՝ Յովաննէս
Վայր՝ Ասայելի վանք և
Մշակավանք

ա

*Փառք համագոյ Երրորդութեանն յամենայն արարածոց, որ արժանի*
*արար հասանել յաւարտումն աստուածախաւս տառիս և հրաւիրակ հա-*
186ա *մա[գ]ոյից: ||| Գր.||| կենաց լուսաւոր սուրբ աւազանաւն [ը]նդ ամե-*
*նայն տիեզերս քարոզ կենդանի և ջուր կենդանարար, առ ի յարբումն*
*հոգւոյ և մարմնոյ, հանգիստ ննջեցելոց և բժիշկ ախացելոց, և հալածիչ*
*դիւական գնդից, գիր կ[են]դանի մինչ ի կատարած աշխարհի, խրատ*
*մեղուցելոց, և սպառնացող անդարձից, ուրախութիւն սրբասիրեաց, ուղ-*
*ղութիւն հայրապետաց սրբոց, առաջնորդ քահանաից, պսակ և պարծանք*
*թագաւորաց, իշխեցող իշխանաց և համաւրէն հաւատացելոց կեցո[ւ]-*
*ցիչ, բարձրաքարոզ ի վերին զաւ[ր]ութենէն ընթհանիւր տիեզեր[ա]ց:*
*Ջոր մեղաւոր հոգս, անարժան և անմաքուր[ս], որո մանաւանդ զանուն*
*մի[այ]ն առեալ ունիմ քահանաի բ[այց գ]ործք, որպէս հեռացեալ եր-*
*կի[նս] յերկրէ ամենայն գոյիւ արտ[աք]ո երևիմ և ոչ եմ արժանի մեր-*
*[ձ]ենալ ի սուրբ կտակս, վասնզի այս գործ մաքրագունիցն է, այլ ես*
*լրբաբար հետևեցա և գծած[գ]րեցի զփրկագործ սուրբ Աւետարանս.*
*անվարժ ուամամբ փ[ցո]ւն և ախմար արուեստիւ:*

Գրեցաւ ի ժամանա[կիս] տեղապահ և աշխարհակալ մեծազւրն Արղուն, և ու[նի ը]նդ ձեռամբ ի ծովէ ի ծով, [որու]մ և տացէ նմա Տէր Աստուած վայելել զաթոռ իւր իշխանութեանն։ Եւ է թու[ականութիւն] Հայոց ՉԼԸ (1289), եւ է հայրապետ յայս ///* Հայոց տէր Գրիգոր ///** տէր Ստեփաննոս որ[ոյ] տացէ նորա Տէր Աստուած [ա]թոռ աշտիճանի և ուղղափ[առ] հով[ույ]ել զհավտս Քրիստոսի Աստուծոյ մեր[ո], և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի խ[ո]շակաւոր և յաստուածայընակ [սուրբ] ուխտիս Ասայէլի անապ[ա]տիս, ընդ հովանեաւ Սուրբ Կա-ր[ա]պետիս և սուրբ առաքելոյս Բա[ր]դողիմե[ո]սի և Սուրբ Գրիգորի Հայոց Լու[սաւորչի], և կենսայբեր Սուրբ [Նշ]անիս և այլ սուրբ նախատակաց։ Եւ ըստ մեղաց մերոց և անհ[ն]աղանդութեան ոչ եղեալ կատա-ր[ու]մն, այլ Յոհան գլուխ մնաց, [և] վերջ եղեալ ի սուրբ ուխտիս Մշակավանէ, ընդ հովանեաւ Սուրբ Գեորգեա և Սուրբ Կարապետի՝ և Սուրբ Սա[րգսի] և Սուրբ Սիոնի, եւ Սուրբ Ստեփանոս[ի] եւ Պատե-բազ[մ]ի սուրբ Նշանիս։ ///*** Սրբասնե[ալ] /// չարազատ եղբաւր Սարգըսի [հ]աւատարիմ կ[ր]ամաւորի, և Համազասպայ աշխարհականի, և անուն գրչիս Յովաննէս կոչեցի։

Ար[դ], աղաչեմ զամենեսեան սիրովն Աստուծոյ, որք հանդիպիք տեսլեամբ սրբոյ Աւետարանիս, զխոշորութեան գրիս և զանարուեստ բանիս անմեղադիր լերուք։ Զանարժանս յիշելոյ արժ[ան]ի արարէք, ի սուրբ և ի մաքրափայլ [յա]ղաւթս ձեր, և զհոգևոր և զմարմնաւոր և զսնուցիչն իմ զհայր Յուսիկ հաւրեղբայր իմ, և զհայրն իմ զՊետրոս, և զմայրն իմ զԲարի: Յուսամք ի ձեզ լինել մեզ յիշող առաջի Քրիստոսի, զի ողորմութիւնն Աստուծոյ ի ձեռս արժանաւորաց գթասցի։

Բ

142բ Եւ զմեղսաճոցեալ Յովաննէս յիշեցէք, ո՞վ եղբայ[ր]ք, և Քրիստոս յիշողացդ և յիշելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն, ամէն։

## 515

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սրվանձտյան, Թորոս Աղբար. Բ, էջ 293

Գրիչ՝ Պետրոս
Վայր՝ Երզնկա և Սեւաստ

Եղեւ աւարտումն սուրբ Աւետարանիս ի թվականութեանս Հայկազնեան տումարիս ՉԼԸ (1289) յաստուածազարդ հայրապետութեան տեառն

* Մի բառ չի կարդացվում։

** Դրիգոր անունը ուրիշ թանաքով հետո է ավելացված։ Գրիգոր Անավարզեցին աթոռակալել է 1293—1307 թթ.։

*** Տող և կես պատռված է։

Կոստանդեայ Հայոց կաթողիկոսի և ի քրիստոսապսակ թագաւորութեանն Հեթմոյ, եւ արժանապատիւ եպիսկոպոսութեան սրբասէր աստուածամեծար արքեպիսկոպոսիս մերոյ տէր Ներսէսի:

Բայց գրեցաւ Աւետարանս ի գաւառիս Եկեղեաց, ի մայրաքաղաքին Երզնկայ, ձեռամբ... գրչի Պետրոսի... քահանայի, նաեւ տեղի հանգըստեան մերոյ՝ յորում գրեցաք, ի գուռն Սեւաստու, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի մաւր բանին Աստուծոյ։ Եւ ստացայ զսա ինձ ի մխիթարութիւն կենաց և ելիցն յաշխարհէ, յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց...։

## 516

### ԺԱՄԱԳԻՐՔ

Երուսաղեմ 2419, Պողարյան, Ցուցակ Ը, էջ 62

Գրիչ՝ Ստեփանոս

269 Փառք Սուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։ Ի թուականութեանս Հայոց ՉԼԸ (1289) գրեցաւ լուսազարդ աղաւթից մա-
270 տեանս, ի խնդրոյ ումեմն սրբասէր միայն||ակեցի Նորոգէս անուն կոչեցեալ, ձեռամբ ամենամեղ և անմար գրչի Ստեփ[անոսի]: Արդ, որք ագտիք ի սմանէ ուսմամբ կամ գաղափարաւ, յիշեսջիք ի Քրիստոս զՆորոգէս միայնակեաց և զծնողս իւր, նաև զիս՝ զՍտեփան[ոս] ի սրտէ խոցեալ և մեղաւք լցեալ հոգի, զանդարձս ի չարիս, յերեսս անկեալ աղաչեմ յիշման արժանի առնել, և Քրիստոս, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ և մեզ ողորմեսցի։

## 517

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 3290

Գրիչ՝ Գոգի

ա

589 Ի թուիս Հայոց ՉԼԸ (1289) գրեցաւ սուրբ Աւետարանս ընդ ձեռամբ մեղապարտ Գոգու և անարժան քահանայի, նաև ստացող սորայ ղսլատուական քահանայ զՄիխայլ, որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց, յիշատակ իւրոյ և ծնողաց իւրոց, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

բ

Կազմող՝ Սուքիաս

Եւ զսակաւ աշխատող սորա զՍուքիաս, որ կազմեցի զսայ, յիշելո արժան արարէք և Տէր [զձել յիշ]*։

---

* Գրված է կարմիր թանաքով։

## 518

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Ջմմառ 58, Քեչիշյան, Ցուցակ. էջ 93*

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Կլայ Հռոմեական

298բ *Գրեցաւ սա ի լաւ եւ ի ստոյգ աւրինակէ, որ կոչի Կոստընկցի՝ Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդոյ եւ Սրբոյն Հոգոյն այժմ եւ միշտ եւ յաւիտեանս, ամէն։ Ի թուականութեանն Հայոց ՋԼԸ (1289) եւ ի հայրապետութեան տեառն սուրբ եւ փառաւորեալ, երջանիկ եւ տիեզերալոյս հայրապետին մերոյ տեառն* Կոստանդեա, *եւ ի թագաւորութեան սուրբ եւ բարեպաշտ արքային* Լեւոնի, *գրեցաւ Շարականոցս այս, սատարութեամբ Աստուծոյ, ձեռամբ յոգնապարտ քանքարո եւ փանաքի գրչի* Գրիգոր *քահանայի, ի յանառիկ ամրոցն ի* Կլայս Հռոոմական, *ընդ հովանեաւ տիեզերալոյս հայրապետին Սրբոյն Գրիգորի եւ Մարիանէի եւ Սուրբ Աստուածածնի փափագ մ ///**

## 519

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԴԱՆԻԷԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՍՈՐԻՈՅ

*Ջմմառ 120, Քեչիշյան, Ցուցակ. էջ 241—243. Ալիշան, Հայապատում, Բ. էջ 488—491*

*Սրբագրող և ստացող՝* Յովաննէս Արքաեղբայր
*Վայր՝* Ռոնկա վանք

ա

*Բնաւորական իմն է բանականս սեռի՝ բարւոյն բաղձեալ եւ նմանիլ նախատպին ըստ կարի գիտողացն զնա, ի վեր՝ զաւրէն հրոյ միտել զակնն ոգւոյ ի գերն մեր գլուխ ունել. զի վեհիցն է եւ բարձրագունից՝ յովտէս տխրութեան բարձրանալ եւ զթակարդիւք սորա անդրաքայլել, ամ անդր ի վեր ելանել եւ հրազինեա լուսափայլիցն վսեմաց պարառոցիլ։ Իսկ ես* Յոհաննէս արքաեղբայր, *որ երբեմն* Պաղտայն, *որդի քրիստոսամեծար եւ ամեներջանիկ, աստուածարեալ իշխանաց իշխանին Հայոց եւ պարոնին* Կոստանդեա *մականուն* Մոզոն, *որո յիշատակն աւրհնեալ միշտ յԱստուծոյ եւ յաստուածազանիցդ եղիցի, ամէն։*

*Դատապարտս այցելու, անիմաստ հրաբուն հողս եւ նըւաստ ձեր ծառայ ծառայակիցս, ոչ ընդ սակաւ գտանիմ պարտեաւք անգեալ՝ Տեառն իմոյ արարչին եւ վասն իմ խաչեցելոյն, զի մոռացաւղ անթիւ երախտեաց եւ բաղում բարեաց նորա եղէ, ի ստորակայս եւեթ յար պշուցեալ, եւ ցանգալի տեսոյ իւրոյ վրիպեալ, կա զանկայս եւ էակ զոչէս վարկուցեալ։ Յորմէ շնորհիւ գթածի Տեառն իմոյ եւ հաստչի Յիսուսի Քրիստոսի ստեղծչի եւ նորոգողի Աստուծոյ՝ իբր ի թմբրական քունոյ ընդոստուցեալ տաղտապմամբ՝ ի սքանչելի պատուիրանս նորա ուշմտբար նայեցեալ*

* *Երկու տող եղծված է, իսկ հաջորդ թերթը՝ ընկած։*

եւ աղտափարատ* լուսովս հըրճըւեալ, յինէն անծանաւթ անոմս** կրեալ եւ լուսատու բանիւքս ոգիացեալ, ղբերան ոգւոյս բացեալ եւ զաստուածագիծ մատեանս կլեալ, որ քաղցր ի քիմս մտացս իմ գտեալ, քան թէ զխորիսխ մեղու ճաշակեալ, որով յոյժ եղէ ճոխացեալ, քան որ ոսկւով եւ ակամբք է փարթամացեալ եւ իմ յայս իսկ ջանա֊սիրեալ։ Զի զանգիտ ի գիւտ փոխարկեալ***, եւ զոր յախմար գրչաց էր այլալեալ՝ յաւրինակաց բազմաց տաժանմամբ եղեւ յարմարեալ, զաւրէն ջրոյ խողովակի ի սուրբսդ իմ անցուցեալ, եւ զգւոց ձեր պտուղ անթարշամ սովաւ արաբեալ։ Վարուք տերեւախիտ զմարմինսդ փթթեալ, եւ իմաստիւք զմիտս ոգւոց պտղեղ սովաւ կազմեցեալ****։ Երջանիկ պարուպետաց պարակցեալ, եւ աչալուրջ տեսլեամբ Արքային մեծի ղըւարճացեալ, լի լապտերաւք մտից սուրբ փեսային ժամանեալ, եւ անաղտ սիրով ի սէր նորին խառնեցեալ, այոյ, ամէն, եղիցի։

Արդ, պաղատանաւք սրտիւ եւ ջերմ արտասուաւք հայցեմ ի ձէնջ, հարք սուրբք եւ եղբարք ի Քրիստոս եւ որդեակք, ժառանգողք սորա եւ ընթերցողք եւ աւրինակողք՝ յիշել ի բարին Քրիստոս զտառապեալս Յոհաննէս եպիսկոպոս, ծնաւղաւք մեր, ընտանեաւք եւ ամենայն նոցին ծնընդաւք, եւ համայն ի Քրիստոս հաւատովք՝ քաւութիւն, թողութիւն, հանգիստ եւ ողորմութիւն գտանել ի Քրիստոսէ Աստուծոյ, այժմ եւ յապագայն, ամէն։

Պաղատիմ մերդ ասուքաց՝ մի աղաւաղել տալ զսա անմիտ մանգամբք, մի մըճոտել, մի անառիգած եւ բերանաբաց ձգել, մի զգանձս հասարակաց գողանալ, խորել եւ ծրարել իբր զժխտողն ստամբակ, մի գիտնոց խնայել, եւ մի արհեստագէտ գրչաց արգելուլ յաւրինակ տալոյ, եւ մի պարսել զայսր խահի կազմող ձեր, զյոյժ տաժանեալս յուղղոյն գիւտ. մանր է ասել գիր եւ փոքր դիրք. Գ (3) աւրինակ բերեալ զմին ուղղեցի, եւ զսա ետու գրել Սարգիս քահանայի, եւ եւս ուղղեալ յինէն կրկին եղբարբք մեր վաստակակցաւք՝ որոց Քրիստոս Աստուած ողորմեսցի նոցա եւ նոցայոցն, ամէն։

Գրեցաւ ի թվիս Հայոց ՉԼԸ (1289) յՌտնկա վանքն*****, ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեա երկրորդի՝ յայսմ ամ եղելոյ, ի թագաւորութեան Լեւոնի բարեպաշտի եւ քաջի, աստուածաշնորհ զաւակաց նորան պարոնի Հայոց Հեթում աստուածապահ երջանիկն ի կրաւնաւորս եւ անհամեմատն ի բնաւս, զոր Քրիստոս փրկեսցէ միշտ ի չարէ, ամէն, եւ պարոն Թորոս, Սմբատ, Կոստանց, Ստեփանէ, Ռուբէն, Աւշին. Աջն Աստուծոյ****** հովանասցի ի նոցին ամէն, եւ Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

---

* Բառը ջնջված է, լրացնում ենք «Հայապատումից» (էջ 488—489), ուր Ղ. Ալիշանը բերել է նույն հիշատակարանը այլ ձեռագրից, որը հավանաբար գտնվում է Վենետիկում։

** Լրացնում ենք «Հայապատումից»։

*** «Հապատումի» մեջ «ի գիւտ գրիս արկեալ»։

**** «Հայապատումի» մեջ՝ «Գրոց պարզել սովաւ կամեցեալ»։

***** Նույնն է Լիտոնկա վանքի հետ։

****** «Աստուծոյ» բառը լրացնում ենք «Հայապատումից»։

Բ

Դատապարտ այցելու եւ անիմաստ բաբուն արքայեղբայր Հայոց Յովճաննէս, որ երբեմն Պաղտայն, որդի քրիստոսարեալ եւ ամենաընտիր, երջանիկ եւ բարեպաշտ իշխանաց իշխանին եւ թագապահին՝ պարոնին ամենայն Հայոց Կոստանդեա, մականուն Մոզոն կոչեցեալ, յՌուբինեանց տոհմէ՝ որոց յիշատակն աւրհնեալ յԱստուծոյ եւ յաստուածայնոցդ լիցի, ամէն. ցաւղ կողից կենարարին յոսկերս նոցա տեղասցի, ամէն։ Ի հոգիս նոցա հոգին Աստուծոյ հանգիցէ եւ ի լոյս երեսաց իւրոց լոյս փառացն Հաւր ընդ սուրբսն դասեսցէ զնոսա։

Արդ, ի թըւականիս Հայոց ՉԼԸ (1289) գրել ետու զհռափափաք եւ իմաստատու, հոգէնիւթ եւ աստուածարեալ բանքս սրբոյն Դանիէլի մեծ վարդապետին եւ հոգէխառն իմաստնոյ Սարգսի նորակերտ գրչի վանից իրիցու՝ որոյ Տէր ողորմեսցի։ Եւ քան[զ]ի յոյժ վատթարեալ յախմար գըրչաց տեսի զաւրինակքն, յորս բնաւ իսկ ոչ եւ կամ սակաւ ինչ գտանի ճշգրտութիւն. Բ (2) աւրինակս եգի առ իրեարս, եւ յոյժ քրտնաշան եւ մեծախոնջ տաժանմամբ ուղղեցի ըստ կարի, որպէս յայտ ահա գիտնոցդ երեւի։ Յոյժ համազոյգ էին մինչ ի ԿԸ Սաղմոսն, եւ զկնի այնց կարի եւս բայից երկարութեամբ զատեալ գտանին ի միմեանց՝ թէպէտ եւ ամբողջ մտացն էութիւն գոյր ի նոսա, եւ արահետ իսկ գոյր ի միոյն բանքս դրեալ յինէն։ Վասն որոյ Տերամբ Աստուծով աղաչեմ զսուրբսդ մեր եւ զժառանգողսդ սորա եւ զաւրինակողսդ, եւ որք աշխատասիրաբար ուշմոււթեամբ ընթեռնոյք՝ ուղղածուծ զանծախս ծասկումն առնել։

Յիշեցէք սրտի մտաւք զմեզ մերայովքն ի բարի եւ անմոռաց յիշումն Քրիստոս՝ ներումն յանցմանց, քաւումն պարտեաց, գրումն ի գիրն կենաց, ազատ ի գերչաց, հաշտ ի խռովութեանց եւ հուպ ի տարաբնակաց։ Նա եւ բնաւ իսկ ի գերն մեր գլուխ Քրիստոս միանալ՝ համայն ի նա մկրտելոց, եւս եւ զմեզ յիշողսդ եւ զ՛ ի սա աշխատողքս, ամէն։

Աղաչեմ սուրբ եւ մաքուր զսա պահել, գրել իսկ, եւ մի գողանալ եւ խորել։ Աւրհնեալ են յԱստուծոյ լսող եւ յիշողք մեր, ամէն։

Գ

52ա Ուղղողիս մեծախոնջ տաժանմամբ եւ ստացող հողոյս Յոհանէս եպիսկոպոս, եւ կրկին ծնողաց իմոց եւ զարմից, եւ զմեզ ի բարի յիշողացդ՝ ողորմեսցի Քրիստոս Աստուած իմ։

Դ

Գրիչ՝ Սարգիս

149բ Արդ, որք վայելէք ի լրոյ հոգիատար Մեկնութեանս եւ կամ գաղափարէք՝ յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս զթարգմանող սորա զտէր Գրիգորիս Վկայասէր, եւ զնորին հարազատ հեղինակ զտէր Բարսեղ: Նա եւ զիս զտէր Յոհանէս արքաեղբայր ուղղող սորա յիշէ Քրիստոս ի բարի եւ զյիշողսդ մեր։ Եւ այժմ զնուաստ զՍարգիս գրողս աղաչեմ յիշել ի Տէր։



41—487

Ե

6բ Զստացող սորա զտէր Յոհաննէս արհիեպիսկոպոս, արքաեղբայր Հայոց յիշեսջիք ի Տէր, հանդերձ ամենայն զարմիւք։

Զ

29ա Զնուաստս զՍարգիս գրիչ աղաչեմ յիշել ի Տէր, եւ զքեռին իմ զՅոհաննէս վարդապետն։

Է

52ա Զստացող սորա զարհիեպիսկոպոս զտէր Յոհաննէս արքաեղբայրը յիշեսջիք ի Տէր, հանդերձ ամենայն ազգաւ, եւ Աստուած զձեզ յիշէ յիւր ողորմութիւն։ Ընդ նմին եւ զնուաստ Սարգիս գրիչ աղաչեմ յիշել ի Տէր։

Ը

84բ Զնուաստս Սարգիս գրիչ աղաչեմ յիշել ի Տէր, եւ Աստուած զձեզ յիշէ։

520

ԱԻԵՏԱՐԱՆ

Հովակիմյան, Ցուցակ Նիկոմեդիոյ, էջ 15

Գրիչ

Կատարեցաւ սուրբ Աւետարանս ի մարտ ամսուն ԺԸ (18), թագաւորութեանն Հայոց Լեւոնին՝ որդին Հեթում թագաւորի, որ եւ Աստուած զաւրացուցանէ թագաւորին մեր Լեւոն եւ զաստուածատուր որդին իւր Հեթում:

521

ՃԱՇՈՑ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՐՔԱՅԵՂԲՕՐ

Վիեննա, 245, Տաշյան, Ցուցակ, էջ 634

Գրիչ

Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ մաւր քո եւ կուսի եւ սրբոց առաքելոցն եւ ամենայն սրբոց քոց, ողորմեա ծառային քո տէառն Յովհաննիսի արհէպիսկոպոսի եւ տիեզերալոյս վարդապետի արքաեղբաւր՝ մեծ արքային Հեթմոյ գնացելոյն առ Քրիստոս, եւ ծնողաց իւրոց եւ ամենայն զարմից, եւ թողութիւն շնորհեա յանցանաց նոցա, եւ քո սուրբ արքաութեանդ արժանի արա ընդ սուրբս քո։ Եւ որք յիշեն զսոսա սրտի մտաւք ի բարի եւ թողութիւն մեղաց խնդրեն ի քէն, եւ նոցա թողութիւն շնորհեսցես աստ եւ ի հանդերձեալն, եւ քեզ փառ յաւիտեանս, ամէն։

---

* Հեթում Ա-ն մահացել է 1270 թվականին, իսկ Հովհաննես արքայեղբայրը՝ 1289 թվականին։ Ձեռագիրը գրված է այդ թվականների միջև ընկած տարիներին։ Դնում ենք վերջին հնարավոր թվականի տակ։

## 522

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1315*

Գրիչ և ստացող՝ Յոհաննէս
Արքաեղբայր

ա

1բ *Զսակաւս գրող և զաղքատ ստացող զՅոհաննէս եպիսկոպոս և ծնաւղսն իմ՝ ծնընդաւք նոցին, յիշեսջիք ի Քրիստոս, ո՜վ սուրբք Աստուծոյ։*

բ

5բ *Ընդ նմին և զյետին գծողս տէր Յոհաննէս արհիեպիսկոպոս Արքաեղբայր յիշեսջիք ի Քրիստոս, և զնաւղսն իմ, և ամենայն հաւատացելոց և ընթերցողացդ, և լսողացդ ողորմեսցի Քրիստոս, որ է աւրհնեալ յաւիտեանս։*

գ

9ա *Զաստուածասեր և քրիստոսազգեաց հարսդ և զեղբարսդ իմ ի Քրիստոս, աղաչեմ յոքնամեղ դատապարտեալս ոգի Յոհաննէս եպիսկոպոս Արքաեղբայր Հայոց, որ և բաբում, յիշել հանապազ զծնաւղսն իմ, և զեղբարսն, և զքերսն, ամենայն թագաւորս տոհմայնաւքն մեր թողութիւն և փրկութիւն ե հանգիստ և ողորմութիւն գտանել մեզ ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։ Մանաւանդ զիմս անարժանութիւն չերմ գթով և աղէկէզ սրտիւ յիշել հայցեմ յաւուր տաւնի երևման սուրբ խաչին, որք լուսաւորիք սովաւ, զի յոյժ փափագմամբ գրեցի ինչ-ինչ մեղսակարկամ ձեռամբ իմով, և է զոր այլոց ետու գրել տաժանելի կրիւք, յիշատակ ինձ ե իմոցն, և ի վախճանումն աւուր ապագայիցդ, ի դառն և վշտալի տըխրալլուկ [աւ]ուրս, յուրում նեղիմ յընգանեաց՝ իբր ի թշնամեաց, և վըշտագնիմ ի սիրելեաց, իբր յատելեաց, որոց և յիշողացդ զմեզ ի բարի Քրիստոս Աստուած ողորմեսցի միշտ, ամէն։*

դ

20ա *Երջանկացդ պարուց երկիր անգեալ եղկելի ոգիս Յոհաննէս եպիսկոպոս Արքաեղբայր Հայոց, հայցեմ յիշել զիս և զիմսն ի Քրիստոս, զի յոյժ փափագմամբ ետու բերել զսա ի Հռոմկլայէն, զի չկայր յերկիրս, և ես ձեռամբ իմով գրեցի ի յոյժ վշտաբեր աւուրսս, և որք յիշէք զմեզ ի բարի, և զձեզ յիշեսցէ անմոռացն Աստուած ի բարի։*

*Երախտաւորքն մեր՝ մասն բարի գտցեն ի Քրիստոսէ Աստուծոյ, և մեղուցելոցն մեր, եթէ բանիւ և եթէ գործով, թողութիւն համայնիցն շնորհեսցէ Քրիստոս, և նմա փառք յաւիտեան, ամէն։*

---

* *Արքաեղբայրը գրել է առաջին 20 թերթերը...*

Ե

Գրիչ՝ Յակոբ

75բ *Զաստուածապատուեալ սուրբ եպիսկոպոսն տէր* Յոհաննէս *զեղբայր թագաւորի աղաչեմ յիշել ի Տէր, ո՛վ աստուածասէր անձինք։ Ընդ նմին և զեղկելիս* Յակոբ *սուտանուն գրիչ, և Աստուած զձեզ յիշէ յիւր ողորմութիւն։*

Զ

120ա *Զտէր* Յոհաննէս *արքեպիսկոպոս և րաբուն, զեղբայր բարեպաշտին Հայոց* Հեթմոյ *և զորդի քրիստոսասէր իշխանաց իշխողին մեծին* Կոստանդեա՝ *Արքայահաւր Հայոց, ծնաւղաւք նոցին և ծննդաւք և ամենայն թագազնեա ընդանեաւք յիշել աղաչեմ ի Քրիստոս, թողութիւն և ողորմութիւն գտանել ի Քրիստոսէ Աստուծոյ այժմ և յապագայն, զի յոյժ փափագանաւք եւ դրել զաստուածային մատեանս ի հիշատակ ինքեանց, և Աստուած յիշողացդ և յիշելոցն ողորմեսցի, ամէն։*

*Այլ և զեղկելի գրիչս* Յակոբ, *և զիմսն չմոռանալ աղաչեմ։*

Է

352ա *Զսրբանեալ արհի սուրբ եպիսկոպոսի տէր* Յոհաննէսի, *եղբայր արքային* Հեթմոյ, *աղաչեմ յիշել ի Տէր, ո՛վ սուրբ եղբայրք, և զլցեալս մեղաւք* Յակոբ *գրիչս, և զեղբայրն իմ* Կոստանդ, *որ յայսմ ամի սպանաւ յանաւրինաց, աղաչեմ սրտի մտաւք յիշել ի սուրբ յաղաւթքդ ձեր, և Աստուած զձեզ յիշեսցէ։*

Ը

360բ *Զարքաեղբարն Հայոց զտէր* Յոհաննէս *ստացող սորա և զիւրսն յիշեցէք առաջի Քրիստոսի, ո՛վ տեարք։*

Թ

378բ *Սիրելիք Աստուծոյ և ծառայակիցք մեր ի Քրիստոս, զարհիեպիսկոպոս զտէր* Յոհաննէս՝ *ստացող սորա, և ծնողսն իւր, և զհամայն թագազնեա ընտանիսն իւր յիշեցէք առաջի Քրիստոսի ի բարի, և Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։*

Ժ

454բ *Զյետին գրող սորա* զՅակոբ, *և ծնաղսն իմ, և զեղբայրն իմ* Կոստանդ *որ յայսմ ամի սպանաւ յանաւրէնաց, յիշել աղաչեմ ի Տէր, ո՛վ աստուածասէր սուրբ հարք և եղբարք։*

# 523

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 3710*

*Գրիչ՝* Յոհաննէս Արքաեղբայր

ա

7ա *Զունայնս ի համայն մասանց բարեաց և փարթամն եպերելեաց, զդատապարտս ոգի զ*Յոհաննէս *եպիսկոպոս արքաեղբայր Հայոց, ծնողաւք մեր և ընտանեաւք յիշեցէք ի բարին Քրիստոս աղաչեմ զսուրբսդ Աստուծոյ, և զձեզ Տէր յիշեսցէ, ամէն։*

բ

28բ *Զգրող սորա* Յոհաննէս *արքեպիսկոպոս և բարոն, զորդի քրիստոսասէր և ամենընտիր իշխանաց իշխանին* Կոստանդեայ *Թագապահի, և եղբայր բարեպաշտի և քաջի Հայոց մեծաց արքայի* Հեթմոյ, *որոց յիշատակն աւրհնութեամբ լիցի առաջի Աստուծոյ, համայն ծնընգաւք սոցա և բնաւին զարմիւք, յիշել ի բարին Քրիստոս աղաչեմ զսուրբսդ, և յիշեալն ամենից՝ զյիշողսդ յիշեսցէ, ամէն։*

գ

Այլ գրիչ

262բ *Զաստուածարեալ և զերից երանեալ արքեպիսկոպոսն զըտէր* Յովաննէս *զստացող գրոցս, զեղբայրն սուրբ արքային յիշեսջիք ի Տէր և զտառապեալ գրողս։*

դ

*Գրիչ՝* Թորոս

294ա *Ա՛յ եղբայր, յիշեա՛ զիս զ*Թորոս *ի Տէր Քրիստոս։*

ե

314ա *Զծառայեալս գրոյն և ոչ բանին,*
*Ծառայք հոգւոյն և ոչ բային,*
*Յիշողք լիջիք ինձ առ հոգին,*
*Զի ուր իցեմ, հոգւոյն լիցիմ։*

զ

*Գրիչ՝* Ստեփանոս Վանկայցի

347ա *Պակաս է ի բան առ բան Հարցմանցդ, Թերոյն Թողջիք մեզ, զի զայս գտաք յաւրինակին, եւ զ*Յոհաննէս *արքեպիսկոպոս՝ արքաեղբայր* Կիլիկոյ, *ծնողաւք և զարմիւք յիշեցէք ի Քրիստոս։ Նա և զստրուկ ծառայս նորա* Ստեփանոս գրիչ, Վանկայցի։

### է

378բ Աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զսա, զերկրպագողս սուրբ խաչին Քրիստոսի Աստուծոյ զՍտեփաննոս յիշեցէք ի մեղաց թողութիւն*։

## 524

## ՏՐԱՄԱԽԱԻՍՈՒԹԻՒՆ

*Երևան 4947*

Գրիչ՝ Ներսիսուկ

### ա

25բ ԶՅոհաննէս եպիսկոպոս եղբայր թագաւորին Հեթմո:
Ներսէս տրուպ և անարժան**
Սուրբ պատմութեանս սիրով թարգման,
Յորոց սովաւ հոգւով ցնծան,
Հայցեմ ներումն թողութեան։
Զգրիչ սորին խիստ անարժան,
ԶՆերսիսուկս մեղաց պարտական,
Ի ժամ սորին ընթերցման
Մասնիկ միո ողորմութեան։

### բ

47բ Զգրող սորա զՆերսիոուկ յիշեսջիք ի Տէր։

### գ

89ա Արդ, աղաչեմ զընթերցողսդ և զիմաստութեան սիրողսդ իմանալ զխորս իմաստիցն Աստուծոյ քննութեամբս զսուրբ եպիսկոպոսն և զեղբայր թագաւորին Հայոց զՅոհաննէս՝ զբարեմիտն և զբարեսէրն և զաւրհին թարգմանութեան ըզստացող սորին, մաղթեցէք Քրիստոսի յաստիս խաղաղութեամբ պահել, և ի հանդերձեալն ընդ սրբոց իւրոց երկնից արքայութեանն ընդունել։

Այլ և զփցուն գրիչս աղաչեմ յիշել ի Տէր և զծնաւղսն իմ, և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ։ Եւ խոշորութեան գրիս մի մեղադրէք, զի առաջին է գիրս և չէի հմուտ։

### դ

132ա Զայս ոչ գտի ըստ կարգի սուրբ աւրէնսդ, այլ ես՝ Ներսէս եդի, զի յայտ լիցի, թէ այլ է քաղաքաց եկեղեցւոյ և այլ՝ վանից կարգ Սաղմոսաց, զի այս Սուրբ Պետրոսի կարգն է, որ ի մեծն Հռոմ:

* Ձեռագիրն սկսել է Հովհաննէս Արքաեղբայրը և գրել 28 թերթ։ 29—270 էջերը շարունակել է մի այլ գրիչ։ Ստեփանոս Վահկացին 317—383 թերթերն է գրել, միջին մասը՝ 271—316 էջերը գրել է Թորոս գրիչը։

** Առաջին քառատողը՝ «Ներսէս տրուպ...» գաղափար օրինակից է և պատկանում է Ներսէս Լամբրոնացուն։

ե

Գրիչ՝ Առաքել

114ա Զստացող գրոցս զտէր Յոհաննէս և զծնողսն իւր յիշեցէք ի Քրիստոս, և Առաքելի գրչի մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

զ

153բ Այս թուղթս բնաւ ոչ է տեսել զկոկիշն։

է

163 Զստացւող սուրբ աւրինացս՝ զտէր Յոհաննէս յիշեցէք ի Քրիստոս, ընդ նմին և զմեղուցեալ գրիչ Առաքել։

525

ՃԱՇՈՑ

ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

Քյուրտյան, Ցուցակ, էջ 416

Գրիչ

ա

746բ Զաստուածային շնորհաւքն լի՝
Զստացողն այամ մատենի,
Զորդին վեհին Կոստանդէի,
Զեղբայր Հեթմոյ քաջ արքայի,
Զտէր Յոհաննէս անուն բարի,
Նաև զրաբունըն պանծալի,
Աստուածայնոց հետևողի,
Փրկչին մերոյ սուրբ և բարի։
Արդ, աղաչեմ զեղբարսդ յոգի,
Եւ պաղատիմ աղերսալի,
Երկրպագեմ սրբոցդ գնդի՝
Որք հանդիպիք այամ տառի...

275բ Զստացող սուրբ տառիս՝ զարթուն այցելուն զՅոհաննէս եպիսկոպոս Արքայեղբայր, հանդերձ ծնողիւք իւր, յիշեցէք ի Տէր, վայելող[ք]*։

* Ձեռագրի 157 էջում Հովհաննես Արքաեղբոր լափածո հիշատակարանն է։

## 526

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 2568*

*Ծաղկող՝* Յոհաննէս Արքաեղբայր

320ա *Պարոն Վասակ է, արքաեղբայրն Հայոց, ստացող սուրբ Աւետարանիս այս, և աստուածապարգև զաւակք նորա* Կոստանդին և Հեթում, *զորս ի պարս սիրելեացն իւր ընկալցի Քրիստոս Աստուած հայցմամբ սուրբ ծնողին իւրոյ։*

*Նաև զուղղող սորա* զՅոհաննէս *եպիսկոպոս եղբայր սորա և զմերսն յիշեցէք ի Քրիստոս**։

## 527

## ՀԱՄԱՌԱՒՏ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑ ԳԷՈՐԳԵԱՅ ՍԿԵՒՌԱՑԻՈՅ

*Երևան 4119 (ԺԳ դ.)*

*Հեղինակ՝* Գէորգ Սկեռացի

ա

2ա Առ խնդրողն ճառագրիս տէր Յոհաննես Արքաեղբայր, եպիսկոպոս նահանգաց աստուածապահ ղըղեկին Մոլևոնի և մասին ինչ Բարձրբերդոյ, եւ նոյն տեսուչ նոշակելի սուրբ ոխաին Գռներոյ և առ ճանդիպեալսն մատենիս:

*Ահա, ո՛վ աստուածասէր հայր իմ և տէր հարկեցուցիչ, խնդիրս քո, և պատկառելի շուք երեսացդ դարձեալ գրաւեաց զիս ահիւ, մինչ զի մոռանալ զիմ խամութիւն տխմարութեանս և ընկենուլ զիս ի գործս, որ առաւել ծանր է քան զիս, քան զի հրամայեցէր ինձ դէմ յանդիման, տալով հանգամանս օրինակի՝ ի լայն և ի հարուստ Մեկնութենէ Գործոց առաքելոցն, հաւասար իմացուածով՝ զսպել զերկարութիւն բանիցն համառօտ կարգաւ։ Զոր ի ձեռն այլոց զօրեղի կամ յոյժ մանաւանդ քոյին իսկ հանճարայեղձ և շտեմարան անձամբ, գեղեցկադիր բանիւ բաւական էիր, լնուլ քեզէն զիմաստասէր փափաքդ քո ի նպաստ գիտնոց վարժողաց, ի կարճել ժամանակիս զկարճն ախորժողաց՝ ըստ ասելոյ ումեմն։ Բայց, արդ, ոչ անգիտանամ զզիջանելդ քո ներգործութիւն սիրոյ գոլ առ իս և յայսմ մասին, որում, թէպէտ հպատակել բռնադատեցայ, սակայն ի թերութիւնս իմ հայելով, զամօթի հարեալ կամ յանդգնելովս իմ առ այս։*

*Եւ արդ, քանզի, թէպէտ և բազմամանուած, սակայն հարթ և հորդ և միանգամայն կուռ և կոկ էր ճանապարհս, ընդ որ ի քէն ընթանալ հրամայեցայ, մանաւանդ զի պայծառ ջահսն և զանմուտ արեգակունսն առաջնորդ ինձ ունելով՝ զաստուածունայց հանճարեղն զտէր* Եփրեմ *և*

---

* *Գրված է Վասակի նկարի տակ։*

զքրիստոսածաւալ աղբիւրն իմաստից զամենահռչակն զՈսկեբերանն, զորոց սրբոց երկընթաց ոտիցն բուռն հարեալ ահիւ, նախ՝ անտեսութիւն յանդգնութեանս իմոյ աղերսիւ հայցեմ, և ապա օգնականութիւն տկար զօրութեանս առ ի բաւական լինել ինձ զխորհիմաց և զպայծառափայլ նոցին բանս մեկնութեան Գործոց սուրբ առաքելոցն, ղառանձնացեալսն երբեք և ղհամաձայնեալսն ուրեք՝ ընդելուզել հիւսամբ իբրև զականս պատուականս, կամ իբրև զանթառամելի զանուշահոտ ծաղիկս բոլորելով կազմել պսակ յուսոյ աստուածասէր գլխոյ խնդրողիդ, ի փառս Աստուծոյ և ի պատիւ սրբոց նորին, և ի հրճուանս աստուածասէր ընթերցողաց, յորոց աննախանձ սիրով հայցեմ աղերսիւ զոչ ինքնայորդոր համարձակիլս իմ յայս չափ անձին[ս] մեղադրութեամբ զսխալանս իմ եղբայրաբարս‖ղիջողացն ըստ իս։ Իսկ զառաւել պասուք ծարաւոյ տարողութեան ընդարձակ մտաց՝ հզօրքն ի ծովածաւալ աղբիւրսն իմաստից դիմեսցեն լնուլ ի բուն[ս]ն ի լայնսն ասեմ Մեկնութիւնս, յորոց և այս՝ այսչափ ծայրաքաղ համառօտեցաւ։ Եւ զդոյզն իմ զաշխատութիւնս թողութիւն մեղաց յԱստծոյ հայցմամբ վարձատրել, և զփոխարէնն կըրկնապատիկ յառատապարգև Տեառնէն ընդունել ամէն։

Բ

3ա Ի Գործոց առաքելոց բուն և ընդարձակ մեկնութեանց սրբոցն տեառն Եփրեմի և երանելոցն Յոհաննու Ոսկեբերանի, այս համառօտ շարահիւսեցաւ, որպէս և տեսցես առընթեր բանիցն յանցն իւր տեղւոջ դրոշմեալ զանուանս սրբոցն, հրամանաւ տեառն Յոհաննէսի աստուածապահ ուխտին Գոներոյ առաջնորդի։

528

МԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈՀԱՆՆՈՒ ԱԻԵՏԱՐԱՆԻՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երևան 3816

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Սկևռա

ա

40ա Զ:արսեղ քահանայ ստացւող տառիս, որ և հանգուցեալն է ի Քրիստոս, աղաչեմ յիշատակել ի սուրբ և ի մաքուր աղաւթս ձեր, ընդ նմին և զամենամեղ գրիչս, և որք յիշէք և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։

Բ

72ա Լիալապտեր ջահիցդ շիջեալ հողս և ունայնս Բարսեղ և ապէկար գծաւղս Ստեփանոս պաղատիմք յիշման արժանի առնել սիրովն Աստուծոյ, որով և դուք յաւիտեան յիշեսջիք յառատ բարերարութենէն Տեառն։

Գ

85ա Սպանաւղք չարին մեծ գազանի
Եկեալքդ ըզկնի մեր յաշխարհի,

*Նետիւ սպասէք յորմէ խոցի,*
*Նեղեալ գերիս մարմնով յոգի։*
*Աղաւթիւք ձեր մասն տացի,*
*Համայնց հոգւոց ու որք զկնի,*
*Որովք և ձեզ պարգևեսցի*
*Յարդիս ե յաւրն աներեկի, ամէն։*

Դ

91բ *Ողորմեսցի, Տէր Աստուած ստացողի տառիս* Բարսեղ *քահանայի, և ծնողաց իւրոց, և ամենայն եղբարց սուրբ ուխտիս* Սկևռայի, *և ամենամեղ գրչիս, և որոց զամէն ասեն։*

Ե

95բ *Մնոտի փառացս արհամարհաւղք,*
*Երկնից բարեացն ժառանգաւղք,*
*Նոր սուրբ խահից այս ճաշակաւղք,*
*Նորոգ գինեաւս այս զզմայլաւզք,*
*Արտասուաւք մեզ աւժանդակաւղք,*
*Մոխրոցս լիք և վերբերաւղք։*
*Որով և դուք մեր հետևաւղք,*
*Գրեսջիք յերկինս պսակաւք, ամէն։*

Զ

109ա *Սրատեսիցդ և կորովաբացդ զաչացս կոյրքս ոգւով* Բարսեղ *և* Ստեփանոս *պաղատիմք յիշել զմեզ ի բարին Քրիստոս։*

Է

128ա *Զ*Բարսեղ *քահանա, որ և հանգուցեալ է, յիշեսջիք սիրով ի բարին Քրիստոս, ընդ նմին և զհողս* Ստեփանոս, *և Աստուած միշտ ի բարին զյիշաւղս մեր յիշեսցէ, ամէն։*

Ը

169ա *Կատարեցաւ առաջին գիրք* Յովնաննու *սրբոյ* Կոստանդինուպաւսի *հայրապետի։*

Թ

*Արդ, որք ընթեռնոյք կամ գաղափար դնելով փարթամանայք ի ճոխ և յանկապուտ մեծութեանցս յաստուածային գերունակ իմաստիցս, յիշեսջիք ի Քրիստոս զաշխատաւղք սուրբ կտակիս, նախ՝ զսրբազանն* Կիւրակոս *վարդապետն, որ բազում աշխատութեամբ և ըղձափափագ տենչմամբ յատորոց գրոյ և ի լեզուէ, և ի յունականէն քերթողական արհեստիւ թարգմանեալ ի հայ բարբառ և ի գիր։ Ընդ նմին և զ*Բարսեղ *ստացաւղ տառիս՝ զհանգուցեալն ի Քրիստոս։ Նա և զմեղուցեալ գրո-*

*զիկս Ստեփանոս և համայրէն եղբարք սուրբ ուխտիս, և Տէր զձեզ յիշէ, ամէն։*

ժ

183ա *Աղաւթից ձեր սուրբ արտասուաց*
*Հանել զգերիս յայս կապանաց,*
*Ներումն հայցեմ ի բժշկացդ,*
*Նեխեալ հոգւոյս ի չար վէրաց.*
*Որով և ձեզ պարգև բարեաց,*
*Յառատագիրն տացի շնորհաց, ամէն։*

ժա

195ա *Մաքուր և կարծրապինդ քաջացեալ հոգևոր եղբարք, զսալասիրտ և զապառումքս՝ զԲարսեղ և զՍտեփանոս յիշեսջիք աղաւթիւք ի բարին Քրիստոս, որով և դուք յիշեալ լիջիք յառատ բարերարութենէն նորա։*
258բ *Ջաստուածարելոցդ հոյսդ աղաչեմ յիշել ի բարին Քրիստոս ըստացող տառիս և զգծաւղ հանդերձ ծնաղաւք մերովք, և նոյն ինքն Տէրն մեր զձեզ յիշէ, ամէն։*

ժբ

250ա *Սովալլուկ և ախտալի ձեր ծառայակիցքս Բարսեղ և Ստեփաննոս պաղատիմք հառաչմամբ յիշել զմեզ ի բարին Քրիստոս...*

ժգ

257բ *Հայցեմք ի ձէնջ տեարք իմ բարի,*
*Արտասուեցէք վասն իմ գիտի,*
*Նետիւք խոցեալ կամք ի տղմի,*
*Նպաստ լերուք հանել անտի,*
*Յորմէ և դուք բուժումն ախտի,*
*Քաւիչն և ձեզ տացէ ձրի,*
*Երրորդութեանն անճառելի,*
*Ջփառս երգեսցուք անլռելի*։*

---

* *Այս կարգի մեծ և փոքր հիշատակագրություններ կան բոլոր գլուխների վերջում։ Ձեռագիրը խիստ քայքայված է, սկզբից, միջից և վերջից թերի։ Սկևռայի հիշատակագրությունը և դրչության նմանությունը թույլ է տալիս Ստեփանոսին նույնացնելու Ստեփանոս Սկևռացու հետ։*

## 529

### *ԱԻԵՏԱՐԱՆ*

*Երևան 2816*

*Գրիչ՝* Յոհանէս
*Վայր՝* Կարս

ա

*Փառք երից անբաւից, անհասից և անկարից կարելեաց, անբաժանելի միաս[ն]ական Սուրբ Երրորդութեանն;*

*Փառք Փրկչին և յիշատակ գրչին, աւրհնութիւն Հաւր, աւրհնութիւն Որդ[ոյ], աւրհնու[թիւն] Սուրբ Հոգոյն, յամենայն արարածոց և յանարժան բերանոյս, որ հասոյց զիս յաւարտումն աստուածախաւս մատենիս,*
288բ *զի որպ[էս] ուրախութիւն է‖նաւավարի հասանել ի նաւահանգիստ,*
*նոյնպէս եւ գրչին՝ վերջին գծին։ Շնորհիւ և ողորմութեամբ Հաւր, և ներողութեամբ Որդոյ եւ աւգնականութեամբ Սուրբ Հոգոյն սկսայ եւ կատարեցի զսուրբ Աւետարանս ի թուաբերութեանս Հայոց ի ՉԼԹ (1290), ի մայրաքաղաքս* Կարս, *ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնին, ձեռամբ ամենայմեղ և եղկելի գրչի* Յոհանէս *իրիցոյ, ի փառս Քրիստոսի։*

*Արդ, յոյժ փափագանաւք եւ գրել զսուրբ Աւետարանս* Յակոբ *քահանա ի զարդ կաթողիկէ էկեղեցոյ, և ի վայելումն մանկանց առագաստի, եւ յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝* Թամարին *եւ* Պապուկին՝ *փոխեցելոյն առ Քրիստոս, եւ հաւր իւրոյ* Մխիթարա *սրբասէր քահանայի, եւ*
288ա *եղբաւր նորին* Տանկանն, *եւ մաւր իւրոյ* Մամախաթ‖ունին՝ *փոխեցե-*
*լոյն առ Քրիստոս, եւ եղբարց իւրոց՝* Կիրակոս *քահանայի եւ* Նիկողայոսի, *որ երկոտասան ամեայ ի Քրիստոս փոխեցաւ, եւ քերց իւրոց* Խաթերուն, *եւ փոխեցելոցն առ Քրիստոս* Ազզին *և* Թագոհէ: *Արդ, աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք ի սմանէ եւ կամ աւրինակէք, յիշեսջիք առաջի զենլոյն Քրիստոսի* զՅակոբ *երէց, ընդ նմին եւ զկենակից իւր* զՄամխանն, *ընդ նոսին և ծնողսն իւրեանց եւ զեղբարսն, եւ զքուրսն։*

*Ընդ նոսին եւ զիս՝ զամենամեղ եւ զսուտ գրիչ* Յոհանէս *երէց, եւ զծնողսն իմ, եւ զեղբայրն, եւ զքուրսն յիշելոյ արժանի արարէք, եւ Քրիստոս Աստուած, որ առատն է ի տուրս՝ յիշողացդ և յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի ի գալստեանն իւրում, և նմա փառք յաւիտեանց։*

*Յիշեսջիք և* զՍամուխ *հոգեւոր եղբայր մեր, եւ զկենակից իւր* զՍեդէթ, *եւ զծնողսն նոցայ, որ գնշաշտակս եւուն Աւետարանիս։*

Բ

288ա Մ՜վ աստուածասէր եղբարք, անմեղադիր լերուք խոշորու[թ]եան
գրիս, զի յոյժ շտապով գրեցաւ ի քսան աւր։

## 530

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7378

Գրիչ՝ Յովհաննէս

ա

Փառք անեղի, անմահի, անհասի, անբաւի, անքննելի, անբաժանելի
միասնական Սուրբ Երրորդութեանն, յաւիտեանս յաւիտենից, ամէն։
276բ Ի [լու]սոյ Հաւրէ լուսածին ծնունդ, ի երկուցն էից աղբիւրաբար
բղխելումն եռակի անձամբ միացեալ բնութեամբ, ի յերից անդի խոնար-
հեալ առ մեզ կուսածին մարմնով երևեալ մարդկան, որ յաւիտեանցն աղ-
գաց ծածկապէս առ Հաւր, այլ յադին դրախտին խորհրդով յայտնեալ,
զոր նախկի տեսողն առակէ բանիւ, որ ի դալար վայրի անծախապէս հո-
սեալ քառահոլով շարժմամբ արբուցանէ զերկիր, ի խորհուրդ չորից
աւետարանչացն առեալ ոռոգել նոք[ա] զբանական բնութեամբ մշտա-
բուխ յաւե[րժ]խաղաց, [ծա]յրածանին ծիրանէծաւալ [կ]ա[ր]կաչա-
հոս զծ///ղխող ջուր կենդ[անի] ճշմարտախաս///կան անփոքձ///ձկանց
բանա///համանման///հուր էի///ց մեղաց գանձ///կապէս ճոխացեալ/// և
բանալի արասցէ///անն///մի և անգիւտ [մե]ծ մարգարիտ‖գաւղաց վեր-
277ա նոյն, ձգալի///աւոր/// ///եալ բնութեանս։

Խարամանեաց աւձիցն ընդդէմ
Եւ հալածիչ դիւաց գնդին։
Ախտահալած և կռապաբեաց,
Եւ յարուցիչ գոլ մեռելոց,
Կենդանեաց կեանք, մեռելոց յ[ոյ]ս
Ոչ ծն[ի]ցելոց դաստիարակ,
[Ծ]առ հայրական երկինագործ,
Տերևախիտ, [լ]այնասաղարթ և ծաղկաւետ։
Յոգնապտուղ, քաղցրաճաշակ,
Այգի անկու[թ],
Ող[կոյ]զ ա[ռ]ա[տ]
Ցանկով պատեալ///
Հնգին հարեալ,
Արեամբ ներկեալ,
Խաչիւ ճմլեալ։
Եսայիասի Աստուած տեսեալ,
Զի մի անապակ յ[եր]կնից հոսեալ,
Սատիկ [հո]ղմով ի սմա բնակեալ

Եւ յառաքեալսն հանգուցեալ,
[Տ]աշտսուք նոցին մատռուակեալ,
Եւ զհեթանոսս զմայլեալ։

Սոքա են չորեքկերպեան կենդանիքն, յորումն լեալ հզաւրն ի բար-
ձանց շահատակէ յամուրն կարծեցեալ իշխանին, առնու աւուր զգերեալն
ի նմանէ։ Սոքա են չորս հի[մու]նքն, որով շինեցաւ վերըս[տին] կոր-
ծանեալ խորանն Դաւթի։ Սոքա են [չ]որք հող[մք]ն, որ և շնչելքս
277բ ա[ջ]րախաւս վարդապետութեանն իւրեանց շարժ‖եցին գծով կենցաղոյս։
Սոքա են չորք գազանքն, որ ելին իբրև փ‖եսայ յառագաստէ, ընթացան
ի չորս կողմանս աշխարհի։ Սոքին իսկ են ձիք սեաւք, և ձիք սպիտակք,
ձիք և գխեցուք, է ճաճենք, և ճարտարք, յորում ելեալ քաջ ղաւրականն
ղերասանակ վարդապետութեանն իւրոյ ուղղէ առ ամենայն ազգս մարդ-
կան։

Արդ, այսքանեացս և այսպիսի բարութեանցս մեղ առթողի և անուն
նորա ղաւետիս կենաց ունի դարդիս և զհանդերձեալոյն։

Արդ, ցան[կաց]ող ե[ղե]ալ սմա բարեպաշտ և աստուածասէր ծե-
րունի այրս, որ յորջորջի Ջանդար, ետ գրել զսա յիշատակ իւր և ծնաւ-
ղաց իւրոց, և կենակցի և զաւ[ա]կաց իւրոց, որոց ող[որմ]եսցի Քրիս-
տոս, ամէն։

Եւ արդ, շնորհիւն Աստուծոյ սկսաւ և ողորմութեամբ նորին [կա]-
տարեցաւ պայծառ և սքանչալի սուրբ և կենսաբեր տ[ի]եզերախաւս վար-
դա[պետ]ութիւնս տեառնաբանին Աստուծոյ, ձեռամբ փանաք և անպի-
տան նուաստիս Յովաննէսի, և ծաղկեցաւ և կազմեցաւ [ի]թ[ուա]կա-
[նու]թեանս Հայոց ՉԼԹ (1290), ի կաթողիկոսութեան տեառն Ստեփա-
նոսի և ի թագաւ[որութեան] Հայոց Հեթմոյ, [ի եպ]իսկոպոսութեան///
մեծի մ///րի, որ կոչի///

Արդ, ես///ծառայ/// [Յովան]էս քահանայ, աղաչեմ զամենեսեան
ղընթերցողսդ և զուսումնասէրսդ ղիս կա///եւ///ն Յիսուս, աղաչել և հայ-
ց[ել]/// կենակիցն իւր Թամարն և զաւակսն իւր[եանց]։ Դարձեալ աղա-
չեմ [զձ]եզ, ո՜վ եղբարք, առ որս արդիւնացի սուրբ և տիեզերափրկող
Աւետարանս, Տէր Յիսուս վայելել տացէ ի դաստիարակութիւն մտաց և ի
լուսաւորութիւն հոգւոյ և մարմնոյ, և ի պայծառութիւն մանկանց եկե-
ղեցւոյ, թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ անթիւ յանցանաց իմոց և
ծնաւղաց իմոց։ Յիշեսջիք և ղ[դեռ]աբոյս զաւակին ի[մո զՅ]ակոբ
278բ զ[ս]րով խոխողեալն ի Քրիստոս, վասն///ամիս այս ղոր պատա‖հե-
ցաւն ըստ չարին [ո]մանց ի տիոցր, թ[էև] ողորմեսցի Քրիստոս, ընդ
նմա և ինձ և ամուսնոյս իմոյ որ [տա]ռապիմք ար[տաս]ուալից ձայ-
նիւ///չարչարեացս, որ դիպեցաւ ի վերայ մեր։ Ոհ, ղիմ հ[ո]գիս։

Եւ ինքն Քրիստոս, որ մեծն է ողորմութեամբ և կարող է ի ձեռն այ-
լում այլոց ողորմել՝ մեզ և ձեզ, առ հասարակ, ողորմեսցի՝ կարդացո-
ղացդ և լսողացդ, և նմա փ[առք] ընդ Հաւր և ընդ [Որդւոյ և ընդ]
Սուրբ Հոգւոյն [այժմ և միշտ և յաւիտե]անս յա[ւիտենից], ամէն,
[ամ]էն։

Բ

131բ Զմեղապարտ գծող սորին զՅովաննէս աղաչեմ յիշել ի փրկական սուրբ պատարագին և մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և ծնողացն, և Քրիստոս մեղ և ձեզ առհասարակ ողորմեսցի, ամէն, եւ Նմայ փառք յաւիտենից։

Գ

216բ Աղաչեմ զձեզ եղբարք, որք աւգտիք կամ ընդաւրինակէք, յիշեսջիք զանարժան գծող սորայ զՅովաննէս քահանայ, և թողութիւն հայցեցէք անթիւ յանցանաց իմոց, և ծնողաց և ազգականաց իմոց, և որ Աստուած ողորմին ասէ և ոչ ձանձրանա, և Նմա ողորմեսցի Քրիստոս ի միւս անգամ գալստեան իւրում, ամէն, և Նմա փառք յաւիտեանս, ամէն։

Գրիչ՝ Վարդան

Դ

ԶՎարդան միակեց յիշէ ի Տէր։

## 531

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5736

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Դրազարկ

310բ Փառք ձգակի, եռահիւսակ դաւանութեանն ապենիագին կատարեալ և անսահմանելի, Աստուծոյ Հաւր, Աստուծոյ Որդւոյ, Աստուծոյ Հոգւոյ յաւիտեանս, ամէն։

Շնորհիւն Տեառն ամենակալի և Նորին աւգնականութեամբ աւարտեցաւ եռահրաշ և հոգխազարդ Աւետարանս, զոր էր շաղկապեալ աւե-

---

* Ձեռագիրը խիստ քայքայված է, հիշատակարանը՝ մաշված և պատռված. շատ տառերի թանաքը թափված է և միայն աղոտ հետքերն են նշմարվում, վերծանեցինք մեծ դժվարությամբ։ Ձեռագիրը այսպիսին էր, և «թաղելու եղել էր» գեռ ԺԶ դարում, երբ սկսեց նորոգել Միքայելը։ Ահա հիշատակարանի այդ մասը. «Աստանաւր յանկ ելեալ կատարեցաւ, նորոգեցաւ և կազմեցաւ... սուրբ Աւետարանս ի թվականութեան Հայոց ՌԻԸ (1579) յուլիս ամսոյ ԼԱ (31)... Եւ մեք յիշեմք զՍարգիս հալաճն, որ էր որդի հայր Վարդանին, տեսաւ սուրբ Աւետարանս խիստ փտած էր, թաղելու եղել էր, իր հոգոյն խիղճ թըւաց, կանգնեցաւ և յորդորեց զամենեսեան և... կանչնեցան, ժողովք արին սուրբ Աւետարանիս համար։ Վրայ եղան, խարճ արին, ինչ աւր պիտք էր առին և տուին ինձ... Միքայէլիս... և ձեռնարկեցի և կատարեցի, զթաղելոն կազմեցի, զմեռացն կենդանացուցի, այս էր մեր կարն (էջ 280բ)»։ «Յիշեսջիք... Միքայէլ անարժան քահանայս՝ զկազմող և զարդարող սորայ և զՀամեստի ամուսինն իւր իրիցկինն յիշեսջիք ի Տէր, որ շատ աշխատեցաւ սուրբ Աւետարանիս աւալային և նիշանստակ եփելու և գրքիս ձեռք տալու, և ապըրշում աւըրելու, և շրագին պռընկվիտքն կտրելու, և շիրազն խուրթելու, մի ըստ միոջէ տուելու յիշեսջիք...»։ Այնուհետև հիշատակվում են բոլոր նրանք, ովքեր մասնակցել են Աւետարանի նորոգմանը «Աւալային վրայ գիր չի գայ, ան այլ կու գրեմ, հանց գիտենաք»,—ավարտում է Միքայելը (280ա—281բ)։

տարանչացն ըստ բազմերանգ դունոց և ի մէ(ի) ոստայն տնկելով հան-
ճար, զոր արուեստակեալ անուշոցաց ծաղկանց իւղ եփեցական կազմու-
թեամբ, որ ըստ հոգւոյն յատկութեամբ խմանի զանազան որակութեամբք
գաղափարելով ըստ յոքունց արփիացելոյն դասակցութեանց, առ ի յեկե-
ղեցւոյ յարմարումն, յազգիւ խաղաղութեամբ գլխոյն պատշաճեալ, ղի
յայսմանէ կատարելութիւնն։
Չորք Աւետարանք ի բազում պատճառէ. չորեքկերպեան կենդանիք՝
մարդ առեւծ, ցուլ, արծիւ, չորք նիւթք աշխարհիս՝ հող, ջուր, հուր, աւդ՝
211ա հակ‖առակք, անհաշտելիք և սիրելիք անքակտելիք չորք-չորք գիր
անուան Երրորդութեանն՝ Հայր, Որդի, Հոգի, չորք գետք բղխեալք ի
դրախտէն՝ Փիսովն, Գիհովն, Տիգրիս, Եփրատէս, չորս անգիւնս և եղջերւք
սեղանոյն, չորք դէմք խաչին, և այլ բազում պատճառս, յորս գաղափա-
րի չորեքեան աւետարանիչքս։ Չի թէպէտ և բազում բանք ի սոսա երեին
ներհակք միմեանց, այլ քաջ ճշմարիտք և յոյժ միաբանք միմեանց։
Արդ, գրեաց Մաթէոս ի խնդրոյ հրէից հաւատացելոցն, որք էին
յԵրուսաղէմ, զկնի Ը (8) ամի համբառնալոյ Փրկչին, ի լեզու Հեբրայեցի,
յԵրուսաղէմ քաղաքի, զոր առեալ Թովմայի քարոզէ Հնդկաց, և Բարթո-
ղովմէոս՝ Դելմաստանի և Ամրանայ և ամենայն արևելից։
Իսկ Մարկոս գրէ ի հրամանէ Պետրոսի վիմի, վարդապետին իւրոյ,
յԱղեքսանդր քաղաքի, ի լեզու Եգիպտացի, զկնի ԺԱ (11) ամի, և աւե-
տարանէ յԵգովպէ և ի Լիւիկիա, և լուսաւորէ ղարևմուտս։
311բ Իսկ Ղուկաս յառաջագոյն աշակերտ գոլով‖Գա[ղ]իա[նոս]ի բժըշ-
կասւետի, որ և ինքն էր արուեստիւ բժիշկ, յետոյ աշակերտէ Սրբոյն Պաւ-
ղոսի, որ և հրամանաւ իսկ նորա գրէ զկնի ԺԸ (18) ամի, ի լեզու Հռո-
մայեցի, յԱնտիոք քաղաքի, և քարոզէ ի Բիւթանիա և յամենայն Մակե-
դոնիա:
Իսկ Յովհաննէս որդի Զեբեդեայ, որդի Որոտման, որդի սուրբ կու-
սին, որ փարեցաւն զսարսափելի պարանոցաւ զանճառ լուսոյն, զվերինն
որոտալով Աւետարան, և աւետարանէ զկնի ԾԳ (53) ամի, գրէ յԵփեսոս
քաղաք, և լուսաւորէ զամենայն Ասիա:
Արդ, Աւետարան կոչի, որ պատմէ մեզ զեղեալ բարութիւնս, զխա-
ղաղութիւն, որ եղև հրեշտակաց և մարդկան, զքակտումն բռնութեան թըշ-
նամւոյն կենաց մերոց, զաւերումն դժոխոց, զազատութիւն հոգւոց ղընդ
աջմէ Աստուծոյ նստեալ բնութեան մարդկութեանս։
Բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի լուսալրական ժամանա-
կի, սկզբանց արարչութեանն մինչև առ մեզ ՑՉԺԴ (6714), իսկ ի կենա-
312ա րարին դալս‖տենէն ՌՄՂԳ (1293), իսկ ի խոսրովայն Պարսից
սկսեալ մերս թիւ, որ է ՉԼԹ (1290), ի թագաւորութեանս Հայոց բարե-
պաշտ, աստուածասէր, աստուածապահ, աստուածազարդ թագաւորիս
Հայոց Հեթմոյ, և ի հովուապետութեանս տեառն Ստեփանոսի։ Ես Թո-
րոս նուաստ և յոգնամեղս, լոկ անուամբ քահանայ, բայց խորհրդով և
գործով խաբեբայ, գրեցի զաստուածահրաշ Աւետարանս ի գերահրաշ
ուխտս Դրազարկ, ընդ հովանեաւ սուրբ և փառաւորեալ տիրամաւր Աս-
տուածածնիս, և կենսակիր և աստուածաբնակ Սուրբ Նշանացս, որ է

դիր և ռամբարան թագաւորացն Հայոց և թագուհեացն իւրեանց, և իւ-
րեանց աւրհնեալ զարմին Ռոբինեանց, յառաջնորդութեանն տէր Թորոսի:

Եւ թէ յոր սակս գրեցի զսա, ասացից փոքրիշատէ։ Յիշելով իմ
զպատմութիւնս ծերունի հաւրն իմո, զհայրենի գաւառէն Շատախ կոչե-
ցելո և զՏարաւնոյ, և զդիրս սուրբ և յառաջընթաց Կարապետին և Ամլորդ-
312բ ւոյն Յովաննու, հպողին յանհպելի գլ‖ուխն Աստուծոյն մերոյ և փրկչին
Յիսուսի, եւ ի վաղուց հետէ ցանկայի տեսանել զսուրբ ուխտն և հայրենի
գաւառն իմ, և մինչ ցայս վայր զգալի աչաւք ոչ տեսի, այլ մտաւք յամենայն
ժամ։ Եւ ածի զբանս իմաստիցն զմտաւ թէ՝ Զի՞նչ այլ ինչ է իմաստութիւն,
բայց խոկումն մահու, և զկնի մահու՝ յիշատակ բարի։ Եւ ես ինքնին ձե-
ռաւք իմովք գրեցի զցանկալի սուրբ Աւետարանս, և յարդար ընչից իմոց
ետու զսա ոսկի ծաղկովք, ոսկի գլխագրովք, համաբարբառաւք, և չորե-
սին խոր[ա]նաւք և բազմերանգ գունով, կազմաւք և արծաթի կոճա-
կաւք՝ յարմարեցի ըստ իմ փանաքի և թարմատար կարիս, և ետու զսա
ընծայ Սրբոյն Յովաննու Կարապետի, որ է ի գաւառն Տարաւնոյ, յա-
ռաջնորդութեանն տէր Յովանիսի գերամաքուր եպիսկոպոսի; Եւ խնդրե-
ցի ի նմանէ և ի վարդապետէն Ստեփաննոսէ մաքուր ոգւոյ, ի Յակոբայ
313ա և ի Կարապետէ, և նոքա յանձն առին յա‖ւժար կամաւք, զի աւր յայտ
արարասցեն և յամենայն ամի մի աւր զպատարագն ժամարարքն ինձ և
ծնողացն արասցեն։

Եւ արդ, աղաչեմ նախ քան զամենայն աղաւթս առնել, զի ղտարա-
կուսեալ և ղսինլքոր ազդս Հայոց ազատեսցէ Աստուած ի դառն ծառայու-
թենէ փարաւոնի, և ի ժանդ, և ի պղծագործ, և յապարասան ազդէն Իս-
մայէլի. զի բազում անգամ զաշխարհս Հայոց սրով և հրով մաշեցին, և
զտաճարս Աստուծոյ արարին հաւտից և խաշանց փարախ, զոր Տէր
Յիսուս սատակեսցէ զնոսա, զոր միով ամաւ յառաջ էառ զհոյակապ և
հռչակաւոր քաղաքն Տրէպաւլիս և տապալեաց ի հիմանց։ Եւ երկու ամաւ
յառաջ տէրն իմ և խնամողն, և անընդմիջելի սիրով սիրողն և սնուցողն
զիմս նուաստութիւն, բարէպաշտ և աստուածասէր թագաւորն Հայոց
հանդեաւ ի Քրիստոս՝ ՉԼԷ (1288), յամսեանն փետրուարի Զ (6), յաւուր
313բ շաբաթու։ Հայցեցէք յԱստուծոյ նմայ մեղաց թողութիւն,‖և խնդրեսցի
Տեառնէ Աստուծոյ, զի բարէպաշտ և զաստուածասէր թագաւորին ամե-
նայն Հայոց տացէ ընդ երկայն աւուրս պարագայց ամաւք խաղաղական
կենաւք, յարազուարճ բերկրանաւք, զի է սքանչելի իմաստութեամբ, համ-
բակ՝ տիովք, և ծեր՝ խորհրդով, գեղեցիկ հասակաւ և բարի՝ բարուք,
տունկ երկնային և երկայն աղաւ[թի]ց պտուղ, սեբեալ յամենաւրհնեալ
զարմէն Ռոբինեանց առ ի մխիթարութիւն ազգիս Հայոց զոր պահեսցէ
Աստուած ղսա և զվեց եղբարս սորա, զգեղեցիկսն, զոր մի ըստ միոջէ՝
զԹորոս, զՍմբատ, զԿոստանդին, զՍտեֆանէ զերկուորեակսն, զԱւշին
և զկայտառն զՌաւբէն՝ աստ և ի հանդերձեալն անպայման խնդութեամբ
հրճուեսցին։ Եւ մի պակասեսցէ թագաւորութիւն ի զարմէ սոցա, մինչև
եկեսցէ ամենաթագաւորն Քրիստոս, որոյ իւր է թագաւորութիւնն։

Յիշեսջիք ի Քրիստոս զընթանուր եղբայրութիւնս՝ զեպիսկոպոս,
314ա զրաբունի, զերաժիշտսն, զըն‖կերսն իմ և զաշակերտսն՝ զՅուսէփ փա-
կակալ, զմխանձունսն որ յանապատս, զգործաւորս, զՏիմաւթ պատուա-
կան քահանայ՝ զքանոնող քարտիս, և զԳէորգ անյապաղ սպասաւոր։
Եւ ապա յերեսս անկեալ լալագին արտասուաւք հայցեմ յընթանուր
և ի սուրբ լրումենէդ, զի յընթեռնուլն զսա մի մի ծունր կրկնէք լի ու ան-
բիծ հաւատով առաջի աստուածահուպ նշխարացտ Յովանու, մեղաց թո-
ղութիւն հայցէք դառնացելոյս մեղաւք, և իմոց ծնաւղացն, և ամենայն
զարմիցս։ Եւ Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ Սրբոյն Յովաննու
Կարապետի և Աթանագինէ վկայի և Եւթն խոտաճարակացն և ամենայն
սրբոց յիշելոցս և յիշողացդ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։
Ընկալ Սուրբ Կարապետ ի թարմատար, յապիկար, և մեղաւոր, և
անարժան ծառայէս զԱւետարանս հրաշալի, որպէս Փրկիչն ամենեցուն
զխէրևէշ այրւոյն։ Եւ որ ջանա գողանալ կամ հանէլ զսա յայն սուրբ ուխ-
տէն, նզովեալ լիցի[ի] հոգւով և մարմնով։

532

ԱՒԵՏԱՐԱՆ

Մաքսուդյան, Ցուցակ Թովմայ առաքելոյ վանուց, «Արարատ», 1911 թ. էջ 223
Լենինգրադ, էրմիտաժ, V 3—835

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Դրազարկ

290բ Կատարեցաւ սուրբ և գերահրաշ Աւետարանս ի սուրբ ուխտս Դրա-
զարկս, ի թուիս Հայոց ՋԼԹ (1290), ի թագաւորութեն Հայոց Հեթմոյ, ձե-
ռամբ Թորոսի նուաստ և յոգնամեղ փիլիսոփայի, որոյ Տէր Յիսուս
ողորմեսցի։

533

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2630

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Սկեռա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն
այժմ, և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն, որ տայ զաւրութիւն
յինքն հայեցողաց ի ներհակ եկամտիցն, պարսպեալ զանձինս և բնա-
ւորական արարչադիրն հետևել սահմանի, որով զբնաւորական շարժումն
իմաստապէս մարթէ յաւրինել աստուածային սիրովն ուղերձեալ և սի-
302ա րալիր համբուրիւ զսեպհականն‖ողջունել կեանս յար ի զլուխն ըստ
իմաստնոյն հայեցմամբ։
Ըստ որում է և այժմու յիշատակեալ քահանայս Թորոս, որ է յաշ-
խարհէ թագաւորական քաղաքին Կոստանդինուպալսի, ի գաւառէն, որ